# Գրիգոր Արծրունի




ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

ԹԻՖԼԻՍ
1903

ԼԷՕ

# ԳՐԻԳՈՐ ԱՐԾՐՈՒՆԻ

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ




Հրատարակութիւն

ԳԱՍՊԱՐ ՏԷՐ-ՄԱՐԳԱՐԵԱՆԻ





ԹԻՖԼԻՍ
Արագատիպ Մն. Մարտիրոսեանցի
Պուշկինեան փողոց, № 12.
1903



Նկ. ՄԱ. Մարտիրոսեանցի:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

I



II

## III



## IV

---

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՆՇԱՆԱՒՈՐ ՇՐՋԱՆ

### I

Հասարակական շարժում Ռուսաստանում։—Սլաւօնական երկիրներ և ազատարար հոսանք։—Նոր շրջան մեր կեանքի մէջ։—Բալկանեան դէպքերը։—Արծրունին Թիւրքահայերի դրութեան մասին։—Ամենքը յարձակվում են Արծրունու վրայ։—Պատմական տեսութիւն. գաւառների ձգտումը դէպի Ռուսաստան։—Պատրիարքարանի եւ ազգային ժողովի գոր-

II

# ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻՆԵՐ

### I

*Նախապատրաստութիւններ:—Խմբագրութիւն եւրոպական ձեւով. ժողովներ:—Գրիգոր Արծրունու յիշողութիւններից. Յակոբ Մէլիք-Յակոբեան:—Գրական երեկոներ. դիպլոմատներ եւ «ձկնորսներ»:—Րաֆֆիի յիշողութիւններից:—«Մշակի» առաջին յաջողութիւնը:—Ի՞նչ է մշակը:—Աշխատանքի փառաբանութիւն:*



Վճռելով իրագործել իր վաղեմի միտքը, հիմնել իր սեփական լրագիրը, Գրիգոր Արծրունին նախ և առաջ շրջան ստեղծելու մասին էր մտածում։ Նա չէր ուզում և չէր էլ կարող մենակ գործել։ Պէտք էր նախ և առաջ խմբագրութիւն, այս բառի եւրոպական նշանակութեամբ։ Բայց ինչպէս կազմել խմբագրութիւն, ուր էին պատրաստի, որոշ գոյն ունեցող գործիչներ։ Արծրունին դիմեց իր ծանօթ երիտասարդներին. դրանցից

*պիտի առաջ գային աշխատողներ, ուրիշ ոչ մի յոյս լինել չէր կարող։ Այդ ծանօթներից երկուսի հետ, որոնք էին Վասիլ Տահվերդեան և Գօղոս Իգմայիլեան, Արծրունին պատրաստեց իր լրագրի ծրագիրը և ներկայացրեց կառավարութեան։*

*«Տահվերդեանի և Գօղոս Իգմայլօվի հետ ծանօթանալով—գրում է Արծրունին *)—նրանք ինձ օգնեցին լրագրի պրօգրամը մըշակելու և գրելու, քանի որ ես տարիներով արտասահմանում ապրած լինելով* au courant *չէի ռուս լրագիրների պրօգրամների և մասամբ յետ էի սովորել և ռուսաց լեզուից, որպէս զի գրեմ լրագրի պաշտօնական պրօգրամը և պաշտօնական խնդիրքը»։*

*Այստեղ ճիշտ տեղն է, որ մենք դնենք այն հարցը՝ թէ ինչը հարկադրեց Արծրունուն գրել այդ տողերը։*

1890 *թւականն էր. հայ հասարակութիւնը պատրաստվում էր տօնել Արծրունու գրական գործունէութեան քսան և հինգամեակը։ Այդ պատրաստութիւնների ժամանակ քնած չէին Արծրունու բազմաթիւ թըշնամիները և նրանցից երկուսը, որոնք* 1872 *թւին Արծրունու հետ աշխատողներից էին,*

---

*) «Մշակ» 1890, № 45.

լրագրութեան մէջ աշխատում էին հաւատացնել թէ «Մշակի» հիմնադիրը Գրիգոր Արծրունին չէ, այլ այն խումբը, որի հետ էր նա և Արծրունին միայն պատահաբար է առաջարկվել լրագրի խմբագիր։ Այդքանը բաւական չէր։ Այդ պարոններից մէկը իր յիշողութիւնների մէջ դուրս էր բերում Արծրունուն իբրև մի անյայտ երիտասարդի, որ չը գիտէր հայերէն, չէր իմանում թէ ինչ պիտի անէ Թիֆլիսում։

Մենք այժմ հեշտ կարող ենք գնահատել թէ ինչ արժեն այդ թշնամական յիշողութիւնները։ Հարկաւոր էլ չէ որ յիշեցնենք ընթերցողին թէ Արծրունին դեռ 1865 թուականից էր մտքում դրել հայերէն լրագիր հրատարակել։ Արծրունու նախընթաց գրական գործունէութիւնը, որ երևաց «Հայկական Աշխարհի» և «Մեղուի» մէջ և որի հետ մենք մանրամասն ծանօթացանք մեր գործի առաջին հատորում, ամենալաւ ապացոյցն է որ Արծրունին 1871 թուականին մի բոլորովին անյայտ երիտասարդ չէր, միանգամայն անծանօթ իր ազգի կեանքին ու լեզուին։ Ընդհակառակն, այն ժամանակվայ գրողներից ոչ մէկն էլ Արծրունու չափ յայտնի չէր ընթերցող հասարակութեան, ոչ մէկն էլ չէր գրել այնքան շատ ու այնքան լաւ, ինչպէս

Արծրունին։ Եւ եթէ կար մէկը, որ լաւ պատրաստուած լինէր մի հասարակական օր-գան ղեկավարելու, դա հէնց Արծրունին էր։ Նոր չը պէտք է սովորէր նա գրելը, նոր չը



պէտք է սովորէր վերլուծել հայկական կեան-քի երեւոյթները, ներկացնել պակասութիւն-ների արմատները։ Ո՞վ էր որ նրա պէս հաս-

կացած ու բացատրած լինէր մեր գրականութեան ողորմելի դրութիւնը: Թշնամութիւնը կարող է կոյր լինել, որքան կամենում է, բայց փաստերը երբէք չեն կորչի պատմութեան մէջ:

Չը գիտենք երբ Արծրունին ներկայացրեց իր խնդիրքը կառավարութեան: Յայտնի է միայն, որ 1871-ի ամառվայ վերջում նա ստացել էր թոյլտւութիւնը և սեպտեմբերին յայտարարեց թէ եկող տարվանից պիտի հըրատարակէ «Մշակ» գրականական և քաղաքական լրագիրը:

Թիֆլիս գալուց, տեղն ու տեղը մեր գըրականութեան և նրա մէջ գործողների հետ ծանօթանալուց յետոյ, Արծրունին, ինչպէս գիտենք, խօսեց գանգատների դէմ: Գանգատվողներ մենք շատ ունէինք. ընթերցողը գրողից էր գանգատվում, գրողը ընթերցողից: Եւ երկու կողմերն էլ դրանով բաւականանում էին: Արծրունին ասում էր, բաւական է որքան մեղադրեցինք միմեանց: Գործ է հարկաւոր: Մի՞թէ չեն գտնվի մեզանում ազնիւ, եռանդոտ մարդիկ, որոնք մի գումար կարողանան հաւաքել՝ մայրենի գրականութեան ծառայեցնելու համար. մի՞թէ չի գտնվի մեզանում աշխատողների մի

խումբ, որ գրքեր հրատարակէր, մի օրինաւոր լրագիր հիմնէր։

Գումար հաւաքելը լոկ մի առաջարկութիւն էր, մի բարի ցանկութիւն։ Իրապէս կը հաւաքվէ՞ր նա։ Շատ և շատ կասկածելի, անհաւատալի բան էր դա։ Եւ Արծրունին, չը մոռանալով իր այն խօսքերը թէ ինքնօգնութեան գաղափարից զուրկ ազգերի մէջ անհատները պիտի գործեն, չէ սպասում թէ երբ հայ հասարակութիւնը գումար կը հաւաքէ գրական գործերի համար և ինքը, իբրև անհատ, հիմնարկում է իր լրագիրը։ Մընում էր միւս հարցը. կը լինի՞ աշխատողների մի խումբ։

Այդ հարցը լուծելու համար նա դեռ մինչև Թոյլտուութիւն ստանալը սկսում է պատրաստութիւններ տեսնել, որոնց նպատակն էր հաւաքել ապագայ լրագրի շուրջը աշխատողների աչքի ընկնող թիւ։ Հաւաքական ոյժերով, փոխադարձ ձեռնտուութեամբ գործելու գաղափարը մեզանում նոր կերպարանք էր ընդունում։ «Հիւսիսափայլը», «Կըռունկը», «Մեղուն», ճիշտ է, ունէին մշտական աշխատակիցներ, բայց իսկական խըմբագրութիւն կազմելու առաջին պատիւը միայն Արծրունուն է պատկանում։ Դա այն խմբագրական կազմակերպութիւնն է, որ

հաւաքվում է, կանոնաւոր ժողովներ կազմում և քննութիւնների միջոցով տնօրինում է տպագրելի նիւթերի վիճակը։

Սկզբում, նախ քան թոյլտւութիւն ստանալը, Արծրունին շաբաթը մի անգամ իր մօտ գրական երեկոներ էր կազմում։ Թիֆլիսը երեկոներ շատ ունէր, մարդիկ միմեանց մօտ հաւաքվել, ի հարկէ, գիտէին. բայց այդ համախմբումները ուրիշ նպատակ ունենալ չէին կարող բացի թուղթ խաղալուց, կեր ու խումից։ Արծրունու երեկոները թարմ նորութիւն էին. հաւաքվում էին գրական-հասարակական հարցեր արծարծելու և քննելու համար, այն էլ, ո՛վ կարող էր երևակայել, հայերէն լեզուով։ «Մշակի» թոյլտւութիւնը ստանալուց յետոյ այդ հաւաքումները ընդունեցին աւելի կանոնաւոր կերպարանք, աւելի որոշ կազմակերպութիւն։ Նրանք դարձան խմբագրական ժողովներ։

Ո՞վքեր էին հաւաքվում Արծրունու մօտ։

—Այն բոլոր երիտասարդները, որոնք սէր ունէին դէպի հասարակական գործունէութիւնը, դէպի իրանց մայրենի գրականութիւնը։ Խտրութիւն չը կար. ուսման աստիճաններ, դիրք, պաշտօն չէին հարցնում։ Կային համալսարանական կրթութիւն ստացածներ, գերասաններ, ուսուցիչներ, չինով-

նիկներ, աղքատ երիտասարդներ։ Ասենքը իբրև ընկերներ մտնում էին գեներալ Արծրունու տունը, ամենքը իրաւունք ունէին խօսելու, վիճելու, նոյն իսկ կռուելու։ Ամենքը չը պիտի միշտ լինէին Գրիգոր Արծրունու հետ։ Շատերը շուտով պէտի հեռանային այդ հիւրընկալ յարկի տակից և երիտասարդ տանտիրոջ կատաղի հակառակորդները դառնային։ Բայց ընտրողը, պահողն ու հեռացնողը՝ գործը պիտի լինէր։ Գործը դեռ չէր սկսված, սկսելուց յետոյ էլ դեռ մի առժամանակ անորոշութիւն, տատանում էր պահպանում այդ ժողովների մէջ։ Դեռ կարծիքների, հայեացքների, ուղղութիւնների խուլ ընդհարման ժամանակ էր։

Գրական՛ փոքր ի շատէ յայտնի անուն ունեցողներ շատ չէին։ Մատներով կարելի էր համրել այդպիսիներին։ Առաջինն էր Գաբրիէլ Սունդուկեան, որ արդէն «Պէպօի» հեղինակն էր, Ստեփանոս Պալասանեան, լեզուագէտ և գրականագէտ, Պերճ Պռօշեան, որ ունէր «Սօս և Վարդիթեր» ազգային վիպասանութիւնը և «Աղասի» նոյնպէս ազգային ողբերգութիւնը։ Գրական մարդկանց շարքում կարելի էր դնել և Մարտիրոս Սիմէօնեանցին, որ ուսուցիչ էր և թարգմանել էր Եղիշէին։ Այնուհետև գալիս էին

բոլորովին անյայտ մարդիկ՝ Պօղոս Իզմայիլեան (վերջում Թիֆլիսի քաղաքագլուխ), Վասիլ Շահվերդեան, Սենեքերիմ Արծրունի, Գէորգ Եւանգուլեան, Աբգար Յովհաննիսեան, Գրիգոր Իզմիրեան, Ալէքսանդր Քիշմիշեան, հայոց բեմի վրա անուն հանած դերասաններ Միհրդատ Ամերիկեան և Գէորգ Ջմշկեան։

Ուզում ենք առանձին յիշատակել մէկին —մի պարսկաստանցի համեստ, սակաւախօս մարդուն, որ հանդարտ նստում էր մի անկիւնում և լսում։ Այդ մարդը հաշւապահ էր Թիֆլիսի մի հայ վաճառականի խանութում։ Բայց հարցնողին նա կարող էր հպարտութեամբ ասել թէ ինքը «Հիւսիսափայլի» մարդկանցից է։ Նրա գրական անցեալը «Հիւսիսափայլում» տպված երկու յօդուածից էր կազմված, իսկ ներկան... բայց ներկան ոչ ոք չէր ճանաչում. կար միայն այն, որ այդ պարսկաստանցին գրուածքներ շատ ունի։ Ժողովրդի մէջ թագնված մի ոյժ։ Նրան առաջ քաշեցին, նրան ասպարէզ տուին Արծրունու գրական երեկոները և նա, Յակոբ Մէլիք-Յակոբեանը, դարձաւ Րաֆֆի։ Արծրունին նկարագրել է թէ ինչպէս ինքը ծանօթացաւ Մէլիք-Յակոբեանի հետ։ Այդ նըկարագրութիւնը միևնոյն ժամանակ լաւ

պատկերացնում է «Մշակի» նշանաւոր խմբագրական ժողովները։

1871 Թւին—գրում է Արծրունին— *) ես արդէն Թոյլտուութիւն էի ստացել «Մշակը» հրատարակելու եւ կազմակերպում էի խմբագրութիւնը, աշխատելով իմ չորս կողմը խմբելու ընդունակ, Թէեւ գրականութեան մէջ դեռ եւս անյայտ երիտասարդներին։ Շաբաթը մի անգամ լինում էին ինձ մօտ խմբագրական երեկոներ։ Այդ ժամանակ այդ երեկոներին լինում էր ուրիշների Թւում եւ պ. Սենեքերիմ Արծրունի։ Մի օր պարոնը հրաւիրում է ինձ իր տունը, որտեղ նոյնպէս գրական երեկոյ պէտք է լինէր։ Այդտեղ տանտէրը ծանօԹացնում է ինձ մի մարդու հետ, որին ինքն կարճ կերպով անուանում էր Յ ա կ ո բ։ Դա պարսկաստանցի Մէլիք-Յակոբեանն էր։ Մինչեւ որ ուրիշները բարձր ձայնով խօսում, վիճում էին, պարսկաստանցի երիտասարդը, որ այն ժամանակ իմ կարծիքով 30—35 տարեկան կը լինէր, լուռ նստած էր սենեակի մի անկիւնում եւ գրեԹէ չէր մասնակցում ընդհանուր խօսակցուԹեանը։ Այդ ժամանակ նա աննշան ռոճիկով հաշւապահ էր մի ինչ որ հայի խանուԹում։

«Ընդհանուր տպաւորուԹիւնը, որ առաջին անգամ գործեց ինձ վրայ Մէլիք-Յակոբեան, այն էր, որ զգալով ուրիշների, ինտելիգենտ, համալսարանական մարդկանց մտաւոր գերազանցուԹիւնը, նա քաշվում էր մեր հասարակուԹեան մէջ որեւէ վիճաբանուԹիւնների մէջ մասնակցելուց։ Նրա ամ-

---

*) «Մշակ», 1888, № 48.

բողջ պատկերը, մեր շրջանում իրան հետ քաշված, լուռ պահելու կերպը՝ ցոյց էր տալիս, որ նա իրան պատահական հիւր էր համարում համալսարանականների շրջանում. այդ թուխ, շատ թուխ դէմքով, սեւ միրուքով, սեւ գանգուր մազերով, կապոյտ ակնոցների միջից կարմրած, հիւանդոտ յոգնած աչքերով մեզ վրա խորհրդաւոր լայն ճակատի տակից նայող մարդը՝ կարծես մեզ ամենքիս դիտում էր, մեզ ուսումնասիրում էր, դեռ եւս իր ոյժերին հաւատ չընծայելով իրանից բարձր ուսում ստացածների հետ որեւէ բանակռիւ մտնելու։ Գ. Սենեքերիմ Արծրունին ներկայացրեց ինձ Մէլիք-Յակոբեանին, աւելացնելով, որ մարդը բազմաթիւ անտիպ գրուածքներ ունի եւ կարող է պիտանի լինել նոր ծնվող «Մշակի» խմբագրութեանը։

«Մէլիք-Յակոբեան սկսեց յաճախել եւ իմ խմբագրական ժողովները։ Ինչպէս ես նրան առաջին անգամ տեսայ, նա շարունակեց երկար ժամանակ նոյն ձեւով պահել իրան եւ իմ խմբագրական ժողովներում. դիվանի մի անկիւնում լուռ նստած, նա մի գլուխ պապիրոսներ էր ծխում, լսում էր ուրիշների խօսակցութիւնն ու վիճաբանութիւնները եւ գրեթէ երբէք չէր մասնակցում այդ վիճաբանութիւններին։ Մի օր նա բերեց իր անտիպ գրուածքներից մէկը, որքան յիշում եմ դա վէպ էր եւ կրում էր «Խըլվըլիկ» վերնագիրը։ Ես բացարձակ յայտնեցի միտքս. վէպի նկարագրական տեղերը աննըման էին, բայց ամբողջ վէպի հիւսուածքը ես չը հաւանեցի. ես անյարմար գտայ այդ վէպը մի լրագրի, այն էլ շաբաթը մի անգամ հրատարակվող լրագրի մէջ տպագրելու համար։

Այնուհետեւ Մէլիք-Յակոբեան սկսեց ինձ յաճա-

խել խմբագրական ժողովներից դուրս օրերին։ Մեր խօսակցութիւնների ժամանակ ես աշխատում էի բացատրել նրան իմ ուղղութիւնը, իմ պրօգրամը։ Ես 26 տարեկան երիտասարդ էի, ես եւրոպական ուսում էի ստացել, բայց ես չէի ճանաչում արեւելքը։



[illegible] 1875

—Դուք աշխարհ տեսած մարդ էք, դուք ինքներդ պարսկաստանցի, բուն արեւելցի էք, պտտել

էք եւ Թիւրքաց Հայաստանում, տուեցէք մեզ տեղեկութիւններ այդ երկիրների մասին, տուեցէք մեզ հում նիւթեր, անդադար ասում էի ես նրան, Թողեցէք երեւակայականը եւ հաղորդեցէք մեզ իրականը,. այն ինչ որ կայ, ինչ որ ինքներդ գիտէք, ինչ որ տեսել էք։ Նկարագրեցէք կեանքը Պարսկաստանում ինչպէս որ կայ...

Այդ մասնաւոր խօսակցութիւնների ժամանակ մշակվեցաւ «Պարսկաստանի նամակների» պրօգրամը, այդտեղից էլ ծնունդ առաւ Ր ա ֆ ֆ ի կեղծ անունը, որով Մէլիք-Յակոբեան այնուհետեւ յայտնվեցաւ մեր գրական ասպարիզում։

Այն րօպէից սկսած Րաֆֆիի վիճակը կապվեցաւ «Մշակի» վիճակի հետ։

*Ահա ինչ էին անում Գրիգոր Արծրունու գրական երեկոները։ Այժմ տեսնենք թէ ինչ էր զգում այդ ժողովներին նոյն այդ լուռ, թխադէմ պարսկաստանցին։ Րաֆֆին էլ նըկարագրել է «Մշակի» խմբագրական ժողովները իր «Հայ երիտասարդութիւնը» աշխատութեան մէջ*) և նկարագրել է իրան յատուկ վառ ոգևորութեամբ։*

Ես երբէք մոռանալ չեմ կարող 72 Թւականը, երբ սկսվեցաւ հրատարակվել «Մշակ» լրագիրը,— գրում է նա։—Ի՞նչ կեանք էր տիրում այն ժամանակ Թիֆլիսում. ինչ դրութեան մէջ էր գաւառնե-

*) «Մշակ» 1879, № 205.

րի վիճակը։—Ամեն տեղ տիրում էր մի տեսակ ան-շարժութիւն, մի տեսակ թմրութիւն, մի տեսակ մե-ռելութիւն։ Ցանկարծ, կարծես մի դիւթական գա-ւազանի հարուածքից, զարթեցաւ կեանքը։ Ոչ ոք չէր հաւատում, թէ այսպէս կարող էր լինել։ Հա-ւատում էր միայն երիտասարդների մի փոքրիկ խումբ։ Ես յիշում եմ այն գեղեցիկ տարիները, այն հրաշալի գիշերները, երբ այդ խումբը հաւաքված խմբագրատան մէջ, կարդում էին, ծխում էին եւ վիճում էին։ Մեզանից շատերը հագներին շապիկ չունէին, մտնում էին այնտեղ բոլորովին պատառո-տած կօշիկներով. այնուամենայնիւ, մենք ամենքս էլ ֆանտալիստի յոյսով հաւատում էինք, թէ կը տի-րապետենք մի մեծ ապագայի։

Սկզբում այս լրագրի շուրջը խմբվեցաւ համալ-սարանական դ ի պ լ օ մ ա ւ ո ր երիտասարդութիւնը։ Բայց նրանք շուտով ցրուեցան. կարծես թէ, գործը խորթ թւեցաւ իրանց։ Նրանք չը հաւատացին այս լրագրի ճակատագրին։ Մնացին դիպլօմից զուրկ ի ն ք ն ո ւ ս ն ե ր ը,—ինքնակրթութեամբ զարգացած մանկտին,—անուշողութիւնների տակ ճնշված, ամեն տեղից հալածված, բայց դարձեալ իր վեհութիւնը պահպանած մանկտին։ Ահա այդ ուժերը իրանց ուսերի վրայ բարձրացրին «Մշակի» դրօշակը։

...Եւ այսպէս, համալսարանականները հեռանա-լով «Մշակից», ասպարէզը մնաց ինքնուսներին։ Այդ լրագրի խմբագիրը խիստ ճիշտ համեմատու-թիւն արեց, թէ նա թողեց դպիրներին եւ փարիսե-ցիներին, եւ իրան շրջապատեց հասարակ ձկնորս-ներով,—ժողովրդի չը փչացած զաւակներով։ Բայց պէտք էր ցոյց տալ հասարակութեանը, թէ այդ դիպլօմից զուրկ ուժերով կարելի էր կազմել մի նոր

շկօլա։ Գործիչների առջեւ դրած էին ահագին դըժուարութիւններ ահագին պարտականութիւնների հետ։ Հողը միանգամայն խոպանացած էր։ Աշխատանքի բաժանութիւն չը կար։ Ուզում եմ ասել, չը կային ուրիշ օրգաններ, որոնց իւրաքանչիւրը յանձն առնելով մշակութեան մի ճիւղը, սկսէին աշխատել։... Եւ այս պատճառով «Մշակը» ստիպված էր իր թերթերը բեռնաւորել ամեն տեսակ նիւթերով։ Պուբլիցիստիկան եւ բելետրիստիկան ձեռք ձեռքի տված էին ընթանում։ Վիպասանը նկարում էր պատկերներ ժողովրդի կեանքից, ցոյց տալով նրա տգեղ այլանդակութիւնները։ Տնտեսագէտը հարուածում էր անխիղճ վաշխառուի եւ հարստահարիչ կապիտալիստի յարաբերութիւնները մշակ դասի հետ։ Մորալիստը խորտակում էր այն սեւ նախապաշարմունքները, որ ծանրացած էին ամբոխի հոգու վրա, եւ մատուցանում էր բարոյական նոր սնունդ։ Առողջ խօսքը բղխում էր կենդանի աղբիւրից եւ տարածում էր դէպի ամեն կողմ նոր մտքեր։ Կրիտիկական ոգին գործում էր իր անխնայ անգթութեամբ։ Նա մտնում էր հեղինակի կաբինետը, վաճառականի խանութը, արհեստաւորի գործարանը, ծառայողի ատեանը, գիւղացու խրճիթը, մեծատան սալօնը, վարժապետի դպրոցը, կղերի մենարանը,—մի խօսքով, կեանքի բոլոր ծալքերում պտտվում էր նա, եւ խաւարի միջից դուրս էր քաշում, մերկացնում էր այն ամենը, ինչ որ տգեղ էր, ինչ որ անարժան էր։ Այդ բոլորը գործվում էր այն շկօլայի մէջ, որ հիմնեց «Մշակը», ուր երիտասարդութիւնը ուսանում էր եւ ուսուցանում էր։

Ես երբէք չեմ կարող մոռանալ այն աղմկալից ժողովները, որ կազմվում էին այդ լրագրի խմբա-

գրատան մէջ մի քանի տարի առաջ։ Եթէ ես ունեցել եմ մի քանի ոսկի րուպէներ,—դրանք պատկանում են այն ժամանակին։ Ժողովների մէջ ոգեւորված եւ բորբոքված վիճաբանութիւնները տեւում էին շատ անգամ մինչեւ գիշերվայ ժամի երկուսը։ Փոքրիկ, բոլոր նիւթական միջոցներից զուրկ, բայց բարոյապէս հարուստ խումբը ծրագրում էր հսկայական պրօեքտներ։ Այդ դօն-քիշօտութիւնը, երեւակայութեան այդ տենդային բորբոքումը, թէեւ մասամբ ծիծաղելի էր, բայց գեղեցիկ էր, որպէս մանուկի ժպիտը, որ արտայայտութիւն է նոր սկսվող կեանքի։ Իղէաների խորին արբեցութեան մէջ, ամեն մի երիտասարդ մոռանում էր իր վիճակի տաժանութիւնը, եւ մտածում էր, վիճում էր հասարակաց բարօրութեան մասին։ Կէս գիշերից յետոյ նիստը վերջանում էր։ Խումբը ցրիւ էր գալիս բուլվարների վրա, երբ բոլոր հիւրանոցները փակված էին լինում։ Բայց դարձեալ խուլ եւ անապատացած փողոցների մէջ շարունակվում էր ընդհատված վիճաբանութիւնը։ Այն ժամին, երբ բախտաւոր Թիֆլիսեցին հանգստանում էր իր փառաւոր բնարանի մէջ, մեր կիսամերկ շրջմոլիկները Գօլօվինսկի Պրօսպեկտի սալերը դղրդելով, քննադատում էին մի նշանաւոր հասարակական հարց։ Ջիւնը, անձրեւը, սառը քամին չէր քշում նրանց դէպի իրանց ողորմելի բնակարանները, այլ աւելի զովացնում էր եւ աւելի կազդուրում էր տաքացած գլուխները։ Նրանք բաժանվում էին միմեանցից, երբ զարկում էր առաւօտեան զանգակը. այն ժամանակ գնում էին հանգստանալու, որ միւս օրը նոր ուժով սկսեն աշխատել։

*Հարկ կա՞յ աւելացնելու, որ մեր մեռած ու տխուր իրականութեան միանգամայն խորթ էր այսպիսի գաղափարական ոգեւորութիւնը։ Ի՞նչպէս ծնուեց այս հրաշալի երեւոյթը մեզանում, որտեղից յանկարծ դուրս եկան այդ արբեցած երիտասարդները։*

*Հաւատը ծնեց, դուրս բերեց այդ ամենը, անսահման հաւատը դէպի գաղափարի յաղթանակը, դէպի առաջադիմութիւնը, վերածնութիւնը։ Մենք գիտէինք միայն լաց լինել։ Գրիգոր Արծրունին ծաղրեց մեր լալկանութիւնը, գործ, աշխատանք պահանջեց, ինքը առաջին աշխատաւորը դարձաւ։ Եւ ահա նրա եռանդի, նրա ներքին կրակի գործը մի կարճ միջոցում։ Նա էր այդ ինքնամոռացութեան հասած, հսկայական ծրագիրներ կազմող, հասարակական ցաւերով տոչորվող խմբի հոգին։ Նա էր հրդեհում այդ անսահման ոգեւորութիւնը աղքատ ու անյայտ իր գործակիցների մէջ։ Թիֆլիսում հողը պատրաստված էր, Արծրունին ունէր աշխատողների մի խումբ։ Կարելի էր և գործը սկսել։ Եւ կարո՞ղ էր մեռած լինել այդ գործը։ Դուք տեսնում էք թէ որքան կենդանութիւն, որքան ոյժ ու կրակ կար հաւաքված այդ գործի շուրջը նախ քան նրա ծնվելը, լոյս աշխարհ գալը։*

*Եւ ահա գաղափարների, ոգևորութեան այգ կրակված օջախից 1871 թուականի սեպտեմբերին դուրս է գալիս մի անչուք յայտարութիւն, տպված հնաձև տառերով։ Դա «Մշակ» լրագրի առաջին յայտարարութիւնըն էր։*

Հարկաւոր է—ասված է այդտեղ—նախ եւ առաջ մեկնել ճշտութեամբ մենք ինչ ենք հասկանում «Մշակ» բառով։ Առհասարակ անվանում են այդ անունով արհեստաւորներին, բայց այդ անունի ճիշդ նշանակութիւնը վերաբերում է այն ամեն անձերին, որոնք աշխատում են հասարակութեան օգտի համար, եւ ոչ թէ միայն ֆիզիկապէս (մարմնապէս) բայց եւ մտաւորապէս, որովհետեւ մտաւոր գործունէութիւնը մարդիկների արդիւնաբերութեան գործի մէջ գլխաւոր դեր է խաղում։

Մարդի տիրապետութիւնը բնութեան վերայ հիմնված է գիտութեան եւ արհեստների վերայ, որովհետեւ ճանաչելով բնութիւնը, մարդս հասնում է է նորա տիրապետութեանը։ Բնական գիտութիւնների եւ նոցա տեխնիկական (արվեստական) գործադրութեան առաջադիմութեանն է պարտական մարդկային հասարակութիւնը, որ մարդիկ մեքենաների միջնորդութեամբ ենթարկել են իրանց բնութեան օրէնքներն անգամ։

Աշխատանքը մենք երեք տեսակ ենք բաժանում.

1. Գիտնական հետազօտութիւն։

2. Նորանից յայտնած ճշմարտութիւնների կեանքի մէջ գործադրութիւնը քանի մի արդիւնաբերող անձերի միջնորդութեամբ։

3. Ինքը աշխատանքի գործադրութիւնը արվեստաւորների միջնորդութեամբ։

***Բացատրելով այդ երեք ճիւղերի էութիւնը, յայտարարութիւնը շարունակում էր.***

*Ուստի ուսումնականները, արդիւնագէտները եւ արուեստաւորները,—ամենքը մ շ ա կ ն ե ր են։ Հասարակութեան առաջադիմութիւնը եւ բարեկեցութիւնը ծագում է կամ պայմանաւորվում է այդ զանազան գործիչների մէջ փոխադարձ յարաբերութեան ա ր դ ա ր ո ւ թ ե ն ի ց։ Առաջնորդել այդ հասարակական գործիչներին իրանց ձգտումների մէջ դէպի փոխադարձ հ ա ւ ա ս ա ր ա կ շ ռ ո ւ թ ի ւ ն ը եւ ա ր դ ա ր ո ւ թ ի ւ ն ը,—մտաւոր աշխատանքի գործն է, ուրեմն գ ր ա կ ա ն ո ւ թ ե ա ն եւ օ ր ա գ ր ո ւ թ ե ա ն գործն է։*

***Ապա բերվում են մի քանի խրատներ Էդմոնդ Աբուի ասածներից, որոնց Արծրունին հաւաքել և տպել էր «Հայկական Աշխարհի» մէջ 1867 թւին՝ «Աշխատենք» վերնագրի տակ։***

*Մեզանից չեն պահանջում հրաշքներ կատարել աշխատելու ժամանակ, բայց ինչ եւ իցէ լաւութիւն թողնել, ինչ եւ իցէ գործ թողնել ապագայ սերունդներին։ Եւ այն մարդիկներին, որոնք իրանցից յետոյ ինչ եւ իցէ աշխատանք կամ լաւութիւն են թողել,*

մենք անվանում ենք առաջադիմութեան մշակներ։ Այն մարդը, որը աշխատում է առաջադիմութեան համար, անշուշտ մի բան լաւացնելու նպատակ ունի կեանքումը։

Քանի լուսաւորվում է մարդկութիւնը, այնքան պէտք է շատանան աշխատողները, կամ ինչպէս մենք նոցա անուանեցինք, առաջադիմութեան մշակները։

Քանի կշատանան մարդկութեան մէջ ուսումնականները եւ աշխատող մարդիկ, այնքան յաճախ կհնարվեն նոր օգտաւէտ բաներ, եւ նոր գիւտի փառքը չի պատկանի մէկին, այլ շատերին։

Եւ աշխատող մարդիկների անունները մեծ թուով լինելով, մեզ անկարելի կլինի այդ բոլոր անունները պահել եւ իմանալ։ Ինչ վնաս? Թող յայտնի չլինին ապագայ սերունդներին մեր անունները։ Մեզ բաւական է, եթէ մեր աշխատած գործը օգուտ կբերէ հասարակութեանը։

Թող կորչի անունը,—բարի գործը չի կորչի... աշխատենք։

Հին հայկական մշակ բառը իսկապէս նշանակում է երկրագործ։ Մշակել կամ վարել երկիրը, ասվում է օրինակ։ Բայց ժամանակով սկսեցին յատկացնել այդ անունը առհասարակ ժողովրդի ստորին դասի աշխատողներին։

Փոխաբերական կերպով ասվում է մշակել լեզու, կամ մինչեւ անգամ մշակել միտք։ Մեր «Մշակը» պիտի նմանապէս մշակի...

—Ինչ?

Նախ նա պիտի մշակի միտք, թէ տեսական թէ գործնական։

Երկրորդ նա պիտի մշակի լեզու։

«Մշակը» չպէտք է բաւականանայ մեքենայական կերպով լոկ լուրերը հաղորդելով։

«Մշակը» կաշխատէ մի կողմից ընթերցողի ընթերցասիրութիւնը գրաւել թէ մեր ժողովրդական, թէ օտար կեանքից վիպասանութիւնները առաջարկելով։

«Մշակը» կաշխատէ առողջ դատողութեան վերայ հիմնած կենսական խնդիրների քննադատութիւնները առաջարկել։

«Մշակը» պէտք է տեսաքար առաջարկի եւրոպական գիտութենից մշակված ուսման ամեն ճիւղերից առած մտքերը։

«Մշակը» կառաջարկէ ընթերցողին գիտութեան ամեն ճիւղերից, թէ առողջապահութենից, թէ մանկավարժութենից, թէ բազմարվեստեան գիտութիւններից, թէ ազգային եւ թէ գիւղային տնտեսութենից, թէ վաճառականութենից, եւ այլն... այնպիսի գործնական մտքերը, որոնք կարողանային նպաստել ժողովրդական կեանքի պայմանների բարելաւացնելուն...

Մի խօսքով «Մշակի» խնդիրն է թէ զուարճութիւն պատճառել, թէ օգուտ բերել ընթերցողին...

Դուք կկարդաք թէ ոչ?.

*Նոր լրագրի ծրագիրը, ինչպէս տեսնում էք, անորոշութիւններ չէ պարունակում իր մէջ, ճառական ոճ չունի, համեստ աշխատաւորի պարտաւորութիւններն է վերցրել։ Բոլորովին բացակայում է ազգասիրական չեչոտը, առանց որի ոչ մի խմբագիր չէր կարողանում դիմել հայ հասարակութեան։ «Զուարճութիւն պատճառել և օգուտ բերել*

ընթերցողին»—այս խօսքերի մէջ էր նոր լրագիրը խտացնում իր ամբողջ ձգտումը։ Ընթերցողը այստեղից չէր կարող եզրակացնել թէ դա լինելու է մի մարտնչող լրագիր, հիմքեր տապալող մի օրգան։ Բայց այդ յայտարարութեան արժանաւորութիւնը հէնց այն է, որ մեծամեծ խոստումներ չը կան նրա մէջ։ Մենք առաջադիմութեան մշակներ ենք, ասում էր Արծրունու խումբը։ Իւրաքանչիւր մշակ պարտաւոր է որևէ օգուտ բերել հասարակութեան։ Ուրեմն աշխատենք։

«Մշակը» պիտի հրատարակվէր շաբաթը մի անգամ. բաժանորդագինն էր տարեկան 7 րուբլի։ Հաստատված ծրագիրը ունէր հետևեալ բաժինները. 1) «Տէրութեան կանոնադրութիւնները». 2) Դատաստանական ժամանակագրութիւն. 3) «Ներքին տեսութիւն—ամենանշանաւոր ժամանակակից երևոյթներ մեր հայրենիքի կեանքում». 4) «Արտասահմանեան տեսութիւն». 5) «Բանասիրական և զանազան յօդուածները (ինքնուրոյն և թարգմանական) գիտութիւնների զանազան ճիւղերից». 6) «Մատենագրութիւն. հայկական, ռուսական և քանի մի օտար լեզուներով հրատարակվող գրքերի քննադատութիւնները». 7) «Ֆէլիէտօն». 8) «Առևտրական

*ժամանակագրութիւն». 9) «Ցայտարարութիւններ»։*

*Նախ քան նոր լրագրին դիմելը պարզենք մի քանի հարցեր էլ։*

---

## II

***Հայոց մամուլը 1871-ին. «Մեղու», «Արարատ»:—«Մեղուի» օրհասը. Նոր խոստովանութիւնը, հառաչանքները:—«Մշակը» դարագլուխ մեր մամուլի պատմութեան մէջ:—Միջավայր:—Նազարեանց եւ Արծրունի. մի փոքրիկ համեմատութիւն:—Ապահովված խմբագիր:—Երեմիա Արծրունու վերաբերմունքը եր որդու գործին. «հայերէն գազէթ».—Լրագրի նիւթական ապահովութեան հարցը:—Աշխատանքի բաժանում. թղթակցութիւններ:—Խմբագրի*** veto-***ն:***



*Գրիգոր Արծրունին իր գործունէութեան ընթացքում շատ անգամ է կրկնել որ* 1872 *թուականից ռուսահայ մամուլի համար բացվեց մի նոր շրջան և «Մշակը» այդ շրջանի դարագլուխն է կազմում։ Այս խօսքերը զայրացնում էին նրա հակառակորդներին, որոնք ուրիշ բան չունէին պատասխանելու, բայց միայն թէ Արծրունին փառասէր է, ինքնագովութեան համար է իրան յատկացնում այդպիսի մի մեծ դեր։ Տեսնենք ինչ են ասում փաստերը։*

*Ինչպէս գիտենք,* 1871 *թուականի մայիս*

ամսին դադարեց «Հայկական Աշխարհ» ամսագիրը։ Մեր խղճուկ մամուլի համար դա միակ փոքր ի շատէ կենդանի քննադատող պարբերական օրգանի մաս էր, մի մաս, սակայն, որ սովորական էր մեզանում։ Ստեփանէն չը տեսաւ ընթերցողների մի մեծ թիւ. վերջին տարում, 1871-ին, նրա ամսագիրը ներկայացնում է կատարեալ ուժասպառութեան պատկերը. նիհար ամսատետրակների աղքատութիւնը զարմանալի է, խմբագիրը ուշադրութիւն էլ չէ դարձնում իր գործի վրա. նրան ուրիշ միտք է կլանել, և վերջ տալով «Հայկական Աշխարհին», նա գնում է Էջմիածին՝ վարդապետ ձեռնադրվելու։

Թիֆլիսում մնաց միայն «Մեղուն»։ Իսկապէս դա էր ռուսահայ մամուլի միակ ներկայացուցիչը, որովհետև թէև Էջմիածնում 1868-ից հրատարակվում էր «Արարատ» պաշտօնական ամսագիրը, բայց նա գրական և հրապարակախօսական արժանաւորութիւններից զուրկ մի հրատարակութիւն էր և առանձին, նոյն իսկ աչքի ընկնող դեր կատարել մեր մամուլի մէջ չէր կարող։ Տարօրինակ հանգամանք. «Արարատը» իր հիմնարկութեան սկզբից հանդիսացաւ մեզանում իբրև ամենից շատ տարածված և ամենից լաւ

ապահովված պարբերական. Նրան ստանալը պարտադիր էր բոլոր հայ հոգևորականների համար և 70-ական թուականների սկզբում նա ունէր 2000 բաժանորդ, մի թիւ, որ մեր բոլոր խմբագիրներին կարող էր միայն հառաչանք պատճառել... Բայց բաժանորդների, թէև ակամայ բաժանորդների այդ ահագին թիւը դեռ ապացոյց չէր թէ ամսագիրը կարդացվում է, թէ Էջմիածինը իր աբեղաներով կարող է մի երևոյթ դառնալ մեր պարբերական մամուլի մէջ։ «Արարատը» բաւական յայտնի է ամեն մէկին և հարկ չը կայ ապացուցանելու թէ նրա վերաբերմամբ չէր էլ կարելի կրկնել յայտնի ասացուածքը թէ «մի ծաղկով գարուն չի լինի»։ Էջմիածինը իր կրօնական-բարոյական, հնախօսական և ներբողական ժողովածուով չը պիտի ղեկավարէր ընթերցող հասարակութեան միտքը։ Դա անհնարին բան էր։ Ուրեմն ոչ մի կերպով մեղանչած չենք լինի մեր մամուլի պատմութեան դէմ, եթէ «Արարատի» գոյութիւնը միանգամայն աննկատելի թողնենք։

Մնում էր, այո, «Մեղուն» միայն։ Բայց ինչ էր այս չաբաթաթերթի դրութիւնը։ 1863 թուականից, այսինքն այն ժամանակից, երբ նա Մանդինեան քահանայից անցաւ Պետրոս Սիմէօնեանցին, չարունակվեց միևնոյն անմխի-

*թար, օրհասական դրութիւնը։ Տարիների ընթացքում «Մեղուն» չունեցաւ մի փայլուն շրջան, չը կարողացաւ տիրել մարդկանց մտքին, 100—150 բաժանորդից աւել չը կարողացաւ գրաւել, կիսակենդան գոյութիւն էր քարշ տալիս։ Մենք տեսանք «Մեղուի» խմբագրական հաշիւները առաջին տարիներում։ Ահա եկել է, անցնում է 1869 թւականը և դարձել նոյն յուսահատական դրութիւնն է, որ տեսնում ենք այդ տարվայ հաշւի մէջ։ Մենք կարդում ենք հետեւեալը.*

Մեղուի հաշիւ... ինչ հաշիւ, ում եւ ինչու համար, միթէ ծիծաղելու համար գրենք մեր հաշիւը։ Հաշիւը այնտեղ կլինի, որտեղ գումար է շարժում եւ ծախք է լինում, բայց ուր մարդիկ ստիպված են առանց դրամի գործ կատարելու, էլ ինչ հաշիւ կմնայ անելու. կարծեօք ոչինչ։ Իրաւ է միայն ծախքը կարելի է ցոյց տալ, բայց ոչ արդիւնքը, որ իսկապէս բնաւ չէ եղել. Մեղուի ծախքը յայտնի է, որ իւրաքանչիւր տարի մօտ 1200—1300 րուբլի է եւ կարծում ենք, որ սրանով Մեղուի այս տարուան հաշիւը վերջարինք, իսկ արդիւնքը շատ հեշտ է որոշել, հարկաւոր է միայն վերոյիշեալ ծախուց գումարի առաջ դնել մի—*) եւ կանէ—1200։ Ահա այս է մեր մի ազգային լրագրի վիճակը այսօր. անշուշտ նոյնն է եւ այլ հայ լրագրների եւ օրագիրների վիճակը ըստ մեծի մասին։ Ի՞նչ արած.

---

*) Մինուս։

—կլինի մեր պատասխանը, այդ մեր ճակատագիրն է։ Աստուծոյ կամքն է մեզ համար այսպէս»։

*Եւ հնազանդվելով այդ ճակատագրին, այդ աստուածային կամքին, Գ. Սիմէօնեանցը վաղուց մտքում դրել էր բոլորովին փակել «Մեղուն»։ Ոչինչ չէ լինում, ազգասիրութիւնը պիտի պահպանէր հայոց միակ լրագիրը, ինչ էլ լինէր վերջինս, բայց ազգասիրութիւն չը կայ հայերի մէջ։ Եւ ահա ինչ էր յայտարարում խմբագիրը 1869 թւականի վերջում «Մեղուի» մի քանի համարների մէջ.*

Ահա մերձենում է տարուայ վերջը եւ Մեղուի համար կսկսուի նոր տարեդարձ, որ մեր խմբագրութեամբ ութերորդն է կատարում։ Ինչպէս շարունակ մի քանի տարի, այնպէս եւ այս տարի մտադիր էինք դադարեցնել նորա հրատարակութիւնը, միայն քանի մի բարեկամաց եւ հասկացող բարեմիտների ցանկութեանը հետեւելով յանձնառու եղանք շարունակելու նորա հրատարակութիւնը առաջիկայ 1870 թւականին եւս։

*Մի քանի բարեկամներ, մի քանի բարեմիտներ ազգասիրական զոհ էին պահանջում խմբագրից. և խեղճ խմբագիրը առաջ է տանում իր հոգեվարք լրագիրը։ Ի՞նչպէս։ Երևի իր անձնական միջոցները ծախսելով։ Բայց ինչ դուրս կը գար այդպիսի գործավարութիւնից.*

1870 թուականի առաջին համարը հրատարակուեց միայն մարտի 7-ին և այդ տարին «Մեղուն» ունէր 150 բաժանորդ։ 1863 թուականից ոչ մի քայլ դէպի առաջ, ընդհակառակն աւելի ևս անկում։ Եկաւ 1871 թուականը, բայց նա էլ ցոյց տուեց խեղճ խմբագրին, որ իզուր են ազգասիրական գանգատները, անձնազոհութիւնը։ Հասարակութիւնը սառոյց էր կտրել «Մեղուի» վերաբերմամբ. օրհասը աւելի քան ակներև էր։ «Մեղուի» 1871 թուականի № 48-ը դուրս եկաւ 1872-ի յունվարի սկզբում, № 49-ը յունվարի 15-ին, իսկ № 50-ը—յունվարի վերջին։ Այդ ժամանակ արդէն կանոնաւոր կերպով հրատարակվում էր «Մշակը»։ Եւ իր թերթի № 49-ի մէջ Սիմէօնեանցը յայտարարում էր.

Ցայտնի է մեր բոլոր ընթերցողներին, որ վերջին տարիները միշտ տարուան վերջին վճռած ենք եղել դադարեցնել Մեղուի հրատարակութիւնը։ Եւ սորա պատճառը եղած է աշխատանաց ծանրութիւնը... Նոյնը պատահելու էր եւ այս տարի, մանաւանդ որ Մշակի երեւելովը Հայկական գրականութեան հօրիզօնը Թափուր մնալու չէր գոնէ մի հայ հրատարակութիւնից։

Խեղճ խմբագիր. Նրա ջանքն էր գոնէ մի հատ հայերէն հրատարակութիւն պահպանել սեր գրական հօրիզօնում, պահպանել Թէկուզ

ուժասպառ մի դիակ, պահպանել մի կերպ, չունենալով ոչինչ միջոց։ «Մշակի» երևալը արդէն մի նշան էր որ նա կարող է ազատուել իր ազգասիրական ծանր պարտականութիւնից։ Բայց նրան էլի թոյլ չը տուեցին հեռանալ։ «Մեր վճիռը էլի ստիպվեցանք փոխելու», ասում է նա։ Ստիպողը դարձեալ հասարակութիւնը չէր, այլ մի քանի անհատներ (Մարտիրոս Սիմէօնեան, Զաքար Գրիգորեան, Արշակ Նահապետեան, Գէորգ Տէր-Աղէքսանդրեան)։ Այս անգամ ստիպողները համեմատաբար աւելի մեծ թիւ էին կազմում. կային և այնպիսիները, որոնց անունները չէին յիշատակված։ Եւ այս անգամ «Մեղուն» պիտի ապրէր, որովհետև այդպէս էր պահանջում «Մշակը»։ Գրիգոր Արծրունու լրագիրը միշտ անխուսափելի անհրաժեշտութիւն է դարձրել հակառակ լրագրի գոյութիւնը։ Եւ «Մեղուն» առաջինն էր, որ սկսեց ապրել այդ պահանջի պատճառով։ 1872 թուականը նա սկսեց մարտ ամսից։ Դա մի նոր շրջան էր «Մեղուի» համար, մի շրջան, որի ընթացքում նա պիտի կամայ ակամայ առաջ գնար, նմանվէր «Մշակին», մրցէր նրա հետ։ Այդ շրջանը մենք դեռ կը տեսնենք։

Իրողութիւնն այն է, որ 1872-ի սկզբում,

այն ժամանակ, երբ սկսվեց «Մշակի» հրատարակությունը, պարբերական մամուլ մեզանում համարեա չը կար. չէ կարելի մամուլի կենդանի օրգան համարել օր օրի վրա վերջին շունչին մոտեցող «Մեղուն», իսկ «Արարատի» գոյությունը չէր փոփոխում իրողությունը։—Րաֆֆին իր «Հայ երիտասարդութեան մէջ» ասում է. «Հին «Մեղուն» այն ժամանակ նմանվում էր մի մաշված և ջարդված սայլակի, որին ճռնչելով քարշ է տալիս մի ուժաթափ ձի։ Սայլավարը բոլորովին յուսահատված, մոլորված, և կէս ճանապարհի վրա կանգնած, մտածում էր. «հիմա դէպի որ կողմը քշեմ»։ Եւ չը գտնելով ոչինչ պատասխան, մենակ, անօգնական, գլուխ կորցրած սայլավարը փրկութիւն որոնում էր սայլակը մի կողմ գցելու, յաւիտեան նրանից բաժանվելու, յաւիտեան լռելու մէջ։ Նա արդէն այդպէս էլ արել էր, նա այլ ևս գոյութիւն չունէր. բայց երևաց «Մշակը», կենդանութիւն բերեց ոչ միայն իր համար, այլ և այդ ջարդված սայլակի համար...

Ահա թէ ինչու 1872 թւականը, ճիշտ որ մի շատ նշանաւոր տարի էր մեր մամուլի համար։ Ճիշտ որ այդ ժամանակից սկսվում է մեզանում մի նոր շրջան, նոր դարագլուխ։ Եւ այս պատմական փաստը անուրանալի

դարձնողը միայն այն հանգամանքը չէ, որ «Մշակի» սկզբնաւորութեան ժամանակ գոյութիւն չունէր հայոց մամուլ։ Ո՛չ. երևոյթը դրանից աւելի խոշոր էր, աւելի նշանաւոր յատկութիւններ ունէր։

Դա այն էր, որ 1872 թուականից իսկական հրապարակախօսութիւնը իր անխնայ քննադատող, մերկացնող, մտրակող խօսքով հաստատվում էր հայկական իրականութեան սրտում։ «Հիւսիսափայլի» պատմութիւնը մի կենդանի վկայ է թէ որքան դժուար էր այդ գործը։ «Հիւսիսափայլը», մեր հրապարակախօսութեան անդրանիկ, փայլուն օրինակը, ցոյց տուեց որ մերկացնող ուղղութիւնը մի ճշմարիտ բարիք է հայ ազգի համար. Նա արթնացնում, յուզում էր մտքերը, գիտակցութեան, ինքնաճանաչութեան սերմեր էր սփռում, հերոսացնում էր գրողին, բայց միևնոյն ժամանակ յարուցանում էր սաստիկ ընդդիմադրութիւն, անհեղ պատերազմ։ Այդ գաղափարական մարտը մղվում էր հայութիւնից հեռու մի տեղից. բայց մեր իրականութիւնը այդքան հեռաւորութեան վրա էլ կարողացաւ իր սպանիչ ազդեցութիւնը գործադրել, կարողացաւ գլորել «Հիւսիսափայլը» անժամանակ գերեզմանի մէջ։ «Հիւսիսափայլից» յետոյ «Հայկական Աշխարհը» ծնվեց

Թիֆլիսում և իր ծրագրի հիմք ընդունեց Նազարեանցի զաւանութիւնները։ Բայց մենք տեսանք թէ որքան թոյլ էր արտայայտվում նրա մէջ գաղափարական լայն պատերազմը, որքան քիչ բան էր կարողանում կատարել նրա խմբագիրը։

Թէ որքան աննպաստ ու ճնշող էր մեր իրականութիւնը եւրոպական ազատ մտքի համար, այդ ցոյց է տալիս Նազարեանցի կարճատև պաշտօնավարութիւնը Թիֆլիսի Ներսիսեան դպրոցում։ Թիֆլիսի մթնոլորտը յուսահատեցրեց նրան մի շատ կարճ միջոցում. Նա շատ շուտ զգաց որ ասիականութեան մէջ ոչինչ գործ կատարել չէ կարելի. ամբողջ երկու տարի նա ողբում և հառաչում էր, զգալով իր կատարեալ անկարողութիւնը մրցելու շրջապատող անշարժութեան, խաւարի դէմ։ Ինքը քաղաքը իր եսամոլ, անասնական հակումներին նուիրված, ստորացող հասարակութեամբ յուսահատութիւն էր պատճառում նրան և հարկադրում էր որքան կարելի է շուտ հեռանալ այդտեղից, փախչել, ազատվել՝ հոգու հանգստութիւն գտնելու համար...

Այսպէս էր այն միջավայրը, ուր գործունէութիւն սկսեց նոյնպէս եւրոպական մտքերով տոգորված, նոյնպէս գերմանական լուրջ

ուսում առած, նոյնպէս առաջադէմ, քննադատող ոգուն երկրպագող մի այլ հայ—Գրիգոր Արծրունին։ Եթէ Նազարեանցը հայկական ճահճային անշարժութիւնը վրդովում էր հեռաւոր Մոսկվայից, Արծրունուն վիճակված էր գործել հէնց այդ ճահիճների մէջ, ձակատ առ ճակատ ընդհարվել այն խաւար, յետադէմ ոյժերի հետ, որոնց հալածանքը, կատաղութիւնը այնքան զգալի կերպով թուլանում էին Նազարեանցին հեռուից։ Պատերազմը այստեղ, հայկական իրականութեան սրտում, ի հարկէ, աւելի կատաղի, աւելի անողորմ պիտի լինէր, մանաւանդ որ Գրիգոր Արծրունին Նազարեանց չէր։ «Հիւսիսափայլի» խմբագիրը մի մեղմ ու հեզ, կրօնասէր, խաղաղութիւն ու ընդհանուր համաձայնութիւն երազող քարոզիչ էր. մինչդեռ Արծրունին մի կրակոտ բնաւորութիւն էր, մի ըմբոստ ոյժ, ազնիւ կրքերով լի մի մարդ, որ կռուի մէջ ցոյց էր տալիս անհուն եռանդ, չէր վախենում ոյժերի անհաւասարութիւնից, մենակ էր դուրս գալիս ամբողջ հասարակութեան դէմ։ Նազարեանցը բացարձակ, հրապարակական կռուի մէջ էր գըլխաւորապէս «Հիւսիսափայլի» հրատարակութեան ընթացքում, այսինքն իսկապէս վեց տարի, մինչդեռ Արծրունին ամբողջ քսան

տարի էր կռւում և միայն մահը խլեց նրա ձեռքից գրիչը և պատերազմի դաշտը։ Նազարեանցը իր ամենախիստ յարձակումները դնում էր նամակների մէջ. Արծրունին նամակներ չունի. ինչ գրել է, ինչ մտածել է, այդ բոլորը տպել է իր լրագրում...

Արծրունին մինչև կեանքի վերջը մեծարում էր Նազարեանցին. նրա անբիծ յիշատակի, նրա գեղեցիկ անուան հզօր պաշտպանն էր։ Նա իրան և առհասարակ առաջադիմական ամեն մի գործչին համարում էր Նազարեանցի աշակերտ։ Եւ դա ճիշտ է։ Նազարեանցի շարունակութիւնը, անմիջական յաջորդը Արծրունին է. Նազարեանցի հիմնական գաղափարները, պաշտպանած դատը ամբողջապէս մտաւ Արծրունու ծրագրի մէջ։ Բայց և այնպէս, Նազարեանցը և Արծրունին հաւասար ոյժեր չեն, միանման մեծութիւններ չեն։

Դրանք սերունդներ են—հայր և որդի։ Հայրը ուրիշ տեսակ ժամանակների արդիւնք էր, որդին—բոլորովին ուրիշ։ Հայրը ճառական ուղղութեան ներկայացուցիչն էր, ազգասիրութեան անունով էր պահանջում գրական և կրթական վերածնութիւն. որդին աւելի մեծ պաշարի, աւելի խոշոր տաղանդի տէր էր, ճառերի ու քարոզների տեղ Նա

գործ էր պահանջում, մայրենի լեզուն ու գրականութիւնը ազգասիրութիւն չէր համարում, այլ անհրաժեշտ պահանջ, րէալական գործ։ Հայրը իդէալիստ էր և մի սահմանափակ շրջանում մի քանի հարցերի շուրջն էր պտտում. որդին րէալիստ էր, գործում էր ոչ թէ հեռուից, այլ կեանքի մէջ, անհամեմատ շատ հարցեր էր մշակում, անհամեմատ մեծ շարժումներ էր առաջացնում։ Րաֆֆին իր վերոյիշեալ աշխատութեան մէջ այսպէս է բնորոշում այդ երկու սերունդները.

Եթէ ընդունենք այն ընդհանուր պայմանը, թէ իւրաքանչիւր 25 տարուց յետոյ ամեն մի երկրի երիտասարդութիւնը փոխվում է, այն ժամանակ 58 եւ 72 թւականները խորհրդաւոր նշանակութիւն կը ստանան մեզ համար։ Երկու որոշ ժամանակամիջոցներ ներկայացնում են երկու որոշ երիտասարդութիւն, մէկը իդէալական, միւսը րէալական։ Առաջինը ծնունդ է «Հիւսիսափայլի», իսկ երկրորդը ծընունդ է «Մշակի»։ Ես յիշում եմ երկու պերիօդներն եւս, որովհետեւ երկուսի մէջ էլ գործել եմ։ «Հիւսիսափայլի» ժամանակ յայտնվեցան քանաստեղծներ, իսկ «Մշակի» ժամանակ պուբլիցիստներ։ Բացառութիւնները շատ աննշան են։

Քսան և հինգ տարին իբրև մի անփոփոխ շրջան, որ անսխալ կրկնվում է, բերելով երիտասարդութեան փոփոխութիւն, մենք ընդունել չենք կարող. մարդկային կեանքի

դարգացման մէջ չէ կարելի որոշ շրջաններ, թւանշանների մի անփոփոխ պատկեր կրող ժամանակամիջոցներ սահմանել: 58-ից մինչև 72 թւականները միայն 15 տարի էր անցել: Այն էլ կայ, որ Արծրունին 65—67 թւականներում արդէն միանգամայն կազմակերպված էր իբրև որոշ աշխարհայեցողութիւնների տէր գրող: Ո՛չ, քառորդ դար չէր բաժանում այդ երկու սերունդները, և մենք չը գիտենք թէ ինչպէս է հաշւել մեր տաղանդաւոր վիպագրողը, որ ստացվել է 25 տարվայ շրջան: Կարևորը, սակայն, այդ չէ. Րաֆֆին ինչպէս 58-ի և 72-ի ականատես և գործիչ, ճիշտ է անուանում երկու սերունդները. «Հիւսիսափայլը» բանաստեղծների ծնող, «Մշակը»—հրապարակախօսների ծնող: Բայց չը պէտք է կարծենք թէ մեր գրականութեան մէջ այդ երկու անունները շատ են տարբերվում իրարից: Ամենևին այդպէս չէ. Թէ «Հիւսիսափայլի» բանաստեղծին և թէ «Մշակի» պուբլիցիստին ոգևորում էր միևնոյնը—առաջադիմութիւն, վերածնութիւն: «Հիւսիսափայլի» բանաստեղծը հօ իր ճիւղը միայն ճանաչող թռչուն չէր, մի երգիչ, որի համար միևնոյն էր թէ ինչ կայ չորս կողմում, ինչ է կատարվում և ինչ պիտի կատարվի. դա այն երգիչը չէ, որ սիրոյ և

վայելչութեան ձայն է հնչեցնում ամառ և ձմեռ։ Ահա այդ բանաստեղծների մէջ ամենից շատ աչքի ընկնողը, ամենից նշանաւորը Ս. Շահազիզն է, և նա ասում է. «Նախ քաղաքացի և ապա պօէտ»։

Զանազանութիւնը երկու սերունդների մէջ, ուրեմն, ձևն է և ոչ գաղափարը. «Հիւսիսափայլի» բանաստեղծը բայրօնական մելամաղձոտութեամբ տոգորված ոտանաւորով էր յայտնում որ հայ հոգևորականը անկիրթ է, պարտաճանաչ չէ, ժողովրդի իսկական հովիւ չէ. իսկ «Մշակի» իսկական ռէալիստը այդ միևնոյն միտքը արծարծում էր ոչ իբրև բանաստեղծութիւն, այլ իբրև կեանքի երեւոյթ, որը պէտք էր լուսաբանել հրապարակախօսական յօդուածի մէջ՝ զննողի, վերլուծողի սառնասրտութեամբ։ Այնտեղ էլ, այստեղ էլ նոյն հրապարակախօսութիւնն է, կամ աւելի լաւ ասած՝ նոյն տենչանքը լուսաւորելու հայրենի խաւար իրականութիւնը, բուժելու մեր չափազանց հնացած և չափազանց վտանգաւոր դարձած վէրքերը։

Սարեր ու ձորեր, այո, չը կային մեր առաջադիմական բանակի սերունդների մէջ, չը կար սառնութիւն, ոչ էլ արհամարհական վերաբերմունք նոր սերունդի և անցածի մէջ, ինչպէս այդ նկատվում էր, օրինակ, ռուսաց

կեանքի մէջ։ Եւ պատճառը շատ հասկանալի է։ Մեր կեանքը շարժւում է կրիայի քայլերով. մենք այնքան դանդաղկոտ ենք, այնքան ծոյլ ենք ինքնաքննութեան մէջ, այնքան դժուար ենք իւրացնում վերանորոգութեան անհրաժեշտութիւնը, որ մեզանում նոյն իսկ ամենատարրական, ամենապարզ պահանջները անկատար են մնում տասնեակ տարիների ընթացքում։ Սերունդը յաջորդում է սերունդին և ինչ է տեսնում։—Պատերազմ գաղափարների համար, բայց ոչ մի առաջադիմութիւն, ոչ մի կատարւած անհրաժեշտ պահանջ։ Հասկանալի է, որ նորը պիտի շարունակէ անցեալի գործը, պիտի նորից մտցնէ իր ծրագրի մէջ այն, ինչ քարոզում էր նախորդ սերունդը։ Բայց այս հանգամանքը, կրկնում ենք, ապացոյց չէ թէ հայրերն ու որդիները բոլորովին միևնոյն են։ Աշխարհայեացողութիւնների մէջ նրանք հարազատներ են, իրար շատ են մօտենում, շատ յաճախ են իրար հետ ձուլւում. բայց էվօլիւցիայի օրէնքը միշտ կայ և որդիներին մենք տեսնում ենք շատ հեռու գնացած։ Գրիգոր Արծրունու գործունէութիւնը այնքան լայն է, այնքան ընդարձակ, որ նախորդ սերունդի գործունէութիւնը միայն սաղմնային դրութիւն, միայն սկիզբ, կամ

ինչպէս ասում է Նազարեանցը՝ առաջարան կարող ենք ընդունել։

Անկասկած, Արծրունու կատարած գործի մէջ առաջին, գլխաւոր գերակատարը նրա խոշոր տաղանդն է, նրա պողպատէ բնաւորութիւնը, անխորտակելի եռանդը։ Բայց այստեղ պէտք է յիշատակենք և այն բախտաւոր հանգամանքները, որոնք թէև առաջնակարգ նշանակութիւն չունեն, բայց գոնէ մի յայտնի չափով շատ նպաստաւոր ներգործութիւն ունէին։

Իբրև խմբագիր, Գրիգոր Արծրունին խիստ զանազանվում է իր նախորդներից նախ և առաջ նրանով, որ նիւթապէս անկախ դիրք ունէր, ստիպված չէր ապրուստի միջոցների մասին մտածել։ Չենք ասում թէ նա այդպէս էր իր կեանքի ամբողջ ընթացքում. ոչ, ում չէ յայտնի որ նա իր կեանքի վերջին տարիներում ապրում էր իր գրչով։ Վերջին տարիներում, այո. իսկ սկզբի տարիներում, այն երկար շրջանում, երբ նա հզօրապէս կռւում էր, քայլ առ քայլ նուաճումներ էր անում,—այդ ժամանակամիջոցում, գոնէ մինչև 80-ական թուականների սկիզբը, նա բոլորովին ապահովված և անկախ գործիչ էր։ Գրիգոր Արծրունին առաջին հայ խմբագիրն էր մեզանում, որ հնարաւորութիւն ունէր

սկզբից և եթ ամբողջովին նուիրվելու իր գործին։ Այդ չը տեսնված դիրքը նրա համար ստեղծել էր այն հանգամանքը, որ նա հարուստ մարդու որդի էր, կարող էր գոնէ անձնական ապրուստի մասին չը մտածել, կողմնակի պարապմունքների ետևից չընկնել։ Սա շատ մեծ նշանակութիւն ունէր. սրա շնորհիւ էր որ Գրիգոր Արծրունին միայն գրող էր, միայն գրականութեան մէջ էր գտնում գործելու ասպարէզ։

Ուշադրութիւն դարձրէք և մի հետաքըր-քրական հանգամանքի վրա։ Նայենք մեր պարբերական հրատարակութիւնների ցուցակին. կը տեսնենք որ սկզբից, «Կովկասից» և «Արարատից» մեր խմբագիրները, աշխարհական թէ հոգևորական, ուսուցիչներ էին։ Գրական գործունէութիւնը երկրորդական բան էր նրանց համար. գլխաւոր պարապմունքը, ուսուցչութիւնը, ազդում էր նրանց մտածողութեան վրա և նրանք իրանց հրատարակութիւնների մէջ միակողմանիութիւն էին մտցնում, գլխաւոր ուշադրութիւնը նուիրելով դպրոցական հարցերին։

Այսպէս, մենք տեսնում ենք որ «Հիւսիսափայլի» հրապարակախօսութեան միջուկը, էութիւնը դպրոցն է և մնացած հարցերը պտտում են նրա շուրջը։ Նազարեանցը այն

աստիճան ուսուցիչ էր իր հայեացքների մէջ, որ հաստատ այն մտքին թէ լրագրութիւն, գրականութիւն չէ կարող լինել հայերի մէջ, պէտք է նախ և առաջ դպրոցներ բաց անել, գրագիտութիւն տարածել, ընթերցողներ պատրաստել։ Որ դպրոցը ընթերցողներ է պատրաստում, այդ, ի հարկէ, անուրանալի է. բայց որ գրականութիւնն էլ պիտի զուգընթացաբար գնայ դպրոցի հետ, որ նա էլ, նոյն իսկ դպրոցից անկախ, ընթերցող հասարակութիւն է պատրաստում, այս կարծեմ մոռացվում էր և ապացուցվեց Գրիգոր Արծրունու ձեռքով։ Մանկավարժ-խմբագրի միակողմանիութեան ամենալաւ օրինակը Ստեփանէն էր։ Դպրոցներից դուրս նրա համար գրեթէ այլ ևս հարց չը կար։ Գրիգոր Արծրունին մանկավարժ չէր *), ուստի իր նախորդների միակողմանիութիւնից ազատ մնաց և դաստիարակութեան հարցի չափ նրա համար կարևոր էին և կեանքի բազմակողմանի պահանջներն ու հարցերը։

Արծրունին, ասացինք, ապահովված մարդ էր, ուրեմն և միանգամայն անկախ խմբա-

*) Միքանի ամիս Գալֆայեան և Թաքիամեան դըպրոցների տեսուչ լինելը, ի հարկէ, առանձին նշանակութիւն չունի։

գիր։ Հարց է առաջ գալիս թէ այդ ապահով
դրութիւնը որքան էր նպաստում «Մշակի»
գործին։ Զը մոռանանք որ Արծրունին, խօ-
սելով մեր մամուլի ընկած դրութեան մա-
սին, չարիքներից գլխաւորը այն էր համա-
րում, որ գրողները վարձատրութիւն չեն
ստանում։ Եւ շատ լաւ իմանալով, որ հայե-
րի մէջ լրագիրը կամ ամսագիրը չէ կարող
օրինաւոր գոյութիւն պահպանել ընթերցող-
ների տուած վճարով, առաջարկում էր ընկե-
րութիւն կազմել, դրամագլուխ հաւաքել՝
գրքեր և լրագիր հրատարակելու համար։
Այժմ սկսելով լրագրի գործը մենակ, կարող
էր նա յոյս ունենալ թէ կը վարձատրէ աշ-
խատակիցներին և եթէ ունէր, որն էր այդ
յոյսը—իր անձնական հարստութիւնը թէ
բաժանորդագրութիւնը։ Անձնական հարըս-
տութեան հանգամանքը իմանալու համար
մենք դեռ պիտի դիմենք գեներալ Արծրու-
նուն, որին թողեցինք Թիֆլիսի իր փառա-
հեղ առանձնութեան մէջ։

Գեներալը, ի հարկէ, հետեւում էր իր որ-
դիների կրթութեան, հետաքրքրվում էր նը-
րանց ցոյց տուած առաջադիմութեամբ։ Մենք
գիտենք որ իր հայրական պարտաւորու-
թիւնները նա կատարում էր ամենայն բա-
րեխղճութեամբ։ Անկասկած, նա գիտէր որ

Գրիգորն ու Անդրէասը գրում են հայոց մամուլի մէջ, կարդում էր նրանց գրուածքները։ Բայց ինչ էր մտածում այդ մասին — Դժբախտաբար, այս չը գիտենք մենք. իր որդիներին գրած նամակներից մի հատն էլ չէ մնացել։

Բայց ահա Գրիգորը վերադառնում է հայրենիք։ Եօթը տարի սովորել է նա Ռուսաստանում և արտասահմանում, աշխատել է տեսնել և առաջինն է հայերի մէջ, որ ստացել է փիլիսոփայութեան դօկտորի գիտնական աստիճանը գերմանական համալսարանից։ Այդ բոլորը շատ լաւ։ Բայց գեներալ Երեմիայի համար փիլիսոփայութեան դօկտորը նոյն «Գրիշան» է, որ գտնվում էր հօր խնամատարութեան տակ, քանի չէր հեռացել Թիֆլիսից։ Նա սովոր չէր իր որդիներից որևէ մէկի վերաբերմամբ ընդունել թէ նա այնքան արդէն զարգացել է, չափահաս մարդ է դարձել, որ կարող է ապրել իբրև անկախ մարդ։ Ինչ էլ եղած լինի, Գրիգորը պէտք է շարունակէր մնալ իր հօր մօտ նախկին փոքրիկ «Գրիշան» և հայրը պիտի շարունակէր աւելի խելօք, աւելի լաւ հասկացող, ուղղութիւն ցոյց տուող, ղեկավարող լինել։ Երեմիա Արծրունին, ինչպէս հայր, ուրիշ կերպ լինել չէր կարող։ Եւ նրա մեծ որդին,

Գէորգը, մինչև կեանքի վերջը անպայման հպատակված էր հօր կամքին ու կարգադրութեանը։

Սակայն Գրիգորը այդպէս չը դուրս եկաւ։ Նա ժառանգել էր տոհմային յատկութիւններից շատերը—շիտակութիւն, յամառութիւն, անկախութեան զգացմունք։ Եւ հօր ու որդու մէջ առաջանում են ընդհարումներ։ Երեմիան ուզում է հպատակեցնել, խրնամակալ լինել, Գրիգորը բացարձակապէս մերժում է հպատակութիւնն էլ, խնամակալութիւնն էլ։ Եւ ինչ է տեսնում այն հայրը, որ իր ընտանիքի մէջ անսահման հրամանատարի դեր էր կատարում։ Նրա որդին շնորհիւ իր դիրքի, իր կապերի, իր ստացած կրթութեան, կարող էր փայլուն ասպարէզ ընտրել իր համար, գրաւել հասարակութեան մէջ բարձր դիրք։ Բայց նա այդ մասին չէ էլ մտածում, նրա միտքն է լրագիր հրատարակել։

Դա մի այնպիսի անակնկալութիւն էր, որին այդ Երեմիան—հաստատ կարելի է ասել—ամենևին չէր էլ սպասում։ Ի՞նչպէս, գեներալ Արծրունու որդին գազէթ հրատարակէ, այն էլ հայերէն գազէթ։ Պէտք է կարդալ Երեմիայի նամակները, գրած Գէորգին, պէտք է տեսնել թէ ինչպիսի ոգևորու-

թեամբ ու անկնածութեամբ է նա խօսում պետական ծառայութեան, աստիճանների մասին, որպէս զի հասկանալի լինի թէ որքան ապշած պիտի լինէր այդ բարձրաստիճան զինուորականը իր որդու հաստատ վճռից։ Մեղադրել գեներալ Երեմիային չենք կարող։ Ի՞նչպէս մեղադրենք, երբ նոյն այդ հայեացքը յատուկ էր Թիֆլիսի ամբողջ բարձր դասակարգին։ Հայ լրագիր... Դա մեծամասնութեան անյայտ մի բան էր. դա այնպիսի մի խղճուկ հասկացողութիւն էր, որ նրա վրա սիրահարված մարդուն Թիֆլիսի բուրժուա դասակարգը միայն խղճալ կարող էր։ Հայերէն լրագրի պահանջ չըկար. —յիշենք «Մեղուն» իր 150 բաժանորդներով։ Եւ Գրիգոր Արծրունին Թիֆլիսի իր առաջին տպաւորութիւնների մէջ («Հայկական Աշխարհում» տպված) պատմում է որ կրթված մարդիկ իրան ասում էին. հայերէն լըրագիր հրատարակելը միտք չունի. կրթված դասակարգը օտար լեզուներով է կարդում, իսկ ժողովուրդը հայերէն կարդալ չը գիտէ։ Պատմում են, ասում է Գրիգոր Արծրունու մասին գրողներից մէկը *),—որ բարձր չըր-

*) Խ. Մալումեան, «Մաքի Մշակը», Թիֆլիս, 1900, եր. 49։

ջանի մի ռուս կին, լսելով որ Արծրունին լրագիր է ուզում հրատարակել, ասել է. «Բայց ասում էին, որ գեներալ Արծրունու որդին խելօք երիտասարդ է, մինչդեռ նա ուզում է լրագիր հրատարակել»...

Եւ գեներալը փորձեց դիմադրել իր որդուն. նա պահանջեց որ Գրիգորը թողնէ իր մտադրութիւնը։ Բայց որդին չը զիջեց։ Եւ երկուսի յարաբերութիւնները լարվեցին, ընդունեցին պաշտօնական կերպարանք *)։ Բանը այն տեղը հասաւ որ Երեմիան Նշա-

---

*) Պատմում են հօր և որդու յարաբերութիւնների մասին շատ բան։ Երեմիան յաճախ վէճի էր բռնվում Գրիգորի հետ զանազան հասարակական և քաղաքական հարցերի առիթով. երբէք չը համաձայնվելով որդու հետ, նա, այնուամենայնիւ, «Մշակի» ընթերցողն էր և բաժանորդ էր գրվում ամեն տարի։ Ասում են որ մի տարի նա ուշացրեց իր բաժանորդագինը հասցնելը, և «Մշակ» չէր ուղարկվում նրան, մինչև որ փողը լիովին չը ստացվեց խմբագրութեան մէջ։ Եւ պէտք է ասել որ հայր ու որդի խռով չէին միմեանցից, ընդհակառակն, միասին էին ճաշում։ Գրիգորը դումայի ձայնաւոր էր. քաղաքագլուխ ընտրելու համար երկու կանդիդատներ կային—գեներալ Արծրունի և Ղիփիանի։ Գրիգորը, չը համակրելով իր հօր ուղղութեան, դիմադիր կուսակցութիւն կազմեց, ձայնաւորների նախապատրաստական ժողովներ գումարեց՝ Ղիփիանիի թեկնածութիւնը աջողեցնելու համար։ Եւ այդպէս էլ եղաւ. քաղաքագլուխ ընտրվեց Ղիփիանին։

նակեց Գրիգորին ամսական ռոճիկ, որ շատ էլ մեծ չէր, ընդամենը հարիւր րուբլի։ Ահա այս էր Գրիգորի ամբողջ հարստութիւնը տարիների ընթացքում. հայրական այդ ռոճիկից էր նա ծածկում իր լրագրի դէֆիցիտը։

Մի կանոնաւոր շաբաթաթերթ հրատարակելու համար, չը հաշուած աշխատակիցների վարձատրութիւնը, հարկաւոր էին աւելի մեծ միջոցներ, քան որքան ունէր Գրիգոր Արծրունին։ Ճիշտ է, «Մշակը» առաջին իսկ տարվանից մի անօրինակ աջողութիւն ունեցաւ, ճիշտ է այդ առաջին տարում լրագիրը արդէն 500 բաժանորդ ունէր, բայց տպարանական ծախսերը շատ էին, ապառիկներ մնացին, այնպէս որ առաջին տարվանից Գրիգոր Արծրունին հարկադրված էր իր գըրպանից լրացնել եկամուտի պակասը։ Այս հանգամանքների մէջ նա ստիպված էր մի կողմ թողնել աշխատակիցներին վարձատրելը, մի սկզբունք, որը նա շարունակ պաշտպանել էր թէ «Հայկական Աշխարհի» և թէ «Մեղուի» մէջ։ Այս ցաւալի հանգամանքը իրականութեան անողորմ պահանջներից էր բղխում։ Եւ եթէ «Մշակի» շուրջը միշտ խմբված չը լինէր ոգևորված երիտասարդութիւնը, անվարձ աշխատութիւնը կարող էր

շատ վատ ազդել լրագրի վրա։ Երիտասարդութիւնը այնքան սիրում էր Արծրունու գործը, այնքան սովոր էր իր սեփական գործը համարել նրան, որ ձրի աշխատելը դրկանք չէր համարում և Արծրունին մինչև իր կեանքի վերջը շրջապատուած էր այդպէս աշխատելու պատրաստակամութիւն ունեցողներով։

Եւ այսպէս, նիւթական միջոցների հարցը, որ այնքան մեծ կարևորութիւն ունի պարբերական մամուլի առաջադիմութեան գործում, վճռվում էր մասամբ միայն։ Լրագիրը կը պահպանվէր, բայց դրա համար հարկաւոր էր անվարձ աշխատութեան սկզբունքն ընդունել։ Գրիգոր Արծրունին իր նախորդ խմբագիրների դրութեան մէջ չէր։ Նա ստիպված չէր շարունակ գանգատվել նիւթական միջոցների պակասութեան վրա։ Բաժանորդների թւի կողմից «Մշակը» առաջադիմական մի սեծ քայլ էր ներկայացնում. պակասը լրացնելու համար պատրաստ էր խմբագրի համեստ ամսականը։ Միւս կողմից էլ գաղափարական ոգևորութիւնը, կատարեալ յափշտակութիւնը, որ բռնկվել էր մեր երիտասարդութեան մէջ, ձրի նիւթ էր տալիս «Մշակին»։

Այժմ մի քանի խօսք խմբագրական կազ-

մի մասին։ Արծրունուն աջողվեց կազմակերպել խմբագրութիւն, հիմնել գործը աշխատանքի բաժանման սկզբունքի վրա։ Դա առաջին օրինակն էր մեզանում։ Լրագրի աըըբագրողն էր տաղանդաւոր դերասան Միհրդատ Ամերիկեանը։ Միայն սա էր, որ իր այս աշխատութեան համար ստանում էր Արծրունուց մի շատ չափաւոր ռոճիկ։ Բայց Ամերիկեանն էլ, ուրիշների նման, ունէր իր ձրի աշխատութիւնը. Նա գրում էր սուր և վառվռուն ֆելիէտոններ, որոնց տակ դնում էր Զ ա ք ո ւ ճ կեղծ անունը։ Ներքին տեսութեան համար յօդուածներ գրում էր Վասիլ Շահվերդեանը, համալսարանի առաջին կուրսում եղած և ուսումը կիսատ թողած մի երիտասարդ։ Արտաքին տեսութեան մէջ աշխատում էր Շահվերդեանի ընկեր, նոյնպէս համալսարանի առաջին կուրսից հեռացած Պօղոս Իզմայիլեանը։ Սա մի տաղանդաւոր, շատ զարգացած երիտասարդ էր, «Մնացածներից աւելի եւրօպացի», ինչպէս վկայում է Արծրունին։ Դժբախտաբար, Իզմայիլեանը հայերէն չը գիտէր և հայ լրագրի մէջ կարող էր աշխատել միայն թարգմանի միջոցով։ Եւ նրա թարգմանը մեծ մասամբ Արծրունին էր, որ հայերէնի էր վերածում նրա գրուածքները։

*Աւելի դժուար էր թղթակցութիւնների հարցը։ Մի օրինաւոր հասարակական օրգան չէր կարող գոյութիւն ունենալ առանց պատրաստուած, որոշ ուղղութեան և ծրագրի հետևող թղթակիցների։ Անցեալում այդպիսի թղթակիցներ պատրաստելու շատ փորձեր չէին եղել։ Մենք տեսանք, որ «Մեղուի» խմբագրին առաջարկում էին զարգացնել թղթակցութիւնների բաժինը, իսկ նա, անկարող լինելով կատարել այդ պահանջը, պատասխանում էր թէ Աստուած ողորմած է։ Տեսանք նոյնպէս որ այդ գործում աւելի բախտաւոր եղաւ «Հայկական Աշխարհը»։ Նա առաջարկեց ծրագիր, ամեն միջոց գործ դրեց թղթակիցներ գրաւելու համար և մասամբ հասաւ իր նպատակին. թղթակցութիւններ էր ստանում զանազան քաղաքներից։*

*Գրիգոր Արծրունին չէր կարող սպասել, որ «Հայկական Աշխարհի» թղթակիցները իրան նպաստեն թերթ ուղարկեն։ Նախ որ դրանց մեծ մասը պատահական թղթակիցներ էին, երկրորդ որ «Հայկական Աշխարհի» ծրագիրը աւելի նեղ էր, սահմանափակ, աւելի դպրոցական գործն ունէր ի նկատի, մինչդեռ գաւառական թղթակցութիւնների մէջ, «Մշակի» պահանջների համաձայն, պիտի արտայայտ-*

վէր ժողովրդի կեանքը իր բոլոր կողմերով։
ի՞նչ անել։ Վճռում են առժամանակ խըմ-
բագրութեան մէջ կազմել թղթակցութիւն-
ներ։ Դրանով օրինակ և ուղեցոյց կը տրվէր
գաւառներից գրել ցանկացողներին։ Այդ աշ-
խատանքն էլ բաժանվեց այսպէս. Վասիլ
Շահվերդեանը կազմում էր թղթակցութիւն-
ներ Թէլաւից, Սղնախից և առհասարակ
Վրաստանի զանազան կողմերից. Պերճ Պռօշ-
եան—Երևանից, Յակոբ Մէլիք-Յակոբեան—
Պարսկաստանից, Մաժակ—Գանձակից։ Թըղ-
թակցութիւնները, ի հարկէ, չէին հնարվում,
նրանք կազմվում էին մասնաւոր նամակնե-
րից։ Ինքը, Արծրունին, կազմում էր թըղ-
թակցութիւններ Կ. Պօլսից, հիմնվելով լրա-
գիրների և մասնաւոր նամակների վրա։ Վա-
ղուց էր մեր մամուլը ձգտում մօտենալ թիւր-
քահայերին, արձանագրել նրանց կեանքի
երևոյթները։ Առաջին խոշոր քայլը այս գոր-
ծում պատկանում է «Կռունկին». Նրա խըմ-
բագիրը թիւրքահայ էր և նրա համար շատ
դժուար չէր գրաւել իր հայրենակից գրող-
ներին, ստանալ սեփական թղթակցութիւն-
ներ Կ. Պօլսից։ «Կռունկից» յետոյ «Մեղուն»
և «Հայկական Աշխարհը» շարունակեցին նոյ-
նը, բայց սեփական թղթակիցներ չունենա-
լով, տալիս էին մեծ-մեծ արտատպութիւն-

ներ Կ. Պօլսի լրագիրներից։ Արծրունին հէնց սկզբից ըմբռնեց թէ որքան մեծ կարևորութիւն ունի Կ. Պօլսի հետ մշտական կապ հաստատելը լրագրի միջոցով։ Մինչև Կ. Պօլսում մշտական թղթակից ունենալը նա ինքն էր կազմում թղթակցութիւններ։ Սա սկիզբն էր. Թիւրքահայերի մօտենալու գործում ոչ ոք մեզանում չէ կարողացել անել այն, ինչ արաւ Արծրունին։

Մեզ մնում է խօսել «Մշակի» մի այլ աշխատակցի մասին։ Դա Ստեփանոս Պալասանեանն էր, ռումինացի հայ, որ ուսում էր առել Պարիզի Հայկազեան դպրոցում և ուսուցչութիւն էր անում Թիֆլիսում։ Պալասանեան արդէն յայտնի էր իր աշխատութիւններով իբրև հայերէնագէտ։ Նրան յանձնվեց «Մշակի» բանասիրական բաժինը. բացի դրանից վճռված էր, որ նա հսկէ «Մըշակի» լեզուի վրա և ուղղէ թէ Արծրունու և թէ ուրիշների ոճը։ Բայց Պալասանեան երկար չը մնաց «Մշակի» խմբագրութեան մէջ և իբրև աշխատակից մի առանձին բեղմնաւորութիւն ցոյց չը տուեց։ Առաջին տարվայ ընթացքում նա գրեց մի քանի յօդուածներ, որոնց երկուսը առաջնորդողներ էին, մէկը ներքին տեսութեան յօդուած, մէկն էլ մատենագրութիւն։ Ինչ վերաբերում է լե-

*զու ուղղելուն, նա աւելորդ էր համարում այդ բանը մանաւանդ Արծրունու նկատմամբ։ Արծրունու ոճը նա գտնում էր այնքան չատ ինքնուրոյն, առանձնայատուկ, որ հարկաւոր չէր համարում որևէ սրբագրութեան ենթարկել նրան և Պռօշեանին էլ չէր թոյլ տալիս ուղղել։*



*Վ. Շահվերդեան*

*Այսպէս էր բաժանված աշխատանքը «Մըշակի» խմբագրութեան մէջ։ Իսկ ինչն էր*

մնում խմբագրին։—Ամենագլխաւորը, ամենակարևորը—լրագրի հոգին։ Արծրունին գըբում էր գլխաւորապէս առաջնորդողներ և հսկում էր լրագրի բոլոր բաժինների վրա։ Աշխատանքի բաժանումը չէր նշանակում առանձին, միանգամայն ինքնագլուխ տէրերի յանձնել լրագիրը։ Արծրունին լաւ նկատել էր որ խմբագրական յարկի տակ հաւաքվածները ուղղութեամբ, աշխարհայեցողութիւններով միմեանց նման մարդիկ չեն։ Պէտք էր այնպէս տանել գործը, որ լրագիրը իր բաժինների մէջ ուղղութեան մի ամբողջութիւն ներկայացնէր։ Աշխատակիցներից «ոչ մէկին—ասում է Արծրունին—ես երբէք չեմ թոյլ տուել երևակայելու թէ նա կատարեալ տէր է նոյն իսկ իր բաժնում. ապացոյց այն կըռիւը, որ ունէի Շահվերդեանի հետ, երբ նա ուզեց մտցնել ներքին տեսութեան մէջ մի յօդուած, որի ուղղութեան հետ ես համաձայն չէի. և ես ամբողջ խմբագրական ժողովի առջև պատասխանեցի նրան, թէ զուր է նա կարծում որ կատարեալ տէր է ներքին տեսութեան բաժնում, և թէ այնպիսի յօդուած, որի ուղղութեան հետ ես համաձայն չեմ, ես երբէք չեմ տպագրի։ Այո՛, լինում էին անգոյն յօդուածներ, բայց վստահ կարող եմ ասել, որ իմ ուղղութեան դէմ ոչ

մէկը երբէք չէ տպվել «Մշակի» մէջ, խմբագրական ժողովների ամբողջ տևողութեան ժամանակ»։

Խմբագրի veto-ին ենթարկված աշխատակիցների մի խումբ—ահա «Մշակի» խմբագրական կազմուածքի կերպարանքը։ Ի՞նչ տեսակ մարդկանց համար այդ veto-ն կա-



Գ. Իզմայիլեան.

րող էր համարեա գոյութիւն չունենալ։ Այդպիսի մի մարդ եղել է «Մշակի» խմբագրատանը և դա Գօզոս Իզմայիլեանն էր։

*Արծրունին հաւատացնում է որ Իգ-մայիլեանը «զուցէ միակն էր որ լիազօր անէր էր իր բաժնի»։ Ինչու։ «Նթէ խմբագրական ժողովներում ես մեծ մասամբ միշտ աւելի համաձայն էի Իգմայլօվի, քան ուրիշների հետ, այդ այն հասարակ պատճառով էր, որ նա բոլոր միացածներից աւելի եւրօպացի էր, ազատ նախապաշարմունքներից, մատ-ւորապէս աւելի զարգացած»։ Անա խմբա-գրի* veto*-ից չը վախելու ամբողջ գաղտնիքը, անա ինչու էր Արծրունին խիստ հսկում լրագրի բոլոր բաժինների վրա։*

*Այսպիսի կազմակերպութեամբ, գործելու այսպիսի ծրագրով Արծրունին մտաւ* 1872 *թւականը։*

## III

**Առաջին համարները։—Առաջնորդող յօդուած։—«Երէկ, Այսօր եւ Էգուց»։—Կռիւ հայ ինտելիգենցիայի դէմ։—Անխնայ քննադատութիւն. ո՞րն է մեր իդէալը։—Անընդունակութեան հերոսներ։—Պէտք է մտածել։—Աշխատանք հին սերունդի դէմ։—Ո՛վ մնաց.—Ժողովուրդը։—Յառաջադիմական ուղղութեան առաջին պտուղները.—զօռում «Մշակի» խմբագրական կազմի մէջ։—«Մեղուի» վերակենդանութիւնը։—Առաջին պօլեմիկա։—Ներսիսեան դպրոց, հոգաբարձական ընտրութիւն։—Կուսակցական պայքար եւ յաղթութիւն։—Արտասահմանի եւ Ռուսաստանի ուսանողներ։—«Մեղուի» յարձակումները. «կօսմօպօլիտներ»։**



«Մշակի» առաջին համարը հրատարակվեց 1872-ի յունվարի 1-ին, շաբաթ օր։ Խմբագրութիւնը յայտնում էր որ այս համարը բացառութիւն է, «Մշակը» պիտի լոյս տեսնէ հինգշաբթի օրերը։

Նախ նոր լրագրի տեսքի մասին։ Դա փոքր դիրքով մի թերթ էր, իւրաքանչիւր երեսը չորս սիւնակից։ «Մեղուն» Մանդինեան քահանայի ժամանակ միայն մի տարի

(1862-ին) էր ընդունել այդպիսի զուտ լրագրական կերպարանք. Մնացած տարիները թէ Նրա և թէ Սիմէօնեանցի օրով չաբաթաթերթը հրատարակվում էր մեծ քառածալ թերթի ձևով։ Առհասարակ Արծրունին իր լրագրի արտաքին ձևի, յօդուածները դասաւորելու մէջ օրինակ ունէր ֆրանսիական լրագիրները։ Մի անգամ ընտրած ձևը, տարերի ձևը Նա անփոփոխ պահպանեց մինչև իր կեանքի վերջը բացի միայն վերնագրից, որ փոփոխութեան ենթարկվեց 1874 թւին և այնուհետև մնաց անփոփոխ։ «Մշակը» ունէր մի գրական-քաղաքական լրագրի բոլոր բաժինները, բացի հեռագիրներից. առաջնորդող յօդուած, ներքին տեսութիւն, բաղկացած ինքնուրոյն յօդուածներից, թղթակցութիւններից և լուրերից, արտաքին տեսութիւն, որ նոյնպիսի կազմուածք ունէր, բանասիրական (չորրորդ երեսի վրա), խառն լուրեր, ֆելիէտօն։

Աւելորդ չը պէտք է համարվի յիշատակել այստեղ և այն, որ Արծրունին, ինչպէս և ուրիշ գրողներն ու հրատարակիչները, նեղվում էր տպարանական անյարմարութիւններից, որոնք այն ժամանակներում ուղղակի անտանելի էին։ Թիֆլիսը դեռ նոյն իսկ տեխնիկական յարմարութիւններ չէր տալիս հայե-

բէն գիրք ու լրագիր տպողներին։ Ապացոյց այն տանջանքները, որ կրում էր Ստեփանէն «Հայկական Աշխարհի» հրատարակութեան ամբողջ ընթացքում. այդ տանջանքների մանրամասն նկարագրութիւնը Ստեփանէն դարձրել էր իր ամսագրի ներքին տեսութեան մի համարեա մշտական բաժինը։ Միակ փոքր ի շատէ օրինաւոր, հայերէն տառերով հարուստ տպարանը Էնֆիաճեանցինն էր, այնտեղից դուրս, ուրիշ տպարանում գործ ունեցողը պիտի տանջվէր անկարգութիւնների ձեռքին։ Արծրունին ընտրեց վրացի Ծերեթելիի տպարանը, որ մի շատ խղճուկ հիմնարկութիւն էր. չը խնայելով ոչ աշխատանք և ոչ աւելորդ ծախսեր, նա կարողացաւ այդ աղքատ տպարանում կանոնաւոր հրատարակել շաբաթաթերթը և բաւական մաքուր տպագրութեամբ, խնամքով սրբագրված։ Այդ յատկութիւնները «Մշակին» յատուկ մնացին մինչև վերջ։

Ի՞նչ էր բերում նոր լրագիրը։

Մի շարք թարմ ու սիրուն նորութիւններ միմեանց ետևից։ Վերցնենք հէնց առաջին հինգ համարները, աչքի անցկացնենք նրանց սիւնակները և ահա ինչ հետաքրքրական ցուցակ կը ստանանք։

Ահա առաջին համարում, գծի տակ, Զա-



*Միհրդատ Ամերիկեան*
*(Չաքուճ)*

քուճը գրել է իր անդրանիկ ֆելիէտօնը, նուիրված Նոր տարուն։ Ներքին տեսութեան մէջ Վ. Շ.-ի (Վասիլ Շահվերդեանի) մի ծրագիր-յօդուածն է, որ բացատրում է թէ ինչ նիւթեր ու հարցեր են հարկաւոր այդ բաժնի համար. դրան հետեւում է Պահլաւունու (Պերճ Պռօշեանի) նամակը Երեւանից։ Արտաքին տեսութիւնը բաղկացած է «Համայնքը Ֆրանսիայի մէջ» ինքնուրոյն յօդուածից։ Բանասիրա-

կան բաժինը չորրորդ երեսի վրա է և այնտեղ տպված է «Կալատոզ Սահակ» անուանով բաւական միամիտ պատկերը, հեղինակութիւն Գ. Չ.-ի (երևի Գէորգ Չմշկեանի)։

Երկրորդ համար։ Այստեղ ֆելիէտօնի բաժնում արդէն ուրիշ աշխատակից է—Հա-



մալը, որ ընտրել է իր գրուածքների համար «Համալի մասլահաթ» ընդհանուր վերնագի-

բը։ Համալը Գաբրիէլ Սունդուկեանցն է, Թիֆլիսի բարբառով Թիֆլիսի բարոյական այլանդակութիւնները մերկացնողը։ «Պէպօի» հեղինակը միայն բեմի վրա չէր հանում անխիղճ գազանային հարստահարութիւնների պատկերներ։ Նոյնը նա անում էր իր ֆելիէտօնների մէջ էլ և այս առաջին գրուածքում Համալը պատմում էր իր «Մշակ ախպօրը» մի հարստահարութեան դէպք, որին ենթարկվում է համալը, այդ բեռնակիր երկոտանի գրաստը։ Կոկ ու գեղեցիկ է գրուածքը, մշակված՝ Սունդուկեանցին յատուկ հմտութեամբ։—Ներքին տեսութիւնը մի ընդարձակ յօդուած ունի «Առևտրական խընդիր Թիֆլիսում» վերնագրով. Նա շարունակվում է և երրորդ համարում և թէև ստորագրութիւն չունի, բայց պարզ է որ պատկանում է Արծրունու գրչին։ Յօդուածը արծարծում է տնտեսական ծանրակշիռ հարցեր։ «Վրաց թատրօն» վերնագրի տակ գըրված է մի րեցենզիա վրացերէն մի ներկայացման մասին. մի բան, որ չը տեսնված նորութիւն էր հայոց մամուլի մէջ։ Արտաքին տեսութեան բաժնում այս անգամ երեւան է եկել «Մշակի» անդրանիկ և բեղմնաւոր թղթակիցը արտասահմանից, Անդրէաս Արծրունին։

Երրորդ համար։—Ընդարձակ մատենագրութիւն Ս. Պ-ի (Ստեփան Պալասանեան). «Հայկական թատրոն ի Բագու»՝ Վահան Խորխոռունի ստորագրութեամբ. «Առաջին նամակ Պարոն Րաֆֆիի ուղևորութիւնից Պարսկաստանում»։ Թէ ինչպէս առաջ եկան այդ շատ հետաքրքրական նամակները, այդ արդէն իմացանք Արծրունու պատմածից. Պարսկաստանի նամակները քանից աւել էին. Նրանք տպվեցան 1872 և 1873 թուականների համարներում։ Առաջին նամակի տակ դրված էր ստորագրութիւն՝ «Քո Ալեքսանդր Րաֆֆի» *)։

Չորրորդ համար։ Դարձեալ Զաքուճը իր կծու ֆելիէտօնով։ Պալասանեանի մի ընդարձակ յօդուածը, որի մէջ յարձակվում է մեր գրականութեան մէջ տիրող ճառական ուղղութեան դէմ և յայտարարում է թէ «Մշակը» ամեն ջանք գործ պիտի դնէ ժողովրդի կեանքից վերցրած վէպերով ընթերցանութեան սէր տարածելու։ Ներքին տեսութեան մէջ—«Ղզլարի այցելու»։ Դատա-

*) Ասում են որ իր կեղծ անունը Րաֆֆին վերցրել է արաբական լեզուից։ Գուցէ աւելորդ չը լինի յիշատակել որ 60-ական թուականներին Թիֆլիսի իտալական օպերայի դերասանուհիներից մէկի ազգանունն էր Րօֆֆի։

տանական ժամանակագրութիւն—«Իշխան Մելիքօվի գործը»։ Արտաքին տեսութիւն—Մատենագրութիւն—«Ամենահին արձանները Հայաստանի մէջ»։ Բանասիրական—Նոր պատմուածք Գ. Զ.-ի «Մազթաղի հարսնիքը»։

Հինգերորդ համար։ «Հայկական թատրոն».—«Հայկական արհեստը Տփխիսում.—Նրա անցեալը և ներկայն» Վ. Շ.-ի։—Րաֆֆիի երկրորդ նամակ։}

Այս փոքրիկ պատկերը ցոյց է տալիս որ «Մշակը» բոլորովին նոր բան էր մեզանում։ Եւ այդ նորութեան արժէքը հասկանալու համար բաւական է համեմատել նրան «Մեղուի» մի քանի ամսվայ համարների հետ։ Բայց սա այն բոլորը չէ, ինչ տալիս էր «Մշակը»։ Ամենագլխաւորը մենք թողեցինք. լրագրի հոգին ու շունչը, նրա առաջնորդողները։ «Մշակը» իւրաքանչիւր համարում տալիս էր առաջնորդող յօդուած, ուր քննվում էին հասարակական զանազան հարցեր։ Մեր մամուլի պատմութեան մէջ «Մշակից» առաջ դուք չէք գտնի ղեկավարող յօդուածների այսպիսի առատութիւն, այսքան կանոնաւորութիւն։ Առաջնորդողները, ինչպէս գիտենք, շատ չնչին բացառութիւններով, Արծրունին էր գրում։ Նա չէր դնում ստորագրութիւն

այդ յօդուածների տակ, մինչդեռ ուրիշների գրած առաջնորդողները համարեա միշտ ունէին ստորագրութիւն։ «Մշակը» առաջին իսկ քայլից պարզում է իր գոյնը, առաջին իսկ քայլից ցոյց է տալիս որ ինքը մի պատերազմող, յարձակվող, տապալող օրգան է։ Ահա մեր առջև է «Մշակի» անդրանիկ առաջնորդողը. Նա ունի վերնագիր—«Երէկ, Այսօր և Էգուց»։ Ի՞նչ էր մեր երէկը, ինչ է այսօրը և ինչ պիտի լինի էգուցը։

I

Կար ժամանակ, երբ մենք Հայերս բաւականացնում էինք մեր ազգային փառասիրութեան ըզգացմունքը, յիշելով մեր փառաւոր անցեալը, մեր առասպելական աւանդութիւնները... Մեր ազգի վերաքերեալ ուսումնասիրութեանը լրումն էինք տալիս ժամանակ առ ժամանակ կարդալով, կամ թերթելով մեր հին կեանքի մասին պատմական հետազօտութիւնները։

Հասարակութեան բարձր դասին պատկանող անձից (մարդ թէ կին) այսքան էլ չէր պահանջվում... Նորանից պահանջվում էր միայն մեր հին պատմութիւնից քանի մի նշանաւոր անուններ գիտենալ, որ նա ժամանակ առ ժամանակ ուրիշների առաջ անգիր էր ասում, պահանջվում էր որ նա գուցէ լեզուն էլ չիմանալով, տարվայ այն ինչ տօներին եկեղեցի գնար... Նա պարծենում էր իր ազգի պատմութեամբ, բայց աշխատում էր իր երեխաների հետ

երբէք մայրենի լեզուով չխօսել։ Նա հպարտ էր իր հայրենիքի անցեալը յիշելով, բայց յանցանք էր համարում ժամանակակից հայրենակիցներին մտաւոր կամ նիւթական որեւէ օգնութիւն հասցնելու... Նա ատում էր իր հայրենակիցները, նոցա մէջ մեծ պակասութիւններ գտնելով, եւ իրան բարոյապէս իր հայրենակիցներից բարձր զգալով, չէր կամենում մտածել նոցա այդ պակասութիւններից բժշկելու միջոցների վերայ։

Ժողովուրդը տգէտ եւ մոլեռանդ էր։ Նա հայերէն չգիտէր, բայց եկեղեցի յաճախելով ջերմեռանդ աղօթում էր։ Նա հայ էր ասում իրան, բայց կօպէկը անգամ խնայում էր իր երեխայի համար հայերէն մի գիրք առնելու։

Նա ոչինչ չէր արդիւնաբերում Հայութեան համար, չէր հոգում Հայութեան մասին, բայց վրդովված հալածում էր այն երիտասարդին, որը... հեռանում էր հայութեան աւանդութիւններից... Նա ախ քաշելով ամեն օր գանգատվում էր իր հայրենակիցների պակասութիւնների վերայ, բայց միեւնոյն ժամանակ անզգոյշ եւ վնասակար անձ էր համարում նորան, ով օրագրական կամ բեմական գրվածումը այդ պակասութիւնները ներկայացնում էր... Նա անգոհ էր իր դրութեամբ, բայց անձնական թշնամի էր համարում նոցա, որոնք վերանորոգութիւն էին առաջարկում։

## II

Երեկվայ օրը անցաւ։

Այսօր ամեն տեղ սկսում են փոքր ի շատէ հայերէն սովորել։

*Հիմնվում են տարրական ուսումնարաններ, ժողովուրդը իր երեխաները ուսումնարան է ուղարկում, բարձր դասը ուղարկում է իր որդիները համալսարան... Գրաբառը եւ Հնութեան յիշատակները երկրորդական դեր են խաղում,—այսօր մենք ունենք կենդանի լեզվով գրած օրագիրներ եւ գրքեր։ Ամեն մի հայ երեւում է իբր ազգասիրական ոգւով վառված։*

*Մի կողմից երեւեցան ազգասիրական բանաստեղծութիւններ, միւս կողմից հայրենական պատմութիւնից առած թեմական գրվածներ։*

*Բարձր ուսում առած երիտասարդները չափազանց բազմացան... Ազգասիրական ոգւով վառված, նոքա այնպիսի ուսման ճիւղ են ընտրում իրանց համար, որ առանց ծանր աշխատանքի կարողանային ապահովել իրանց ապրուստը։*

*Էլի ինչ...*

*Մենք վերջապէս սկսում ենք ըմբռնել ժամանակի պահանջմունքը, սկսում ենք թէ մեր ամեն գրվածներում եւ թէ բեմի վրայ ցոյց տալ ուրիշների (մանաւանդ առեւտրական դասի) պակասութիւնները... Մենք յափշտակմամբ յարձակվում ենք ծերերի դէմ, նոցա միակողմանի զարգացման, հասարակական անընդունակութեան եւ տգիտութեան պատճառով։ Մենք հասկացանք մեր դաստիարակութեան թերութիւնները, եւ ամենքս սկսեցինք (գոնէ այսպէս ենք կարծում) մանկավարժութեամբ պարապել...*

## III

*Բայց էգուցվայ օրը մօտենում է։*

*Այն երիտասարդները, որոնք բարձր ուսում ստանալուց յետոյ վերադարձան իրանց հայրենիքը,*

որոնք մեր հնացած հասարակութեան մէջ լուսաւորութեան ներկայացուցիչներ են համարվում,—կատարեցին արդեօք իրանց պարտաւորութիւնը։

Նոցա դրօշակի վերայ գրած է լ ո ւ ս ա ւ ո ր ո ւ թ ի ւ ն խօսքը, բայց դժբաղդապէս մենք պէտք է խոստովանենք որ նոցա պակաս է լուսաւորութեան առաքելութեան համար ամենանշաւոր գործիչ,—այն է ա շ խ ա տ ա ն ք։

Նոքա քննադատում էին ժողովրդի առեւտրական դասը, բայց իրանց գործունէութիւնը եւ վարմունքը ոչ ոք մինչեւ այժմ չքննադատեց։ Նոքա յարձակվում էին ծերերի դէմ,—բայց նոցանից ոչ մէկը չը մտածեց որոշել հասարակութեան մէջ նորերի պարտաւորութիւնները։

Ես ասեցի, XIX դարի լուսաւորութեան գործիչը ա շ խ ա տ ա ն ք ն է։ Այդ գաղափարը ժողովուրդը չէ ըմբռնում, իսկ լուսաւորութեան ներկայացուցիչները, մեզ մօտ օգուտ քաղելով նորա տգիտութենից հաւատացնում են նորան որ լուսաւորութիւնը նորա համար անմատչելի, անըմբռնելի գաղափար է... որ իր էութեամբ նա վերացական գաղափար է, իսկ արտաքին կեանքումը նա արտայայտվում է գեղեցիկ հագուստով եւ թղթի վերայ գրած վկայագրով... Ո՛չ, ասում եմ ժողովրդին, լուսաւորութիւնը ուրիշ բան չէ, եթէ ոչ աշխատանք, եւ նոքա, որոնք լուսաւորութիւն են քարոզում քեզ, բայց իրանք չեն ընտելացել աշխատանքին, մեղաւոր են իրանց խղճմտանքի առաջ...

Կգայ ժամանակ, երբ նոքա, որոնք պարտաւորութիւններ ունին, բայց չեն կատարել այդ պարտաւորութիւնները, կենթարկվեն ապագայ սերունդի հասարակական դատաստանին։

Էգուցվայ օրը պահանջում է փոքր սերունդի համար տարրական ուսում, ժողովրդի համար ժողովրդական գիտութիւն, ուսում առածների համար ճիշդ գիտութեան ծանօթութիւն, հասարակութեան համար ճիշդ գիտութիւնների վերայ հիմնած մտախորհութեան եղանակ,—ամենի համար աշխատանք։

Էգուցվայ օրը պահանջում է բարձր ուսում ստացածներից ոչ թէ միայն ժողովրդի ամեն դասերի կենսական երեւոյթների խորը քննադատութիւն, այլ եւ իրանց սեփական անձի խղճմտաքար անխոնջ անձնաքննութիւնը։

## IV

Երէկ մենք կտակարանական ազգ էինք.
Այսօր մենք ազգասէրներ ենք.
Էգուց մենք պէտք է աշխատողներ դառնանք։

Անդադար աշխատանք, ժողովրդի համար օգտաւէտ գործ պահանջող Արծրունին մեզ արդէն վաղուց ծանօթ է «Հայկական Աշխարհից»։ Այդ աշխոյժ յօդուածը, որ այնքան գեղեցիկ կերպով պատկերացնում էր մեր անցեալի և ներկայի ազգասիրութիւնը, ինչպէս տեսնում էք, գրված է նոյն ոճով և ազդու, եռանդոտ շեշտով, ինչպէս Արծրունու նախկին շատ յօդուածները։ Իբրև հրապարակախօսական ծրագիր բացատրող մի յօդուած, այդ անդրանիկ առաջնորդողը բաւական պակասաւոր է, քանի որ որոշ ու բացարձակ կեր-

պով չէ յայտնում թէ ինչ ուղղութեան պի-տի հետևէ. «Մշակը», ինչ հարցերի պիտի ու-շադրութիւն նուիրէ։ Բայց այս պակասու-թիւնը—եթէ, ի հարկէ, համաձայն էք որ պա-կասութիւն է դա—առանձին մեծ նշանա-կութիւն չունի։ Արծրունին սովորութիւն չունէր ասելու թէ ինչ պ ի տ ի ա ն է, բայց բայց միշտ պատմում էր թէ ինչ է ա ր ե լ։ Սակայն այս առաջնորդողը ունի իր նորու-թիւնը, իր յատուկ նշանակութիւնը։ Արծ-րունին այլ ևս ընդհանուր դատողութիւննե-րով չէ բաւականանում. այժմ նա որոշում էր յարձակման կէտերը։ Եւ առաջին կէտը անպարտաճանաչ ինտելիգենցիան էր։

Ամենից առաջ Արծրունին կռիւ էր յայ-տարարում հայ ինտելիգենցիայի դէմ։ Եւ այդ կռիւը ընդունում է երկարատև, սիստե-մական հալածանքի կերպարանք։ Ինչո՞ւ էր նա այդպէս վաղ և այդպէս սաստիկ թշնա-մութիւն մղում կրթված երիտասարդութեան դէմ։ Պատճառները մասամբ տեսանք վերե-ւում բերած յօդուածում։ Բայց ահա երկրորդ համարի առաջնորդողն էլ, «Դուք և Մենք» վերնագրով, նոյն հարցին է նուիրված և Արծրունին այսպէս է ամբողջացնում հակա-կրելի հայ ինտելիգենտի տիպը։

Շատ անգամ, ասում է նա, պատահել

է մեզ խօսել ձեզ հետ հասարակական պակասութիւնների մասին։ Մենք յարձակվում էինք, դատափետում էինք, իսկ դուք, մի թեթև ժպիտ պահելով ձեր դէմքի վրա, վերջ էիք տալիս մեր երկարաբանութեան, ասելով թէ մեր խօսակցութեան մէջ նորութիւն չը կայ, թէ դուք ինքներդ էլ լաւ գիտէք այդ բոլորը։ Եւ դուք սկսում էիք ձեր սեփական նկարագրութիւնները, որոնք գերազանցում էին մեր ասածները։ Կարծում էինք թէ մի նոր միտք էինք յայտնում ձեզ, բայց տեսնում էինք որ ձեզ համար դա հին իրողութիւն է. կարծում էինք թէ ձեր ուշադրութիւնը դարձնում ենք ձեզ անյայտ մի հասարակական պակասութեան վրա և յանկարծ դուրս էր գալիս որ դուք ձեր ապացոյցներով և ունեցած փաստերով աւելի ընդարձակում էիք մեր տեսութիւնը, աւելի խտացնում էիք մեր տուած գոյները։

Մենք հակակրութիւն էինք յայտնում դէպի այն ազգը, որ կամակորութեամբ աշխատում է մոռանալ իր մայրենի լեզուն— դուք համաձայն էիք։ Մենք զզուանք էինք ուղղում դէպի այն ընտանիքը, որ կարծես դիտմամբ արգելում է մայրենի լեզուն իր ընտանիքի մէջ,—և դուք արդարացի էիք գտնում մեր զզուանքը։ Ասում էինք ընթեր-

ցասիրութիւնը և ուսումնասիրութիւնը պակասում են մեզանում—համաձայն էիք: Հայ ընտանիքում տիրող բռնակալութեան դէմ էինք խօսում,—դուք հաստատում էիք: Հասարակութեան մէջ անտարբերութիւն է տիրում դէպի ամեն մի բարի սկզբնաւորութիւն: Դուք արդարացնում էիք մեր յուսահատական բողոքները այս առիթով: Հասարակական կեանք չը կայ մեզանում: Աշխատանքի չէ ընտելացել հայը: Կրթութիւնից զուրկ է նա: Անշարժ ու հնամոլ է նա: Դուք ոչ մէկը չէիք հերքում, դուք ամեն բանի մէջ համաձայն էիք մեզ հետ:

Եւ մենք կարմրում էինք, մենք ամաչում էինք: Ո՛րքան միամիտն ենք եղել, ասում էինք, որ խօսում էինք ձեզ հետ այնպիսի բաների մասին, որոնք ձեզ էլ շատ լաւ յայտնի էին: Ի՞նչ յանդգնութիւն մեր կողմից սովորեցնելու ձեզ այն, ինչ դուք էլ գիտէք: Մի կողմից ամաչում էինք որ այդքան միամիտ ենք, միւս կողմից ուրախ էինք որ կան մեր հասարակութեան պակասութիւնները ճանաչողներ, որ մենք համախոհներ ունենք, որ կեանքի մէջ գոյութիւն ունի բողոք:

Մեր ուրախութիւնը այնքան անսահման էր, մենք այնքան երջանիկ էինք, որ մի կողմ

թողնելով ամօթի զգացմունքը, մենք մեկնեցինք ձեզ մեր ձեռքը և ձեզ մեր ընկերակիցը համարելով, առաջարկում էինք միասին գործել, այս ինչ միջոցները գործադրել տգիտութեան և անշարժութեան դէմ։

Այստեղ ահա մեզ սպասում էր մի ուրիշ տեսակ անակնկալութիւն։ Դուք գանգատվում էիք թէ ձեր երեխաները չը գիտեն մայրենի լեզուն։—Յանձնեցէք նրանց կրթութիւնը հայ ծխական դպրոցներին, ասացինք մենք։ Դուք ժպտում էիք։ Դուք ասում էիք, որ հայը, այո՛, առատաձեռն է, երբ պիտի գոհացում տայ իր փառասիրութեան, իսկ այնտեղ, ուր նա պէտք է իր հայրենակիցների մտաւոր առաջադիմութեան օգնութիւն հասցնէ, նա սաստիկ ժլատ է։ Մենք համարեցինք ձեր անձը մի բացառութիւն, յանդգնեցինք ձեզանից օգնութիւն խնդրել մի ծխական դպրոցի համար... Բայց դուք հեռացաք մեզանից և նստեցիք թուղթ խաղալու, ուր մեր պահանջած օժանդակութիւնից աւելի պիտի տանուլ տայիք։ Շատ լաւ գիտէք, այո՛, որ հասարակական կեանք չը կայ մեզանում։ Ուրեմն գործենք, ասում ենք մենք, զարթեցնենք հասարակական կարծիքը, տպենք գրքեր, հրատարակենք լրագիր։ Բայց դուք յայտնում էիք մեզ որ ո-

չինչ չէք կարող անել։—Լուսաւորութիւն չը կայ,—ուսումնարաններ հիմնենք։ Իզուր է... պատասխանում էք դուք։—Հասարակական ընդհանուր շահեր չը կան, ուրեմն զարթեցնենք հասարակական պահանջները, որ թուղթ խաղալու և բամբասելու տեղ հասարակական հարցերով զբաղվենք։ Բայց դուք թերահաւատութեամբ վեր էք քաշում ձեր ուսերը և հեռանում։—Ընթերցասիրութիւն չը կայ, ասում էք դուք, որովհետև մի կողմից հայը դեռ չէ ընտելացել մտաւոր աշխատանքին, իսկ միւս կողմից՝ կարդալու բան չը կայ։ Ճիշտ է, ասում ենք մենք. ուրեմն եկէք գրենք, հիմնենք մի պարբերական թերթ, որ հայը սովորէ մտածել, աշխատել։ Բայց դուք ծիծաղում էք և քիչ է մնում որ մեզ խելագար համարէք...

Եւ այսպէս մենք և դուք հասկանում ենք որ հասարակութիւնը պակասութիւններ ունի։ Մենք փաստեր ենք բերում, դուք մեզանից շատ փաստեր ունիք։ Մենք գանգատվում ենք որ հասարակութիւնը մեռած է. դուք էլ էք գանգատվում այդ միևնոյն առիթով։

Բայց մենք և դուք—միևնո՞յն ենք։ Մենք գանգատներով չենք ուզում բաւականանալ, կամենում ենք օգնութեան հասնել ժողո-

վրդին։ Մեր պակասությունները տեսնելով, մենք ուզում ենք գործել նրանց դէմ. իսկ դուք, որ նոյնպէս տեսնում էք այդ միեւնոյն պակասությունները, թերահաւատութեամբ վեր էք քաշում ձեր ուսերը։ Մենք ձեր բողոքները լսելով, ձեզանից օգնութիւն ենք խնդրում հասարակական կեանքի մէջ օգտաւէտ աշխատանքը առաջ տանելու համար. իսկ դուք, պատասխան չը տալով մեզ, նըստում էք թուղթ խաղալու։ Մենք չենք բաւականանում գանգատներով, մենք ուզում ենք և գործել. դուք միանգամայն բաւական էք համարում գանգատվելը։

«Դուք խելագարված էք համարում նոցա, որոնք ներգործել են կամենում պակասութիւնների դէմ,—մենք մեր կողմից հասարակութեան անպէտք անդամներ ենք համարում նոցա, որոնք իրանց պարտաւորութիւն չեն համարում ներգործելու»։

Եւ մեր անպարտաճանաչ, թոյլ ու անկարող ինտելիգենցիայի այս հիանալի բնորոշումը Արծրունին վերջացնում էր հետեւեալ երկտողով.

Մենք գիտենք ով ենք մ ե ն ք։
Գիտէք արդեօք ով էք դ ո ւ ք։

Բայց այս դեռ բոլորը չէ։ Արծրունին

չուտ-չուտ վերադառնում էր այս տիպին և մերկացնում էր նրան զանազան կողմերից։ Հետևենք այդ մերկացումներին։

№ 5-ի առաջնորդողը «Անինք թէ լինենք» վերնագիրն ունի. «Զարգացած մարդիկներին յատուկ է—ասում է նա—նախ ըմբռնել *իրաւունքները*,—և ապա հասնել և *պարտաւորութիւնների* հասկականալուն, այն էլ մի որևէ արտաքին հարուածի ազդեցութեան տակ։ Փոքրիկ տըղան, փողոցում տեսնելով զինուորականին, մտածում է. Երբ ես կը մեծանամ, զինուորական կը դառնամ։ Փոքրիկ աղջիկը, նայելով փողոցով անցնող իր ամուսնու հետ թև թևի տուած տիկնոջը, ասում է. երբ ես կը մեծանամ, նոյնպէս իմ ամուսնու հետ թև թևի տուած կանցնեմ փողոցով։ Երեխաները ըմբռնում են որ պէտք է մի բան դառնան. նրանք հասկանում են որ իրանց իրաւունքն է մի բան դառնալ, իսկ թէ կան և պարտաւորութիւններ նրանց համար,—այդ անհասկանալի, անմատչելի է մնում։

Եւ երեխաների ծնողները միայն իրաւունքների գիտակցութիւնն են զարգացընում նրանց մէջ։ Ե՞րբ էք տեսել որ մի հայր կամ մայր խօսէր իր երեխայի հետ ապագայ պարտաւորութիւնների, կեանքի ծանր պարտա-

քերի մասին։ Մայրը, գրկելով իր երեխային, չէ ասում. «երբ մեծանաս, պիտի աշխատես», կամ այս ինչ պաշտօնին կամ դիրքին հասնելու համար պէտք է տանջվես, չառ չարչարվես։ Դրա փոխարէն նա ասում է. «երբ մեծանաս, երեւելի կը լինես» կամ «երբ հասակ առնես, կը հարստանաս» կամ «կը մեծանաս, բարձր աստիճանաւոր կը դառնաս»։ Երեխայութիւնից մեզ ասում են՝ «դու պէտք է այս ինչ բանը դ ա ռ ն ա ս», բայց չեն ասում՝ «դու պէտք է այս ինչ բանն անես»։ Եւ երեխայութիւնից այդ ուղղութիւնըն արմատանում է մեր մէջ։

—Դուք սովորում էք, հարցնում եմ մի երիտասարդից։

—Այո, ես գ ի մ ն ա զ ի ս տ եմ, պատասխանում է նա։

—Դուք ուսանում էք, հարցնում եմ ուրիշից։

—Այո, ես ո ւ ս ա ն ո ղ եմ...

—Դուք ծառայում էք։

—Այո, ես այս ինչ երկրորդ, կամ չորրորդ աստիճանի պաշտօնեայ եմ...

—Դուք ուսումը աւարտել էք։

—Այո, ես կանդիդատ եմ։

Եւ այլն...

Մեզ այնքան չէ հետաքրքրում մի բ ա ն ա ն ե լ ը, որքան մի բ ա ն լ ի ն ե լ ը։ Երե-

*խայութիւնից մեզ տուած ուղղութիւնը սովորեցնում է մեզ ոչ թէ գործել, այլ լինել։ Մէկի հետ ծանօթանալով, մենք չենք ուզում իմանալ ինչ է անում նա, այլ հետաքրքրվում ենք թէ ինչ է նա։ Հասարակութեան անդամները մեզ համար մարդիկ չեն, քաղաքացիներ չեն, այլ կանդիդատներ, ուսանողներ, աստիճանաւորներ, քահանաներ, զինուորականներ... Երեխայութիւնից մեզանում կազմվում, հաստատունանում է մի կատարելատիպ, մի իդէալ, այն է՝ դառնալ։ Իսկ անելը երկրորդական բան ենք համարում։*

Երիտասարդը գնում է համալսարան։ Նորա ձգտողութիւնը մի բառով է նկարագրվում—դառնալ կանդիդատ։

Նորա տենչացած գաղափարն է—աւարտել որ դառնայ։

Եւ ոչ թէ սովորել որ իմանայ։

*Հիմա երեւակայեցէք այդպիսի մի աւարտած և մի բան դարձած երիտասարդին։ Նա չէր ուզում սովորել որ միշտ սովորէ, իր ամբողջ կեանքում ձգտէ կատարելագործվելու։ Ոչ, նա ուզում էր միայն աւարտել, որ մի բան դառնայ։ Եւ ահա դարձաւ։ Նա հասել է իր նպատակին։ Նա դարձաւ—և այլ-*

եա կատարելագործվելու հարկաւորութիւն չունի․ Նա դարձաւ—և տենչացած նպատակին հասել է։ Հասել է, ուրեմն և կարող է անշարժ մնալ։ Եւ ահա հասարակութեան մէջ երևում են երկու տեսակի մարդիկ․ Նրանք, որոնք մի բան դարձան և Նրանք, որոնք չը դարձան։ Փորձեցէք գործ ունենալ այդ երկուսի հետ։

Դուք, օրինակ, կառավարում էք մի դըպրոց, ուր ուսուցչութիւն են անում դարձածները։ Դուք նկատում էք այդպիսիներից մէկին, որ Նրա ընտրած մեթօդը մի քիչ հնացել է, որ պէտք է հետևել այս ինչ Նոր ուղղութեան։ «Դարձած երիտասարդը չէ կարող, իրաւունք չունի ձեզանից խրատ ընդունելու… Նա իր ուսումը վերջացրած է, ուրեմն մտաւոր կատարելագործութեան նշանակված տիպին հասած է։ Նա չէ կարող փոխվել, Նա իրաւունք չունի… Նա պարտաւոր է անշարժ մնալ, որովհետև նշանակված կատարելագործութեան հասել է»։

Ուրիշ օրինակ։ Դուք խմբագիր էք․ բերում են յօդուած, դուք առաջարկում էք փոփոխութիւններ։ Բայց բերողը դարձածներից է։ Նա չէ կարող փոխվել, ուրեմն և չէ կարող փոխել իր ստեղծագործութիւնը։

Բոլորովին ուրիշ բան է չը դարձա-

ծը։ Նա լսում է, նա անում է, «որովհետև նա ոչինչ չը դարձած, և ոչինչ չը դառնալով, սահման, չափ չունի իր մտաւոր առաջադիմութեան և կատարելագործութեան մէջ»։ Թէ դպրոցում և թէ գրականութեան մէջ նա պատրաստ է առաջ գնալ, կատարելագործվել անդադար...

Եւ ահա Արծրունու եզրակացութիւնները.

Մէկը ոչինչ չէ դառել կեանքի մէջ...
Միւսը դառել է։
Առաջինի իրաւունքն է կատարելագործվել...
Երկրորդի գլխաւոր պարտաւորութիւնն է միշտ անշարժ մնալ։
Շարժումը մեր պարտաւորութիւնն է։
Անշարժութիւնը ձեր իրաւունքն է։

Մի ուրիշ տեղ, «Անընդունակութեան հերոսներ» առաջնորդողում (№ 9), Արծրունին գործ է ածում «մեր բարձր ուսում· ստացած տգէտ երիտասարդութիւնը» բառերը։ Բայց այդպիսի երիտասարդութեան դէմ ուղղած աւելի սուր հեգնանք մենք կարդում ենք «Երիտասարդներին խրատ» յօդուածում (№ 20)։ Այդ խրատը նա ուղղում է այն երիտասարդներին, որոնք վերջացրել են միջնակարգ դպրոցը և գնում են շարունակելու իրանց ուսումը բարձրագոյն դպրոցներում։

*Դա ճանապարհ դնելու, ողջերթի խօսք է, բայց ո՞րքան դառն ու կծու։*

«Եթէ դուք, սիրելի երիտասարդներ, ուսում առնելուց յետոյ դիտաւորութիւն չունէք վերադառնալ ձեր հայրենիքը,—ես գործ չունիմ ձեզ հետ... ասում եմ գործ չունիմ ձեզ հետ, որովհետեւ այդ դէպքումը հասարակութեանը փոյթ չէ դուք ի՞նչ ուղղութիւն էք ընտրելու»։ Իսկ նրանք, որոնք պիտի դառնան հայրենիք, պարտաւոր են պատրաստվել այնպէս, ինչպէս հասարակութիւնն է պահանջում։

*Բայց ի՞նչ է պահանջում հասարակութիւնը։ Ահա ծնողները ճանապարհ են դընում իրանց որդիներին։ «Եթէ դուք հասարակութեան ստորին կամ միջին դասին էք պատկանում, ձեր հայրը ձեզ ճանապարհ դցելով ասում է ձեզ. «գնա լաւ ուսում առ, աշխատիր, ա ռ ե ւ տ ո ւ ր սովորիր, որ մարդ դառնաս, պատիւ ունենաս մարդիկների մէջ»։ —Եթէ դուք հասարակութեան բարձր դասին էք պատկանում, ձեր հայրը ձեր հասցէին միեւնոյնը ասելով, կարելի է փոքր ինչ աւելի ծաղկած ոճով, աւելացնում է մէկ երկու խօսք հասարակութեան մէջ ն շ ա ն ա կ ո ւ թ ե ա ն ը հանելու պարտաւորութեան մասին»։*

*Եւ ահա այդ պահանջները կատարելու խրատներ։ Աշխատեցէք ծանօթանալ ծոյլ*

ու անգործ ուսանողների հետ։ Ամենևին հարկաւոր չէ գիտութեամբ պարապել, բաւական է քննութիւնից առաջ մի երկու ամիս դասեր սերտել, և հիանալի կերպով քննութիւն կը տայք։ Ուրախ անցկացրէք ձեր ժամանակը։ Դուք ձեր խղճմտանքի առաջ էլ արդար կը լինէք, մանաւանդ որ ձեր ստացած վկայագիրը լիովին բաւականացնում է ձեր ծնողներին։ Աշխատեցէք հեռու մնալ օտար շրջանից, որպէս զի այնտեղ չը ծանօթանայք նոր մտքերի հետ և ստիպված չը լինէք ձեր հետ տարած հրէշաւոր նախապաշարմունքով լի ուղղութիւնը փոխել։ Մնացէք ձեր հայրենակիցների նեղ, սահմանափակ շրջանում. այդպիսով դուք ապահով կը լինէք որ հայրենիք վերադառնալով, դուք ձեզ հետ կը բերէք միևնոյն նախապաշարմունքը, միևնոյն պակասութիւնները, միևնոյն կրքերը, հակումն դէպի ինտրիգները, ատելութիւն առաջադիմութեան, ամեն բարի սկզբունքի դէմ։ Մտածեցէք գլխաւորապէս ձեր նիւթական ապահովութեան մասին, դատարկախօս համարելով նրանց, որոնք հաւատացնում են ձեզ թէ ամեն մարդ իր հասարակական սուրբ պարտաւորութիւնը պիտի համարէ մարդկութեան օգուտ բերելը, ապագային որևէ յեշատակ թողնելը։

Դուք վերադարձաք հայրենիք։ Այստեղ աշխատեցէք հեռու պահել ձեզ ձեր հայրենակիցներից, ոչինչ գործ չը բռնէք նրանց հետ։ Բայց. եթէ կամենում էք որևէ գործով կապվել նրանց հետ, մի վճռական քայլ անելուց առաջ լաւ մտածեցէք որ յարմարվէք նրանց բնաւորութեանը։ Ահա՛ հին սերունդը։ Նա անսխալական է իրան համարում. Նա ասում է որ մարդը այն ժամանակ միայն կարող է օգտաւէտ լինել հասարակութեան, երբ նրա ուղեղը ծերութիւնից այլ ևս ընդունակ չէ մի նոր միտք ըմբռնելու, մի նոր, անսովոր գործողութեան ենթարկվելու։ Նա ասում է. «Ամեն մարդ խելօք է իր որդուց, եթէ մինչև անգամ հայրը տգէտ լինէր, իսկ որդին գիտնական ու աշխատասէր։ Ուրեմն իզուր է գիտութեանը ծանօթանալ, իզուր է աշխատել,—որովհետև ինչքան և աշխատէք, ինչքան և թափէք ձեր ճիգն մտաւորապէս զարգանալու,—դուք դարձեալ ոչ թէ միայն ձեր հօրից խելօք չէք կարող լինել, բայց և նորան հաւասար չէք կարող լինել,—միայն այն պատճառով, որ *նա ձեր հայրն է, իսկ դուք նորա որդին*»։

Թողնենք, սակայն, հին սերունդը, գանք այժմ բարձր ուսում ստացած երիտասարդութեան։

ճշմարիտ է, որ նոքա մեր ծերերից աւելի գիտութիւն ունին—բայց նոցա բնաւորութիւնը շատ չէ զանազանվում հին սերունդից… այդպէս հեշտ չէ դարեւոր յատկութիւնները ջնջել։ Եւ ինչի՞ ջնջել… երբ հասարակութիւնը բաւական է իր նոր, առաջադէմ սերունդի մտաւոր դրութեամբ։

Մեր երիտասարդներից իւրաքանչիւրը իրան անսխալական է կարծում, ինչպէս եւ մեր ծերերը, միայն այն զանազանութեամբ, որ ծերը բացի իր անձից ուրիշ հեղինակութիւն չէ ճանաչում,—իսկ երիտասարդը բացի իր անձից, որ նորա համար ամենաբարձր հեղինակութիւնն է, անպայման ենթարկվում է մի որեւէ գիտնական հեղինակութեանը։

Հայրենիք վերադառնալուց յետոյ աշխատեցէք որքան կարելի է անմատչելի երեւալ, աշխատեցէք աչքին թոզ փչել։ «Եթէ գիտութեան նշոյլ էլ չունէք, պիտի չափազանց գիտնական ձեւացնէք ձեզ. եթէ փոքր ինչ հմտութիւն ունէք, ձեռք վերցրէք համեստութիւնից։ Եթէ համեստ կը լինէք, ձեզ անպատճառ տգէտ կը կարծեն։ Համեստութիւնը պակասութիւն է։ Համեստութիւնը տգիտութեան նշան է»։ Աւելորդ է որ դուք նուիրէք ձեզ անխոնջ աշխատանքին։ Սակայն ցոյց տուէք 'որ իբր թէ անդադար աշխատում էք։ Եթէ իսկապէս աշխատէք,— ձեզ չեն գնահատի։ Գնահատել ուրիշի ամենափոքր աշխատանքն անգամ կարող են մի-

այն նրանք, որոնք սովոր են իրանք աշխատելու։

Վերջապէս—ասում է Արծրունին—եթէ ճշմարիտ կամենում էք օգուտ բերել ձեր հայրենակիցներին, աշխատեցէք նոցա համար հեռուից... Այդպէս նոցա առաջ ամեն օր չերեւալով, դուք նոցա աչքերումը աւելի նշանակութիւն կը ստանաք։

Իսկ ամենից շատ նոցա աչքումը նշանակութիւն կը ստանաք եւ տաղանդաւոր մարդ անգամ կը հռչակվէք,—երբ կը մեռնէք...

Դիմենք այժմ Արծրունու մի այլ յօդուածին—«Լսել են թէ Ալին մեռել է, բայց չեն իմացել ո՛ր Ալին...» (№ 30)։ Ի՞նչ են լսել։—Լսել են որ «ամեն երկրի, ամեն հասարակութեան մէջ երիտասարդութիւնն է կազմում ազգի մտաւոր, ֆիզիկական և բարոյական ոյժը»։ Այո՛, դա միանգամայն ճիշտ է։ Մարդը երիտասարդութեան հասակում է գործում, պտղաբերում. այդպէս են ցոյց տալիս նոյն իսկ նշանաւոր մարդկանց կենսագրութիւնները։ Մինչև երիտասարդութեան հասակը մարդու կեանքի առաջաբանն է, երիտասարդութիւնից յետոյ եկող հասակը—կեանքի վերջաբանն է։ Ուրեմն իսկական, բուն կեանքը երիտասարդութիւնն է։ Նրան շատ է տուած և նրանից շատ էլ պիտի պահանջվի։

*Եւ ահա մեր երիտասարդութիւնը գիտէ որ ամեն տեղ երիտասարդութիւնը ազգի բարոյական և մտաւոր ոյժն է, բայց չը գիտէ որ այս բնական արտօնութեան հետ «կապված են և անձնական պարտաւորութիւնները,—աշխատանք, գիտութիւն, աշխատասիրութեան մէջ յաջորդութիւն և տեւողութիւն»։ Դուք կամենում էք որ ձեզ պատուեն իբրև ոյժ,—աշխատեցէք ուրեմն։*

*«Աշխատեցէք սեփականացնել ձեզ երիտասարդութեան յափշտակիչ կողմերը, աշխատանք, սէր դէպի գիտութիւն,—թողեցէք ինտրիգաներ, ամեն լուսաւոր երևոյթի առջև սև, կեղտոտ նախանձ, ձեր խորին տըգիտութիւնից առաջ եկած ինքնահաւանութիւնը, դատարկախօսութիւն և դատարկագրութիւն»։*

Բայց պահելով այդ անպիտան յատկութիւնները, դուք պահանջում էք որ ձեզ պատուեն,—զարմանալի պահանջողութիւն։

Ես ասացի. երիտասարդութիւնը միակ հասակ է, երբ մարդս գործող է։ Բայց եթէ երիտասարդութիւնը հասարակութեան համար ապարդիւն կերպով, անգործութեան մէջ է անցնում իր ժամանակը, իրաւունք ունի՞ նա վերաբերել իրան այն յատկութիւնը, որ ինքն չունի, պարծենալ ուրիշների արժանաւորութեամբ։

Ամեն տեղ երիտասարդներն են եղել առաջնոր-

դող մաս հասարակութեան, ասում էք դուք, ուստի նոցա պիտի պատուել…

Բայց դուք ինչի չը կարողացաք դառնալ հասարակութեան առաջնորդող ոյժ.—ուրեմն կարծեմ **պատճառ չը կայ** ձեզ պատուելու։

*Այսպիսի լեզու դեռ ոչ ոք չէր գործածել մեր մամուլի մէջ. այսքան խոր, բազմակողմանի մերկացումներ ոչ ոք չէր արել։ Արշաւանքը երիտասարդութեան դէմ այնքան խիստ է, այնքան անողորմ, որ դուք առաջին անգամից կարծում էք թէ Արծրունին չէր կամենայ որ երիտասարդութիւն լինի հայերի մէջ։ Բայց դա, ի հարկէ, սխալ տպաւորութիւն կը լինէր։ Կարիք չը կայ որ մենք նորից բացատրենք թէ ինչու էր Արծրունին յարձակվում երիտասարդութեան դէմ. մեր բերած կրակոտ յօդուածների իւրաքանչիւր տողը շատ պարզ ցոյց է տալիս թէ ինչ էր պահանջում Արծրունին։ Իրական ապշեցնող ճշմարտութիւններ են նստած նրա այդ համարձակ, աներկիւղ տողերի մէջ, այն անհաշտ պատերազմի մէջ, որ նա յայտարարեց «բարձր ուսում ստացած, բայց տգէտ» ինտելիգենցիայի դէմ։ Եւ յարձակողական այդ խստութիւնը, չը խնայելու այդ ահագին եռանդը բղխում էին Արծրունու*

այն խոր համոզմունքից թէ՝ «Մտրակով չը խփես,—բան չի դուրս գայ»։

Այդ խօսքերը նրա մի առաջնորդողի վերնագիրն են կազմում (№ 16)։ Այդտեղ Արծրունին բացատրում է թէ ինչ է մտրակողական ուղղութիւնը, թէ ինչ օգուտներ է բերում յարձակողական, անխնայ մերկացնող, հարուածող հրապարակախօսութիւնը։

Անգլիացի երևելի գիտնական Ջօն Ստիւարտ Միլլը—այսպէս է նա սկսում այդ յօդուածը—իր գրուածներից մէկի մէջ ասում է. «Կենսական միջոցների հեշտութիւնը չէ, որ ծնում է շարժում, այլ կեանքի դժուարութիւնները, կեանքի մէջ պատահող արգելքները առաջացնում են ինքնուրոյնութիւն և հնարագիտութիւն»։ Այս խօսքերը ճշմարտութիւն են թէ անհատի և թէ ամբողջ հասարակութիւնների վերաբերմամբ։ Եւ Արծրունին մի շարք ապացոյցներ է բերում Եւրոպայի և Ամերիկայի քաղաքական կեանքից։ Աւստրիան մի բռնակալ պետութիւն էր։ 1859 և 1866 թուականների պատերազմները, որոնց մէջ նա յաղթվեց, այն հարուածներն էին, որոնք ուշքի բերին այդ բռնակալութիւնը և նա դարձաւ ազատամիտ, սահմանադրական պետութիւն։ Հիւսիսային Ամերիկան պատերազմ սկսեց Հարաւայինի դէմ,

որովհետև վերջինս չէր ուզում լսել անգամ նեգրների ազատութեան մասին։ Պատերազմը ահաւոր էր, յամառ, արիւնահեղ։ Հարաւը սաստիկ պարտութիւն կրեց և այդ ահեղ հարուածի ազդեցութեան տակ յայտարարեց հաւասարութիւն նեգրների և սպիտակների իրաւունքների մէջ։ Բայց աւելի խրատականը նորագոյն, թարմ օրինակն էր։ Մինչև պրուսական պատերազմը Ֆրանսիան իրան անսխալական էր համարում քաղաքական գործերի մէջ. իր զօրքը, իր զօրավարներին անյաղթելի էր կարծում։ Ազգային սնափառութիւնը այն աստիճան զարգացած էր, որ ամէն բանի մէջ Ֆրանսիան բոլոր ազգերից բարձր էր համարում իրան. նրա համար կատարեալ էր իր ժողովրդական դպրոցը, գրականութեան մէջ նա միայն իրան էր ճանաչում, իր երկրի երևոյթներն էր ուսումնասիրում, ապարդիւն և ամօթ համարելով ուրիշ երկիրների գիտութիւնից և գրականութիւնից, ուրիշ ազգերի փորձից օգուտ քաղելը։ Եկաւ սարսափելի պատերազմը, Ֆրանսիան չարաչար յաղթվեց, սոսկալի ցընցումների ենթարկվեց։ Այդ հարուածից նա սկսեց կերպարանափոխվել. մտցրեց հանրապետութիւն, սկսեց դասեր առնել ուրիշ ազգերից, բուժել իր ներքին ցաւերը։

Ազգերի վերաբերմամբ այս անսխալ օրէնքը անսխալ է հասարակութեան առանձին դասերի վերաբերմամբ։ «Ինչպէս մի տէրութիւն դառնում է առաջադէմ, վերանորոգում է իրան, ազատում է ստրուկներին,— երբ պատերազմի մէջ յաղթված է լինում, երբ սաստիկ հարուած է ստանում, այնպէս էլ ժողովրդի մի ամբողջ դաս դառնում է ազատամիտ, դիմում է անկախ աշխատանքին,—երբ կորցնում է իր հնադարեան իրաւունքները»։

Թողնելով ընդհանուր մտքերը, մի հայեացք գցենք մեր հայ կեանքի ներքին գործերի վրա. այստեղ էլ միևնոյն երևոյթը կը տեսնենք։ «Ամեն բան անշարժ է մեզանում. մեր օրագրութիւնը ննջում է քաղցր քնով, ուսումը հին, փտած մեթօդով է դաս տվվում. բարձր ուսման երիտասարդները քանի մի տարի է որ վերադարձել են հայրենիքը, բայց չեն մտածում ժողովվել, մի խումբ կազմել, օրագիր հրատարակել։ Մի տարի առաջ յայտնում են թէ խմբագրութիւն են կազմել,—բայց ոչ մի խթան չունենալով,— կրկին խմբագրութիւնը քանդվում է և նոքա, որոնք խոստացել են ժողովրդին լուսաւորել, իրանց համար հանգիստ նստում են պանդոկներում և սկսում են թուղթ խաղալ»։

***Խթան չը կայ, սթափեցնող հարուած չը կայ։ Եւ Արծրունին չարունակում է.***

Ինձ *թւում է թէ մի տեսակ մարդիկներից յետագայ խօսքեր եմ լսում. «Մենք անշարժ ենք, մենք հանգիստ ենք, որովհետեւ մեզ հանգիստ են թողնում։ Բայց լինէք խթան մեզ համար, յարձակվեցէք մեզ վերա, հայհոյեցէք մեզ,—եւ մենք գործ կը շինենք։ Հայհոյեցէք մեզ,—մենք ուսումնարան կը հիմնենք, յարձակվեցէք մեր պակասութիւնների վերա,—եւ մենք խմբագրութիւն կը կազմենք, եւ լրագիր կը հրատարակենք։*

*Մեր հասարակութեան մէջ երկու անշարժ տարրեր կան, որոնք պահանջում են խթան. մեր ծերերը, եւ մեր պառաւ երիտասարդութիւնը։*

*Ցաւալի է խոստովանել, որ մարդկային հասարակութեան մէջ կան երեւոյթներ, որոնց մէջ շարժում առաջացնել կարելի է միայն բարոյական մտրակի ազդեցութեամբ։*

*Մի հիմնարկութիւն կայ միայն աշխարհիս երեսին, որի դէմ անզօր են ամեն տեսակ բարոյական մտրակները,—այդ Հռոմի անսխալական պապի իշխանութիւնն է։*

*Աշխատենք երբէք չնմանիլ նորան։*

***Ցաւալի է խոստովանել որ բարոյական մտրակի ազդեցութեամբ է շարժում առաջանում։ Եւ Գրիգոր Արծրունին երկու համարից յետոյ ստիպված էր մի այդպիսի ցաւալի խոստովանութիւն անել։ «Ի՞նչ անենք»***

(№ 18) հարցնում է նա։—Ցարձակվում ենք երխտասարդութեան վրա, ասում են թէ բաւական է որքան յարձակվեցաք. գրում ենք ուրիշ նիւթերի վրա,—չեն կարդում։

Նա բերում է «Մշակի» պատմութիւնը, իր պատմութիւնը։ «Հայկական Աշխարհի» մէջ 1870-ին տպված իր տպաւորութիւնները, ինչպէս գիտենք, ունէին մի կէտ։ Բարձր ուսում ստացածներից մէկը ասել էր Արծրունուն. «Ի՞նչ նպատակով էք դուք հայերէն գրում. ստորին ժողովուրդը հայերէն չը գիտէ, իսկ մենք, բարձր ուսում ստացածներս, հարկաւորութիւն չունենք ձեր գրուածքները կարդալու, որովհետև ինչ որ դուք գիտէք, մենք էլ գիտենք, դուք մեզ նոր բան սովորեցնել չէք կարող։ Բայց եթէ մենք նոր բան սովորել կը կամենանք,—կը դիմենք ուրիշ լեզուներով հրատարակվող գրքերին և լրագիրներին»։

Հայ գրողը, ասում է Արծրունին, յուսահատվեց, կամենում էր թողնել գրելը, սկսեց համոզվել թէ ինքը խելագարված է։ Միւս կողմից էլ հայ խմբագիրներն ասում էին. «Դու իզուր նեղութիւն ես քաշում յօդուածներ գրելու, որովհետև նոր բան ասել չես կարող. բոլորը արդէն ասվեցաւ. «Հիւսիսափայլ», «Կռունկ» և «Մեղու» ամեն բան

ասացին, ամեն բան գրեցին. ուրեմն քո գրվածները կրկնութիւն կը լինեն։

Հայ գրողը սպասեց, ձանձրացաւ հասարակութեան հետ, մտածեց։ Եւ հասկացաւ որ գուցէ նա խելագարված չէ, որ գուցէ նոր բաներ էլ ասել կարելի է. նա իմացաւ որ երիտասարդութիւնը, որը պարծենում է թէ ամեն բան գիտէ, ոչ թէ միայն հայերէն չէ կարդում, բայց եւ առհասարակ չէ կարդում։ Եւրոպական լեզուները նորա մեծ մասին այնքան ձանձրացնող են, որքան մեզ չինական լեզուն. միակ լեզուն, որին նա հմուտ է,—ռուսերէնն է, եւ այդ լեզվով էլ բարձր ուսում ստացածները երբէք բան չեն կարդում...

Սպասեցէ՛ք... ասաց գրողը, որի գլխումը յանկարծ ծնվեցաւ մի նոր միտք։ Դուք ասում էք թէ հարկաւորութիւն չունէք կարդալու, որովհետեւ ամեն բան գիտէք, եւ այդ ճշմարտութեան մէջ համոզված լինելով, բոլորովին ոչինչ եւ ոչ մի լեզվով չէք կարդում... սպասեցէք, ես ձեզ կը ստիպեմ կարդալ... ես ձեզ կը նկարագրեմ յօդուածներիս մէջ, ձեզ, որ երեւում էք անսատչելի, անսխալական, որ ձեր անշարժութեան մէջ մնալով ձեր սեփական աչքի եւ հասարակութեան առաջ կատարեալ էիք երեւում... ես ձեզ կը ստիպեմ կարդալ...։

Գրողը սկսեց նկարագրել երիտասարդութիւնը, և սկսեցին կարդալ այդ յօդուածները։ Բայց գտնվեցան մարդիկ, որոնք ասացին. «բաւական է յարձակվել երիտասարդութեան վրա. գրեցէք ուրիշ բաների մա-

*սին»։ Գրողը թողեց իր յարձակումները, սկսեց գրել տնտեսական հարցերի մասին։ Բայց երիտասարդութիւնը հասկանում է իր պարտաւորութիւնները։ «Կարելի է յուսալ, որ նա կը կարդայ այնպիսի յօդուածներ, որտեղից իր մտաւոր զարգացման համար օգուտ քաղելով, նա կը բաւականանայ սառն դատողութիւններով, և երեխայի պէս չի ըսպասի մի այնպիսի գրված, որ լինէր խթան՝ ընթերցասիրելու համար»։*

*«Մշակը» արդէն տուել էր մի շարք յօդուածներ, ուր արծարծվում էին տնտեսական, գիւղացական և այլ հարցեր։ Կարդացի՞ն այդ յօդուածները։—Ոչ։ «Ուրեմն գրողը չէ սխալվել... Մինչև որ նոցա վերա չը յարձակվէք,—նոքա չեն կարդայ»։ Ստեղծվում է մի դրութիւն, որ այսպէս է ձևակերպում Արծրունին.*

Գրենք նոցա դէմ,—աղաղակում են...

Չը գրենք նոցա դէմ, այլ ուրիշ նիւթի վերա խօսենք,—չեն կարդում։

Հիմի ինչ անենք։

*Մնում էր անել երկուսն էլ. թէ յարձակվել և թէ գրել ուրիշ նիւթերի վրա։ Մենք առ այժմ յարձակումներին ենք հետևում, ուստի դեռ թողնենք ուրիշ նիւթերը։ Ցար-*

*ձակվել և չարունակ մի կէտի, մի դասակարգի, միայն երիտասարդութեան վրա յարձակվել, արդեօք միակողմանիութիւն չէ՞ր սա, անարդարութիւն չէ՞ր։ Արծրունին, ի հարկէ, այդպիսի բան չէր անի։ Նրա յարձակումների առարկան միայն երիտասարդութիւնը չէր։ Ահա ինչպէս է նա սկսում «Ո՞վ մնաց» առաջնորդողը* (№ 24).

Երբ «Մշակի» մէջ հրատարակվեցաւ յօդվածների մի շարք, որտեղ քննութեան տակ էր ձգվում մեր ուսեալ երիտասարդութիւնը,—գուցէ շատերը ուրախացան, մանաւանդ ն ո ք ա, որոնք պատկանում էին հին սերունդին...

Երիտասարդները աղաղակեցին, իսկ ծերերը անչափ բաւական էին, որովհետեւ չէին սպասում, որ կը գայ նոցա հերթը։

Հերթը հասաւ եւ նոցա։

*Եւ իրաւ, հին սերունդը պակաս չէր հալածվում Արծրունու գրչից։ Այն իսկ յօդուածներում, որոնք ուղղված էին անպատրաստ երիտասարդութեան դէմ, հին սերունդն էլ ենթարկվում էր նոյնքան անողորմ դատապարտութեան (օրինակ, «Երիտասարդներին խրատ» յօդուածում)։ Բայց կան յատկապէս այդ սերունդի համար գրված յօդուածներ էլ։ Այսպէս, «Նոքա» յօդուածում* (№ 12) *նա նորից յարձակվում է ծնողական բռնութեան*

վրա, որի մասին այնքան շատ գրել էր և «Հայկական «Աշխարհում»: Գլխաւորապէս ի նկատի են առնվում այդտեղ այն ծնողները, որոնք բարձր ուսում են տալիս իրանց որդիներին և յետոյ զարմանում են, վրդովվում են որ որդիները իրանց պէս չեն մտածում.

«Ի՞նչ... ես քեզ դաստիարակեցի, ես քեզ կրթութիւն տուեցի, ասում են նոքա, ես քեզ համար չխնայեցի իմ դրամը, ես կարելի է զրկվեցայ իմ անձի համար անհրաժեշտ միջոցներից,—և. դու համարձակվում ես իմ պէս չմտածել, իմ պէս չխօսել, աշխարհի բոլոր երևոյթների վերա ինձ նման հայեացքներ չունենալ... Ես քեզ օտար երկիրներ ուղարկեցի իմ փողովս, իսկ դու իմ գաղափարները չես հաւանում, ինձ հակառակում ես...»:

Տարօրինակ երևոյթ: Նրանք պատճառ են դարձել, որ իրանց որդիները կրթվեն օտար, հեռու տեղերում, ազատամիտ շրջաններում դաստիարակվեն և ապա զարմանում են որ իրանց որդիները ազատամիտ, առաջադէմ դուրս եկան: Նրանք վրդովվում են որ երիտասարդը լուսաւորվեց, սկսում են հալածել նրան, աշխատում են ոչնչացնել նրա մէջ ամեն մի լուսաւոր միտք: Եթէ այդպէս է, էլ ինչո՞ւ են ուղարկում իրանց որդիներին

լուսաւորվելու։ Աւելի լաւ չէր լինի, աւելի հետեւողական չէր լինի զրկել նրանց ուսումից, թողնել անշարժ ու անկիրթ։

Ո՛չ, այդպէս էլ չեն կարող անել ծնողները։ Ես ուրիշների առաջ պիտի ցոյց տամ թէ սիրում եմ լուսաւորութիւնը, թէ հասկանում եմ ուսման կարեւորութիւնը, պաշտում եմ գիտութիւնը, առաջադէմ եմ, ուստի և ուղարկում եմ իմ որդիներին արտասահման կամ Ռուսաստան։ Իսկ տան մէջ ինձ տեսնող չը կայ. այնտեղ ես կեղծելու կարիք չունեմ, հարկաւոր չէ որ ես երեւամ այն, ինչ որ չեմ... ես կարող եմ այնտեղ բռնաւոր լինել, հալածել, ճնշել, ատել նորութիւնը։

Դուրսը ես ազատամիտ եմ,—տանը բռնաւոր, դուրսը առաջադէմ եմ,—տանը հնամոլ, դուրսը ես բողոքում եմ ըստ սկզբին ամէն բռնաւորութեան դէմ, —տանը ճնշում եմ, հալածում եմ, ոչնչացնում եմ, մեռցնում եմ ինձ շրջապատող կեանքը։ Դուրսը ես համբերող եմ դէպի ամեն համոզմունք—տանը միակ համոզմունքը, որ ճանաչում եմ,—իմ սեպհական համոզմունքս է... Տանը ոչ ոք չէ տեսնում մեզ... ուրեմն հալածենք, ճնշենք, բռնադատենք, հայհոյենք, անձնապաշտ լինենք մինչեւ խելագարութիւն, հռոմէական պապի պէս տանք մեր ոտները պաչ անելու... ամեն անհատական միտք ոտնակոխ անենք... մեզ ոչ ոք չէ տեսնում,—մենք տանն ենք։

*Բայց ահա հին սերունդը ասում է. դու հերքեցիր ամեն բան, գոնէ պատուիր մի բան, այն է անցեալը։*

Դուք մեզանից պահանջում էք պատիւ դէպի անցեալը, պատասխանում եմ ես... Շատ գեղեցիկ... Ուրեմն տուեցէք մեզ իրաւունք ձեզանից պահանջել պատիւ դէպի ապագան։

Անցեալը նոցա էր պատկանում, նոքա էին կառավարում հասարակութիւնը, նոքա էին ուղղութիւն տալիս հասարակական կարծիքին, նոքա էին խաղում գլխաւոր դեր, նոքա էին գործող անձինք։ Բայց անցեալը անցաւ։ Ապագան մեզ է պատկանում։...Նոքա պատիւ են պահանջում իրանց համար,—որովհետեւ նոքա անցեալ են.—իսկ մենք պատիւ ենք պահանջում մեզ համար,—որովհետեւ մենք ապագայ ենք։

Ինչ կամենան ասեն, ինչ կամենան անեն,—ապագան մեզ է պատկանում։ Նոքա մեր ձեռքերից չեն կարող խլել նորան։ Նա մեզ է պատկանում իր բոլոր առաջադէմ ձգտումներով, իր իրաւունքներով...

Այդ իրաւունքներից մինը պիտի լինի եւ այն, որ մենք նոցա ամեն արած գործերը պիտի քննադատենք, օգուտ քաղելով թէ նոցա պակասութիւններից, թէ արած սխալներից, որ կարողանանք նոցա ենթարկելու ապագայ սերունդների հասարակական դատաստանին։

*Ահա մի քանի գծեր էլ հայի բնաւորութիւնից, նկարագրված «Անընդունակութեան Հերոսներ» առաջնորդողում։ Այստեղ Արծ-*

բունին մտրակում է մի խակ որ անճոռնի աշխարհայեցողութիւն։ Գրողը քննում է զանազան հարցեր, այսօր նա մի մանկավարժական պահանջ է առաջարկում, վաղը քաղաքական դրութիւնն է քննադատում կամ մի տնտեսական-առևտրական հարց է դնում։ Միթէ կարելի է ասել թէ գրողը դրանով նպատակ ունի մանկավարժ դառնալ, քաղաքական դիրք բռնել կամ պաշտօն ստանալ։ Մեզանում այդպէս են դատում։ Բայց միթէ մեղք է որ մի մարդ, ընդունակութիւն ցոյց տալով մի բանի մէջ, առաջանայ, ստանձնէ այդ գործի ղեկավարութիւնը։ Այդ էլ չի լինի մեր մէջ։ Իւրաքանչիւր ազգ իր յատկութիւնն ունի. բայց կայ մի ընդհանուր յատկութիւն, որ բոլոր ազգերն ունեն, այն է՝ պարծենալ իրանց փոքր ի շատէ յայտնի մարդիկներով, ուրախանալ իրանց հասարակութեան մէջ յայտնվող առաջադիմութեան նրշոյլներով։ Միայն մի ազգ կայ, որ այդ յատկութիւնից զուրկ է և դա հայ ազգն է։

Մեր ազգի մէջ մի որևէ բանով յայտնվել, նշանակում է անհաճելի լինել իր հայրենակիցներին։ Իւրաքանչիւր հայը իր *անձնական թշնամի* է *համարում* այն հայրենակցին, որը հասարակական գործունէութեան ասպարէզի մի որևէ ճիւղի մէջ յայտնվում է։

*Ինչո՞ւ է այսպէս։ Ամեն էակ, տգէտ թէ լուսաւորված, գոյութեան կռիւ է մղում։ Լուսաւորվածը կռւում է կատարելագործելով իր անձը, յարմարվելով ժամանակի պահանջին և առաջադիմութեան ընթացքին։ Տգէտը այդպէս չէ կարող անել, մինչև որ չը լուսաւորվի։ Իսկ մնալով տգէտ, նա միայն մի կերպով կարող է գոյութեան կռիւ մղել, այն է արգելելով ուրիշներին առաջ գնալու։*

Եթէ ես ինքս միջոց եւ ընդունակութիւն չունիմ առաջ գնալու,—ես գոնէ կարգելեմ ուրիշի առաջադիմութիւնը։ Սա ինձ համար կենսական խնդիրն է։

Ես ընդունակ չեմ առաջ գնալու, փոխվելու, կատարելագործվելու,—բայց ինձ հարկաւոր է դարձեալ ապրել, ինձ հարկաւոր է ուտել, խմել... Թուղթ խաղալ... Իսկ այժմեան ժամանակը պահանջում է, որ ես միայն այն պայմանով ապրեմ, որ կարողանամ փոխվել, կատարելագործվել, աշխատել։

Բայց այս բոլորը ես չեմ կարող անել,—ուրեմն պիտի զրկվեմ ապրելու իրաւունքից, կտոր հացից... Թուղթ խաղալու սովորութիւնից...

Հետեւապէս ես պիտի ատեմ այն մարդին, որը ինձ առաջարկում է վերանորոգութիւն, դէպի կատարելագործութեան ձգտումը,—կամ այն մարդին, որը ինձ առաջարկում է մի ն ո ր մ ի տ ք։ Այսպիսի մարդին ես պիտի համարեմ իմ անձնական թշնամի։

Ինձ առաջարկում էք փոխվել, իսկ ես չեմ կարող փոխվել։ Ուրեմն, եթէ չը փոխվեմ, պիտի ձեզ տամ իմ տեղը հասարակութեան մէջ, պիտի զրկվեմ ապրելու իրաւունքից...

Բայց բնութեան օրէնքի համեմատ, ես պիտի կռւեմ գոյութեանս համար... Ուրիշ միջոց չը կայ... Ես ոչ թէ միայն պիտի ատեմ,—այլ եւ պիտի մնասեմ առաջադիմութիւն քարոզող մարդին, այն ատելի առաջադիմութիւնը... որը ինձ համար անհասանելի է...

Այդ դիմադրութեան, այդ ատելութեան մէջ հայը հերոսութեան կարող է հասնել։ Բայց ի՞նչ տեսակ հերոս է նա։—Անընդունակութեան հերոս։

Այդպէս ահա, Արծրունին միայն երիտասարդութեան դէմ չէր արշաւանք սկսել։ Նա հարուածում էր և միւս դասակարգերը։ Ի՞նչ էր դուրս գալիս։—Դուրս էր գալիս որ նա հայութեան մէջ ոչինչ լաւ բան չէր գտնում։ Այդ հարցումն է նա զբաղվում վերոյիշեալ «Ո՞վ մնաց» յօդուածում, յօդուած, որ Արծրունու լաւագոյն գրուածներից մէկն է և որի հետ արժէ շատ մօտիկուց ծանօթանալ։

Երբ հարուածում էինք երիտասարդութիւնը—ասում է նա,—ուրախանում էր հին սերունդը։ Բայց երբ հերթը հասաւ և հին սերունդին, երբ նրա պակասութիւններն էլ անողորմ կերպով սկսեցինք մերկացնել, լսվեցին նրա կողմից ձայներ. «Երիտասարդութեան վրա յարձակվել շատ բնական է, որովհետև նա մի բան չէ. բայց նրա վրա յար-

ձակվելուց յետոյ մեզ վրա էլ յարձակվել, ոչինչ չը ճանաչել, ամեն բան հերքել... Թէ հներին և թէ նորերին քննադատել... Էլ ով մնաց։ Միևնոյն կերպով դատում է և երիտասարդութիւնը։ «Մերերի անպիտանութիւնը ցոյց տալ,—այդ հասկանալի է, բայց մեզ էլ բանի տեղ չը դնել... Էլ ով մնաց», ասում է նա։

Ո՞վ մնաց։ Անհամ այս հարցը փայլուն կերպով վերլուծում է Արծրունին, բացատրելով նախ և առաջ թէ ովքեր են այդպէս ասողները։

Երբ իր պատմական ընթացքում հայը զանազան անաջողութիւնները եւ չարչարանքները կրելուց յետոյ, մահմետական տարրի անողորմ եւ բարբարոս բռնաւորութեան ձեռքից վերջին հարուածը ստանալուց յետոյ կորցրեց մինչեւ անգամ իր մայրենի հողի վերա ապրելու իրաւունքը,—նա սկսեց խմբովին գաղթել զանազան ուրիշ երկիրները։ Նա, որ մնում էր իր հայրենիքում, ստրկանում էր եւ բթամտանում էր մահմետական ազդեցութեան տակ,—նա որ գաղթում էր թոյլ եւ անպաշտպան օտարութեան մէջ, բնականապէս ընտելանում էր այն ոգուն, որ յատկանիշ է դժբախտութեան մէջ մեծացած եւ զանազան հալածմունքներին ենթարկված գաղթական մարդիկներին։

Հայրենիքում մնացողները, ճիշտ է, մահմեդական լուծի տակ ճնշված էին, բայց

դարձեալ իրանց մայրենի հողի վրա և իրանց հասարակութեան մէջ էին ապրում, ուստի պահեցին մի թանկագին յատկութիւն—հասարակական ոգի։ Նրանք ստրկանում էին, այդ ճշմարիտ է, բայց վիճակը ամենքի համար մի էր. Նրանք իրանց հայրենիքի և հայրենակիցների հետ կապված մնալով, բաժանում էին ընդհանուր վիճակը, ընդհանուր դժբախտութիւնը։

Իսկ գաղթականը, որ փախչում է ստրկութիւնից եւ հալածանքներից, բնականապէս կռւում է իր գոյութեան համար։ Նա մտածում է միայն իր անձի վերա, նա հոգում է միայն իր մասին։ Նորան պակաս է ուրեմն քաղաքացու գլխաւոր յատկութիւնը—հասարակական ոգին։ Նա դառնում է եսական, փոյթ չէ նորա համար իր նմանների դրութիւնը, իր հայրենակիցների վիճակը։ Նա նոցանից փախչում է, որ փրկէ իր անձը։ Նա իր հայրենիքից միայն իր ընտանիքը իր հետ է առնում։ Այդ է պատճառ, որ հրէաների, հայերի, յոյների եւ ապա նման գաղթականների մօտ հայրենիքը նշանակութիւն չունի, իսկ ընտանիքը մեծ դեր է խաղում։

Դէպի իր հայրենակիցները նա բնականապէս դառնում է անտարբեր, նա կորցնում է հասարակական ոգի. դէպի օտարները, որոնք արհամարհում են նորան, նա դառնում է խոնարհ, պահելով հայրենիքից իր հետ դուրս բերած ստրկային յատկութիւնը եւ իրան անպաշտպան գտնելով օտարութեան մէջ։ Նորան ամեն տեղ արհամարհում են,—նա էլ

փոքր առ փոքր ընտելանում է այն համոզմունքին թէ նա արհամարհելի է... Նա սկսում է իրան արհամարհել։ Նա սկսում է հասկանալ թէ նշանակութեանը հասնելու համար մի միջոց կայ միայն,— այն է փող, հարստութիւն հաւաքելը։ Հետեւապէս նորան ամեն միջոցները ներելի են հարստութեանը հասնելու համար։

Լաւ հասկանալով, որ նա արհամարհելի է, նա սկսում է արհամարհել, ատել այն մնացած երեւոյթները, որոնք չեն տանում դէպի հարստութիւն։ Նա արհամարհելի է, նա այդ գիտէ, բայց նորա պատմութիւնն էլ, նորա մայրենի լեզուն էլ արհամարհելի են օտարների համար,—եւ նա ինքն սկսում է իր բոլոր աւանդութիւնները, իր բարոյական՝ գանձը ատելով ատել...

Միակ բան, որին նա հաւատարիմ է մնում, այդ կրօնական-եկեղեցական աւանդութիւններն են եւ այն էլ ոչ թէ հասկանալով կրօնի նշանակութիւնը, ոչ թէ գնահատելով աստուածպաշտութիւնը,— այլ այն պատճառով, որ նորան տիրում է դժոխքի երկիւղը, յաւիտենական պատիժների սարսափը...

Ոտքից մինչեւ գլուխը նա դառնում է ստրուկ, բոլոր ստրկային յատկութիւններով, նա դառնում է, ինչպէս ամեն ստրուկները, բռնաւոր տան մէջ, ճընշում է կնոջը, սպանում է բարոյապէս երեխաներին։

Երեխաները մեծանում են միեւնոյն ազդեցութեան տակ։ Իրանց ծնողների մէջ նոքա տեսնում են յետնագայ օրինակ. խոնարհ զօրեղների առաջ, յանդուգն ստորադրեալների հետ։ Նոքա նկատում են որ հայրը եւ մայրը արհամարհում են այն ամեն բաները, որոնց արհամարհում են եւ օտարները... հայրը եւ մայրը ամօթ են համարում, հալածում են

անգամ երեխաներին, եթէ սոքա իրանց մայրենի լեզվով են խօսում իրանց մէջ եւ երեխաները ընտելանում են այդ արհամարհական զգացմունքներին դէպի իրանց մայրենի լեզուն։ Ծնողները ատում են եւ ցնորք են համարում ամեն հասարակական յատկութիւն, ամեն աշխատանք, որ նպատակ չունի անմիջապէս նիւթական հարստութեան հասնելու,—եւ երեխաները դառնում են եսական։ Ծնողները ինքնասէր են, անձնապաշտ են, բռնաւոր են, անհամբերող են, մոլեռանդ են,—եւ երեխաները միեւնոյն են դառնում...

Առաջ տանելով այդ նմանութեան կէտերի քննութիւնը, Արծրունին համարեա ոչինչ զանազանութիւն չէ գտնում ծնողների և որդիների, նոյն իսկ բարձր ուսում ստացած որդիների մէջ. նոյն անհամբերողութիւնը դէպի ուրիշների անհատական համոզմունքը, նոյն ստրկական յատկութիւնը—խոնարհ լինել զօրութեան առաջ և յանդուգն՝ ստորադրեալների հետ։ «Ճշմարիտ է,—ասում է նա,—կարծես թէ որդիները այնքան չեն ամաչում իրանց ազգութիւնից, իրանց մայրենի լեզուից, որքան ծնողները.—բայց այդ զգացմունքը անցաւոր է և ժամանակաւոր։ Այդ լինում է մինչև այն ժամանակ, երբ երիտասարդը կարողանում է հասնել նիւթական ապահովութեանը կամ պաշտօնին։ Մի անգամ հասած լինելով,—նա սկսում է հալա-

*ծել իր ընտանիքի մէջ իր մայրենի լեզուն, —սարկային զգացմունքը իրն է առնում»։*

*Եւ այս բոլորից յետոյ եղբակացութիւնը ինքն ըստ ինքեան է գալիս։ Ահա ինչ եզրակացութիւն. . .*

Ինչի այդ կեղծաւոր Թշնամութիւնը, ում էք խաբում։ Դուք երիտասարդները եւ դուք ծերերը մի էք... ինչ իրաւունքով ծերերը արհամարհանքով խօսում են երիտասարդների մասին, կամ ինչի երիտասարդները յարձակվում են ծերերի վիրա։ Դուք մի տարր էք։ Հաշտվեցէք միմեանց հետ, գրկեցէք սիրով միմեանց։ Ձեր ուղղութիւնը մի է, ձեր նպատակները մի պիտի լինին։ Ձեռք ձեռքին տուեցէք, եւ փոխադարձ օգնութեամբ հալածեցէք ամեն նոր, լուսաւոր անհատական, ազատ երեւոյթ...

*Բայց այս վճիռը յուզիչ է։ Ամեն կողմից աղաղակ, բողոք է լսվում. «Դուք ինքներդ ով էք... դուք, որ հերքում էք ամեն բան։ Հինները ոչինչ, նորերը ոչինչ... էլ ով մնաց»։*

*Ո՞վ մնաց։ Եւ Արծրունին պատասխանում է.*

*—Մնաց ժողովուրդը։*

*—Միթէ մենք ժողովուրդ չենք, բողոքում են երկու կողմից ծերերը և երիտասարդները։—Միթէ մենք նոյն ժողովրդի կազմող մասերը չենք. միթէ մեզանից, այսինքն ծե-*

րերից և երիտասարդներից դուրս կայ դար-
ձեալ ժողովուրդ։

—Ոչ թէ միայն ձեզանից դուրս կայ ժո-
ղովուրդ, բայց դուք, որ ձեզ ժողովրդի կազ-
մող մասեր էք անուանում, մեր ժողովրդի
թէ պատմական ընթացքին, թէ նորա արդ-
եան պահանջներին նայելով, արուեստական,
խորթ արդիւնք էք, օտարոտի ծնունդ էք։

Ահա մի ամբողջական աշխարհայեցողու-
թիւն, ահա Արծրունու համակրութիւնների
և հակակրութիւնների խտացումը։ Իզուր
էին կարծում թէ այդ նոր, անհանգիստ,
կրակոտ մարդը մեր կեանքի մէջ միայն
հերքողի, միայն ոչնչացնողի դեր է ու-
զում կատարել։ Ո'չ, նա ունէր մի անչափ
մեծ, բարձր ու վեհ պաշտամունք—ժողո-
վուրդը։ Այս անունը չը կար մեզանում. ժո-
ղովուրդը մոռացված էր, կորած էր։ Եւ Արծ-
րունին դէն է քշում «արուեստական, խորթ
արդիւնքները», «օտարոտի ծնունդները», որ-
պէս զի առաջ գնայ այդ մոռացված, մութի
մէջ նստած մեծութիւնը։ Դեռ իր ուսանո-
ղութեան ժամանակ նա անդադար կրկնում
էր. ժողովուրդ, ժողովրդի օգուտ։ Այժմ, հա-
սարակական կարծիքի ղեկավարը հանդիսա-
նալով, նա իր առաջին քայլերից անողորմ
պատերազմ է հրատարակում այն դասակար-

գերի դէմ, որոնք այնքան անհիմն կերպով ժողովուրդ էին իրանց անուանում, մինչդեռ իսկապէս նրանք բուն ժողովրդի ցաւերն էին կազմում։ Հարուածել այդ դասակարգերը նշանակում էր — գոնէ այդպէս էին ուզում հարուածվողները — ոչինչ համարել ամբողջ հայութիւնը. չը տեսնել այդ ծոցի մէջ ոչինչ դրական, ոչինչ յուսատու բան։ Բայց Արծրունին ասում էր. ոչ, հայութիւնը դուք չէք. կայ ժողովուրդ, տգէտ, անօգնական, նախապաշարված ժողովուրդ, որ սակայն հասարակութիւն կազմելու, գիտակցութեան հասնելու բոլոր գրաւականներն ունի, իբրև հողի տէր, մայրենի լեզուն սրբութեամբ պահող մի բազմութիւն։ Աշխատենք նրա համար։ Դա դժուար, ծանր աշխատութիւն է, բայց նրանից դուրս չը կայ կենդանի գործ։ Մեռած ու փչացած տարրերի համար չարժէ աշխատել...



Այս խիստ արշաւանքը պիտի առաջ բերէր դիմադրութիւն։ Կանոնաւոր կերպով, անընդհատ ամբակածութեան ենթարկվող «անընդունակութեան հերոսները», այդ «պառաւ երիտասարդութիւնը» և հին սերունդը կամ պիտի ծածկվէին ծաղրի, սուր սլաքների տա-

րափի տակ, կամ պիտի ցոյց տային որ իրանք էլ գիտեն խօսել, հերքել, ծաղրել։ Լուռ ու անտարբեր չը մնացին ծեծվողները։ Նրանք հրապարակ դուրս եկան և Արծրունու աստղը աւելի եւս պայծառացաւ. Երիտասարդ հրապարակախօսը այլ եւս անապատում ձայնող չէր։ Ինչի՞ նման կը լինէր, եթէ նա տըպագրական խօսքի մենաշնորհը վայելէր, եթէ նա չարունակ յարձակվէր, չունենալով իր առջևը դիմադրողներ, հարուածները յետ դարձնողներ։ Դիմադրելու անհրաժեշտութիւնը բաց է անում Արծրունու առաջ մի այլ ասպարէզ—պօլէմիկա, բանակռիւ։ Յարձակվել և պաշտպանվել, վէրք հասցնել և թոյլ չը տալ որ դիմացինը վէրք տայ.—ճակատամարտը կատարեալ է և այդ մուխի մէջ կազմակերպվում, ամրանում է Արծրունին, այսպէս ասած՝ պողվատվում է։

Ի՞նչ արաւ դիմադրելու անհրաժեշտութիւնը։

Նա գերեզմանից հանեց «Մեղու Հայաստանի» լրագիրը և ոտքի կանգնեցրեց նրան։ Անբաւականութիւնը Արծրունու դէմ միայն դրսում չը սկսվեց։ Նրա խմբագրական ժողովներին հաւաքվողները մի հաւատի և մի համոզմունքի տէր մարդիկ չէին։ Շատերը նրանցից համաձայն չէին որ Արծրունին

այդպէս անխնայ յարձակումներ գործէ. այդ հարուածները, երևի, նրանց էլ էին դիպչում։ Եւ ակամայ խլրտումը, կամ աւելի ճիշտ ասած՝ զատումը «Մշակի». խմբագրութեան յարկի տակ։ Անբաւականները կամաց-կամաց հեռանում էին և խմբվում Պետրոս Սիմէօնեանցի շուրջը. իսկ համակրողները մնում էին։ Րաֆֆիի գրուածքից մենք արդէն գիտենք թէ ովքեր էին մնացողները։ Դիպլոմաւոր երիտասարդութիւնը գնում էր,—նա պիտի գնար, քանի որ Արծրունին այնպէս էր վերաբերվում նրան. մնում էին անդիպլոմները, թերուսները։

«Մշակի» խմբագրութեան այս կերպ վերակազման ճիշտ ժամանակը մենք չենք կարող որոշել։ Պատմողներից ոչ մէկը չէ ասում թէ երբ տեղի ունեցաւ այդ բանը։ Բայց նայելով «Մշակի» թերթերին, մենք պիտի ասենք որ այդ չուն «Մշակից» դէպի «Մեղուն» միանգամից տեղի չունեցաւ, այլ ամենաքիչը «Մշակի» առաջին տարվայ ընթացքում, գուցէ և երկրորդի առաջին կէսում։ Մի մասը հեռացաւ «Մշակի» հէնց առաջին երկու ամիսներում և կենդանացրեց «Մեղուն». մի մասը, որ յետոյ պիտի հեռանար և Գրիգոր Արծրունու երդուեալ թշնամիների շարքը մտնէր, դեռ երևում էր

«Մշակի» մէջ 1872-ի վերջերում։ Չը նայած այս հանգամանքին, մենք հէնց այստեղ, գուցէ և զոհելով ժամանակագրական կարգը, կը դնենք այն պատկերը, որ ցոյց է տալիս թէ ինչեր էին տեղի ունենում «Մշակի» խմբագրական ժողովներում և զատումը ինչպէս կատարվեց։ Ինքը Արծրունին այսպէս է պատմում բոլորը *)։

Անհամաձայնութիւնները ծագում էին, ի հարկէ, հիմնական հարցերի հողի վրա։ Արծրունին համարեա միշտ իր դէմ էր տեսնում խմբագրական ժողովը. միայն Պօղոս Իզմայիլեանն էր, որ միշտ Արծրունու հետ էր լինում։ Եւ ահա մնացածները գոռում էին թէ այդ երկուսը կօսմօպօլիտ են, արմատական են, օտարասէր են, ազգավնաս մարդիկ են։ Վէճեր էին սկսվում Արծրունու համոզմունքների դէմ։ «Ես—ասում է Արծրունին— իմ մտքերը երկար ու բարակ բացատրելուց, ամբողջ դատախօսութիւն կարդալուց յետոյ, երբ տեսնում էի թէ դա ապարդիւն աշխատանք է, ուղղակի ասում էի. «Պարոններ, ես ձեզ մի ժամվայ մէջ չեմ կարող բացատրել այն, ինչ որ սովորելու համար ես գործ եմ դրել իմ կեանքի կէսը, այն, որի վրա

*) «Մշակ», 1890, № 45.

հիմնված են իմ ամենախոր համոզմունքները և որից բղխում են իմ յօդուածները...»: Եւ երբ մի օր ամենքը սկսեցին պահանջել որ Արծրունու առաջնորդողները ենթարկվեն քուէարկութեան և նրանց տպագրելը վճռվի ձայների առաւելութեամբ, Արծրունին հետևեալ պատասխանը տուեց ամենքին. «Եթէ դուք կը փորձէք արգելել ինձ իմ գաղափարներին արտայայտելու, ես ձեր բոլորիդ վըրայով կանցնեմ և դարձեալ կը շարունակեմ իմ գաղափարները յայտնելու»:

Այս յայտարարութիւնը արդէն վճռում էր ամեն ինչ: Արծրունին այնպիսի մարդկանցից չէր, որ ընկճվէր, յետ քաշվէր: Հանգամանքը պահանջում էր և նա առանց տատանվելու ձեռք էր վերցնում իր համակրած սկզբունքից անգամ, խմբովին աշխատելու սկզբունքից: Համակրելի էր, այո, այդ ըսկզբունքը. բայց կարելի՞ էր սեփական խոր համոզմունքները զոհել խմբական սկզբունքին; մանաւանդ երբ պարզ էր, որ խումբը հակառակ է համարեա բոլոր հիմնական գաղափարներին:

«Իմ մորալող, մերկացնող ուղղութիւնը դուք գրեթէ բոլորդ վնասակար էիք համարում,—ասում է Արծրունին.—իմ մաքերը թէ ազգի մէջ կարող են լինել այլ և այլ դա-

ւանութիւնների մարդիկ,—դուք վնասակար էիք համարում. գիւղական փոխատու-խնայողական ընկերութիւնների մասին գրելը և այդ ընկերութիւնների օրինակելի կանոնադրութեան «Մշակում» տպագրելը,—դուք, մանաւանդ դուք, պ. Զմշկեան, օտարամուտ, վնասակար բան էիք համարում և այդ օրը գլխարկները վերցնելով, դուրս էիք եկել ժողովից. վաճառականութեան դէմ յարձակումը և նրա տեղ երկրի ինքնուրոյն արդիւնաբերութեան զարգացումը յորդորելը, դուք գրեթէ խմբովին վնասակար էիք համարում, պնդելով որ հայոց ազգի գոյութիւնը, բացի եկեղեցուց, հիմնված է և վաճառականութեան վրա, և այլն...»։

Ենթադրել անգամ կարելի չէ, որ այսպիսի տարրերից կազմված խմբագրութիւնը կարողանար երկար ու համերաշխ մնալ։ Աւելացնենք այս բոլորի վրա և այն, որ խմբագրութիւնը պահանջեց Արծրունուց դրամական հաշիւները. բայց Արծրունին կտրական կերպով պատասխանեց. «Եթէ ուզում էք որ ես ձեզ հաշիւ տամ «Մշակի» նիւթական օգուտի մասին, ուրեմն բարեհաճեցէք և բաժանել ինձ հետ նիւթական վնասներ էլ, եթէ այդպիսիներ կը լինեն»։ Այդ էլ մի առիթ էր որ տարաձայնութիւնը պատահում

առաջացնել։ Ընկերավարական-խմբակային սկզբունքով գործ առաջ տանելու այս անդրանիկ փորձը հայերի մէջ չաջողվեց։ Մեղադրել որևէ մէկին, ի հարկէ, անհեթեթութիւն կը լինէր. մարդիկ հաւաքվեցին միասին, բայց չը համաձայնվեցան և էլի հեռացան։ Անբընական բան չը կայ այստեղ. և միայն հարց կարող է լինել այն մասին թէ ինչու Արծրունին հէնց սկզբից այնպիսի մարդիկ չը ընտրեց, որոնք կարողանային հաշտվել իր ուղղութեան հետ։ Բայց այս հարցն էլ անտեղի է, եթէ նկատի առնենք այն ժամանակները։ Մեզանում դեռ չը կային որոշ գըրական բանակներ, կուսակցութիւններ։ Կային, ճիշտ է, հատ-հատ առաջաւոր մտածողներ, բայց նրանք կուսակցութիւններ կազմելուց շատ հեռու էին։ «Հիւսիսափայլն» էր սկսել որոշ բանակի հիմք դնել, բայց երկար կեանք չունեցաւ և գրական կուսակցութիւններ չը կազմակերպվեցին։ Արծրունուն էր վերապահված այդ գործը. նա էր, որ հէնց «Մշակի» առաջին տարվանից հիմք դրեց ուղղութիւններով, դաւանանքներով տարբերվող կուսակցութիւնների։ Նրա ղեկավարութեամբ, նրա նախաձեռնութեամբ աշխարհ եկաւ մ շ ա կ ա կ ա ն կուսակցութիւնը։ Դրա հակառակ կուսակցութիւնն էլ

*անուն ստացաւ, երբ վերանորոգվեց «Մեղուն». նա կոչվեց մ ե ղ ո ւ ա կ ա ն։*

*Իր առաջին համարի մէջ, որ լոյս տեսաւ* 1872*-ի մարտի* 4*-ին, երրորդ կերպարանափոխութեան ենթարկվող «Մեղուն», մի ակնարկ գցելով իր անցեալի վրա, ասում էր. «Մեղուն» իւր տասնամեայ ժամանակաշրջանում մտանում է այժմ իւր նոր շրջանը. Նոր ենք ասում, որովհետև նրա բեռն ու ծանրութիւնը, որ մինչև ցայժմ միայն մեր վերայ էր, ընկնում է այսուհետև մի ամբողջ ընկերութեան վերայ, որ անտարակոյս աւելի յաջողութիւն կունենայ թէ ժամանակի հանգամանքների պատճառով և թէ աշխատանքի բաժանմամբ։ Մի խելքը լաւ է, իսկ երկուսը աւելի լաւ, ասում է առածը։ Մինչև ցայժըմ մեր մէջ չէ եղած այսպիսի մի ընկերութիւն. ընկերական հոգին միշտ հեռու է եղած Հայից. ինչ որ անկարող է գործել մի անձն, դիւրին է ընկերութեան համար»։*

*Անկասկած։ Ընկերական կազմակերպութիւնը գոնէ այն առաւելութիւնն ունէր «Մեղուի» վերաբերմամբ, որ լրագիրը յայտնի չափով ապահովված էր, անհամեմատ հարուստ ու բազմակողմանի էր անցեալի հետ համեմատած։ Սակայն մի հարց. որքա՞ն ինքնուրոյնութիւն կար «Մեղուի» ընկերութեան*

մէջ, որքան նա կարողացաւ չարաթաթեր-թին տալ իր ստեղծած տիպը, կերպարանքը։

Նայում ենք վերանորոգված «Մեղուին» և առաջին իսկ հայեացքից երևում է որ դա մի ընդօրինակութիւն է։ Ինքնուրոյնութիւն չէր էլ կարող լինել, քանի որ չարաթաթեր-թը վերստեղծվում էր ամենից առաջ «Մշա-կին» դիմադրելու, նրա նման դեր կատարե-լու համար։ Եւ մենք տեսնում ենք մի շարք նմանութիւններ. նոյն դիրքն ու մեծութիւ-նը, սիւնակների նոյն թիւը. «Մեղուն» էլ նոյնպէս արժէ 7 րուբլի. նոյն իսկ յայտա-րարութիւնների գինը որոշված է «Մշակի» բառերով—«10 միջակ տառերի համար 1 կո-պէկ»։ Այսքանը արտաքինի կողմից.—իսկ ներ-քինը։ Այստեղ էլ պատրաստութիւններ են տեսնված։ Խմբագիր Սիմէօնեանցը առաջնե-րում հազիւ ամիսը, երկու ամիսը մի անգամ էր դուրս գալիս «Բանիցս պատիւ ենք ունե-ցել յայտնելու յարգոյ հասարակութեան» սկիզբ կրող յօդուածներով, այժմ արդէն ստիպված է իւրաքանչիւր համարում գրել առաջնորդող։ Այժմ կան և ուրիշ բաժիններ. «Ազգային» բաժինը ներքին տեսութեան յօ-դուածներ, լուրեր է տալիս. բանասիրական բաժնում այլ ևս երկար ու ձիգ թարգմա-նութիւններ չեն զետեղվում, ինչպէս առաջ,

այլ բազմաթիւ ինքնուրոյն պատկերներ ժողովրդական կեանքից։ Մի խօսքով, «Մեղուի» ընկերութիւնը, որքան էլ ինքնուրոյնութիւնից զուրկ լինէր, բայց աշխատում էր։ Արծրունու գրելու ձևն անգամ ընդօրինակվում է. տեսնում ենք յօդուածներ, բաժանված մանր գլուխների, ինչպէս սիրում էր անել Արծրունին։

Աշխատասիրութիւնը, այո, անուրանալի է։ Հարցը միայն այն է թէ ինչ էր դուրս գալիս այդ աշխատասիրութիւնից։ Գլխաւորը, որի ներշնչողը դարձել հենց էր—Միքայէլեանցը։ Ճիշտ է, նա այժմ շատ էր գրում, ճիշտ է, նիւթեր էր գտնում իր առաջնորդողների համար, բայց աշխատասիրութեամբ տաղանդ չէ ձեռք բերվում. աստուածային կայծը բացակայում էր նրա գրուածքներից և «Մեղուն» իր էութեամբ մնում էր նոյնը, ինչ էր առաջ։ Տաղանդ, աչքի ընկնող ընդունակութիւն չերևաց և խմբագրին շրջապատող մարդկանց մէջ։ Գրողներ էին, գրում էին, նրանց գրուածքները—զարմանալու բան չը կայ սրա մէջ—համապատասխանում էին հասարակութեան մի որոշ մասի տրամադրութեան, հայեացքներին։ Բայց հայկական մտքի մէջ մի յեղաշրջում առաջացնել, մի փոքր ի շատէ աչքի ընկնող շրջան կազ-

մեջ նրանք չէին կարող։ Իբրև ընդդիմադիրներ, նրանք ամենից շատ պիտի սովորէին հերքել իրանց հակառակորդին, ամբողջ ժամանակը վախ յայտնել, հակասութիւններ, ճիշտ չը գործածած բառեր որոնել, պաշտպանել, միշտ պաշտպանել, ինչպէս էլ լինի՝ պաշտպանել մեր աւանդութիւնները, մեր կեցութիւնը ծայրայեղ մտքերից, ազգադաւ կոսմօպօլիտութիւնից, վնասակար ու տնաքանդ ազատամտութիւնից։ Այս նեղ ու մանր հոգսերի, վախերի ու զգուշութիւնների մէջ սովորական, միջակ միտքը չէր կարող ստեղծագործող լինել, լայն ու խոր հայեացքներ ունենալ, յուզել, դիւթել, կրակել և կրակվել։ Եւ մենք տեսնում ենք որ բանակռիւներից, ընդդիմադրութիւնից դուրս «Մեղուն» չափազանց ջրալի է, չափազանց աննշմարելի.

Ընդհարումը սկսվեց իսկոյն, «Մեղուի» հէնց երկրորդ համարից։ Ամենից առաջ արդարանում էր Արծրունու հարուածներին ենթարկված երիտասարդութիւնը։ Եւ արդարանում էր ոչ թէ իր կատարած գործերով, որոնք չը կային էլ, այլ ողորմելի պատճառաբանութիւններով։ Դուք յարձակվում էք ուսում առած երիտասարդի վրա, ասում էք թէ նա փոխանակ գործ կատարելու լօտօ-գամինօ է խաղում։ Բայց գիտէք որ դրա

պատճառը հայ ընտանիքն է։ Հին աւանդութեան հետեւող մեր ընտանեկան կեանքը մեզ չէ ներկայացնում ոչ մի զուարճութիւն, որ նա մեզ համար օտար է, որ նա չէ առաջարկում մեզ մի բարոյական ապաստան։ Յետոյ դուք ծաղրում էք մեր գրողների ճառական ոճը. բայց գիտէ՞ք որ ճառերով, քարոզներով է քրիստոնէութիւնը մտել Հայաստանի մէջ։

Նիօբէն կարճ պատասխան տուեց «վերանորոգվող Մեղուին»։ «Շատ հեշտ է, ասում էր նա, իր պակասութիւններից արդարանալ ուրիշին մեղադրելով։ Ես անշարժ եմ,—բայց ես սեղաւոր չեմ որ անշարժ եմ... ընտանիքն է մեղաւոր... Ընտանիքը մեղաւոր է, որ դուք անշարժ և անգործ էք, դուք այդ խոստովանում էք,—շատ բարի։ Բայց դուք մեղաւոր չէ՞ք արդեօք, եթէ մինչև հիմի չէք մտածել այդ անշարժութեանը ընդդիմադրութիւն անելու, մի ընտանիքի հնացած ուղղութեան դէմ ներգործելու, մեղաւոր չէ՞ք արդեօք, որ նորա անհիւրասիրութիւնը, նորա բարոյական անտարբերութիւնը տեսնելով, դուք չէք մտածել ձեր մէջ մի այնպիսի ընկերութիւն կազմելու, որտեղ դարման տալով ձեր հոգևոր պահանջներին, դուք չբաւականանայիք ձեր մէջ հասարակական կապ

և յարաբերութիւններ պահպանել միայն դօ-
մինօ-լօտօ և Թղթախաղի միջոցով։

Գալով քրիստոնէութիւնը մտցնելուն, Արծրունին կրկնում էր այն հանրածանօթ պատմական փաստը, որ քրիստոնէութիւնը մի երկրի մէջ մտցնողը եղել է ոչ թէ առե-գայի քարոզը, ճառը, այլ գլխաւորապէս այս կամ այն երկրի թագաւորի, իշխանի կամքը, նրա սուրը։ «Մեղուն» չը բաւականացաւ, ի հարկէ. մի կողմ թողնելով ընտանիքի մե-ղաւորութեամբ պաշտպանվելու անաջող փոր-ձը, նա կպաւ քրիստոնէութեան հարցին։ Ա-ռաջին իսկ ընդհարման մէջ «Մեղուն» ցոյց տուեց, որ չէ կարող առանց աղաւաղելու բանակռիւ մղել։ Նա ասաց թէ «Մշակը» յայտնում է որ քրիստոնէութիւնը տարրա-ցրվել, ժողովրդականացրվել է սրի միջոցով, մինչդեռ «Մշակը» խօսել էր այդ կրօնը մի երկրում պաշտօնապէս մտցնելու մասին։ Ի՞նչ հեշտ էր յեղաշրջումներով պատասխանելը։ Նիօբէն գրել էր թէ ճառը, քարոզը չէ մտցրել քրիստոնէութիւնը Հայաստանի մէջ. և իբրև ապացոյց աւելացրել էր. «Մովսէս Խորենա-ցին իր գրուածքներով չէ մտցրել և տարա-ծել քրիստոնէութիւնը, որովհետև նա արդէն մտցրած էր, Եղիշէն երբ գրում էր, Վարդան Մամիկոնեանը իր զօրքով արդէն նահատակ-

ված էր քրիստոնէութեան գաղափարի համար»: Այդ խօսքերը «Մեղուն» կրկնում էր, միայն ուրիշ կերպով. Նիօբէն ասել է թէ Վարդանանց պատերազմը եղել է Եղիշէից և Խորենացուց առաջ, թէ Եղիշէի և Խորենացու գրուածքներն են միայն, որ մարմնացրել են քրիստոնէական գաղափարը:

Դնում ենք այս մանրամասնութիւնները ոչ թէ այն պատճառով, որ մի առանձին կարևորութիւն ենք տալիս այդ բանակռուին. Առաջին ընդհարումն է դա երկու լրագիրների մէջ, սկիզբը այն երկարատև ու յամառ պատերազմի, որ տևեց երկար տարիներ: Մենք ուզում էինք այստեղ իսկ, առաջին քայլում, ցոյց տալ թէ ինչ միջոցներով էին զինվում երկու կողմերը, ինչ հանգամանքների մէջ էր կատարվում ընդհարումը: Այս առաջին բանակռիւը բաւական ընդարձակվեց. մէջ մտան «Մշակի» և «Մեղուի» աշխատակիցները: Մէլիքզադէն (Րաֆֆին) այստեղից սկսեց իր զինակցութիւնը Արծրունու հետ՝ «Մշակի» թշնամիների դէմ կռուելու համար: «Մեղուն» մեծ եռանդ էր ցոյց տալիս. իր № 10-ի հետ նա տուեց մի մեծ յաւելուած, որի մէջ Սենեքերիմ Արծրունին, «Մշակի» խմբից հեռացածներից մէկը, խօսում էր մեր պարբերական մամուլի, բայց

դիմաւորապէս «Մշակի» մասին, քննում էր Արծրունու աշխատակցողները և համարեա ոչ մէկի մէջ չէր գտնում համակրութեան արժանի մի միտք։ Այդ յաւելուածը աւելի ևս սաստկացրեց բանակռիւը. Ինքը, Արծրունին ուղղակի չը պատասխանեց, բայց Զաքուճը գործի դցեց իր ֆելիէտօնական նշտրակները, նոյն իսկ զաւակներից էլ սկսեցին գրել այդ առիթով։ Բանակռւի էութեան մէջ չենք մտնում, որովհետև «Մեղուի» յաւելուածը թէև մեծ էր, բայց իմաստի, փաստերի կողմից շատ աղքատ էր *)։

Բայց մենք կանգ կառնենք մի ուրիշ բանակռւի առջև, որ ունի նշանակութիւն՝ երկու մարտնչող կողմերի բարոյական յատկութիւնը լաւ հասկանալու համար։ Այդտեղ արդէն սկզբունքների ընդհարում էր, որ տեղի ունէր մի կենդանի գործի շուրջը. այդտեղ Արծրունին երևան է գալիս ոչ միայն իբրև գրչի մարդ, այլ և իբրև հասարակական գործիչ, որ կռիւը մամուլի էջերից անց է կացնում անմիջապէս կեանքի մէջ։

---

*) Սենեքերիմ Արծրունին իր տեսութեան մէջ խօսել էր, ի միջի այլոց, և «Հիւսիսափայլի» մասին։ Ստեփանոս Նազարեանցը իր մասնաւոր նամակի մէջ անուանեց այդ դատողութիւնները «ցանցառամիտ»։

Երբ «Մշակը» սկսեց հրատարակվել, Ներսիսեան դպրոցում հաստատված տեսուչ չը կար։ Ստեփանոս Նազարեանցի հեռանալուց յետոյ դպրոցի հոգաբարձութիւնը տեսչի պաշտօնակատար նշանակեց «Մեղուի» խմբագիր Պետրոս Սիմէօնեանցին. բայց հոգաբարձութեան պաշտօնավարութեան ժամանակն էլ էր լրացել և 1872-ին պէտք է կատարվէր հոգաբարձական նոր ընտրութիւն։ Արծրունին սկզբից և եթ ուշադրութիւն դարձրեց այդ հանգամանքի վրա։ Իբրև հասարակական օրգանի ղեկավար, նա պարտք համարեց հրապարակով պարզել թէ ինչ պաշտօն ունի կատարելու Ներսիսեան դպրոցը և ինչ է պահանջվում այդ միակ ապահով միջնակարգ դպրոցի վարիչներից։ Միմեանց ետեից նա երեք առաջնորդող յօդուած նուիրեց այդ հարցին (№№ 6, 7 և 8)։

Առաջին յօդուածը տպվեց փետրվարի 10-ի համարում և կրում է «Ինչի՞ մենք մէկ մէկի չենք հասկանում»։

Ուշադրութիւն դարձրէք—ասում է նա—մեր ժողովրդի զանազան դասերի մէջ փոխադարձ յարաբերութեան վերա, եւ դուք կը համոզվէք որ մեր ազգի դասերի մէջ գրեթէ չկայ հասարակական կապ։ Դասերից ամեն մէկը բոլորովին առանձնապէս եւ

այլակերպ է զարգանում։ Միակ գործիչը, որ մեզ կապում է մէկի հետ,—մեր դաւանութիւնն էր»։

Այդ կապը բաւական չէ։ Հասարակական կրթութիւնը կարող է կապել, միասին ձուլել ազգի առանձնացած դասերը։ Իսկ հասարակական կրթութեան գլխաւոր գործիչներն են. դպրոց և մամուլ։ Սակայն մամուլը կարող է ժողովրդին հասկանալի դառնալ դպրոցի միջոցով։ Հնուց մենք ունէինք գրականութիւն. բայց արդեօք ժողովուրդը հասկանում էր գրքի լեզուն։ Յայտնի չէ որ մեր գրաբարը երբ և իցէ եղած լինէր ժողովրդի գործածական լեզու։ Արդեօք հինգերորդ դարի հայերէնը միայն գրակա՞ն լեզո՞ւ էր թէ այս լեզուով խօսում էր և հայ մարդը։ Վճռել այս հարցը անկարելի է։ Հինը անցաւ։ «Այժմ մենք առանց սխալվելու կարող ենք հաստատել, թէ ժողովուրդը գրականական լեզու չէ հասկանում։ Դուք կարծում էք, որ ես միայն գրաբարի մասին եմ խօսում,—ոչ։ Մեր նոր գրականական լեզուն, աշխարհաբառն էլ հասկանալի չէ ժողովրդին։ Ինչքան դար չարունակ ժողովուրդը հայոց ժամասացութիւն էր լսում եկեղեցիներումը,—և եկեղեցիներից դուրս գալով և ընտանեկան կեանքը մտնելով, կրկին խօսում էր կամ

վրացերէն, կամ թիւրքերէն, կամ յունարէն։ Վերջին ժամանակները մենք աշխատում ենք հայի հետ նոր, կենդանի անվանված գրական լեզվով խօսել... Բայց ի զուր... Մեր գրվածները չեն կարդում...»։

«Մեզ չէ հասկանում ժողովուրդը, որովհետև նա պատրաստված չէ, չունի կրթութիւն։ Մեզ ժողովրդի հետ կապողը պիտի լինի տարրական դպրոցը։ Առանց այդ միջնորդի՝ մամուլը կը մնայ ժողովրդի համար «ձայն բարբառոյ յանապատի»։ Ո՞վ են, ո՞ւր են ժողովրդական ուսումնարանի ուսուցիչները։ Պէտք է ուսուցիչներ պատրաստել։ Իսկ ո՞վ կարող է նրանց պատրաստել։—Ներսիսեան դպրոցը։

Ներսիսեան դպրոցը Թիֆլիսում պիտի հասկանայ վերջապէս, որ նորա նշանակութիւնն է պատրաստել ժողովրդի համար ուսուցիչներ,—այսինքն

կրթեալ քահանաներ

և ծխական ուսումնարանների համար վարժապետներ։

Երկրորդ յօդուածը վերաբերվում է տեսչի ընտրութեան հարցին։ Կարևոր հարց. դպրոցի ուղղութիւնը, առաջադիմութիւնը տեսչից է կախված։ Հարկաւոր է, ասում էր Արծրունին, որ ուսումնարանը մի որոշ ուղղու-

թիւն ունենայ։ Եւ հոգաբարձութիւնը, կամենալով ուսուչ ընտրել, պէտք է ինքն իրան հարց տայ թէ արդեօք ինքը վճռել է թէ ինչ ուղղութիւն է յարմարվում դպրոցին։ Եւ եթէ նա ունի որոշ ծրագիր, ինչպէս պիտի վարվէ, որ իր ընտրելի ուսուչը համապատասխան լինի այդ ծրագրի պահանջներին։ Ասենք թէ դպրոցի նպատակն է քահանաներ և ուսուցիչներ պատրաստել։ Դա արդէն հոգաբարձութեան ծրագրի էական մասն է։ Այս դէպքում ինչ պիտի պահանջէ հոգաբարձութիւնը ուսուչից, ինչ ծրագիր, ինչ առարկաներ պիտի անհրաժեշտ համարվեն։ Լաւ է, եթէ հոգաբարձութիւնը ճանաչում է մի անձ, որին ընդունակ է համարում ուսուչի պաշտօնը վարելու, հիմնելով իր կարծիքը այդ անձի անցեալի վրա։ Լաւ, եթէ այդ անձը իր հին գործունէութիւնից յետոյ որքան տարի է անցել դարձեալ հետևում է միշտ ժամանակին և չէ հնանում. Նորա մանկավարժական մեթոդը հրաշքի պէս տարիներին դիմանում է, և միշտ ժամանակի պահանջմունքին համապատասխան է՞։ Սրանք մանաւոր դէպքեր են, մինչդեռ խնդիրը աւելի ընդարձակ և ընդհանուր կերպով պէտք է դնել։

Խնդիրը արդար կերպով լուծելու համար

Արծրունին առաջարկում է դիմել այն միջոցին, որ գործադրվում է Եւրոպայում գիտնական ընտրութիւնների ժամանակ, մի միջոց, որ «ինչքան կարելի է, սանձ է դնում ողորմելի ինտրիգաններին և անձնական կրքերին»։ Այդ միջոցը մ ր ց ու թ ի ւ ն ն է, կօնկուրսը։ Թող յայտարարվի մրցութիւն, թող առաջարկվի որ ամեն մէկը, ով ուզում է տեսուչ լինել, ներկայացնէ իր ծրագրի նախագիծը, ցոյց տայ թէ ինչպէս պէտք է տանել դպրոցի գործը։ Հոգաբարձութիւնը կը քննէ բոլոր ներկայացրած նախագծերը և հաւանութիւնը կը տայ այնպիսիներին, որ աւելի համապատասխանում է նրա ծրագրին ու ցանկութիւններին։ Եթէ այդ նախագծերից ոչ մէկն էլ կատարեալ չը լինի, դարձեալ կայ այն առաւելութիւնը, որ մրցութեան միջոցով հոգաբարձութիւնը ծանօթանում է զանազան կարծիքների հետ և կարող է օգուտ քաղել խելացի ցուցմունքներից։ Արդարացի է այս միջոցը և այն պատճառով, որ ուսումնարանի վարչութեան հարցը, ծրագիրը կը չփվի հասարակական կարծիքի հետ։ Արծրունին խորհուրդ էր տալիս որ ներկայացրած ծրագիրները տպագրվեն և մամուլի քննութեան առարկայ դառնան։

*Հայը, իւր բնաւորութեամբ, փառասէր, ինքնասէր եւ ինքնահաւան էակ է։ Փորձեցէք փողոցումը առաջին պատահած փոքր ի շատէ ուսում առած Հային, օրինակ, մի ուսումնարանի տեսչի տեղ առաջարկելու (մանաւանդ ռոճիկով),—եւ նա առանց երկբայութեան, մեծ ուրախութեամբ կը համաձայնի եւ կընդունի ձեր առաջարկութիւնը։ Բայց պահանջեցէք միեւնոյն անձից գրաւոր մի պրոգրամմա... եւ այն ինքնահաւան հանճարը, կարելի է, իսկոյն յետ կը քաշվի... Միեւնոյն մարդը, որ ամեն տեսակ պաշտօն ուրախութեամբ յանձն կառնէ (այն պայմանով որ նրա անձը քննութեան չենթարկեն),—անչափ կը դժուարանայ գրաւոր պրոգրամմա ներկայացնելու... Խեղճ մարդ... Նորանից գ ա ղ ա փ ա ր են պահանջում,—իսկ նորան, կարելի է առհասարակ մատչելի չեն որ եւ իցէ գաղափարները։*

*Այսպէս դպրոցը կազատվի անընդունակներից։ Բայց կարող են պատահել և այնպիսիները, որոնք սովոր են սիրուն, գեղեցիկ ոճով ամբողջ հատորներ գրել, բայց մի հատ առողջ միտք չը յայտնել։ Պէտք է, սակայն յուսալ որ հոգաբարձութիւնը չի խաբվի այդպիսի գրուածքներից, ուր միտքը զոհված է ձևին։*

*«Գիւղական քահանայ» առաջնորդողում Արծրունին նորից վերադառնում է Ներսիսեան դպրոցին։ Նախ և առաջ նա բացատրում է քահանայի նշանակութիւնը գիւղում։ Գիւղական աղքատ, տգէտ, բայց շատ հա-*

ւատաւոր ժողովուրդը իր կեանքի բոլոր դէպքերում խորհրդատուի, առաջնորդողի հարկաւորութիւն է զգում և միշտ դիմում է քահանային։ Քահանան նրա համար միայն եկեղեցական ծիսակատարութիւնների պաշտօնեայ չէ, այլ պիտի կարողանայ և բաւարարութիւն տալ նրա բոլոր հարց ու փորձերին, որոնք վերաբերվում են նրա տնտեսութեան, նրա առողջութեան, նրա զաւակների կրթութեան։ Համապատասխանում է արդեօք քահանայի կրթութիւնը ժողովրդի պահանջներին։ Եթէ քահանան ուսում ստացել է տարրական ուսումնարանում, նա, ուրեմն, կարող է միայն իմանալ հայերէն և ռուսերէն լեզուները, քրիստոնէական ուսում և թուաբանութիւն։ Այս պաշարով—աւելորդ է նոյնիսկ ասել—քահանան չէ կարող շատ տարբերվել իր ժողովրդից, շատ բարձր լինել նրանից։

Ենթադրենք թէ մեզանում բացվեց մի հոգևոր բարձր ճեմարան, ուր աւանդվում են հոգեբանութիւն, աստուածաբանութիւն, զանազան լեզուներ, ընդհանուր և հայկական եկեղեցական պատմութիւն։ Այդտեղից դուրս են գալիս քահանայացուներ։ Կարելի՞ է նրանց ուղարկել գիւղերը։ Ո՛չ։ «Նա թէև միակողմանի, բայց չափազանց բարձր ուսում է

ստացել որ կարողանար մատչելի լինել ժողովրդին»։ Նա գործնական կեանքի մարդ չէ, նա վերացական ուսում է ստացել և բոլորովին տեղ չունի գիւղում։ Ի՞նչ է գիւղի պահանջը։

Ամեն տգէտ էակին յատուկ է հրաշք պահանջել այն անձերից, որոնց նա իրանից վեր է համարում։ Գիւղացին այնչափ պատվում է քահանային, որ շատ անգամ նորան դիմելով, նա պահանջում է այն, ինչ որ նորա կարողութիւնից վեր է։

Գիւղացու երեխան կամ կինը հիւանդացաւ... Նա դառնում է դէպի քահանան, նորանից խրատ ուզելով,—իսկ քահանան, որ բարձր, վերացական, լեզուագիտական կամ աստուածաբանական կրթութիւն է ստացել, անկարող է նորան իւր խրատով օգնելու, որովհետեւ նա բժշկութեան ամենատարրական հմտութիւն անգամ չունի։

Գիւղացին տգէտ է։ Նա չգիտէ իր հողը բարւոքել... Նորա բնակեցրած երկիրը անհարթ եւ աղքատ է, գիւղի չորս կողմը չկան անտառներ—նաստիպված է փայտի տեղ աթար իր տանը գործածելու, նա վառում է ուրեմն այն նիւթը, որ հարկաւոր է հողը բարվոքելու։

Այս եւ սորա նման դէպքերում ո՞րքան օգուտ կարող էր բերել քահանան... եթէ նա օրինակ միջին կարգի ուսումնարանից դուրս եկած լինելով փոքր ի շատէ տեղեկութիւն ունենայ տարրական բնագիտական ճշմարտութիւնների վերաբերեալ, փոքր ինչ տեղեակ լինէր գիւղային տնտեսութեան։

Միայն այն ժամանակ նա կարդարացնի ժողո-

վրդի կողմից նորան ընծայած անսահման հաւատարմութիւնը,—երբ միջին կարգի մի հոգեւոր դըպրոցում ընդհանուր կրթական դաստիարակութիւնը ստանալով, նա միջոց կունենայ ժողովրդի տնտեսական եւ հոգեւոր աննախանձելի դրութեան էութիւնը ըմբռնելու եւ իր գործնական ազդեցութեամբ կարողանայ նպաստել այն դրութեան բարւոքելուն։

Այստեղից արդէն պարզ է թէ Ներսիսեան դպրոցը Արծրունու ծրագրով ինչ պիտի լինէր։ Մի հոգևոր միջնակարգ դպրոց, որ նըկատի է առնում կեանքի գործնական պահանջները։ Այդ դպրոցի տուած քահանան մի կրթված, տեղեակ մարդ է, որ գնում է ժողովրդի առջևից և գիտէ իր հօտի բոլոր հարցերին բաւարար պատասխան տալ։ Չը նայած որ այս հանգամանքը աւելի քան պարզ է ամեն մի մարդու համար, չը նայած որ Արծրունուց յետոյ շատերը մեզանում կրկնեցին նոյն միտքը, մեր թեմական դպրոցները երբէք չը կարողացան այնքան լայն հիմքերի վրա դնվել, այնպիսի ծրագիր գործադրել, որ հոգևոր պաշտօնեան, ուսում ստանալով այնտեղ, կարողանար լինել ժողովրդի իսկական բարեկամը, իսկական օգնականը հոգու և աշխարհի գործերի մէջ։

Այսպէս ահա, Արծրունին որոշ ծրագրով որոշ պահանջներով էր վերաբերվում Ներ-

սիսեան դպրոցին։ «Մշակի» ներքին տեսութեան մէջ զանազան մարդկանց կողմից քննվեցան դպրոցի պահանջները։ Այդ բոլոր գրուածքների միտքը մի էր—րէֆօրմ։ Այսպէս, Ն. Լ. ստորագրութեամբ մի յօդուածի մէջ քարոզվում էր այն միտքը թէ պէտք է վերացնել որդեգրութիւնը Ներսիսեան դըպրոցում. Նախ այն պատճառով, որ որդեգիրների վրա ծախսած գումարով կարելի էր աւելի մեծ գործ կատարել դպրոցում, երկրորդ որ որդեգիրների փակված կեանքը վատ է ազդում նրանց առողջութեան վրա։ Այս առիթով «Մեղուն» դարձեալ բանակռիւ սկսեց՝ կամենալով ցոյց տալ որդեգիրներ պահելու անհրաժեշտութիւնը։

Հարցեր արծարծել բաւական չէր։ Հարկաւոր էր որ Ներսիսեան դպրոցը ունենայ այնպիսի վարչութիւն, որ կարողանար իրագործել ցանկալի րէֆօրմները։ Սեպտեմբերի սկզբին նշանակված էին հոգաբարձական ընտրութիւններ և Արծրունին առաջ բերեց ընտրական մի ամբողջ պայքար, հիմնված սկզբունքների, որոշ ծրագրի վրա։

Ընտրական պայքար... Սա այն խոշոր նորութիւնն էր, որ մտնում էր մեր կեանքի մէջ 1872 թուականից։ Դրանից առաջ հայ ժողովուրդը նոյն իսկ կաթողիկոսներ էր

ընտրել, Թիֆլիսում երկու անգամ հոգաբարձական ընտրութիւններ էին կայացել։ Մենք ունէինք մամուլ, բայց նա կամ անտարբեր էր դէպի ընտրութիւնները, կամ բաւական համում էր երկու ջուխտ խօսք ասելով։ Եւ ինչ էր այդ խօսքը։ Մեր խմբագիրները կամ Աստուծու օգնութիւնն էին կանչում ընտրողների վրա կամ ընդհանուր պլատօնական ցանկութիւններ էին յայտնում որ ընտրվեն լաւ մարդիկ։ Գրիգոր Արծրունին որոշ կուսակցութիւն կազմեց, ագիտացիա սկսեց, իր խմբով ընտրութիւններին մասնակցեց։ Առաջին անգամն էր մեզանում որ ընտրութիւնները դառնում էին գաղափարների ընդհարման ասպարէզ. առաջին անգամն էր որ տպագրական խօսքը պայքարի ղեկավար էր հանդիսանում։ Ահա ինչ էր ասում Արծրունին իր «Ընտրողներին» առաջնորդողում, որ լոյս տեսաւ օգոստոսի 31-ի համարում.

Մենք կրկնում ենք, ամեն ժողովուրդ ամեն տեղ սովորութիւն ունի հաւատ չընծայելու իր սեփական ոյժերին, դիմել իրանից բարձր դասին պատկանող մարդիկներին, որոնցից մի քանիսը հարստութիւն կամ աստիճաններ ունին, միւսները դիպլօմ։ Նշանակութիւն ունեցող մարդիկը իրանց կողմից օգուտ քաղելով ժողովրդի տգիտութիւնից, հաւատացնում են նրան թէ առանց այս ինչ հաստատիչոր վաճառակա-

*նի, այն ինչ հաստատգլուխ աղայի, այս ինչ դատարկագլուխ բարձր ուսում աւարտածի, ինքն ժողովուրդը ոչինչ չէ կարող անել։*

***Այդ հին նախապաշարմունքի դէմ պէտք է գնալ։ Պէտք է իմանալ որ մեծ սխալ և անարդարութիւն է արտօնված կաստաներ ստեղծել և նրանց յանձնել մեր գործերը։ Հարստութիւնը, աստիճանները, դիպլոմը մոլորեցնում են մարդկանց և այնքան ճնշում, որ անկարելի է լինում հասկանալ թէ այդ արտօնված կաստաներից դուրս էլ կարելի է ընտրելու արժանի մարդիկ գտնել։***

*Խեղճ ժողովուրդ, որքան խաբում են քեզ, եւ դու այդ բանը չես նկատում։ Շատ անգամ դու կարդում ես լրագիրը եւ կարծում ես, որ նա իմաստութեամբ լի է, բայց վերջը տեսնում ես, որ ոչինչ չես հասկանում տպածիցը եւ մի կողմ ես դնում թերթը, քեզ ու քեզ ասելով. «երեւի այնքան խելօք բան է, որ ես չեմ հասկանում»։*

*Բայց խեղճ, դու չգիտես որ այն մարդն էլ որ գրել է յօդվածը, նա էլ չէ հասկանում ինչ է գրել, որովհետեւ նա ինքն չէ շարունակում իր սեփական մտաւոր զարգացման վերա հոգալ... որովհետեւ... ժամանակ չունի... իսկ քեզ սովորեցնել է յանդգնում։*

***Թէև անուններ չը կան, բայց պարզ է որ այս խօսքերը ուղղված են «Մեղուի» և նրա***

խմբի դէմ։ Այս հանգամանքը ի նկատի առած, հասկանալի են դառնում և հետեւեալ տողերը.

Ժողովուրդ, կամենում ես մի կուսակցութիւն կազմել, որ քեզ կը ծառայէ եւ կը հոգայ քո օգուտները,—ընտրէ մարդիկ ամեն դասից, ամեն պարապմունքից, ամեն վիճակից։

Հաւատա, որ ընկերական ոգի իսկ այդ է նշանակում, բայց ոչ թէ այն, որ քարոզում են մարդիկ, որք իրանք ընկերակցական ոգու ամենամեծ թշնամիներ են, թոյլ չտալով ոչ մի շարժում, ոչ մի մրցումն, որ դուրս է իրանց սահմանափակված համքարի օգուտներից, խեղդելով իրանց նախանձի մէջ ամեն նոր օգտաւէտ ազգային երեւոյթը, որովհետեւ իրանք ընդունակ չեն նոյնը իրագործել։

Ընտրողներ, աշխատեցէք շրջապատել ձեզ ազնիւ, ուսեալ,—բայց ժողովրդին անկեղծ բարեկամ մարդիկներով։

Նորից ժողովուրդը, նրա շահերը, նրան ծառայելը։ Մինչև այդ ո՞վ էր ուշադրութիւն դարձրել այդ ժողովրդի վրա, ո՞վ էր դիմել նրան։ Մինչև այդ գիտէին միայն, որ պէտք է ընտրել մեծամեծներին, աղա, իշխան, հարուստ մարդկանց։ Այժմ քարոզվում էր ազատ ընտրութիւն, յանձնարարվում էր կաստային նախապաշարմունքները ոտնակոխ անել և ընտրել անխտիր այն ամենքին, որոնք կարող են ծառայել ժողովրդի գործին։

*Այս սկզբունքների վրա առաջ տանելով ագիտացիան, երիտասարդութիւնը ընտրութեան օրը յաղթանակ տարաւ։ Եկեղեցիներից ընտրված պատգամաւորների մեծամասնութիւնը «Մշակի» մարդկանցից էր բաղկացած. ընտրվեց ինքը, Արծրունին, ընտրվեցին Րաֆֆին, Իզմայիլեանը, Սունդուկեանը և ուրիշները։ «Մշակը» այժմ էլ ընտրված պատգամաւորներին դիմեց, նրանց ցոյց տուեց թէ ինչ է սպասում հասարակութիւնը նրանցից։ Ներսիսեան դպրոցին նա յատկացնում էր առաջին դեր։ «Այդ դերը—քահանաներ և ժողովրդական ուսուցիչներ պատրաստելը—միայն Թիֆլիսի համար նշանակութիւն չունի, այլ բոլոր ռուսահայերի համար»։ Թիֆլիսի հայերին վիճակվել է այդ բարոյական ոյժերի առաջնորդը հանդիսանալու բախտը, ապա ուրեմն, Թիֆլիսը պիտի արդարացնէ ընդհանուրի ակնկալութիւնները։*

*Ամբողջ հայութիւնը նայում է մեզ վերա. ցոյց տանք որ մենք արժանի ենք մեզ ընծայած հաւատարմութեան։ Թոյլ չտանք ոչ ոքին ասել, որ մենք անհոգ ենք ազգային գործերի վերաբերութեամբ եւ արժանի չենք նոցա։*

*Թիֆլիսի ժողովուրդ, քեզանից եւ միայն քեզանից կախված էր ընտրել այնպիսի պատգամաւորներին, որք ազնուաբար կը լրացնէին իրանց պարտ-*

քը, քեզանից կախված էր ընտրել այնպիսի մարդիկներին, որք իրանց անձնական օգուտները եւ հակումները թողած, իրանց աչքի առաջ ունենային միմիայն ընդհանուր օգուտը։

Իր կոչը «Մշակը» վերջացնում էր, պատգամաւորներին ուղղելով այսպիսի խօսքեր.

Մինչ մեր մէջ չի զարթնի ինքնասիրութեան զգացմունքի նշոյլը, մինչ մենք եւ այս անգամ ընդհանուր գործի մէջ առաջվայ տարիների պէս մեզ անընդունակ կը յայտնենք։

Ոչ,—այդ լինելու չէ։ Մենք պիտի ցոյց տանք, որ մենք գիտենք ուղղել մեր սխալները եւ անկեղծ սրտով խոստովանելով նոցա, չենք ընտրելու այն տեսակ մարդիկներին, որոնց առաջ ընտրում էինք, այլ կընտրենք ընդհանուր գործը առաջ տանելու ընդունակ անձերին, Նոր ոյժերով, *նոր մարդիկներին*, ժողովրդին եւ ժողովրդական գործին անկեղծ համակրող մարդիկներին։

Սեպտեմբերի 10-ին սկսվեցին պատգամաւորների պարապմունքները, որոնք տեւեցին երեք օր։ Ընտրութիւնները նոյն հետեւանքները տուին. Գրիգոր Արծրունին և նորա հետ աշխատող մի քանի մարդիկ հոգաբարձու ընտրվեցին։ «Մշակը» յաղթութիւն էր տօնում։ Իսկ «Մեղուն»... Հետաքրքրական է այժմ «Մեղուին» նայել։

«Մշակի» մէջ մենք չենք տեսնում ընտ-

*ութիւնների. Նկարագրութիւնը. «Մեղուն» է, որ «Հունար հունար իչուն» յօդուածի մէջ ներկայացնում է ծխական ընտրութիւնները ծաղրական դրութեան մէջ։ Ինչպէս երևում է, բաւական ուժեղ ու աչխոյժ է եղել երիտասարդութեան ագիտացիան։ Եւ «Մեղուն» ծանր հառաչում է, գանգատներ է անում։ Ճարը կտրածի պէս նա ծաղրում է Արծրունու արտասանութիւնը, դնելով նրա բերանում այսպիսի խօսքեր։*

Բարծրագոյն ուսումը եւ կրտութիւնը արտասահմանեան կարող էին առանց գնահատվելու. հասկացան կնահատեցին։ Եւ ինչպէս կարող էր այլապէս կատարուել. քանը վաղուց սարկուած էր այն անմիտ պտածների եւ տողարկացլուխների դէմ։

*«Մեղուն» կանչում էր թէ ընտրութիւնները սարքված էին, թէ կուսակցութիւն է կազմվել։ Նա պարտք էր համարում զգուշացնել, խրատել, և ասում էր. «Հոգաբարձու ընտրվողը պէտք է հոգւով ճշմարիտ հայ մարդ լինի։ Ոչ ֆրանսիացին, ոչ գերմանացին հոգւով, ևս աւելի համաքաղաքացին (կօսմօպօլիտ), որքան էլ իբրև մարդ լաւ լինի, օգտակար չէ հայ դպրոցին հետևաբար և հայ ժողովրդեան ներկայ պարագաներում»։ Իսկ Սենեքերիմ Արծրունին, որ մասնագի-*

տուԹիւն էր դարձրել «Մշակի» դէմ արշաւանք մղելը, գրում էր.

Ո՞ւմը յայտնի չեն այն խայտառակ միջոցները, որոնք մենք գործ դրինք պատգամաւորներ եւ հոգաբարձուներ ընտրել տալու համար, այսինքն ներկայացուցիչներ ազգային կամ ժողովրդեան համողմունքների՝ այնպիսի մարդկանց, որոնք ըստ մեծի մասին Հայոց եկեղեցիների (Տփխիսի) ելք եւ մուտքը չգիտեն, որոնք վաղուց է որ կտրել են իրանց միուԹեան կապը ազգի հետ եւ որոնք ձգտում են դէպի օտարին եւ մեր այժմեան դրուԹեան մէջ մեզ վնասակար համաշխարհականուԹիւնը, չկամենալով մինչեւ անգամ հասկանալ ազգուԹիւն բառի նշանակուԹիւնը։

Նշանաւոր է այս բանակռիւը մի քանի կողմերով։ Հայ պահպանողականուԹիւնը կռուելու մի նոր միջոց չէր գտնում, Թէև կռւում էր վաղուց։ Աբովեանցին, Նազարեանցին, Նալբանդեանցին և առհասարակ բոլոր նորերին մի ժամանակ անուանում էին լիւԹերական, աղանդաւոր։ Անցաւ այդ ժամանակը։ Այժմ այլ ևս կրօնով չէր կարելի վախեցնել. և պահպանողականները իրանց հակառակորդներին անուանում էին կօսմօպօլիտ, հոգով օտարացածներ։ Դա միևնոյն հին երգն էր, որի մէջ բառերն էին փոխվում ժամանակի հետ։ ԷուԹիւնը, դիմադրելու

զէնքը միևնոյնը մնաց մինչև այսօր էլ։ Սենեքերիմ Արծրունին պահպանողականութեան ամենամեծ իմաստութիւնն էր արտայայտում, բարդելով հակառակորդների վրա այն ահաւոր մեղադրանքը թէ նրանք եկեղեցի չեն գնում, եկեղեցու դռները չեն ճանաչում։ Դա նշանակում էր որ միայն եկեղեցի գնացողները ունէին իրաւունք լաւ, հասկացող հայ լինելու։ Եւ այդ ողորմելի զէնքը մնաց պահպանողականների ձեռքում և դրանից յետոյ, երկար ժամանակ, երբ հարց էր լինում ընտրութիւնների կամ առհասարակ ազգայինվարչական գործերի մէջ ձայն ունենալու մասին։

Կուսակցութիւն, կանչում էին «Մեղուի» մարդիկ մի տեսակ սարսափով, կարծես կուսակցութիւնը մի հրէշ էր, որ պիտի դողացնէր նրան մեր մէջ բերող երիտասարդներին։ Գրիգոր Արծրունին «Մեր կուսակցութիւնները» առաջնորդողով բացատրում է որ կուսակցութիւնը ոչ միայն սարսափ ազդող մի բան չէ, այլ անհրաժեշտութիւն կեանքի մէջ։

Ով ծանօթ է փոքր ի շատէ պատմութեան հետ, պիտի ճանաչէ թէ կուսակցութիւնները կազմվում են միայն այն ժամանակ, երբ հասարակութիւնը քաղաքակրթվում է։ Կուսակցութիւնն-

*թը մի հասարակութեան մէջ կեանքի նշան են։ Կուսակցութիւն բառը (partei) լատինական pars բառից, նշանակում է մաս կամ կազմ։ Նա ուրեմն ժողովրդի մի խումբ է (մի մաս է), որ մի տեսակ ուղղութիւն ունէ։ Կուսակցութիւնը միշտ կարող է առանց սխալվելու հպարտութեամբ ասել. ես ազգի մի մասն եմ կազմում։*

*Այն երկրներում, որտեղ բոլորովին ճնշված է քաղաքական եւ հասարակական կեանքը, որտեղ տիրում է կատարեալ անտարբերութիւն դէպի հասարակական գործերը, որտեղ արգելված է մի խումբ մարդիկներին ժողովել, գատել, խօսել,—այնտեղ չկան կուսակցութիւններ։ Բոլոր այն ազգերի մէջ, որոնք քիչ շատ քաղաքական կեանքին ընդունակ են, հեշտութեամբ կազմվում են կուսակցութիւնները։*

*...Չպատկանել ոչ մի կուսակցութեան բոլորովին պատիւ չէ բերում ոչ մի քաղաքացու։ Ոչ մի կուսակցութեան չպատկանել նշանակում է աւելի եսական, կենդանական կեանք վարել եւ ոչ թէ հասարակական։*

*Բացատրելով այնուհետեւ կուսակցութիւնների բնաւորութիւնը, Արծրունին գալիս դիմում էր մեր կեանքի մէջ նկատվող շարժումներին։*

10—15 *տարի առաջ, ասում է նա, Թիֆլիսի հայ հասարակական կարծիքը «հին, ամենափտած սերունդի» սեփականութիւնն էր։ Ժողովուրդը նախապաշարված էր ամեն մի նորութեան դէմ։ Ռուսաց համալսարաններ*

*ուսարտած երիտասարդները փոքր առ փոքր սկսեցին հաւաքուել իրանց հայրենիքում, փորձեցին կազմել կուսակցութիւն և գործել պաւառների դէմ։*

Երիտասարդներին անուանում էին լիրբ, պրոտէստանտ, ազգ քանդող, ազգատեաց, աշխատում էին նուազեցնել նոցա պատիւը հասարակութեան մէջ։ Երիտասարդները կատարեալ իրաւունքով վրդովվում էին այդ մեղադրանքների պատճառով. Նոքա ասում էին՝ մենք ցանկանում ենք միայն ա ռ ա ջ ա դ մ ո ւ թ ի ւ ն եւ աւելի ոչինչ... Նոքա իրաւունք ունէին, եւ շատ լաւ արեցին, որ խլեցին պառաւների ձեռքից հասարակական կարծիքի իշխանութիւնը։

Ժամանակը անցաւ. հասարակական կարծիքը, դպրոցները, օրագրութիւնը այդ մարդիկների ձեռքումն է այժմ, նոքա քռնեցին պառաւների տեղը... բայց ինչ արեցին նոքա այդ ժամանակ... Նոքա հանգստացան իրանց յաղթութիւնից յետոյ, այն օրից յետ նոցանից ոչ մինը իր ձեռք չառաւ ոչ մի գիրք, ոչ մի օրագիր, որ շարունակէ կարդալ, զարգանալ։ Դասերը տալիս էին դպրոցներում դրամական վարձատրութիւն էլ ստանալով, բայց ոչ մի գիրք չէին կարդում դասատուութեան նոր մեթօդների վերա, ոչ մի խրատ չէին կամենում ընդունել այս ինչ կամ այն ինչ վերանորոգութեան վերա։ Գիշերները անքուն անցնելով թուղթ խաղալումը, նոքա հաւատացած էին որ, ինչպէս որ լինի, միւս օրը յօրանջելով դաս կը տան եւ կը ստանան իրանց ռոճիկը, հաւատացած էին որ հասարակական կարծիքի վերա ազ-

դել չէ կարող ոչ մի նոր խումբ, նոցանից չէ կարող խլել հասարակական կարծիքի մենավաճառը...«

Ցանկարծ կազմվեցաւ ժողովրդական մարդիկներից մի կուսակցութիւն... նմանապէս իրանց հայրենակիցներին լուսաւորելու նպատակով,—եւ ինչ է ներկայանում մեր աչքերին... Միեւնոյն մարդիկը, որք կատարեալ իրաւունքով վրդովվում էին, երբ պառաւները նոցա հալածում էին... միեւնոյն մարդիկը այժմ, նշանակութեանը հասնելուց յետոյ, մոռանալով իրանց անցեալը, միեւնոյն անամօթ միջոցներն են գործ դնում նոր կազմված կուսակցութեան վերաբերութեամբ... սուտ լուրեր, բամբասանք, հայհոյանք, ամենակեղտոտ ինտրիգաներ, գիտութեան գաղափարի պախարակելը, առաջադիմութեան նշոյլների ոտնակոխ անելը...

*Մեր այս գործի առաջին հատորում մենք մանրամասն նկարագրել ենք վաթսունական թւականների մեր այն երիտասարդութիւնը, որ գործում էր Թիֆլիսում։ Դա Մոսկվայի հայ երիտասարդութիւնը չէր, առաջադիմական, եւրոպական քաղաքակրթութեան երկրպագու։ Թիֆլիսը մեր պահպանողականութեան նոր կերպարանափոխութիւնն էր ներկայացնում վաթսունական թւականներին. դա նոյն ազգամոլ-կրօնական ուղղութիւնն էր, բայց աւելի կրթված, զարգացած։ Եւ այս պատճառով զարմանալի չէ որ այդ սերունդը հալածում էր «Մշակի» մարդկանց։*

*Արծրունին այդ սերունդի չարունակողը չէր, այլ Մօսկվայի ազատամտութեան զարգացումը հայկական հողի վրա։ Այս հանգամանքը, այս պատմական հոսանքների յաջորդականութիւնը, Արծրունին, ի հարկէ, չէր նկատում իր առաջին իսկ քայլերից։ Յետոյ պարզվեց ամէն ինչ։ Բայց նշանաւոր է, որ Արծրունուն այնպէս էր թւում թէ ընդհարվում են Թիֆլիսում՝ ոչ այնքան մեզանում գոյութիւն ստացած հոսանքները, որքան կրթութեան սիստեմները։ Ռուսաստանում ուսում ստացած երիտասարդութիւնը անհաշտ է արտասահմանեան կրթութիւն ստացածների հետ—այսպէս էր ձևակերպվում թշնամութիւնը։ Գուցէ այդ իսկ ժամանակներում շատ փաստեր կային, որոնք այդպէս էին թելադրում. բայց արտասահմանեան և ռուսական կրթութեան փոխադարձ թշնամութիւն—դա մշտական, հաստատ, անխուսափելի երևոյթ չը դարձաւ մեզանում և չէր էլ կարող դառնալ։ Այսպէս թէ այնպէս, Արծրունին արդէն աղանդաւորի հիացմունքով էր վերաբերվում արտասահմանեան և մանաւանդ գերմանական կրթութեան։ Եւ իր վերոյիշեալ յօդուածը վերջացնում էր այսպէս.*

Զգո՛յշ կացէք, պարոններ. եթէ ոչ ժամանակով

կը փոշմանէք։ Կամ հետեւեցէք մեզ, կամ սուս կացէք...։ Տեսնո՞ւմ էք արեւմուտքում եւրոպական լուսաւորութեան նշոյլները։ Այս փոքրիկ սեւ քիծը կարող է դառնալ մի սարսափելի ամպ։ Եւրոպայից վերադարձած, լուսաւորութեան աղբիւրի մօտ ուսում առած, ճշմարիտ գիտնական եւ աշխատասէր մարդիկների թիւը օրէցօր կը շատանայ։ Այսօր երկու երեք են, վաղը կը լինեն տաս, մէկ էլ օրը քսան...

***Դրանից առաջ էլ Արծրունին «Լուսաւորութեան Նուիրակները» յօդուածում (№ 15), որ նուիրված էր Գերմանիայում ուսում առնող երիտասարդներին, իր ամբողջ յոյսը դնում էր արտասահմանցիների թուի աւելանալու վրա։***

Մեզ մնում է,—ասում էր նա—թէ հիների, թէ հասարակութեան, թէ նորերի հետ գործը փորձելուց յետոյ, ասել մնաք բարեւ եւ մտքումը աւելացնել—առյաւիտեան... Օտար երկրումը ձեր ճանապարհը բաց է, ձեզ առաջարկվում են պաշտօններ եւ պարապմունք... Բայց որովհետեւ ձեզ մօտ խօսքը եւ գործը համաձայն են, դուք պիտի գաք, որ կուէք։ Փոքր թուով լինելով դուք կը յաղթվէք, որովհետեւ տգիտութեան տարրի ընդդիմութեան ոյժը դեռ եւս շատ զօրեղ է... Միայն բազմաթիւ լինելով, կամ գոնէ մի խումբ կազմելով, լուսաւորութեան նուիրակները կարող են յուսալ թէ կռիւը աջողակ կը լինի։

***Այսպէս էր թւում առաջին քայլափոխում, այսպէս էր խօսեցնում անսահման հաւատը***

դէպի արտասահմանեան կրթութիւնը։ Փորձ դեռ չը կար։ Բայց փորձը կը լինէր շուտով և Արծրունին կը համոզվէր թէ որքան ինքը սխալված է եղել իր ջերմ հաւատի մէջ։ Արտասահմանը բացառութիւն չէր. այնտեղ էլ պատրաստվում էին զանազան տեսակ մարդիկ և դրանցից շատերը պիտի գային հայրենիք ոչ թէ կռուելու հնութեան դէմ, այլ ուղղակի այդ հնութեան, յետամնացութեան չարքերը մտնելու համար…

Իսկ մինչև այդ, Արծրունին մեր ցուրտ ու անհրապոյր իրականութեան մէջ ոգևորվում էր այն հաւանականութեամբ, թէ Եւրոպայում զինուորներ են պատրաստվում և մինչև նրանց գալը նա ինքը, համարեա մենակ, կռիւ էր յայտարարել և առաջ էր տանում նրան։ «Է՛լ չենք հաւատում» առաջնորդողի մէջ նա մի զարմանալի ուժեղ ոճով պատասխանում է հակառակորդներին և ցոյց է տալիս որ այլ ևս ոչինչ համերաշխութիւն լինել չէ կարող։

Մենք հաւատում էինք ձեզ, որ դուք ուսումնական, գիտնական, առաջադէմ, գործունեայ մարդիկ էք,—քանի որ հեռուից էինք նայում ձեզ վերա, քանի որ ինքներս այնքան զարգացած չէինք, որ ձեզ քննադատենք։

Այժմ է՛լ չենք հաւատում։

Մենք միամտաբար հաւատում էինք, որ դուք օրագրութեան վերաբերութեամբ ձեր կարողութեան չափ արդիւնաբերում էք նոր մտքեր, առաջ էք բերում նոր կենսական պահանջներ... բայց դժբաղդապէս համոզվեցանք որ ձեր գործունէութիւնը ոչ թէ օգտաւէտ չէ եղել, ոչ թէ ապարդիւն է անցել, այլ վերին աստիճանի վնասել է, որովհետեւ զզուանք է ծնել ժողովրդի մէջ դէպի տպած խօսքը առհասարակ եւ դէպի լրագրութիւնը մասնաւորապէս։

Այժմ է՛լ չենք հաւատում։

Մենք կարծում էինք, որ դուք ընդունակ էք կենսական պահանջների վերաբերութեամբ ծանր եւ օգտաւէտ հետազօտութիւններ անել,—բայց անդադար պատահելով ք ա ր ո զ ն ե ր ի եւ ոչ մի հետազօտութիւն, ոչ մի նոր ինքնուրոյն միտք չը գըտնելով, համոզվեցինք որ ձեր գրվածների մութ լինելու պատճառը է մի բարի ցանկութիւն մտքերի աղքատութիւնը լեզվի ձեւերով ծածկելու։

Այժմ է՛լ չենք հաւատում։

Բարոյականութեան վերա ձեր քարոզները կարդալով, մենք հաւատացած էինք որ իրանք քարոզիչներն էլ պիտի բարոյական լինեն։ Բայց մաքուր խղճմտանքով հրապարակապէս անուանում ենք ձեզ ա ն բ ա ր ո յ ա կ ա ն, որովհետեւ ձեր խօսքի եւ գործի մէջ միշտ անհամաձայնութիւն եւ հակառակութիւն ենք տեսնում։ Դուք դասատուութիւն անելով, նոր գիրք չէիք կարդում, յօդվածներ եւ քարոզներ գրելով ինքներդ չէիք հետեւում գիտութեան առաջադիմութեանը, քարոզում էիք լոյս, լուսաւորութիւն, առաջադիմութիւն, բայց հասարակութեան մէջ նոր յայտնվող ոյժերը ձեր նախանձի մէջ ատելութեամբ խեղդում էիք։

Այժմ է՞լ չենք հաւատում։

Դուք ձեզ նորանով կարգաբացնէք, որ այդ նոր յայտնվող ոյժերը փոխանակ ձեզ հետ բարեկամանալու, հէնց սկզբից պատերազմեցին ձեզ հետ, հակառակեցին ձեզ… Բայց միթէ դուք երեխայի միամտութեամբ կարծեցիք, որ նոր միտքը կարող է չը պատերազմել հինի հետ։

Մենք ձեզ այդքան միամիտ չէինք կարծում եւ համոզված էինք, որ դուք հասկանում էք այս տարրական ճշմարտութիւնը։

Այժմ է՞լ չենք հաւատում։

Մենք միայն մի քանի դէմ մինչեւ այժմ չը համարձակվեցանք խօսել,—այն է ձեր լեզուի հմտութեան վերա։ Բայց երբ համոզվեցանք, որ լեզուի գիտցողները մութ, անհասկանալի, ձանձրալի են գրում, երբ ձեր գրվածները շարունակ կարդալով, ոչինչ չը սովորեցանք եւ ոչինչ չը հասկացանք,— երբ կարդացող ժողովրդից ձեր լեզուի հմտութեան գովասանութիւններ լսելով հետաքրքրեցանք հարցնել թէ ինչպէս է հասանում նա միտքը եւ պատասխան ստացանք որ միտքը չենք հասկանում։

Այժմ է՞լ չենք հաւատում։

Եւ այս կուսակցութիւնը, որի դէմ ուղղված էին այս համարձակ, անխնայ մեղադրանքները, աշխատում էր պաշտպանվել, հակաճառութիւններ տալ։ Բայց ինչպէս Հայ կոմսոպօլիտների, հայ եկեղեցու դռները չը ճանաչող նորերի դէմ կազմած իր ահագին մեղադրական ճառի մէջ «Մեղուի» սիւներից մէկը, Սենեքերիմ Արծրունի, ասում էր.

«Մենք հայերս չենք կարող լինել մեր կարծիքների մէջ ծայրայեղ, որովհետև մենք ոչինչ չունենք զոհաբերութեանց համար, ոչինչ, բացի մեր անհատական գոյութիւնը»։ Սրանից դէնը այլ ևս չէ կարող գնալ պահպանողական անշարժութիւնը և մտավախութեան այդ քվինտ-էսսէնցիան շատ լաւ ապացոյց էր, որ Արծրունին իրաւունք ունէր խփելու պահպանողականութեան դէմքին՝ «Այժմ էլ չենք հաւատում»։ Չը պէտք էր հաւատալ, չէր կարելի հաւատալ։ Եւ պահպանողականութեան այդ հիւանդոտ յարձակումները մի-մի առիթ էր Արծրունու համար դուրս բերել մեր ազգային վատ յատկութիւնները հրապարակի մէջ։

Այսպէս, հոգաբարձական ընտրութիւնների միջոցին Պետրոս Սիմէօնեանցը տպեց «Մեղուի» մէջ մի նամակ, որ պարունակում էր ինչ-որ մութ ակնարկներ Արծրունու տեսչութեան մասին. Մարիամեան և Գայիանեան դպրոցներում։ Այդ ակնարկներից կարելի էր հետևեցնել թէ Արծրունին ինչ-որ շահամոլ ձգտումներ է ունեցել։ Արծրունին պատասխանեց Սիմէօնեանցին։ Բայց բանը այդ պատասխանը չէ։ Երևոյթը առիթ տուեց նրան գրել՝ «Ա՛րի խայտառակենք» գեղեցիկ առաջնորդողը։ Այդտեղ նա խօսում էր ազ-

*գային արատների մասին։ Ասում են թէ սոր յատկութիւնները—խաբեբայութիւնը, անազնւութիւնը, խարդախութիւնը յատուկ են քաղաքակիրթ ազգերին. չը զարգացած, նահապետական ազգերը պարզամիտ են։ Սա ընդհանուր համոզմունք է, բայց անհիմն համոզմունք։*

Շատ հեշտ է մի բանի մէջ համոզված մնալու, ասում է Արծրունին.—հարկաւոր է միայն փակել աչքերը ու բամբակ կոխել ականջների մէջ—եւ դուք հաւաստի կարող էք լինել որ ձեր համոզմունքին հաւատարիմ կը մնաք...

Ամբողջ մարդկութիւնը այդպէս էր գործում պատմութեան ամբողջ ընթացքում ամեն նոր, առաջադէմ, լուսաւոր, նորոգիչ երեւոյթի վերաբերութեամբ։ Ես չեմ կամենում լսել,—եւ չեմ լսի. չեմ կամենում տեսնել, եւ չեմ տեսնի...

*Հին և միջնադարեան մարդկութեան պատմութիւնից վկայութիւններ բերելով, որոնք հաստատում են թէ սոր յատկութիւնները, ընդհակառակն, յատուկ են տգիտութեան և անզարգացած մտքին և հեռզհետէ չքանում են, երբ մի ազգ քաղաքակրթութեան աստիճաններով բարձրանում է, նա բերում է մի այսպիսի համեմատութիւն.*

Լուսաւորված, մանաւանդ ռամկապետական ոգով կրթված ազգութիւնները ուրախանում են, երբ իրանց

մէջ նոր երեւոյթ են տեսնում, նոր ոյժ են նշմարում, աշխատում են ամեն միջոցներով օգնել, նըպաստել այդ նոր յայտնվող հասարակական զօրութեան, պարապեցնել, բարձրացնել, գործ դնել նորան, որ ոչ մի հասարակական թարմ գործիչ կորած, անպէտք չը մնայ մարդկային հասարակութեան համար։

Մեզանում, ընդհակառակն, այն որ հին է, ըսպառված է, անպէտք է, այն որ ցած է, անազնիւ է,—նա լաւ է, օգտաւէտ է համարվում, որովհետեւ մենք ինքներս լի ենք պակասութիւններով եւ կարող ենք միայն մեզ նման զօրութեան հետ յարմարվել։

Նոր յայտնվող, թարմ, կենդանի, զօրեղ երեւոյթը ձեր մէջ նկատելուն պէս, իսկոյն ծնվում է ձեր մէջ յետադայ գովելի զգացմունքը,—ա՛ ր ի ‑ խ ա յ տ ա ռ ա կ ե ն ք այս ինչ նոր մարդին, կամ այս ինչ նոր երեւոյթը…

Այնուհետեւ Արծրունին տալիս է մի պատկեր, որ հաւանականաբար, իր կեանքից է վերցրել։ Ինչպէս երեւում է, Թիֆլիս վերադառնալու առաջին ժամանակը, Գայիանեան և Մարիամեան ուսումնարանների· իր տեսչութեան հանգամանքներն են խօսում հետեւեալ տողերի մէջ.

Նախ եւ առաջ բարեկամանում են այն անձի հետ, շողոքորթում են նորան, ցոյց են տալիս որ կամենում են անպատճառ նորանից օգուտ քաղել…

153

Քեզ գրաւում են,.գովում են, տալիս են պարապմունք, գուցէ պաշտօն,—միեւնոյն ժամանակ քեզ վերա բարձում են անթիւ պարտաւորութիւններ եւ չեն տալիս ոչ մի իրաւունք... Որ դու իրաւունքները չես ստացել ունենալով շատ պարտաւորութիւններ, այդ դու ուշ ես նկատում, դու պահանջում ես քեզ համար իրաւունքներ... աղաղակ, աղմուկ, անբաւականութիւն —ամենք հաւասարութիւն սիրող մարդիկ ենք, մենք չենք կարող տանել միապետական ազդեցութիւն»։ Քեզ կը տան պաշտօն, քեզանից կը պահանջեն պարտաւորութիւններ,—եւ միեւնոյն ժամանակ կաշխատեն վիրաւորել, անբաւականութիւն գցել—մինչեւ որ կը զզվես։ Այն ժամանակ նոքա իրանց նպատակին հասած են,—այդ մարդը  ա ն ը ն դ ո ւ ն ա կ  է։ Քեզ կը տան մի պարապմունք, կը յանձնեն մի հիմնարկութիւն կառավարելու,—բայց միեւնոյն ժամանակ չեն տայ նիւթական ոչ մի միջոց։ Նիւթականից զրկված դու ի հարկէ ոչինչ չես կարողանայ անել,—եւ նոքա իրաւունք կունենան ասել, նա անընդունակ է... մենք սխալվեցանք։

*Սրանք, այո, մեր բարքերն են։ Եւ այդ բարքերի ամբողջ դառնութիւնը անձամբ, թէեւ շատ կարճ ժամանակով, փորձած Արծրունին այսպէս էր վերջացնում իր այդ յօդուածը.*

Եկէ՛ք, եկէք նոր մարդիկ, եկէք ձեր ուսմամբ, հմտութիւններով, բերէք այստեղ ձեր անխոնջ աշխատանքով համբերողութեամբ վաստակած գիտութիւնը, ազնւութիւնը, բերէք Եւրոպայից վսեմ մար-

դասիրական մտքերը, ձեր սրտերի մէջ հաւատ դէպի լուսաւորութեան առաքելութիւնը. եկէք որդիքը ձեր ծնողների մօտ, մտէք ձեր քաղցր ընտանիքը, վերադարձէք ձեր հայրենիքը, ձեռք մեկնեցէք ձեր սիրելի հայրենակիցներին... մենք գիտենք ինչ կանենք...։ Մենք միմեանց արդէն տուած ունենք մի կախարդական խօսքը, որի դէմ չէ կարող դի մանալ ոչ մի քարոյական ոյժ... ա՛րի սրան էլ խայտառակենք։

Այսպէս ահա, բանակռիւը Արծրունուն միայն օգնում էր հասարակական պակասութիւններ գտնելու և նրանց հրապարակում դատափետելու համար։ Բայց չէ կարելի ասել թէ Արծրունին գոհ կարող էր մնալ իր հակառակորդների գործ դրած միջոցներից։ Ինչպէս «Հայկական Աշխարհում» նա շարունակ պահանջում էր որ մտքերի փոխանակութիւն տեղի ունենայ մեզանում, որ մի գրողի մտքերը քննադատէ միւս գրողը, այնպէս էլ «Մշակի» մէջ նա շատ անգամ էր կրկնում որ բանակռիւը հարկաւոր է, որ նա անհրաժեշտ է՝ ճշմարտութիւններ պարզելու համար։ Լինելով այդպէս, լինելով մի ոյժ, որ մտքերի ընդհարում էր առաջացնում, մի ոյժ, որի վերաբերմամբ չէին կարողանում անտարբեր մնալ ժամանակակիցները, Արծրունին ի հարկէ, չէր ասում թէ կռիւը կարելի

է մղել բոլոր միջոցներով. Նա պահանջում էր որ հակառակորդը լինի ազնիւ, խոր ու լուրջ մտածող, որ դատողութեան և քննութեան ձևը լինի շիտակ։ «Մեղուն» այդպէս չէր կարողանում մարտնչել «Մշակի» դէմ և յարձակումը, բանակռիւը հասկանում էր անձնական վիրաւորանքի, հայհոյանքի մտքով։ Մենք տեսանք, որ նա ծաղրում էր, օրինակ, Արծրունու արտասանութիւնը. Ֆելիէտոնիստ Զաքուճի խայթոցներին նա պատասխանում էր, բերելով այն, որ նա բնական պակասութիւն ունի, այն է, որ նրա մի ոտը կարճ է։ Այդպիսի բաների դէմ Արծրունին հարկաւոր էլ չէր համարում խօսել։ Նա կռւում էր ՝աւելի այն միջոցների դէմ, որոնցով հակառակորդները աշխատում էին ծուռ մեկնութիւն տալ իր մտքերին, աղաւաղել, աղճատել իր ասածները։ Պօլէմիկական անբարեխղճութեան օրինակները նա բացատրում է՝ «Է՞դ էր պակաս» առաջնորդողի մէջ (№ 41)։

Ամբողջ 1872 թւականի ընթացքում «Մեղուի» էջերից «Մշակի» դէմ կռւելու ամենամեծ եռանդը ցոյց էր տալիս փաստաբան Սենեքերիմ Արծրունին։ Նա նոր էր սկսել գրել և իրան յայտնի դարձնել ուզում էր համարեա միմիայն բանակռւի մէջ. ուրիշ նիւթեր նա չունէր։ Եւ ահա Գրիգոր Արծ-

*րունին այդ յօդուածով գալիս էր ցոյց տա-լու, թէ մի նոր չարիք էլ է աւելացել հայոց մամուլի մէջ։ Կային մինչև այդ երկու չարիք։ Մէկը բարոյականութեան քարոզն էր, միւսը փտած ճարտասանական մեթօդը։ Իսկ ո՞րն էր այդ երրորդ, նոր չարիքը։*

Ընթերցող—ասում էր Գրիգոր Արծրունին—դուք գիտէք ինչ է փաստաբան (աղվօկատ)։ Դուք մի քրէական գործ ունէք, կամ մի քաղաքական վէճ. դուք գալիս էք փաստաբանի մօտ եւ խնդրում էք նորան դատաստանի առաջ պաշտպանութիւն ձեր հակառակորդի դէմ։ Ձեր հակառակորդը նոյնն է անում։ Երկուսն էլ հաւատացած են, որ արդար են, կամ գոնէ ձեւանում են իրանց այս բանի մէջ համոզված։ Մինը ասում է սեւ, միւսը սպիտակ եւ փաստաբաններից մինը պիտի աշխատէ ապացուցանել թէ գործը սեւ է, միւսը թէ նա սպիտակ է։

Բայց որովհետեւ միեւնոյն բանը չէ կարող թէ սեւ թէ սպիտակ լինել, ուստի փաստաբանին մնում է ապացուցանել որ նա ոչ սեւ է, ոչ սպիտակ, թէեւ սեւ է, բայց միեւնոյն ժամանակ սպիտակ է, կամ աւելի լաւ ասենք; թէեւ սպիտակ չէ, բայց սեւ էլ չէ եւ այլն։

*Սա փաստաբանական մեթօդ է։ Ինչո՞ւ է այդպէս։ Ճիշտ գիտութեան մեթօդը այն է, որ նախ կատարվում են հետազօտութիւններ, ապա միայն դրանցից հանվում են եզրակացութիւններ, հետեւանքներ։ «Փաստա-*

բանը՝ ընդհակառակն, նախ և առաջ իրան մի նպատակ, մի հետևանք է նշանակում և յետոյ նոր սկսում է պտռել, որոնել ապացոյցներ, այն հետևանքին հասնելու համար։ Այս իսկ փաստաբանական մեթօդը գործադրվում է և գրականութեան մէջ։

Ասենք թէ ես յանձն եմ առել կրիտիկայի մէջ պաշտպանել «Մեղուն» «Մշակի» դէմ,—ես փաստաբան լինելով, ակամայ ենթարկվում եմ իմ սովորական մեթօդին. ես չեմ կարող հետազօտել «Մեղուի» եւ «Մշակի» արժանաւորութիւնները ու պակասութիւնները, որովհետեւ ես հետազօտելու նպատակով չեմ յանձն առել կրիտիկը, այլ այն նպատակով, որ ապացուցանեմ թէ «Մեղուն» լաւ է, քան թէ «Մշակը»... Վաղը գուցէ քամին փոխվելով, ես նոյն ճարտարութեամբ կը սկսեմ ապացուցանել թէ «Մշակը» լաւ է «Մեղուից»...

Ադվօկատ կրիտիկոսին հ ա ր կ ա ւ ո ր է ապացուցանել որ մեզանում չէ կարող հաստատ ուղղութեամբ մի կուսակցութիւն կազմվել, նորա համար ի ր գ ո ր ծ ը տ ա ն ե լ ո ւ հ ա մ ա ր, անպատճառ հարկաւոր է այդպիսի բան ապացուցանել։ Նա չէ կարող հետազօտել, որովհետեւ եթէ ճիշտ մեթօդը գործ դնելով, նա սկսէր հետազօտել, գուցէ կը գըտնէր թէ կարող է կազմվել կուսակցութիւն, եւ գուցէ կը տեսնէր որ արդէն կազմվեցաւ,—բայց նորան անպատճառ հարկաւոր է ապացուցանել որ չը կայ... ուստի նա իր դատողութիւնը նորանով է սկսում, որ մեզանում եղած ուսումնարանները եւ կրթութիւնը չէին կարող այնպիսի մի հաստատ ուղղութիւն տալ,

որ կազմվեն համոզմունքները, բայց որովհետեւ միեւնոյն ժամանակ կուսակցութիւն կազմելու համար պէտք է շատ մարդիկ լինին, ուրեմն ռուս համալսարաններից դուրս եկած մարդիկը կարող են կազմել մի հաստատ կուսակցութիւն, աւելի բազմաթիւ լինելով, քան թէ արտասահմանից եկածները։

Նա չէ ապացուցանում թէ կ ա յ կամ չ ը կ ա յ... բայց նա ապացուցանում է ո ր չ է կ ա ր ո ղ լ ի ն ե լ, որովհետեւ հարկաւոր է նորան ապացուցանել որ չը կայ... եւ այլն...

Այդ յօդուածին Սենեքերիմ Արծրունին պատասխանեց մի անհագին յօդուածով, որ բռնում էր «Մեղուի» բանասիրական բաժնի ամբողջ չորս երեսները։ Բայց ի՞նչ էր նա ասում։—Այն, որ ամենահին ժամանակներից եղել են փաստաբաններ, որոնք ճառեր էին ասում բարձր ոճով, որ փաստաբանների մէջ եղել են երեւելի գործիչներ, գրողներ, որ փաստաբանները դատարաններում այս էին անում, այն էին անում։ Հարցը գրականութեան մէջ գործադրվող փաստաբանական մեթօդի մասին էր, իսկ նա փաստաբանական դասակարգի մասին էր խօսում, կարծես հարց կար փաստաբանների լինելու կամ չը լինելու մասին, կարծես ասված էր թէ փաստաբանը չէ կարող լաւ գործիչ, երեւելի գրող լինել։ Եւ «Մշակը» շնորհակալութիւն էր

յայտնում Սենեքերիմ Արծրունուն, «որ նա իր յօդվածով հ ա ս տ ա տ ե ց մեր ասածը աղվօկատական գրականական մեթօդի վերա»։ Եւ այդ նկատողութիւնը «Մշակը» վերջացնում էր մի ռուսերէն ասացուածքով՝ „Мы про печку, онъ про свѣчку“։ Եւ իրաւ, «Մեղուի» ռազմագիտական հմտութեան ամենամեծ մասը նման էր այս ասացուածքին, որի բառացի թարգմանութիւնն է. «Մենք վառարանի մասին ենք խօսում, նա՝ ճրագի մասին»...

---

# IV





Մինչև այստեղ մենք տեսանք Գրիգոր Արծրունու գրուածքների մի կողմը միայն—պատերազմ այն ամենի դէմ, ինչ փտած է, անշարժ է հայոց կեանքի մէջ, ինչ խոչընդոտ է հանդիսանում առաջադիմութեան, քաղաքակրթութեան գործում։ Պատերազմը առաջին իսկ քայլից յայտարարվում է, ինչպէս տեսանք, այն տարրերի դէմ, որոնք հաստա-

րանկութեան մէջ դեր են կատարում, բայց անբարեխիղճ են, պարտաւորութիւններ չեն ճանաչում, հետեւաբար և կատարում են միայն բացասական դեր։ Ո՞վ էր որ դուրս էր մնում այդ պատերազմից. ո՞վ էր, որ հարուածների չէր ենթարկվում։—Այդ էլ մենք տեսանք—բուն ժողովուրդը։ Ժողովուրդը մեղաւոր չէր. Նրա արատները շատ էին, բայց առաքինութիւններն էլ շատ էին. Նա տղէտ էր, անպատրաստ, անտեսական վատ պայմանների մէջ ճնշված—ահա Նրա արդարացումը։ Նա պահանջում էր ծառայութիւն կարող մարդկանց կողմից, կարօտ էր օգնութեան։ Եւ ով չէր ծառայում Նրան, ով կարող էր օգնել, բայց չէր օգնում, նա այն փտած ու վնասակար ոյժն էր, որի դէմ Արծրունին պատերազմում էր։

Սակայն միայն պատերազմը, միայն յարձակումներն ու բանակռիւք չէին Արծրունու գործը։ Թշնամիներն ասում էին թէ նա քանդում է ամեն ինչ։ Նշանակում էր որ Նրանք միայն մի կողմն էին տեսնում։ Քանդել ու միայն աւերակներ թողել և բաւականանալ դրանով—լինում են, այո, այդպիսի գրական գործիչներ էլ։ Բայց Արծրունին այդպիսիներից չէր։ Շարունակելով հետեւել Նրա առաջնորդողներին, մենք ահա այժմ կը տեսնենք,

որ նա միայն կռիւ չէր մղում, այլ և մտքեր, գաղափարներ էր արծարծում։

Ամենից առաջ տեսնենք թէ ինչպէս էր Արծրունին հասկանում խմբագրի պաշտօնը («Ինքնակոչ խմբագիր», № 3)։

Լինել մի լրագրի խմբագիր, նշանակում է մի հասարակական պաշտօն յանձն առնել։ Հասարակական պաշտօնը երկու ճանապարհով է ձեռք բերվում. կամ հասարակութիւնն է ընտրում, կամ իշխանութիւնն է նշանակում։ Իսկ խմբագիրը. ո՞վ է նրան ընտրում, ո՞վ է նրան նշանակում։—Ոչ ոք։ Խմբագիրը ինքն է դուրս գալիս հասարակական պաշտօն ստանձնելու։ Նա, ուրեմն, ինքնակոչ է։ Բայց ինչ է այդ ինքնակոչ պաշտօնեան։ Կարծում են թէ նա հասարակութեան դատախազն է։ Բայց դա մի ծիծաղելի յաւակնութիւն է։ «Այդպիսի մարդից ես կը հարցնէի. Արդեօք ո՞վ է իրաւունք տուել քեզ ժողովրդի դատախազակչի պաշտօնը սեփհականացնելու»։

Խմբագիրը, հասարակական այդ ինքնակոչ պաշտօնեան, դատախազակիչ չէ։Ապա ինչ է։ Եթէ յիշում էք, Արծրունին «Հայկական Աշխարհի» մէջ էլ հարևանցօրէն շօշափել է այդ հարցը։ Այն ժամանակ նա խմբագիր չէր, բայց իբրև գրող ասում էր որ իր

դերը հետազօտողի դեր է։ Նոյն այդ սկըզբունքը նա արծարծում է այժմ իբրև խըմբագիր։

Մեր դարում առաքեալներ եւ մարգարէներ չը կան։ Մեր դարը աշխատողների դար է։—Մարդիկ, որոնք հաւատում են իրանց բարձր կոչմանը, կամ ինչպէս ասվում է, իրանց գործունէութեան մէջ ուղեկից են համարում իրանց բարի աստղը,—այդպիսի մարդիկ ծիծաղելի են թւում տասն եւ իններորդ դարի համար։ Այժմ հարկաւոր են մեզ այնպիսի մարդիկ, որոնք ոչ թէ երկնային ոգով շնչաւորված գային քարոզելու խաւարը փարատելու համար,—այլ մշակներ, որոնք աշխատէին յարմարվելով ժամանակակից պահանջներին։

Ո՛չ, հասարակական դաստիարակութիւնը պէտք է սպասել նոյն իսկ հասարակութիւնից. նա ինքը պիտի դաստիարակվի, և մասնաւոր մարդը, խմբագիրը, պէտք է ուրիշ կերպ հասկանայ իր պաշտօնը։ Խմբագիրը հասարակական ասպարէզում պիտի լինի նոյնը, ինչ է բնագէտը բնական հարստութիւնների հետազօտութեան ասպարէզում։ Ինչպէս բնութեան մէջ, այնպէս էլ հասարակութեան մէջ կան քնած մտաւոր ոյժեր, քնած զօրութիւն, քնած հարստութիւն, մըտաւոր անմշակ, հում նիւթ։

Գրագէտից, լրագրի խմբագրից պիտի պահանջենք, որ նա հետազօտի հասարակական հողը, քննի նորան կազմող մասերը, զարթեցնի քնած մտաւոր զօրութիւնը, յարուցանի մտաւոր հարուստ հանքերի արդիւնաբերութիւնը...

Ամօթ է այն խմբագրութեանը եւ խմբագրին, որ երկար ժամանակ հրատարակելով մի պարբերական գրված, չը կարողացաւ զարթեցնել ընդունակութիւններ, իր չորս կողմը կազմել տաղանդներ, կրթել գրողներ։

Ողորմելի է այն օրագիրը, որը տասը տարիից աւելի հրատարակվելով, չը կարօղացաւ հետազօտել հասարակական հողը եւ նրա մտաւոր հանքերի խորքից յարուցանել ինքնուրոյն արդիւնքներ, զարթեցնել ի ն ք ն ո ւ ր ո յ ն ո ւ թ ի ւ ն։

Այս տողերը, որոնք լոյս տեսան այն ժամանակ, երբ «Մշակը» քսան օրական մի ծընունդ էր, չափազանց նշանաւոր են։ Երիտասարդ խմբագիրը որքան գեղեցիկ կերպով հասկացել էր նախ և առաջ իրան։ Չէ եղել մեզանում մի մարդ, որ նրա պէս քնած ոյժեր զարթեցնել, տաղանդներ առաջ քաշել, ինքնուրոյնութիւններ յարուցանել իմանար։ Այդ գրուածքի մէջ Արծրունին, գուցէ և ակամայ, գուցէ միայն իր անսահման հաւատի դեռ անորոշ գիտակցութեամբ, նկարել է «Մշակի» խմբագրին՝ նրա քսան տարվայ գործունէութեան ընթացքում։ Առաջ տանելով այդ զարմանալի յօդուածի ընթերցանու-

թիւնը, մենք դեռ էլ շատ մարգարէական ցուցմունքներ ենք տեսնում։

Լրագրի հիմնողը, ասում է Արծրունին, շատ անգամ լինում է մի անյայտ անձ, ծանր, անհամ, անոճ, անմարսելի գրող։ Բայց նա ընդունակութիւն է ունենում ճանաչել մարդ, «ճանաչել ծնվող տաղանդ, հետազօտել հասարակութեան մէջ քնած հարստութիւն, շրջապատել իրան ընդունակ մարդիկներով, ուղղութիւն տալ ամենքին, հասկացնել վերջապէս ամենքին իրանց ընդունակութեան յարմարվող գրական ստեղծվածի ձևը»։ Աննշան ոտանաւորներ գրողին խմբագիրը դարձնում է վիպասանութեան ձևին և նա, որ առաջ անյայտ էր և ազդեցութիւն չունէր ընթերցողի վրա, դառնում է նշանաւոր ռօմանիստ *)։ Միջակ արժողութեան դրամաների, կօմեդիաների հեղինակը դառնում է, ուրիշ հանգամանքների և շրջանի պատահելով, տաղանդաւոր ֆելիէտօնիստ... և այլն։

Եւ այսպէս, հետազօտիչ և ոչ քարոզիչ։ Քարոզների դարը անցաւ։ Խմբագիրը պէտք

*) Այսպէս էր Րաֆֆին։ Նա սկսեց ոտանաւորներով, բայց նրա տաղանդը բանաստեղծութեան այդ ձևի մէջ չէր։ Իբրև ոտանաւորների հեղինակ նա աննշան կը մնար. բայց թողնելով ոտանաւորը, դարձաւ նշանաւոր վիպագրող։

է պահանջ, ինքնուրոյնութիւն զարթեցնող լինի։ Վերջապէս կայ և ամենանշանաւորը.

Խմբագիրը պիտի կազմի խմբագրութիւն, որտեղ աշխատէ միացնել մտաւոր ոյժ... որ երբ ինքը կը հեռանայ, կը թողնէ ասպարէզը, հասարակութիւնը կարողանայ ասել թէ նորա գործունէութիւնը ապարդիւն չը մնաց, որովհետեւ նա իրանից յետոյ մտաւոր զօրք թողեց, որ սկսած ուղղութեամբ եւ անընդհատ աշխատանքով պիտի շարունակէ լուսաւորութեան համար պատերազմելու։

Ահա ինչ է հասարակական այն ինքնակոչ պաշտօնեան, որի անունն է խմբագիր։ Միայն Արծրունին էր մեզանում այդպիսի խմբագիր, որ ոչ միայն լաւ գիտէր թէ ինչպէս պէտք է մտնել այդ պաշտօնի մէջ, այլ և առաջին քայլերից մտածում էր ասպարէզից հեռանալու, մտաւոր զօրք՝ թողնելու մասին։ Այսպէս բացատրելով խմբագրի էութիւնը, կամ աւելի ճիշտն ասած՝ իր էութիւնը, Արծրունին մի ուրիշ յօդուածում («Օրագրութեան նշանակութիւնը», № 39) բացատրում էր թէ ինչ պիտի լինի լրագիրը կամ աւելի ճիշտն ասած՝ «Մշակը»։

Հրապարակախօսութիւնը մի գլխաւոր և առաջին յատկութիւն ունի—առաջադիմութիւն։ «Շարունակ առաջ գնալ, զարգանալ,

հետևել նոր մտքերին, մարդկային մտքի զարգացման... Առանց այս առաջին և անհրաժեշտ յատկութեան, լաւ է որ օրագրութեամբ պարապել յանձն առնողը կօշկակարութեամբ պարապէ... բայց մի՞թէ կօշկակարը կարող է յուսալ որ միշտ առնող կունենայ, եթէ նա կօշիկներ կարելու ձևը երբէք չի փոխի, չի կատարելագործի, այլ կը պատրաստէ իր վաճառքը հին, նահապետական ձևով։

Իսկ լրագիրը պիտի հասարակութեան մէջ ներգործական դեր կատարէ։ Կան եւրոպական լրագիրների մէջ կրաւորական դեր կատարողներն էլ, բայց նրանք նախ և առաջ քիչ են, երկրորդ՝ հասկանալի, օրինական երեւոյթ են եւրոպական կեանքի մէջ, մինչդեռ մեզանում բոլորովին անտեղի ու անհարկաւոր են։ Բայց ի՞նչ են ներգործական և կրաւորական լրագիրները։

Մեծ մասը ներգործական են, այսինքն նոցանից ամեն մինը մի տեսակ, յայտնի, որոշ ուղղութիւն ունենալով, նպատակ ունէ ազդել ընթերցողների վերա, մտցնել նրանց մէջ իր ուղղութիւնը, կրթել եւ կազմել մի յայտնի ուղղութեան կուսակցութիւն։ Կրաւորական լրագիրները չափից շատ տարածվելով, իրաւունք չունեն սահմանափակվել մի նեղ, կուսակցական հայեացքների եւ համոզմունք-

ների մէջ, այլ նոցա հիմնական ուղղութիւնը եւ սկզբունքն է բաւականացնել ամեն տեսակ կուսակցութիւնների, ամեն ուղղութեան մարդիկների պահանջներին։ Ուստի նոքա իրանց էջերի մէջ տպում են ամեն ուղղութեան յօդվածները։

Կրաւորական լրագիրների թիւը ամենից շատ է անգլօ-սաքսոնական երկրներում— Անգլիայում, Ամերիկայում և Գերմանիայում։ Պատճառն այն է, որ այդտեղ հասարակութիւնը շատ է զարգացած, կուսակցութիւնները շատ են։ «Պէտք է մարդը արդէն զարգացած լինի, պէտք է կուսակցութիւնները որոշված լինեն, պէտք է հ ա ս տ ա տ, անխախտ համոզմունքներ ունենան թէ մասնաւոր մարդիկը, թէ կուսակցութիւնը որ լրագրի մէջ պատահելով ամեն տեսակ ուղղութեան, ամեն տեսակ համոզմունքների և հայեացքների արտայայտութեանը, նոքա չը շփոթվեն, չը թափառեն, չը խառնվեն, այլ զանազան, ամենատարբեր մտքերին անդադար հանդիպելով դարձեալ կարողանան դուրս բերել իրանց համար մի որոշ ուղղութիւն, իրանք կարողանան իրանց համար մշակել ս ե պ հ ա կ ա ն, ա ն հ ա տ ա կ ա ն համոզմունքներ և հայեացքներ»...

Իսկ այն երկիրներում, ուր չը կայ այդպիսի զարգացում, ուր կուսակցութիւնները

չատ քիչ են, շատ թոյլ են, կրաւորական լրագիրները ոչ միայն չեն կարող աջողվել, այլ և օգուտ անգամ չեն կարող բերել։ Այնտեղ, ուր մարդիկ դեռ ևս չունեն իրանց համար մի որոշ ուղղութիւն, ուր նոր են սկսում տարբեր մտածել և հասկանալ,—այնտեղ հարկաւոր են խիստ և որոշ ուղղութիւն ունեցող ներգործական լրագիրներ, որոնցից իւրաքանչիւրը մի տեսակ ուղղութեան արտայայտութիւն լինելով, կազդէ ընթերցողի վրա, ուղղութիւն կը մշակէ նրա մէջ, կուսակցութիւն կը կազմէ։ Գալով հայերին, երկու տեսակ պատասխան չէ կարող ունենալ այն հարցը, թէ արդեօք ներգործական լրագիրներ են մեզ հարկաւոր։ Այո, անպատճառ հարկաւոր են։

Մեզ համար—գրում է Արծրունին—դեռ եւս վաղ է, վնասակար է եւ անիրագործելի է կրաւորական քաղաքական թերթը։ Բայց թէ մեզանում պատահմամբ խմբագիրների կրթութեան պակասութեան կամ լրագրութեան նշանակութեան վերա կատարեալ տգիտութեան պատճառով, կազմվի կրաւորական մի թերթ, նա չի լինի ընդհանրական, ընդարձակ, ազնիւ, բարի նշանակութեամբ կրաւորական,—այլ շատ շատ կը լինի միայն անդոյն, իսկ դէպքերի մեծ մասամբ յիմար։

Հետազօտող խմբագիր, ներգործական լըրագրի ղեկավար. սա մի նոր հիմք էր, որի

վրա դնվում էր հայ լրագրութիւնը 1872 թւականից։ Հետազոտող խմբագիրը ուժեղ, տպաւորիչ է մանաւանդ իր մի յատկութեամբ. Նա գիտէ ժամանակին յարուցանել հարցեր, գիտէ օրվայ խնդիրները, այժմէութիւն ներկայացնող երեւոյթները ըմբռնել, արձագանք տալ նրանց, քննութեան հանել։ Արծրունու այս զարմանալի ընդունակութիւնը արտայայտվեց մայրենի լեզուի հարցի մէջ։

1872 թւականի փետրվարի սկզբներում Թիֆլիսում պետական միջնակարգ դպրոցների կառավարիչների (դիրեկտորների) ժողով կար, որ քննում էր զանազան դպրոցական հարցեր։ Ի միջի այլոց դրված էր տեղային լեզուների դասատուութեան հարցը և ժողովը հասաւ այն եզրակացութեան, որ տեղական լեզուների դասատուութիւնը պետական դըպրոցներում անօգուտ է։ Սկզբունքի մի շատ լուրջ հարց էր արծարծվում։ Արծրունին «Լեզու և կեանք» առաջնորդողի մէջ (№ 11) բացատրեց թէ ինչ նշանակութիւն ունի իւրաքանչիւր ազգի համար նրա մայրենի լեզուն։

Հայ հրապարակախօսի համար միշտ առանձին կարեւորութիւն է ունեցել այդ հարցը, քանի որ շատ քիչ կը լինեն այնպիսի ազգեր, որոնք հայերի նման անփոյթ, ան-

բարեխիղճ, ուղղակի թշնամի լինեն իրանց լեզուի վերաբերմամբ։ Հայ հրապարակախօսը միշտ հարկադրված է կրկնել հայերին թէ պէտք է սովորել մայրենի լեզուն։ Նազարեանցի կենսագրութեան մէջ մենք տեսանք որ այդ խոշոր երախտաւորի խօսքի, քարոզի, դատողութեան սկիզբը և վերջը լեզուն էր։ Արծրունին էլ—մենք այս էլ տեսանք—իր առաջին իսկ գրուածքներից այս հարցն էր շօշափում և մինչև այդ չարունակ նրան էր վերադառնում։ Նազարեանցը ասում էր որ լուսաւորութեան, առաջադիմութեան միակ ապահով գործիքը կարող է լինել մայրենի լեզուն։ Արծրունին, հաստատելով այս միևնոյնը, ուրիշ, աւելի խոր ու հետաքրքրական պատճառաբանութիւններով է ամրացնում այդ ճշմարտութիւնը, հիմնվելով գերմանացի գիտնական Կարլ Ֆօխտի յայտնած մի մտքի վրա։

Ֆօխտը ասել էր որ լեզուի կերպարանաւորութիւնը կապ ունի մարդու ֆիզիօլօգիական կազմուածքի հետ,—այսինքն, որ այս ինչ կամ այն ինչ լեզուն համապատասխանում է այս ինչ կամ այն ինչ ազգի մարդկանց կազմուածքի առանձնայատկութիւններին։ Հազիւ է պատահում, ասել է Ֆօխտը, որ մի մարդ օտար լեզուի միջոցով

կարողանայ արդիւնաբերել մի ինքնուրոյն միտք. Արծրունին գերմանացի գիտնականի այդ միտքը զարգացնում է այնպիսի բացատրութիւններով, որոնք ցոյց են տալիս թէ մի լեզուն կազմվել է մի ազգի առանձնայատկութիւնների, ինքնուրոյն տիպի, ֆիզիկական և բարոյական կազմուածքի հետ միասին և, հետևաբար, միակ յարմար, բնական, արդիւնաւոր միջոցն է զարգանալու, ստեղծագործելու, ընդունակութիւններ արտայայտելու համար։

Արդեօք չէ կարելի ընդունել, որ երբ մի ազգի լեզուն կազմվում է,—նա, հետեւելով բնական օրէնքին, ազգի յատկութիւնների եւ առանձնութիւնների համապատասխան ձեւեր, կազմակերպութիւն, ոյժ եւ ոգի է սեպհականացնում։

Եթէ իմ լեզուն հետեւանք է իմ բարոյական առանձնութիւններին, որոնք իրանց կողմից կախված են իմ մարմնի, տիպի կազմուածքի յատկութիւններից,—ուրեմն ինձ համար մայրենի լեզուն ոչ թէ միայն այն պատճառով թանգ պիտի լինի, որ ես իմ ազգը սիրում եմ, բայց գլխաւորապէս այն պատճառով, որ նա բոլոր ուրիշ լեզուներից ամենից յարմար է իմ ուղեղի մտաւոր աշխատանքին, որ նա իմ ուղեղի կազմութեանը ամենայարմարագոյնն է, որ նա իմ ուղեղի կազմակերպութիւնից անբաժանելի է, որ նա իմ մտաւոր զարգացման համար անհրաժեշտ է։

Եթէ այդ այդպէս է, ուրեմն իմ ազգային լեզվով ինձ աւելի մատչելի է իմ անձնական, անհա-

տմկան, իմ անձին սեպհական, ինքնուրոյն մտքերը յայտնելու, քան թէ օտար լեզուով, որը կազմվել է ուրիշ երկրում, ուրիշ կլիմայի ազդեցութեան տակ, ուրիշ պատմական եւ հասարակական պայմաններին է ենթարկվել։

Կենդանի օրինակներով այս դատողութիւնը ապացուցանելու համար Արծրունին վերցնում է ֆրանսերէն և գերմաներէն լեզուները։ Ֆրանսիացին աշխոյժ, յափշտակվող, շուտ ըմբռնող, տաղանդաւոր բնաւորութիւն ունի. այդպէս է և նրա լեզուն, մինչդեռ գերմանացու ճիշտ ու ծանր բնաւորութեան միանգամայն համապատասխանում է նրա ծանր լեզուն իր «մինչև հրաչք հասցրած ճիշտ և եթէ կարելի է ասել, մաթեմատիկական ասացվածներով և ձևերով»։

Մի ազգ մոռանալով իր մայրենի լեզուն,—կորցնում է իր բնական միջոցներից մէկը, ուրեմն կը պակասի, կը նուազի նորա բնական զարգացման, նորա անհատական յատկութիւնների, նորա ինքնուրոյնութեան, ուրեմն նորա՝ հասարակաց օգտի համար արդիւնաքերութեան ոյժը։ Եթէ ֆրանսիացին չիմանայ ֆրանսիական լեզուն, ռուսը ռուսաց լեզուն, հայը հայոց լեզուն, վրացին վրաց լեզուն, —ֆրանսիացին չի լինի կատարեալ ֆրանսիացի, գերմանացին չի լինի կատարեալ գերմանացի, ռուսը կատարեալ ռուս, հայը կատարեալ հայ...

Կորցնելով իր մայրենի լեզուն, ուրեմն իր բնա-

կան գործիչներից (օրգաններից) մէկը, Թէ ռուսը, Թէ գերմանացին, Թէ ֆրանսիացին, Թէ հայը կը զրկվեն իրանց կազմվածքին եւ բնաւորուԹեանը յատուկ բնական ընդունակուԹիւնների մի նշանաւոր մասից։

Արդեօք. դրանից մարդկուԹիւնը օգուտ կը ստանար Թէ վնաս։—Ի հարկէ վնաս, պատասխանում է Արծրունին։ Իւրաքանչիւր ազգ մարդկուԹեան մի կարեւոր մասն է կազմում։ Մարդկութեան բոլոր մասերը, բոլոր անդամները պիտի առաջադիմեն՝ զարգացնելով իրանց առանձնայատուկ ընդունակուԹիւնները։ Բայց ինչպէս կարող է մի ազգ ինքնուրոյնաբար առաջ գնալ, եԹէ կը կորցնէ իր լեզուն, կամ ուրիշ խօսքերով՝ կը սպանէ իրան։

Սպանել իրան նշանակում է անձնասպանուԹիւն գործել—բայց բացի սորանից նա նշանակում է յանցանք գործել ամբողջ մարդկային հասարակուԹեան առաջ, զրկելով նորան մի անհրաժեշտ անդամից։

Ահա Թէ ինչ ահագին, կենսական նշանակուԹիւն ունի մայրենի լեզուն մի ազգի համար։ Յիշենք այստեղ որ Արծրունին նոյն այս տեսուԹիւնը, աւելի ընդարձակած, օրինակներով աւելի հոխացրած, արծարծեց 1881 Թւականին հայոց ուսուցչական առաջին ժո-

*զավում, մի դաստիարակութեան մէջ, որ խոր տըպաւորութիւն գործեց։*

*«Լեզու և կեանք» յօդուածից քիչ յետոյ* „Кавказъ“ *պաշտօնական լրագրի հետ բաժանվեց մի անանուն հեղինակի բրօշիւրը՝ հետևեալ վերնագրով.* „О существѣ національной индивидуальности и объ образовательномъ значеніи крупныхъ народныхъ единицъ“. *(Ազգային անհատականութեան էութեան և խոշոր ազգերի կըրթական նշանակութեան մասին)։ Նա էլ նուիրված էր մայրենի լեզուի հարցին և Արծրունու տեսութեան հակառակ հայեացքներ էր պաշտպանում, կարծես գրված էր «Մշակի» յօդուածին պատասխանելու համար։ Ի՞նչ էր ասում ռուս անանուն հեղինակը։*

*Նրա համար էլ մայրենի լեզուն ամենակարևոր, առաջնակարգ նշանակութիւն ունի։ Լեզուն, ասում է նա, ինքն ազգն է։ Ազգութեան հոգին, ամբողջ ոյժը, ամբողջ ինքնուրոյնութիւնը միայն լեզուի մէջ է։ Բայց կայ պատմութեան օրէնք, կայ պատմական անհրաժեշտութիւն։ Դա այն է, որ փոքր ազգերի լեզուն ուժեղ չէ, դիմացկուն չէ, զարգանալ, բարգաւաճել չէ կարող։ Ինչու։ Որովհետև քանակութեան հետ կապված է և որակը։ Խոշոր ազգերը զարգացնում, կատա-*

*րեւլուԹեան են հասցնում իրանց լեզուն, որովհետեւ Թուով աւելի շատ մտաւոր աշխատողներ ունեն. մինչդեռ մանր ազգերը չունեն այդ ոյժը, ուստի և նրանց լեզուն պիտի մնայ Թոյլ ու աղքատ։ Այդ ԹուլուԹիւնից էլ առաջ է գալիս այն պատմական անհրաժեշտուԹիւնը, որ փոքր ազգերի լեզուն մեռնում է, մեռնում են, ուրեմն, և իրանք, փոքր ազգերը, մեռնում են, ի հարկէ, ոչ Ֆիզիկապէս, այլ իբրև ինքնուրոյն ժողովուրդ դադարում են գոյուԹիւն ունենալուց և ձուլվում են այն խոշոր ազգի հետ, որ աւելի զարգացած, հարուստ լեզու ունի։*

Ցեղի առանձնայատկուԹիւնը — գրում է բրօշիւրի *) հեղինակը — ցեղի առանձնայատկուԹիւնը, որի մէջ արտայայտվում է նրա ամբողջ դէմքը, նրա լեզուի առանձնայատկուԹիւնն է։ Լեզու — դա ինքը ցեղն է, որ համանիշ է լեզուին։ Լեզուն այն գործիքն է, որի միջոցով արտայայտվում է մարդու մտաւոր ոյժերի գործունէուԹիւնը։ Լեզուն, լինելով հասարակուԹեան մտաւոր ոյժերի գործունէուԹեան գործիք, դրա հետ միասին, նրա մտաւոր հարստուԹիւնների գանձարանն է։

---

*) Այս բրօշիւրը երկրորդ անգամ հրատարակվեց Պետերբուրգում 1873-ին և բաժանվեց «Русскій Міръ» լրագրի բաժանորդներին։

Այստեղից է առաջ գալիս այն երևոյթը, որ հասարակութեան կազմուածքի կատարելութեան աստիճանի հետ զուգընթաց գնում է և լեզուի, իբրև կրթական գործիքի, զարգացման աստիճանը։ «Մարդկային ընտանիքի մէջ մի ցեղի զօրութիւնը, նշանակութիւնը կախված է նրա լեզուի կատարելութիւնից, հարստութիւնից, ուրիշ խօսքերով՝ մտաւոր նիւթի այն պաշարից, որ ցեղը կարող է ձեռք բերել իր լեզուի միջոցով»։

Այսպիսով մեր առջև նկարվում է պայքարի մի ասպարէզ, ուր, ինչպէս ամեն մի պայքարի մէջ, յաղթութիւնը պատկանում է կատարելագործվածին։ Փոքրիկ ազգերի լեզուն չէ կարող կատարելագործվել այն աստիճան, որ նա դառնայ համամարդկային քաղաքակրթութեան գործիք։ Եւ ինչ է առաջ բերում այս անկարողութիւնը։—Պատմական օրէնք—Թոյլը, անկատարը պիտի ոչնչանայ, տեղի տալով ուժեղին, կատարեալին։ Մարդը միշտ ձգտում է դէպի առաջադիմութիւն. փոքր ազգերը, իրանց այդ ձգտման մէջ, ըստիպված պիտի լինեն ընդունել աւելի կատարեալ կրթական գործիք, քան իրանց սեփական լեզուն։ Փոքր ազգերի լեզուի մահը անխուսափելի է. դա բնական է, և իրանց լեզուն կորցրած փոքրիկ ազգերը պիտի ընդունեն

մեծ ազգերի լեզուն, այն ազգերի, որոնց հետ կապել է նրանց պատմութիւնը։ Հեղինակը մինչև իսկ նկարում է թէ ինչպէս է կատարվում այդ մահը։ Նա միանգամից, յանկարծակի չէ գալիս, այլ աստիճանաբար. տիրապետող լեզուն հեշտութեամբ դուրս է մղում մայրենի լեզուն նախ հասարակութեան բարձր, կրթված խաւերից, ապա և առևտրական ու արդիւնաբերական կենտրօններում ապրող ազգաբնակութեան միջից։ Աւելի երկար մայրենի լեզուն մնում է գիւղական, հասարակ ժողովրդի մէջ. և եթէ մայրենի լեզուն այնքան դեռ կրթական ոյժ ունի, որ կարողանում է ժողովրդի մտաւոր պահանջներից մի քանիսին գոնէ բաւարարութիւն տալ, այդ դէպքում նա յամառ պահվում է։ Բայց վերջ ի վերջոյ նոյն պատմական անխուսափելի օրէնքն է.—փոքր ազգերի լեզուների ոչնչացում, որ նշանակում է այդ ազգերի, իբրև անկախ մարմինների, անհետացում։

«Մշակը» մանրամասն քննադատութեան չենթարկեց այդ բրօշիւրը։ «Գրականական Խանութ» առաջնորդողի մէջ (№ 33) նա տըկար և անհիմն համարեց հեղինակի փիլիսոփայական եզրակացութիւնները փոքրիկ ազգերի դերի և ճակատագրի մասին։ Գլխաւոր

սխալը, որ ուզում էր ապացուցանել «Մշակը», այն էր թէ՞ փոքրիկ ազգերը իրանց սեփական լեզուի միջոցով չեն կարող զարգանալ, մարդկութեան օգուտ բերել։ Պատմութիւնից մի շարք փաստեր բերելով, Արծրունին պնդում էր հակառակը, այսինքն որ փոքր ազգերը․ կարող են ինքնուրոյնաբար զարգացնել իրանց ընդունակութիւնները։ Ի՞նչ փաստեր են դրանք։

Հին աշխարհը յոյն փոքրաթիւ ազգն ունի իբրև օրինակ։ Փոքր էր ժողովուրդը, բայց ինչեր տուեց մարդկութեան։ Եւ ընդհանուր պատմութեան մէջ դա բացառիկ երևոյթ չէ։ Չէխ ազգն էլ փոքրիկ էր, բայց նա առաջին անգամ սկիզբ դրեց բողոքականութեան, բաց արաւ առաջին համալսարանը։ Լեհական փոքրիկ ազգից դուրս եկաւ Կոպերնիկի պէս մեծ խելքը։ Շվէդացիները ունեցան Տորվալդսէնի նման հռչակաւոր քանդակագործը․ փոքրիկ Հօլլանդիան այնպիսի նշանաւոր նկարիչներ տուեց, որ մի ժամանակ ամբողջ Եւրոպայի համար նկարչութեան ուսուցիչ էր հանդիսանում։

Եւրոպայից անցնելով Ասիա, Արծրունին ապացուցանում էր, որ աշխարհի այս մասում էլ նոյն երևոյթը շատ օրինակներ ունի։ Փոքր էր հրէական ազգը, բայց նա աշ-

*խարհին տուեց Հին-Կտակարան, որ դարե-րով մնում է աշխարհի բոլոր ազգերի հա-մար կրօնական իմաստութեան աղբիւր. Նոյն փոքրիկ ազգն էր, որի մէջ ծնուեց քրիստոնէութիւնը, մի վարդապետութիւն, որ այնքան բարձրացրեց մարդուն։*

Ասիական ազգերից ովքեր ընդունեցին նախ եւ առաջ քրիստոնէութիւնը եւ միակ էին նորան պաշտպանելու Ասիայում,—արդեօք չէին երեք փոքր ազգեր. Հայեր, Ասօրիներ եւ Վրացիներ։ Դարեր անցնում էին դարերի յետեւից եւ այդ ազգերը իրանց հերոսական ջանքերով ամեն առաջադիմութիւն մեռցնող մահմետական տարրի հետ շարունակ պատերազմելով, իրանց արիւնով պահեցին Կովկասը եւ Փոքր Ասիան մարդկային կրթութեան համար։ Եւ այդ բոլորը կատարվում էր փոքր ազգերի միջնորդութեամբ, չը նայելով որ նոցա լեզուն չունէր ընդհանուր կրթողական նշանակութիւն։

*Այսպէս ջրելով ռուս հեղինակի այն գըլխաւոր հիմքը, թէ փոքր ազգերը չեն կարող ինքնուրոյնաբար զարգանալ, Արծրունին նորից դիմում է մայրենի լեզուի ստեղծագործական նշանակութեան։ Նաասում է.*

Անհետացաւ լեզուն,—անհետացաւ եւ ազգութիւնը, մնաց միայն մարդիկների մի յայտնի թիւ, որք առանց մայրենի լեզուի անընդունակ են մտաւոր գործունէութեան։ Բայց ինչ է այդ բնական

օրէնքի պատճառը, եւ ինչի նա արգելք է լինում ազգութիւնների կործանման,—սա ունի երեւի իր օրգանական հիմքը բնութեան մէջ, որոնց խախտելը քաղղաւորապէս վեր է պատուելի հեղինակի կարողութիւնից։ Նա մոռանում է, որ ազգութեան լեզուն մշակվում է ոչ թէ միայն դարերով, բայց մի ազգութիւն շրջապատող բոլոր հանգամանքների շնորհով։ Նա չը գիտէ, երեւի, որ օրինակ, Աֆրիկայի նեգրերի մէջ գործ ածվող լեզուն երբէք չէր կարող մշակվել հեռաւոր Հիւսիսում։ Կամ լեռնաքնակ մի ազգի լեզուն,—տափակ երկրում չէր կարող գոյանալ։

«Մշակի» այս վերաբերմունքը դէպի այդ՝ «վերնագրով համակրելի, բայց բովանդակութեամբ հակակրելի» բրօշիւրը բանակուի առիթ դարձաւ։ «Кавказъ» լրագրում ոմն Պաւէլ Զալէսկի յարձակվեց «Մշակի» վրա, ասելով թէ նա չէ հասկացել բրօշիւրի միտքը։ «Մշակը» հեգնանքով պատասխանեց նրան իր № 40-ի ներքին տեսութեան մէջ, հասկացնելով որ բրօշիւրի մէջ ամեն ինչ պարզ է ասված։

Մեր պատուելի քննիչը—գրում է Արծրունին—աշխատում է իրան զարմացած ձեւացնել, արտագրելով մեր յօդուածից մի տեղ եւ շարելով նորա մէջը անթիւ հարցական եւ բացականչական նշաններ։ Իսկ այն տեղը շատ հասարակ եւ անմեղ է։ Այդ այն տեղն է, որտեղ մենք ասում ենք, թէ մայրենի լեզուն անհրաժեշտ պայման է ինքնուրոյն

մտաւոր գործունէութեան համար, որովհետեւ, այժմս էլ աւելացնում ենք, մայրենի լեզուն, յարմարեցրած լինելով մարդի կազմվածքին, հեշտացնում է նորան իր կողմից յարմարեցնել իրան շրջապատող պայմաններին։ Այդ միտքը, Կարլ Ֆօխտից յայտնած, ունէ շատ ազգակցութիւն եւ Դարվինի վարդապետութեան հետ։

Առհասարակ, «Кавказъ»-ի յօդուածագիրը ներկայանում էր «Մշակին» իբրև բարկացած, որոտ և կայծակ թափող Արամազդ։ Սակայն այդ բարկութիւնը սարսափելի չէր «Մշակի» համար. ընդհակառակն, նա միանգամայն արդարացնում էր յայտնի առացուածքը. «Արամազդ, դու բարկանում ես, դու, ուրեմն, մեղաւոր ես»։ Այս խօսքերով էլ «Մշակը» վերջացնում էր իր կիսահեգնական պատասխանը։ Բայց այսպիսի դիրք չը բռնեց Արծրունին, երբ բանակռիւը անցաւ Պետերբուրգի «Голосъ» լրագրի էջերը։ Ռուս լրագիրը մի ընդարձակ առաջնորդող նուիրեց «Մշակին» և նրա պաշտպանած հարցին, բայց այնքան հեռու գնաց իր եզրակացութիւնների մէջ, որ Արծրունուն մնում էր ընթերցողին թողնել լրագրի վարմունքի դատապարտութիւնը։

«Голосъ»-ը, իր պաշտպանութեան տակ առնելով ռուսերէն բրօշիւրի հեղինակին, ա-

սում էր թէ «Մշակի» դիտողութիւնները չարժէ ուշադրութեան առնել, թէ ինքը բանակռիւ չի սկսի հայ լրագրի դէմ, քանի որ վերջինս արձագանք է մի որոշ կուսակցութեան, մի որոշ ուղղութեան, որ աւելի և աւելի յայտնի է դառնում Կովկասի տեղական բնակիչների մի քանի դասերի մէջ։ Հէնց այս կէտի վրա էլ ծանրանում էր մայրաքաղաքի ռուս թերթը։ Աւելորդ համարելով հերքել Արծրունու բերած պատճառաբանութիւնները, մոռանալով որ հարցը ուրիշ ոչինչ չէ, եթէ ոչ լրագրական մի բանակռիւ, հրապարակական քննութեան առարկայ դարձած մի հասկացողութիւն, «Голосъ»-ը ասում էր, որ ռուսերէն բրօշիւրի հեղինակը գալով այն եզրակացութեան թէ փոքր ազգերի լեզուները պիտի ոչնչանան, «բնականապէս հակառակում է ցնորքներին «Մանուկ Հայաստանի» կուսակցութեան, որ մտածում է Հայոց ազգի վերածնելութեան մասին։ Այդ իսկ կուսակցութիւնը գլխաւորապէս ապըստամբեցաւ կովկասեան ուսումնարաններում տեղացի լեզուների դասատվութեան վերցնելու դէմ։ Այդ մանուկ երևակայողների գործիքին (օրգան), Թիֆլիսում հրատարակվող հայ «Մշակ» լրագրին, խիստ բնական է, որ հաճելի չէին լինելու տեսակի հիմնական

դրութիւնները, և այդ լրագիրը ջանք է գործ դնում հաստատել նոցա անստուգութիւնը»։

Եւ մայրաքաղաքի լրագիրը իր կողմից ամեն ջանք գործ է դնում հասկացնելու որ պետական լեզուի նշանակութիւնը չէ հասկանում «Մշակը», որ պետական լեզուն անհրաժեշտ է սովորել և այլն։ Բայց պետական լեզուի մասին ոչ մի հարց չը կար և չէր էլ կարող լինել, քանի որ ոչ ոք չէր էլ մտածել անգամ որ այդ լեզուն չը պէտք է սովորել։ Մայրենի լեզուի պաշտպան Նազարեանցը անգամ ասում էր որ հայը իր մայրենի լեզուի հետ հաւասար չափով պիտի սովորէ պետական լեզուն։ Արծրունին էլ միևնոյնն էր կրկնում։ «Հայկական Աշխարհի» մէջ տըպված իր յօդուածներից մէկում նա ասում էր որ ռուսաց պետութիւնը, խաղաղութիւն հաստատելով Կովկասում, մի մեծ պարտաւորութիւն է դրել մեզ վրա—քաղաքակըրթվել, առաջադիմել։ Եւ մենք յանցաւոր կը լինենք, եթէ ամեն ջանք գործ չը դնենք կառավարութեան մեզ վրա դրած պարտաւորութիւնը կատարելու համար։ Ի՞նչպէս պիտի կարողանանք կատարել։ Ի հարկէ, ուսում առնելով, կրթվելով։ Եւ այդ ուսումը, կրթութիւնը դարձեալ Ռուսաստանը պիտի տար մեզ։

*„Голосъ" լրագիրը այսպիսի բաներ չէր ուզում իմացած լինել, նա միայն ասում էր թէ պետական լեզուի նշանակութիւնը այս է ու այս է, մի բան, որ ամենքի համար շատ ու շատ պարզ էր։ Արծրունին ռուս լրագրի այդ վարմունքի առիթով այսքանը գրեց.*

Մենք հասարակութեան դատողութեան ենք թողնում վճռել, որքան անհիմն են այդ տեսակ խօսքերը։ Երեւի «Голосъ» լրագրի պատուելի խմբագրութիւնը չէ իմանում, որ լրագիրները նորա համար են հրատարակվում, որ լուսաւորեն մարդիկներին, եւ ոչ թէ մի ազգութիւն վերականգնեցնելու նպատակով։ Եթէ լրագիրների ու գրքերի հրատարակութեամբ կարելի կը լինէր ազգութիւնները վերականգնեցնել,—այն ժամանակ ընկած ազգութիւնները ամեն օր կը վերականգնէին։

*Որքան էլ ցաւալի լինէր ռուս լրագիրների այս վերաբերմունքը, կար այն նշանաւոր հանգամանքը, որ հայերէն լրագիրը խօսեցնել էր տալիս իր մասին, հարկադրում էր որ իր հայեացքներն ու դատողութիւնները ի նկատի առնվեն, թարգմանվեն, քննադատվեն։ Այս նոր երեւոյթը անշուշտ հայերէն լրագրի օգտին էր խօսում։ Նշանակում էր, որ հայ հրապարակախօսութիւնը այնքան ամրացել է, այնքան արդէն ոյժ է ստացել, որ*

Նրան աննկատելի թողնել այլևս կարելի չէր։ Գրիգոր Արծրունին, այս ոյժի, այս լրջութեան առաջին և ամենանշանաւոր ներկայացուցիչը, այնուհետև էլ շատ առիթներ ունեցաւ բանակռիւ մղելու ռուս լրագիրների դէմ, հարկադրելով որ իր հայերէն յօդուածները թարգմանվեն և քննվեն։ Սա մի նոր յաղթանակ էր մեր մայրենի լեզուի համար։

Հարցը, սակայն, այս բանակռուի մէջ էլ չամփոփվեց, չը վերջացաւ։ Մայրենի լեզուի վիճակին Արծրունին նորից դիմեց «Հայոց Լեզու» առաջնորդողի մէջ (№ 46), որ, ի դէպ ասենք, նուիրված էր Անդրէաս Արծրունուն։ Հետաքրքրական է այստեղ այն թռուցիկ տեսութիւնը, որի մէջ հայոց գրականութեան անցեալն է երևում։ Հինգերորդ դարից մինչև տասնեչորրորդի վերջը մենք ունէինք հարուստ գրականութիւն. նա միակողմանի էր, վերացական էր, որովհետև այդ ժամանակամիջոցում չը կային դրական, ճիշդ գիտութիւնները։ Այնուհետև ամբողջ երեք դար— 15, 16 և 17-րորդը, ներկայացնում են կատարեալ անապատ. դա Հայոց մտքի կատարեալ անկման շրջանն էր։ Տասնութերորդ դարի սկզբում յայտնվում է Մխիթար Սեբաստացին, որ հիմնում է ս. Ղազարի միաբանութիւնը։

Այդ փոքրիկ կղզին 18-րորդ դարից սկսած, դառնում է հայոց մտքի համար միակ ապաստան։ Ամեն կողմից հալածված, ոչ թէ միայն ինքն հայը բայց եւ նորա ոգին, նորա պանդուխտ, թափառական միտքը,—վաղուց կոչնչանար, կանհետանար աշխարհի երեսից, եթէ նա չունենար մի հարուստ անցեալ, տ ա ս ն  ա ն գ ա մ  հ ա ր ի ւ ր  տ ա ր վ ա յ անցեալը։

Հեշտ չէ ոչնչանալ մի ազգութեան կամ մի լեզուի, որ ունի արդէն իր հարուստ գրականութիւնը։

Մխիթարեանների կատարած մեծ դերը ուրուագծելուց յետոյ, Արծրունին դիմում է հայ ընտանիքներին և նրա կատարած դերին։ Մինչդեռ կաթօլիկ աբեղաները և նոյն իսկ եւրօպացի գիտնականները ուսումնասիրում էին հայոց լեզուն ու գրականութիւնը, ինչ էր անում հայ ընտանիքը, որ միշտ պարծենում է իր սաստիկ բարոյականութեամբ։ Նա ատելութեամբ հալածում էր իր միջից մայրենի լեզուն։ Խօսքը, ի հարկէ, միջին և բարձր դասակարգերի մասին էր. Արծրունին շատ լաւ գիտէր, որ հասարակ ժողովուրդը առ այժմ վարակված չէ այդ ախտով։ Բայց պարզ է, որ «ամեն հասարակութեան մէջ միջին և բարձր դասերի ուղղութիւնը և ոգին տիրապետում է փոքր առ փոքր և ամբոխի վրա»։ Այդպէս պիտի լինէր և մեզա-

նում։ Բայց մի բախտաւոր հանգամանք ուղ-ղակի փրկիչ հանդիսացաւ մեզանում։ Ի՞նչ էր դա։

Այն, որ մայրենի լեզուն ատող ծնողների որդիները պարտաւորութիւն չը համարեցին կուրօրէն հնազանդվել իրանց ծնողներին։ Եթէ հնազանդված լինէին, նրանք էլ պիտի ատէին մայրենի լեզուն և նա կորած կը լի-նէր։ Եւ չը հնազանդվողները արական սեռի սերունդն էր, որովհետև «մեր քոյրերը որք փակուած կեանք վարելով, բոլորովին են-թարկվեցան ծնողների բռնաւորութեանը», նոյնպէս ատում են իրանց սեփական լեզուն։

. .

Մեզ փրկեց եւ կը փրկի այն, որ մենք մեր ընտանիքին հակառակ ենք վարվում։ Նա ասում է. մենք ունեցանք մեր անցեալը, մեր գրականու-թիւնը, մեր փառաւոր ժամանակը,—ուրեմն էլ ինչ հարկաւոր է աշխատել. ժամանակակից հայը ընդու-նակ չէ որ եւ է արդիւնաւոր աշխատանքի։

Մենք ընդհակառակն ասում ենք. մենք ունե-ցանք մեր անցեալ հարուստ մտաւոր կեանքը—ուստի իրաւունք չունենք չը շարունակել նորա արդեան մշակութիւնը։

Մենք յաղթեցինք, եւ սորանով բաւականանում ենք։

Յաղթեցին, ճիշտ է։ Դա մի նշանաւոր յաղթանակ էր, որ տանում էր եռանդով

լցված, պարտաճանաչ սերունդը հին հայեացքների դէմ։ Բայց դա չէր նշանակում հնութեան կատարեալ պարտութիւն, նրա հայեացքների կատարեալ ոչնչացում։ Եռանդուն սերունդի յաղթական արշաւանքի առջև հայ ընտանիքը չը կանգնեց. նա տեղի տուեց, քաշվեց։ Բայց երբ ասպարէզից անհետացաւ եռանդուն, պարտաճանաչ սերունդը, մեզանում տիրեցին նախկին անուշադրութիւնը, ատելութիւնը դէպի մայրենի լեզուն, հայ բուրժուա ընտանիքը դարձեալ մտաւ իր դերի մէջ, սկսեց իր օրինակով ազդել հասարակ ժողովրդի վրա։ Եւ ժամանակակից նոր սերունդը այլ ևս փրկութիւն չէ որոնում ընտանիքի վարմունքին հակառակվելու մէջ։ Այժմ նոր ու հին սերունդները կատարելապէս համաձայն են իրար հետ...

Եւ այն եռանդոտ, պարտաճանաչ սերունդի տարած յաղթանակը մի պատահական, անհասկանալի աջողութիւն չէր, այլ ունէր իր խոր ու հաստատուն պատճառները։ Հին, շատ հին ժամանակներից է, կարծեմ, կազմված այն ասացուածքը թէ հայի ամենամեծ թշնամին ինքը հայն է։ Այս անողորմ ճշմարտութիւնը դուք կը գտնէք ամեն տեղ. մեր ամբողջ պատմութիւնը շարունակ այս է կրկնում. մեր մատենագիրները, մեր ողբա-

*ցողները, մեր քարոզիչները չարունակ հայի այս յատկութիւնն էին ընդգծում, հարուածում, անիծում։ Մեր նորագոյն հրապարակախօսներն էլ իբրև մի սուրբ, անուրանալի ճշմարտութիւն այդ սարսափելի խօսքերն էին խփում մեր հասարակութեան ճակատին։ Ահա Արծրունին էլ միևնոյն ճշմարտութիւնն էր դարձնում իր առաջնորդողներից մէկի* (№ 40) *բովանդակութիւն։ «Մեր ամենամեծ թշնամիները»—այսպէս է վերնագիրը. և կարդալով միայն այդ վերնագիրը, չը դիտելով յօդուածի բովանդակութեան, դուք իսկոյն կասէք թէ այդ թշնամիները—իրանք՞ հայերն են։ Որովհետև դա մի հանրացած միտք է, դա հասարակաց խօսք է։ Հետաքրքրականը այստեղ այն է, թէ Արծրունին ինչպէս է ձեւակերպում այդ ազգային հին ասացուածքի ճշմարտութիւնը։*

*Երևակայեցէք,—ասում է նա—որ ձեր ծնողները ամբողջ օր, առաւօտից մինչև գիշեր, կրկնում են ձեր ականջում թէ դուք ունեցել էք հարուստ ու երևելի նախնիքներ, թէ նրանց փառքին սահման չը կար, թէ նըրանց պատւում էին ամեն տեղ։ Ի՞նչ դուրս կը գայ։*

Երեխան այդ տեսակ բաները լսելով կը փքվի,

կը հպարտանայ, բոլոր իրան շրջապատող մարդիկների վերա արհամարհանքով կը նայէ... կորած անցեալի ցնորքների յետեւից ընկնելով, նա միջոց չի ունենայ ներկան քննելու, նա չի նկատի իր ներկայի պակասութիւնները ու իր դրութեան թշուառութիւնը,—նա կը մեծանայ սարսափելի ինքնահաւանութեան մէջ։

Հետեւանքը կը լինի մտաւոր եւ բարոյական անշարժութիւն։

Մեծանում է այդպիսի կրթութիւնը ստացած երեխան, սկսում է փորձվել, ճանաչել չարն ու բարին, յարաբերութիւններ ունենալ աշխարհի հետ. նա սկսում է քննել իրան եւ յանկարծ նկատում է որ ամբողջ մանկութեան ընթացքում ցնորքների ետեւից ընկնելով, յափշտակված էր երեւակայական գաղափարներով։ Իրականութիւնը ցոյց է տալիս նորան «փոխանակ իր նախնիների փառաւոր անցեալի ու իր սեպհական անձի յուսած գեղեցիկ ապագայի,—միմիայն մի թշուառ, ողորմելի ներկան։

***Այս միւնոյնը պատահել է և հայ ազգի հետ։ Եւ այստեղ Արծրունին դատապարտում է ինքնագոհ ազգասիրութիւնը, որ հիմնված է անցեալի միակողմանի, ուռցրած պատմութեան վրա։***

Մեզ ամեն բան վատ կերպով են սովորացրել, բայց մանաւանդ անպիտան կերպով սովորացրել են մեզ մեր ազգային պատմութիւնը։ Նա մեզ համար դարձել է մեր բարոյական եւ մտաւոր ներկայ դրութեան համար կորստեան պատճառ։

Յափշտակվելով անցեալով, մենք մեր ներկայ դրութիւնն էլ անցեալի չափով ենք չափել։ Մեզ ասում էին թէ հայը քաջ է եղել,—եւ մենք չէինք նկատում որ արդեան հայը ստրկային բնաւորութիւն ունէ. մեզ պատմում էին որ հայը միշտ եղել է անձնանուէր—եւ մենք չէինք նկատում, որ այժմ նա պատրաստ է ընդհակառակն իր ամենամօտիկ հայրենակցին հարստահարել, վնասել, որ նա միայն մի բարոյական ուղեկից է ճանաչում,—վ ա յ ե լ ե լ  կ ե ա ն ք ը, որ նորան միայն մի ազնիւ զգացմունք է յայտնի,—ե ս ո ւ թ ի ւ ն ը։

Մեզ մեր պատմութիւնը թերի կերպով սովորեցնելով ամենամեծ վնաս բերեցին, որովհետեւ փքեցին եւ միայն մեր ինքնահաւանութիւնը եւ ոչ մի քննադատական հայեացք չը գցեցին պատմած իրողութիւնների վերա։

Այդ է պատճառը որ երբ մեզանում ըսկսվեց քննադատող ուղղութիւնը, շատերը չէին ուզում լսել, կատարեալ արհամարհանքով էին պատասխանում։ «Բայց ժամանակն իրն առաւ. ի ն ք ն ա ք ն ն ո ւ թ ի ւ ն ը, իր սեփական պակասութիւնների մեղադրելը քանի գնում է, աւելի ու աւելի տարածվում է»։ Հայը սկսել է ինքն իրան մեղադրել թէ գրականութեան մէջ, թէ բեմի. վրայ։ Ի՞նչ է դա, ինչպէս պէտք է գնահատել այդ երեւոյթը։ Արծրունին բերում է հետեւեալ խօսակցութիւնը.

—Դուք միշտ մեղադրում էք, ամեն բան վատ կողմից էք ներկայացնում, քոլորովին յուսահատեցնում էք ընթերցողին,—ասում էր ինձ մի պարոն,—գոնէ մի պայծառ բան ցոյց տուեցէք մեզ մեր կեանքում...

—Որ պայծառ երեւոյթ չը կայ, պարոն, ես ինչ անեմ։

—Այն ժամանակ հնարեցէք, բայց մի ցոյց տուէք մեզ միայն մեր վատ կողմերը...

—Ես իրաւունք չունեմ հնարելու, պատասխանեցի ես։

Իմ պարոնը դժբախտաբար մի պայծառ բան չը նկատեց, այն է՝ անողորմ ինքնաքննութիւնը, որ մեր այժմեան հայերի մէջ միակ ուրախացուցիչ երեւոյթ է։

Սաստիկ անողորմ անձնաքննութիւնը թէ գրականութեան, թէ ուսումնարանի մէջ, թէ բեմի վերա, նշան է, որ ազգը ընդունակ է փոխվել, հրաժարվել իր պակասութիւններից, առաջադիմութիւն անել։

Միայն նոքա, որք ընդունակ չեն մազի չափ անգամ փոխվելու, ընդունակ չեն կատարելագործվելու, միայն նոքա թշնամի են այդ փրկարար հասարակական միջոցի.—անձնաքննութեան։

...Վերջապէս պէտք է հասկանանք, որ այն հասարակութիւնը, որ հրաժարվում է ինքն իրան քննութեան տակ գցել, նա ինքն իրան դատապարտում է յաւիտենական անշարժութեան, ուրեմն հասարակական մահվան։

**Մեր ամենամեծ թշնամիները մենք ինքներս ենք։ Ի՞նչ անենք մեր այդ թշնամուց**

ազատվելու համար։ Պէտք է ինքներս քննադատենք մեզ, քննադատենք սաստիկ, անողորմ կերպով։ Դա է մեր փրկութիւնը։ Կատարելագործվել, առաջ գնալ, մեր վէրքերից ու կեղտերից մաքրվել կարող ենք միայն այդ միջոցով։

Եւ ինքը, Արծրունին, բաց է անում սեպանում ինքնաքննութեան մի ասպարէզ։ Սկիզբը դրել էին Ստեփան Ոսկանը, «Հիւսիսափայլի» մարդիկ, Կ. Պօլսի «Մեղուի» խմբագիր Սրվաձեանը, բայց միայն Արծրունուն էր վերապահված դարձնել այդ ուղղութիւնը տիրապետող մեր հրապարակախօսութեան մէջ։ Ինքնաքննութիւնն էր, որ վայրիվեր արաւ շատ հասկացողութիւններ մեզանում. նա իւրաքանչիւր հետազօտութեան հիմքը դարձաւ, նա նոր ուղղութիւն, նոր կերպարանք հաղորդեց մեր վիպագրութեան, գտնելով նրա տաղանդաւոր ներկայացուցիչ Րաֆֆիի մէջ իր ամենաեռանդուն երկրպագուներից մէկը։ Եւ նրա տուած օգուտները շատ և շատ են։ Ճիշտ էր ասում Արծրունու խօսակից պարոնը թէ այդ ուղղութիւնը յուսահատական է։ Այո, շատ բան մռայլ ու յուսաբեկ դրութեան մէջ էր երևան գալիս մեր առջև։ Բայց դա թուլութիւն բերող յուսահատութիւն չէր։ Նա չէր ասում թէ պէտք է ձեռ-

քերը կախ գցել, վճիռ կայացնել, թէ ոչինչ չէ կարելի և չը պիտի անել։ Յուսահատական դրութիւնը եռանդ, գործունէութիւն, շարժում էր առաջացնում։ Արծրունին չէր սխալվում, ասելով թէ հայերի մէջ միակ մըխիթարական, միակ պայծառ երևոյթը ինքնաքննութիւնն է։ Նրա հակառակորդները ինքնաքննութիւն հասկանում էին թշնամութեան մտքով և յայտարարում էին թէ Արծրունին և նրա կողմնակիցները ազգի թշնամիներ են։ Բայց ո՞ր լաւ գործիչը մեղանում այդպիսի անուան չէ ստացել։ Պատմութիւնը պատասխանում է մեզ, որ ոչ մէկը…



Հարուածելով հայ ընտանիքի բացասական կողմերը, Արծրունին, բնականաբար, չէր կարող առանց ուշադրութեան թողնել կանանց հարցը, մի հարց, որ, ինչպէս գիտենք, նրա գրական գործունէութեան առաջին խակ քայլերից եղել է նրա համար ամենակարևորներից մէկը և որին նա վերադարձել է շատ անգամ։ «Մշակի» առաջին տարվայ ընթացքում Արծրունին միայն մի առաջնորդող է յատկապէս նուիրել մեր կանանց («Կանանց ստրկութեան հետևանքը», № 13)։

Տխուր է կնոջ ճակատագիրը պատմութեան ընթացքում։ Կինը միշտ կախված է մարդուց. Նրա դրութիւնը շարունակ ընդունում է այն կերպարանքը, որ համապատասխանում է տղամարդի զարգացման։ Երբ տղամարդը վայրենի է, կինը գրաստ է. Կամաց-կամաց կնոջ դրութիւնն էլ փոխված է, երբ տղամարդը վայրենութիւնից դուրս գալով, սկսում է հետզհետէ բարձրանալ քաղաքակրթութեան աստիճանով։ Կնոջ պատմական ճակատագրի մէջ առաջին յեղափոխութիւն գործողը քրիստոնէութիւնն էր, առաջին հասարակական վարդապետութիւնը, որ երկու սեռի բարոյական հաւասարութիւնը քարոզեց։ Քրիստոնէութիւնն էր, որ կերպարանափոխեց կնոջ դրութիւնը և մեզ մօտ Հայաստանում։ Առաջին խոշոր երևոյթը հինգերորդ դարն էր, երբ հայ կինը հանդիսացաւ տղամարդի հաւասար մարդ և մասնակցեց թէ կրօնական և թէ ազգային շարժման։

Բայց քրիստոնէութիւնը չէ կարողանում մեզ մօտ առաջ գնալ, զարգանալ. Նա մահմեդականութեան ստրուկն է դառնում։ Հայը քրիստոնեայ մնալով, իր կենսական երևոյթների, իր բարք ու վարքի, իր հասկացողութիւնների մէջ ենթարկվում է մահմեդական ոգուն, իւրացնում է նրա գաղափարները ու

*ըմբռնումները. Նա դառնում է «բռնաւոր ընտանիքի մէջ, մոլեռանդ և անհամբերող՝ հասարակութեան մէջ, կորցնում է եռանդ դէպի շարժում և նորութիւն, յուսահատվում է, դառնում խոնարհ...կինը կրկին ստրկանում է»:*

*Բայց ահա գալիս է նորագոյն ժամանակը, եւրոպական լուսաւորութեան առաջին նշոյլները թափանցում են հայերի մէջ և ստրկութեան հետեւանքը առաջ են գալիս իրանց ամբողջ դառնութեամբ: «Մարդ և կին տգէտ, հասարակութիւնը անպատրաստ կըրթութիւնը ընդունելու, տղամարդը այնքան անկիրթ, որ դեռ երկար ժամանակ ընդունակ չի լինի, իր կողմից կրթութիւնը ընդունելուց յետոյ, ազդել միւս սեռի մտաւոր զարգացման վրա»: Եւ դրա հետեւանքն այն եղաւ, որ հայ կինը սկսեց սովորել, կրթվել, բայց ոչ թէ իր ազգի մարդիկների ձեռքով, այլ անմիջապէս դրսի տարրերի ազդեցութեան ենթարկվեց: Կրթութիւնը եւրոպական լեզուով էր, եւրոպական ոգով:*

Մարդու կամքի դէմ, եւրոպական լուսաւորութիւնը սկսեց ազդեցութիւն ունենալ կնոջ վերա... եւ կինը հեռացաւ մարդից, կարծես այլ եւս չէր հասկանում նորան: Կինը օտար դառաւ մարդի ձգտում-

ների՛ն, հասկացողութիւններին, նպատակներին։ Մարդը հայութեան վերա էր խօսում,—կինը չէր հասկանում նորան։ Մարդը հայերէն էր խօսում, կինը ծիծաղում էր։ Նա հայ է, բայց իր ուղղութեամբ նա տարբերվում է հայոց հասարակութիւնից։ Նորան ծանօթ չէ հայութեան հին անցեալը, նորան ծանօթ է միայն հայի մօտիկ անցեալը, որը նորա համար անտանելի ստրկութիւն էր։

Նա, կարծես, կենդանի բողոք է հայ մարդի անընդունակութեան, ազգի պատմական անցեալ թշուառութեան, պատմական պայմաններից առաջացած այն ստրկութեան դէմ, որին նա երկար ժամանակ ենթարկված է եղել...

Հայ կինը, կարծես, ասում է հայ մարդին. այն քիչ մաս լուսաւորութիւնը, որ ես ստացել եմ, վատ թէ լաւ ըմբռնելով նորա տարրական սկզբները,—ես ստացայ եւրոպական տարրից, եւ ոչ թէ քեզանից...

Ամեն տեղ մարդը զարգանալով, մտաւորապէս ազդում է կնոջ վերա։ Հայ արդեան հասարակութեան մէջ այդպէս չէ։ Մարդի կամքի դէմ, առանց մարդի միջամտութեան կնոջ եւ լուսաւորութեան աղբիւրի մէջ,—հայ կինը անմիջապէս սկսում է լուսաւորութիւն ստանալ եւրոպական աղբիւրից։

Մարդը ուշացաւ իր բնական պաշտօնը կատարելու մէջ... Նորա տեղը բռնած է։ Ուրիշ, աւելի զարգացած տարրը նորա պաշտօնը կատարում է։

Եւրոպական լուսաւորութիւնը, ինչպէս ամեն ճըշմարտութիւն, անողորմ է...

Հայ կինը յափշտակվեցաւ մեր անշարժութեան գրկից...՝ Մեր սեպհական յանցանքն է, եթէ կինը

դառնում է մեզ օտար, նա դառնում է մեր հակառակորդ...

Ուրիշ մի քանի տեղերում էլ Արծրունին շեշտում է հայ կնոջ այդ դրութիւնը, այսինքն այն, որ հայ ընտանիքի մէջ օտարացում, խորթութիւն մտցնելու ամենաազդու գործիքը հայ կինն է դառնում։ Եւ դա, իսկ որ, կենսական մի մեծ երևոյթ էր։ Հայի նահապետական ընտանիքում կինը, զրկված լինելով որ և է ուսումից, կրթութիւնից, լինելով մի անլեզու ստրուկ, սաստիկ կապված էր հայրենի աւանդութիւնների, ընտանեկան սրբութիւնների հետ։ Այդ ստրուկը կենտրոնացնող, իր շուրջը հաւաքող մի ոյժ էր. Նրա վրա էր պահվում ամբողջ տունը և նրա հերոսական ջանքերը ընտանեկան ըսկզբունքի, սրբութեան, աւանդութիւնների ու նախապաշարմունքների հզօր, անխորտակելի պաշտպաններն էին։ Բայց փոխվեցին հանգամանքները, հայ կինը սկսեց կրթվել, և նա դարձաւ ընտանիքի մէջ բոլորովին հակառակ դեր կատարող մի ոյժ։ Նա սկսեց օտարացում մտցնել ընտանիքի մէջ, նա ըսկսեց քայքայել այն, ինչ դարերի ընթացքում պահել-պահպանել էր իր անօրինակ մարտիրոսութիւններով։ Արծրունին բա-

ցատրում էր այդ երևոյթը այն կրթութեամբ, որ ստանում էր հայ կինը. Նա ասում էր, որ հայ կնոջը հայութիւնից խլեց եւրոպական ուսումը։ Սրանով նա, ի հարկէ, չէր ասում թէ հայ կինը եւրոպական ուսում չը պիտի ստանայ։ Ո՛չ, ամբողջ հարցը ուսում ստանալու միջոցին ու եղանակին է միայն վերաբերում։ Ի՞նչպէս պէտք է լինի այդ կրթութիւնը, ի՞նչ պէտք է անել, որ եւրոպական կրթութիւնը այդպէս ոչնչացնող չը լինի։

Այստեղ մենք կանգնում ենք Արծրունու աշխարհայեցութեան հիմքերի առաջ։ Արդէն տեսանք, որ սկզբից ևեթ Արծրունին ամեն բանի մէջ ա ն հ ա տ ի ազատ զարգացման կողմնակից է, այդ սկզբունքն է համարում միակ ճշմարիտը, միակ արդարն ու բեղմնաւորը մարդկային երջանկութեան համար։

Անհատ առնելով, նա միայն մարդուն չէր հասկանում։ Մի հատ մարդը անհատ է իր հասարակութեան մէջ, բայց ընդհանուր մարդկութեան մէջ անհատ է ամեն մի ազգ։ Եւ ինչ հարկաւոր է ամեն մի մարդուն անհատապէս զարգանալու համար, որպէս զի նրանից օգուտ տեսնի հասարակութիւնը, նոյնը հարկաւոր է և ամեն մի առանձին ազգին, որպէս զի նա օգուտ բերէ ամբողջ մարդկութեան։

Յատկապէս անհատի նշանակութիւնը և դերը բացատրելու համար Արծրունին 1872-ին գրել է երկու յօդուած. «Կաթոլիկ եկեղեցի և անհատութիւն» (№ 22) և «Ի՞նչ է անհատութիւն» (№ 25): Առաջին յօդուածում նա քննարկում է պապականութեան էութիւնը: Դա մի պատմական տեսութիւն է, հիմնուած առաջաւոր, լուսաւոր հեղինակների (Դրեպէրի և ուրիշների) հայեացքների վրայ: Մենք ամենքս գիտենք թէ ինչ է պապականութեան ոգին. նա վախում է ազատութիւնից, անհատական իրաւունքներից, մարդու մէջ անհատականութեան զգացմունքի զարգանալուց: Մի շարք դարեր իրանց գործերով, մաքառումներով ցոյց են տալիս թէ ինչպէս կաթոլիկ եկեղեցին ձգտում էր սպանել անձնաւորութիւնը, դարձնել նրան եկեղեցական իշխանութեան ստրուկ: Մինչդեռ քրիստոնէութիւնը անհատի զարգացման սկզբունքն էր դրել իր հիմնարկութեան օրից: Եւ Արծրունին այդ ճշմարտութիւնը պարզող մի օրինակ համարում է հինգերորդ դարի Հայաստանը:

Հինգերորդ դարի հայը քարոզում էր անհատի անկախ ինքնաճանաչութիւնը: Լուսաւորչական եկեղեցին քարոզում է, որ եկեղեցին «հաւատացեալների ժողով է» և ոչ մի

տեղ մեր դաւանուԹիւնը դրա հակառակ բան չէ ասում. օրինակ այն, Թէ հաւատացեալները պիտի անպայման, առանց իրանց խղճից խորհուրդ հարցնելու, հպատակվեն եկեղեցուն։ Եւ հինգերորդ դարի գաղափարական շարժումը Արծրունին համարում է հէնց այդ իսկ անհատական զարգացման գործ։ Ահա ինչ է նա ասում.

Հինգերորդ դարի, Ջրադաշտի դէնի դէմ սարսափելի կռիւների ժամանակ, երբ անհատներից ամեն մէկը, մարդ Թէ կին, դէպի հայրենիք եւ կրօն ունեցած խոր սիրով զինաւորված, զոհում էին իրանց անձները,—եկեղեցին, որպէս հիմնարկուԹիւն կարծես Թէ յետ քաշվեցաւ եւ կռւի վճռողական րօպէում Թոյլ տուեց ուրիշ հասարակական զօրուԹեանը առաջնորդել ազգային շարժմանը... այն զօրուԹիւնը անհատուԹիւն էր։ Եւ ինչպէս ասում է մեր Եղիշէն, մարդիկներից ամեն մէկը իր անձամբ ներկայացնում էր եկեղեցին, մեզանից ամեն մէկը եկեղեցի էր։

Օրինակը այս է հաստատում, որ երբ հասարակուԹեան մէջ չէ սպանված անհատականուԹիւնը, երբ անձնաւորուԹիւնը զարգացած է ինքն իր մէջ, գիտակցաբար, այդպիսի հասարակուԹիւնը կարող է գաղափարական, առաջադէմ շարժումներ գործել, շարժումներ, որոնք այդ հասարակուԹեան պարծանքն են մնում դարերով։ Մինչդեռ

պապականութիւնը, գարերով ջանք գործադրելով որ չը լինի անհատականութիւն, այլ լինի կոյր հնազանդութիւն, ստրկութիւն, երբէք չը կարողացաւ ազատ, առաջադիմական շարժումներին դրդիչ հանդիսանալ։

Ինչպէս է անհատականութեան սկզբունքը այդպիսի առողջ, գեղեցիկ երևոյթներ առաջացնում։ Այդ բանը Արծրունին բացատրում է իր երկրորդ յօդուածում, հիմնուելով բնական գիտութիւնների վրա։ Բնութիւնը կենդանի մարմինների ստեղծագործութեան մէջ դրել է մի մեծ, անփոփոխելի սկզբունք. դա այն է, որ կենդանի մարմինը բաղկացած է զանազան գործարաններից, զանազան օրգաններից, որոնց նշանակութիւնն է ամբողջ մարմնի համար անհրաժեշտ այլ և այլ պաշտօնները կատարելը։ Եւ իւրաքանչիւր օրգան յարմարեցրած է կենդանի մարմնի տեսակին, բնաւորութեան, կեանքի եղանակին։ Կովի ատամները բուսական կերակրով ապրող անասունի համար ամենայարմար գործիքներն են. մարդը միայն բուսեղէն չէ ուտում և նրա ատամները ուրիշ կազմուածք ունեն։

Օրգանական մարմնի համար անհրաժեշտ են այն բոլոր մասերը, որոնցից կազմված է նա։ Օրգանական մարմինը իր բոլոր գործիքներով կազմում է այն, ինչ որ գիտութիւնը

*անուանում է անհատ։ Հիմա զրկեցէք այդ անհատը նրա օրգանների մէկից։ Ի՞նչ կը լինի։ Ամբողջ մարմինը կը կորցնէ իր օրգանական ամբողջութիւնը, իր անհատականութիւնը։ Զրկել անհատը իր մի օրգանից, նշանակում է սպանել նրան։*

*Հասարակութիւնը կազմվում է անհատներից, իսկ մարդկութիւնը—ազգերից։ Ազգութիւնն էլ անհատ է մարդկային մեծ ընտանիքի մէջ։ Ամեն ազգութիւն իր անհատական ինքնուրոյն յատկութիւններն ունի, դրանք նրա գործարաններն են և պիտի ապրեն, որպէսզի ազգն էլ ապրէ իր անհատական կեանքով։ Եւ դա անհրաժեշտ է ոչ միայն այդ անհատին, այլ ամբողջ մարդկութեան։*

*Եթէ պահպանել մարդի անհատութիւնը նշանակում է հասարակութեանը օգուտ բերել, նորան հարըստացնել, նորա համար նոր ույժ մշակել,—ուրեմն եւ պահպանել ազգութիւնների ա ն հ ա տ ա կ ա ն յ ա տ կ ո ւ թ ի ւ ն ն ե ր ը, նշանակում է օգուտ բերել ամբողջ մարդկութեանը։*

*Մենք տեսանք որ Արծրունին մայրենի լեզուի մասին ծագած պայքարի մէջ անհատականութեան այս օրէնքի վրա էր հիմնվում։ Ահա նոյն այդ սկզբունքից առաջնորդվելով,*

նա գրում է՝ «Թատրօն հարկաւոր է թէ ոչ» ատամչնորդոզը (№ 31)։ Եւ ահա ինչպէս է նա պատասխանում այդ հարցին։

Փորձեցէք 12 տարեկան մի երեխայի ձեռքը վերացական փիլիսոփայութիւն պարունակող մի գիրք տալ,—և նա երբէք, ոչինչ չի հասկանայ։ Բայց պատրաստեցէք այդ երեխային հասկացնել նոյն այդ ծանր վերացական մտքերը աստիճանաբար, աւելի թեթև և մատչելի ընթերցանութեան միջոցով,—և դուք ժամանակի ընթացքում հասկանալի կը դարձնէք նրան այն փիլիսոփայական գիրքը։ Փորձեցէք երեխային նախ և առաջ նրա մայրենի լեզուն չը սովորեցնել, այլ հէնց սկզբից աւանդել նրան բոլոր առարկաները օտար լեզուով, երեխան մեծ դժուարութիւն, մեծ արգելքներ կը զգայ կանոնաւոր կերպով մտաւորապէս զարգանալու համար։ Իսկ եթէ դուք նախ և առաջ մայրենի լեզուով զարթեցնէք երեխայի մէջ հետաքրքրութիւն, ընկերք դնէք նրա մտաւոր գործունէութեանը, կը տեսնէք որ երեխան ժամանակով ինքը կը զգայ օտար լեզուներին դիմելու անհրաժեշտութիւնը՝ իր մէջ զարթած ուսումնասիրութեանը լրումն տալու համար։

Մի ուրիշ օրինակ։ Երիտասարդը կարդում է մայրենի լեզուով գրած մի գիրք. նրա մէջ

*յարուցվում են նոր մտքեր, որոնց լրում տալու համար նա պահանջ է զգում դիմելու երկրորդ, երրորդ, չորրորդ գրքին։ Նրա հարցասիրութիւնը աւելի և աւելի ընդարձակվում է, իսկ մայրենի գրականութիւնը այնքան աղքատ է, որ չէ կարողանում բաւարարութիւն տալ նրան։ Եւ նա ստիպված է լինում դիմել օտարազգի գրականութեանը։*

Ահա մտաւոր զարգացման համար բնական եւ կանոնաւոր ընթացքը,—զարթեցնել մարդի մէջ բնական ձգտումն աստիճանաբար կրթվելու, հետզհետէ եւ ինքնաճանաչութեամբ առաջ գնալու։

*Այս բնական և կանոնաւոր ընթացքը պիտի թատրոնական գործում էլ պարտաւորական լինի։ Ահա՛ հայի՛ առաջ ներկայացնում են օտար կեանքից վերցրած կամ օտար կեանքի մէջ աւենաերևելի համարված դրաման։ Ընդունեցէք թէ այդ հայը դեռ չէ գնահատում կամ հասկանում իր մայրենի լեզուով գրված պիէսները։ Եւ ինչ կը տեսնէք։ Կը տեսնէք այն, որ հայը չի հասկանայ և օտար կեանքից վերցրած պիէսը։*

Բայց շարժեցէք նորա հետաքրքրութիւնը շարունակ ներկայացնելով նորան իր մայրենի լեզվով այնպիսի գրվածները, որք առնված են իր շրջանից,

ժողովրդական կեանքից,—եւ նա իր շրջանի երեւոյթներով հետաքրքրվելուց յետոյ, փոքր առ փոքր պահանջ կը զգայ՝ ընդարձակել իր հորիզոնը եւ ապա դիմել եւ օտար երեւոյթներին։

Թիֆլիսը արդէն սկսել է մեծ կենտրոններին յատուկ կեանք վարել. Նա ունի իտալական օպերա, ռուսաց թատրոն, գիտական ընկերութիւններ, գրական երեկոներ, հրապարակական դասախօսութիւններ և այլն։ Այդ բոլորը, սակայն, մատչելի չէ ժողովրդի ստորին դասին կամ մինչև իսկ միջին դասի մի մասին։

Ստորին դասը շարունակում է ազատ ժամանակը նուիրել կամ կռիւներին (մուշտի կռիւ) կամ զանազան ուխտագնացութիւններին։ Միջին դասը թուղթ խաղալուն, կանայք թուղթ եւ լօտո խաղալուն, գիտնականները բամբասելուն եւ այլն...

Երեւակայենք թէ բեմի վրա ներկայացնում են Օստրովսկու պիէսները. Նրանք շատ լաւ են, նրանց մէջ հանճարեղ գրչով է նկարված ռուս կեանքը։ Բայց հայ-վրաց հասարակութեան համար, որ դեռ սովոր չէ իր մայրենի լեզուով դատել Օստրովսկու դուրս բերած հասարակական երեւոյթների մասին, —այդ պիէսները չեն կարող կրթողական

նշանակություն ունենալ։ Եվ մեր հասարակությունը չէ էլ գնում այդ ներկայացումները տեսնելու։

Ի՞նչ է մնում անել։ Ո՛չ Օստրովսկու հրանալի գրվածքները, ո՛չ ընդհանուր մարդկային նշանակություն ունեցող Շեքսպիրի կամ Շիլլերի դրամաները դեռ մատչելի չեն։ Մնում է գրավել հասարակությունը Օֆենբախի և ուրիշների գործերով, զանազան «Գեղեցիկ Էլէններով» և ֆրանսիական ճաշակով գրված այնպիսի պիէսներով, ուր երևում են «տկլոր կուրծքերով, ոտներով ու ձեռքերով ներկայացնող, պար եկող, իրանց մէջ պաչպչվող, գայթակղեցուցիչ գերասանուհիները»։ Բայց գրավելու այս միջոցը անկիրթ, դեռ իր սեփական ազգային, բնքնուրոյն բեմական արուեստ չունեցող ժողովրդի համար անբարոյական է, վերին աստիճանի վնասակար և նոյն իսկ վտանգաւոր...

Մնում է դիմել այն մեթօդին, որով մենք փոխարինությունը մատչելի դարձրինք երեխային։ Այն է՝ սկսել մայրենի, սեփական գործից և նրա վրա կրթելով ժողովրդը, տանել դէպի օտարը, դէպի հանրամարդկայինը։

Հարկաւոր է ամեն միջոցներով նպաստել ժողո-

վրդական, ազգային բեմական արհեստի զարգանալուն, որ մեր հայ-վրաց հասարակութիւնը նախ եւ առաջ գրաւվելով իր սեփական շրջանի հասարակական կեանքով, այնքան հետաքրքրվէր առհասարակ կենսական գաղափարներով, որ ժամանակով ազգային, սեպհական մտաւոր կեանքի արդիւնքը նորա համար նեղ երեւալով, նա ակամայ ստիպված լինէր ընդարձակել իր մտաւոր հօրիզօնը եւ դիմել օտար լեզուներով գրված եւ օտար կեանքից առնված բեմական ստեղծվածներին։

Ահա մտաւոր զարգացման կանօնաւոր ընթացքը։

Այս ընթացքը միանգամայն համապատասխանում է այն սկզբունքին, որի վրա հիմնում էր Գրիգոր Արծրունին իր ուղղութիւնը, այն է՝ անհատական զարգացման։ Բայց չէ կարելի չը խոստովանել, որ նա չափազանց խտացնում էր գոյները, պահանջելով որ ժողովուրդը նախ և առաջ դաստիարակվի սեփական կեանքից վերցրած, ինքնուրոյն գրուածքների վրա և ապա միայն ծանօթանայ օտար բեմի հետ։ Այո, ճիշտ էր միանգամայն, որ թատրոնը կարող էր գրաւել հասարակութիւնը տեղական, հարազատ կեանքի արտայայտութիւններով, բայց կարող էինք մենք ունենալ այնքան պատրաստութիւն, որ միայն մեր սեփական ստեղծագործութիւններով կերակրէինք ժողովուրդը։ Մեր գրական աղքատութեան մէջ

հարկաւոր էր և օտարը, թարգմանականը՝ ուսուցանելու, գրողներ, կատարողներ ու գնահատողներ պատրաստելու համար։ Սակայն պէտք է ասել որ Արծրունին անհաշտ թշնամի չը մնաց թարգմանական օտար գրուածքներին. Նա էլ հասկանում էր դրանց անհրաժեշտութիւնը։ Եւ եթէ այնպէս խիստ կերպով էր ինքնուրոյնութեան պահանջը դնում, պատճառն այն էր, որ ինքնուրոյնութիւն մեզանում շատ քիչ կար, բայց անհրաժեշտ էր որ շատ լինէր։

Ինքնուրոյնութիւն Արծրունին պահանջում էր ո՛չ միայն բեմական գրուածքների վերաբերմամբ, այլ գրական գործունէութեան բոլոր ճիւղերում։ Մամուլից նա պահանջում էր ինքնուրոյն տաղանդներ ծնեցնել, իսկ «Ո՞վ է մեղաւոր» առաջնորդողում (№ 14) ասում էր.

Մենք զզվեցինք օրագրութենից, որովհետեւ մեր օրագրողներ, չը ճանաչելով ժողովրդի պահանջները, մտաւորապէս պատրաստ չը լինելով հանդէս դուրս գալ, չը կարողանալով իրանց մտքերը յայտնել, ինքնուրոյն մտաւոր արդիւնքը ծնել, լցնում էին թերթի էջերը՝ ամեն ստացած անհամ նամակներով, դամբանական ճառերով, անխորհուրդ բանաստեղծութիւններով...

...Ինքներս գրելու նիւթ չունենալով, մենք ստիպված էինք մեր լրագիրների էջերը եւ օրագիրների երեսները կամ անհասկանալի թարգմանութիւններով

լցնել, կամ զաւառներից առաջին պատահած անհամ նամակներով, որ չը վիրաւորենք այս ինչ կամ այն ինչ քաղաքում նշանակութիւն ունեցող Կիրակոսեանի կամ Մարտիրոսեանի անձնական զգացմունքը, նորա ինքնասիրութիւնը։

Ինքնուրոյն միտք, ինքնուրոյն ստեղծագործութիւն որոնելը մեր կեանքի առաջացրած անհրաժեշտութիւնից էր բղխում. և Արծրունուն ներելի էր ժամանակի տիրապօղական պահանջի ազդեցութեան տակ մի քիչ միակողմանի էլ լինել՝ այդ անհրաժեշտութիւնը ցոյց տալու համար։

Անհատական զարգացման սկզբունքը երևում է և Արծրունու մի այլ յօդուածում— «Պետութեան զանազան տարրերը» (№ 48)։ Պետութիւնները կարող են կազմված լինել զանազան ազգութիւններից, որոնց միացնում է ընդհանուր քաղաքական օրէնքը։ Բացի ազգութիւններից մի պետութիւն կազմող մասերը կարող են հետեւեալ տարրերը լինել. զանազան, միմեանցից տարբեր լեզուները, միմեանցից տարբեր կրօնները և վերջապէս քաղաքական կուսակցութիւնները։

Պետութեան համար անհրաժեշտ է իր բաղկացուցիչ բոլոր տարրերի միութիւն, բայց ոչ միակերպութիւն։ Եթէ միութիւն բառով մենք պէտք է հասկանանք միակեր-

պութիւն, այն ժամանակ պէտք է տեսնենք այսպիսի դրութիւններ քաղաքական աշխարհում. Աւստրիան, ուր գերմաներէն լեզուներով խօսողները բազմաթիւ են, քան թէ զանազան ուրիշ լեզուներով խօսող խմբերը առանձին վերցրած, պիտի ստիպէ իր բոլոր հպատակներին գերմաներէն խօսել. Ֆրանսիան, ուր բազմութիւնը կաթօլիկ եկեղեցուն է պատկանում, պիտի ստիպէ բողոքականներին ընդունել կաթօլիկութիւնը։ Անգլիան, ուր տիրապետող կրօնը բողոքականութիւնն է, պիտի ստիպէ որ կաթօլիկ Իրլանդիան բողոքականութիւն ընդունէ։

Բայց այդպէս չէ, միութիւնը միակերպութիւն չէ նշանակում և դրա ամենալաւ օրինակը Շվէյցարիան է, որ կազմված է միացած, բայց ոչ միակերպ ազգութիւններից։

Շվէյցարիայի հանրապետութիւնը հասնում է կատարեալ միութեանը ոչ թէ խիստ միակերպութեան միջոցով, այլ բ ա զ մ ա տ ե ս ա կ եւ միմեանցից բոլորովին տարբեր, պետութեան մէջ գտնվող տ ա ր ր ե ր ի մ է ջ ը ն դ հ ա ն ո ւ ր հ ա ւ ա ս ա ր ա կ շ ռ ո ւ թ ի ւ ն մտցնելով։

Ամենամեծ ուշադրութիւն նուիրելով տեղային, մասնաւորապէս հայ ազգին վերաբերվող հարցերին, «Մշակը» աչքից չէր գցում և ժամանակակից առաջնակարգ հասա-

բական, օրէնսդրական և քաղաքական եւ-
ևույթները։ Այսպէս, «Մշակը» խօսեց ընդ-
հանուր զինուորագրութեան, կլասիկական
ուսման մասին։ Հետաքրքրական է որ Արծ-
րունին ընդհանուր զինուորագրութիւնը հա-
մարում էր մի երկրի մտաւոր և նիւթա-
կան զարգացման արդիւնք։ Ընդհանուր զին-
ւորագրութիւնը մի պարտաւորութիւն է.
բայց որտեղ կարող է այդ պարտաւորութիւ-
նը սիստեմ դառնալ, իրագործվել։ Այնտեղ,
ուր կայ իրաւունքներ ունեցող քաղաքացի։
Մի պարտաւորութիւն ճշտութեամբ կատա-
րելը հեշտ բան չէ։ Հարկաւոր է զարգացած
լինել՝ պարտաւորութիւն կատարելու համար.
իսկ զարգացած լինելու համար պէտք է կա-
տարեալ իրաւունք ունենալ զարգանալու՝ թէ
մտաւորապէս, թէ նիւթապէս։ Այս սկզբուն-
քից առաջնորդվելով, Արծրունին չէր հաւա-
տում, որ ընդհանուր զինուորագրութիւնը
այնպիսի երկրներում, ինչպէս են Թիւրքիան
և Պարսկաստանը, կարողանայ հասարակա-
կան օգուտներ տալ։

Այն երկիրներում, որտեղ չը կայ մտաւոր հիմք,
որտեղ չը կայ ժողովրդական կրթութեան կազմա-
կերպված սիստեմա, որտեղ ամենքին տիրում է
մոլեռանդութիւն, որտեղ դեռ եւս ժողովուրդը վարժ-
ված չէ ոչ աշխատանքի, ոչ քաղաքական իրա-

ւունքի եւ ինքնակառավարութեան մէջ, որտեղ մահմեդականը անհամբերող է դէպի քրիստոնեան, հայ լուսաւորչականը դէպի հայ կաթօլիկը, յոյնը դէպի հրէան, հայը դէպի յոյնը, մահմեդականը շիա դաւանութեան՝ դէպի մահմեդականը սուննի դաւանութեան... որտեղ գիւղական ազգաբնակութիւնը ողորմելի է մի կողմից, որովհետեւ աւազակութիւնը դեռ եւս ազնիւ արուեստ է համարվում, ու միւս կողմից՝ որովհետեւ հարկատուութիւնը եւ պաշտօնեաների կառավարութիւնը կամայականութեան վերա է հիմնած...

Գալով կլասիկական ուսման հարցին, նկատի ունենալով Արծրունու յօդուածները «Հայկական Աշխարհի» մէջ, կարող ենք հեշտ եզրակացնել, որ նա հակառակ պիտի լինէր այդ ուսման, նա չէր կարող հակառակ չը լինել, քանի որ րէալական ուղղութեան ներկայացուցիչ էր, պահանջում էր ճիշտ, դրական գիտութիւնների տիրապետութիւնը թէ դպրոցի և թէ գրականութեան մէջ։ Այդ հարցին «Մշակը» նուիրել է երկու առաջնորդող, որոնցից մէկի մէջ քննում էր հին, կլասիկական աշխարհի հասկացողութիւնները։ Հետաքրքրութեան արժանին այդտեղ այն է, որ Արծրունին կլասիկական ուսման հետեւանք էր համարում սօցիալիզմը և կօմմունիզմը։ Դրանք ներկայանում են իբրև վնասակար վարդապետութիւններ, որոնցից ազատվելու

*համար պէտք է թողնել կլասիկական ուսման սիստեմը և դիմել րէալական ուսման։ Այստեղից պարզ է, որ Արծրունին իր ուղղութեամբ, դաւանանքներով պատկանում էր ազատամտութեան, լիբերալիզմին, այս բառի ընդարձակ և լաւագոյն իմաստով։ Որ նա հակառակ էր սօցիալականութեան, երևում է և այն բանից, որ տարիներ յետոյ, առաջարկելով համալսարան բանալ Թիֆլիսում, նա այդ հիմնարկութեան օգտաւէտութիւնը Թիֆլիսում բացատրում էր և նրանով, որ այստեղ ուսանող երիտասարդութիւնը ազատ կը լինի սօցիալիզմի թոյնից…*

*Իբրև րէալիստ, իբրև գործնական, ճիշտ գիտութիւնների դարի զաւակ, Արծրունին, ի հարկէ, առանձին մեծ ուշադրութիւն պիտի նուիրէր մեր երկրի տնտեսական հարցերին։ Մենք այդ տեսանք նրա այն յօդուածներում, որոնք գրվեցին մինչև «Մշակը»։ Սկսելով սեփական լրագրի հրատարակութիւնը, Արծրունին աւելի միջոց և հնարաւորութիւն ունէր զարգացնելու իր գործունէութեան այդ կողմը։ Իր մի շարք առաջնորդողներում, որոնցից մի քանիսը կրում են «Մեր տնտեսական ապագայ» ընդհանուր վերնագիրը, Արծրունին հայ ընթերցողի առաջ բաց է անում մի բոլորովին նոր, անծանօթ աշխարհ։ Բացի*

առաջնորդողներից, «Մշակի» ներքին տեսութիւնը համարեա ամբողջովին նուիրված էր տնտեսական-արդիւնաբերական բազմակողմանի հարցերին։ Եւ «Մշակը» իր առաջին տարվայ մէջ այդ կողմից պարունակում է այնպիսի մի մեծ հարստութիւն, որի նմանը նոյն իսկ տեղական ուրիշ լեզուներով հրատարակվող թերթերին էլ յայտնի չէր նոյն չափերով։

Մենք, ի հարկէ, չենք կարող քայլ առ քայլ հետևել այդ բոլոր յօդուածներին։ Կը վերցնենք միայն մի քանիսը Արծրունու առաջնորդողներից, որպէսզի իմանանք թէ տնտեսական ինչ սկզբունքներ էր նա առաջարկում սխօլաստիկ, վերացական կրթութեան և հասկացողութիւնների մէջ անշարժացած հային։

«Մեր տնտեսական ապագայ» յօդուածների շարքը սկսվում է (№ 19) անտառների նշանակութեան և նրանց ոչնչացնելու հարցով։ Բայց կարևորը այդ չէ։ 1872 թւականին վերջանում էր Փօթի-Թիֆլիսեան երկաթուղին։ Առաջին անգամն էր որ շոգեկառքը պիտի շարժվէր Անդրկովկասում։ Յայտնի է թէ քաղաքակրթութեան այդ հրաշալի սեփականութիւնը ինչ ահագին փոփոխութիւններ է մտցնում մի երկրի մէջ, մանաւանդ

այնպիսի երկրի, որ դարաւոր անշարժու-
թեան է ենթարկված, որի ժողովուրդը ոչինչ
պատրաստութիւն չունի՝ քաղաքակրթութեան
պահանջները հասկանալու և իրագործելու
համար։ Արծրունին գեղեցիկ, կրակոտ առաջ-
նորդողում (№ 23), ուշադրութիւն հրաւիրե-
լո՜վ մեր երկիրը մտնող այդ նոր հսկայական
ոյժի վրա, ասում էր թէ ինչ պիտի լինի եր-
կաթուղին մեզ համար։

Ի՞նչ պիտի լինի։ «Եւրոպական լուսա-
ւորութիւնը անողորմ ոյժ է, ասում է նա։
—Կամ բոլորովին չը պէտք է հետևէք նրան,
և յամառութեամբ նրա ոչ մի սկզբնական
միտքը չընդունէք, կամ եթէ առաջին քայլ
արեցիք,—այլ ևս չէք կարող յետ կանգնել և
ընդդիմանալ նորա ընթացքի զօրութեանը»։
Գալիս է երկաթուղին։ Նա մի զօրեղ խթան
կը լինի մեր ինքնահաւան անշարժութեան
դէմ։ Եւ եթէ դուք դարման չը տաք նրա
բերած պահանջներին, ուրիշները կը կանգ-
նեն ձեր տեղը և ձեզանից կը խլեն գոր-
ծելու միջոցները։ Շուտով չոգեկառքը կը
սուլէ մեր երկրում։ Սիրելի՛ կը լինի ձեզ
համար այդ սուլոցը։ Ո՛չ, դուք պէտք է ա-
տէք նրան։ Եւ Արծրունին մարդկային լե-
զու է դնում այդ սուլոցի մէջ, խօսեցնում է
նրան։

*Նա կը դառնայ ձեզ համար ատելի, ծաղրական ձայն, որը եթէ կը թարգմանվի մարդկային լեզվով, հետեւեալ միտք կունենայ. «Դուք յամառութեամբ մնացիք ձեր անշարժութեան մէջ,—հիմի ուշ է, ձեր իշխանութիւնը անցաւ։ Դուք յամառութեամբ պաշտպանելով սուրբ անշարժութիւնը, սրբապղծութիւն համարեցիք թէ եկեղեցու, թէ հասարակութեան մէջ կենդանի լեզվով ամբոխի հետ խօսելու, այլ շարունակեցիք մեռած գրաբարը ձեր հասարակութեան մէջ գործածելու,—հիմի դուք պիտի կորցնէք ձեր լեզուն։ Դուք չը կարողացաք ազդել ձեր կանանց վերա կրթողական կերպով, ստըրկացրիք նոցա եւ չը կրթեցիք նոցա—կինը յափըշտակվեցաւ ձեր գրկից, դուք նորա համակրութիւնը կորցրիք։ Դուք ձեր որդիներին կրթութիւն տալուց յետոյ չուզեցիք նոցա ստացած գիտութիւնից օգուտ քաղել եւ գործ դնել նոցա հասարակութեան ծառայութեանը, մինչեւ 30 եւ 40 տարեկան հասակը նոցա տղէտ եւ անփորձ համարելով,—եւ ձեր ուսեալ երիտասարդների տեղը օտարազգի գիտնական երիտասարդները գործ կը կատարեն։ Ձեր երիտասարդութեան մեծ մասը ձեր անշարժութեանը ենթարկվելով, եւ չը գիտենալով ձեր ամեն բան մեռցնող ազդեցութեան դէմ բողոքել, անցնում էր անգործութեան եւ թուղթ խաղալու մէջ տարիները օրերի նման,—եւ նորա պիտի կորցնեն բնական իրաւունքը ազդեցութիւն ունենալ հասարակութեան վերա։ Դուք յափշտակվեցաք առեւտրական գործունէութեամբ, որին համարեցիք ամենից հեշտ միջոց շուտով հարստանալու, արհամարհեցիք երկրագործական պարապմունքը, արհամարհեցիք առհասարակ արդիւնաբերութիւնը, բաւականացաք միայն*

առեւտրական միջնորդութեամբ։ Դուք ձեր արդար եւ անարդար միջոցներով հաւաքած հարստութիւններն էլ գործ չը դրիք արվեստագործութեան, երկրագործութեան, տնտեսութեան զարգացման նպաստելուն, չը հիմնեցիք գործարանները, չը բովագործեցիք երկրի հանքերը, չը բարւոքեցիք երկրագործութիւնը, գինեգործութիւնը, շերամապահութիւնը, —եւ այդ բոլորը պիտի կատարեն ձեր տեղը օտարազգիները, որովհետեւ դուք ուշացաք, ինքնահաւանութեամբ կրկնելով «դեռ եւս վաղ է»։

Դուք արդիւնաբերութիւնը արհամարհեցիք, ընտելացած չը լինելով աշխատանքին եւ խմբովին `դիմեցիք ձեր բոլոր ոյժը գործ դնելով պաշտօնական ծառայութեանը,—եւ դատապարտեցիք ձեզ ինքներդ չը ծնել նոր մտաւոր կամ նիւթական արդիւնքը, այլ միայն եղած դրութիւնը պահպանել...»։

Շոգեկառքի սուլոցի այս մեղադրական ակտի մէջ երևում է Արծրունու տնտեսական ծրագրի ամբողջ մանրամասնութիւնը։ Ահա նա հետևեալ յօդուածում շօշափում է վաճառականութեան հարցը։

Հայերի վաճառականութիւնը չափազանց յայտնի է աշխարհին և նրա մասին շատ խօսել են եւրոպական զանազան հեղինակներ էլ։ Միայն առևտրի շրջանում հայը կարողացաւ համաշխարհային հռչակ ստանալ. և դա ազգային միակ պարծանքն էր, քանի որ հայը Արևելքի վաճառականութեան ամենանշանա-

նաւոր տէրն էր։ Պարծանք էր այն, որ հայը ոտի տակ է տալիս ամբողջ Արևելքը, որ նրա կարաւանները անհուն տարածութիւններ են կտրում անցնում և նա Եւրոպայի բոլոր վաճառաշահ նաւահանգիստներում ունի իր պահեստները։ Բայց ահա XVIII դարում Արևելքի վաճառականական ասպարէզում հայերի մրցակից են հանդիսանում եւրոպացիները—անգլիացի, ֆրանսիացի, հօլլանդացի վաճառականներ։ Հայը ստիպված է տեղի տալ այդ մրցակիցներին, որովհետև նրանց պէս պատրաստված ու լուսաւորված չէ։ Զրկվելով ինքնուրոյն, անկախ դիրքից, հայ վաճառականը զրկվում է և շահից։ Յայտնի է դառնում, որ հայը իսկապէս մի առևտրական միջնորդ է, որ նա ինքը ոչինչ չէ արդիւնաբերում, այլ միայն առնում և ծախում է պատրաստ ապրանքը։ Այս հանգամանքը չեշտում են դեռ XVIII դարի հեղինակները։

Մեզանում առաջին անգամ Ստեփանոս Նազարեանցն էր, որ յայտնեց թէ ոչ մի պարծանք չէ հայի հռչակված վաճառականութիւնը, քանի որ նա առևտրական միջնորդութեան կերպարանքն ունի և արդիւնագործութիւն չէ առաջացնում մեր երկրում։ Գրիգոր Արծրունին էլ, այդ տեսակէտից նայելով վաճառականութեան վրա, ասում էր որ

եկել է կամ կը գայ ժամանակը, երբ հայը իբրև միջնորդ էլ դուրս կը քշվի հրապարակից։ Հայի միջնորդութիւնը հարկաւոր էր, քանի որ մեր երկիրը դժուարութիւններ էր ներկայացնում օտարների համար. կովկասեան պատերազմները, յարմար և արագ հաղորդակցութեան բացակայութիւնը ձեռնտու էին միջնորդ հայերին, որոնք երկրի հում նիւթերը ուրիշ երկիրներ էին արտահանում և դրսից էլ ապրանքներ ներմուծում։ Այժմ Կովկասը խաղաղացաւ, հաղորդակցութիւնը ապահով և արագ է դառնում։ Կը մնան հայերը միջնորդներ։

Այո, գուցէ մի առ ժամանակ կը մնան, մինչև որ օտարազգիները կը մտնեն մեր երկիրը, լաւ կը ճանաչեն նրան։ Սկզբում նըրանք էլի կը դիմեն հայերի միջնորդութեան, մինչև որ իրանք կը հաստատվեն. իրանց ձեռքը կառնեն ամեն ինչ։ «Ի՞նչ կը մնայ հային, հարցնում եմ ես, եթէ նա յամառութեամբ կը շարունակի առուտուրը իր հասարակական գործունէութեան միակ ճիւղը համարել... Ի՞նչ կը մնայ,—միայն մ ա ն ր ա վ ա ճ ա ռ ո ւ թ ի ւ ն ը կամ օտարազգիներին ծառայել, որպէս կ օ մ ի ս ի օ ն է ր»։

Ոչ մի երկիր չը կայ, որի բնակիչների մեծ մասը, երկրի բնական հարստութիւնը

թողած, պարապէր միայն առևտուրով։ Սա անբնական դրութիւն է։ Եւ Արծրունին, ցոյց տալով ապագան, առաջարկում էր թողնել հին հասկացողութիւնները և սկսել երկրի բնական հարստութիւնները շահագործել։ Դեռ ամեն ինչ կորած չէ, եթէ ժամանակին խելքի գաք, զգուշացնում էր նա։

Հայի վաճառականութիւնն այդպէս է։ Բայց հայը միայն վաճառական չէ. ազգի մեծամասնութիւնը հողի վրա է նստած, երկրագործութեամբ է պարապում։ Սակայն հողագործութիւնն էլ ոչ մի յուսատու ապագայ չէ խոստանում։ Նկատելի է մի ցաւալի երևոյթ, որ գանգատների առիթ է տալիս մտածող և հասկացող մարդկանց։ Դա այն է, որ հայ ժողովուրդը, դարերից ի վեր լինելով երկրագործ, քիչ հակում ունէ դէպի երկրագործութիւնը։ Գիւղը ձգտում է դէպի քաղաք։ Մարդիկ թողնում են իրանց պարապմունքը և քաղաքներ տեղափոխվում։ Երկրագործ հայի իդէալն է վաճառական դառնալ և հէնց որ նա փող է ձեռք գցում, աշխատում է խանութ բաց անել։

Ամեն տնտեսական երևոյթ իր խոր պատճառներն ունի։ Երկրագործութիւնը մեզանում չէ զարգանում, որովհետև մեր երկրում

միջոցներ, գումարներ չեն գործադրվում նրանց բարւոքելու համար։ Արծրունին վերցնում է եւրոպական երկու երկիրներ—Անգլիան և Շվէյցարիան, որոնք երկու հակառակ բևեռներ են կազմում երկրագործութեան մէջ։ Երկու երկրներում էլ հողագործութիւնը շատ ծաղկած դրութեան մէջ է. բայց ինչ ճանապարհներով են նրանք հասնում այդ դրութեան։ Անգլիայում հողը պատկանում է խոշոր կալուածատէրերին, որոնք մեծ դրամագլուխներ են ծախսում երկրագործութիւնը բարւոքելու, կատարելագործելու համար։ Շվէյցարիայում, ընդհակառակն, հողը մեծ մասամբ բաժանված է մանր կտորների, որոնց տէրերը իրանք գիւղացիններն են։ Սակայն այստեղ էլ գործում է դրամագլուխը, որի միջոցով հողագործութիւնը անդադար առաջադիմում է։ Բայց որտեղից է այդ դրամագլուխը։ Գիւղացինները, առանձին-առանձին վերցրած, շատ հարուստ չեն. ուստի նրանք միանում են, ընկերակցութիւններ են կազմում, և ահա հաւաքական գործակցութիւնը պատրաստում է նոյն անհրաժեշտ ոյժը հողագործութիւն զարգացնելու համար —դրամագլուխը։

Մեր երկրում չը կան ոչ Անգլիայի հարուստ կալուածատէրերը, որոնք մեծ գու-

մարներ ծախսէին, ոչ էլ Շվէյցարիայի գիւղական ընկերութիւնները։ Եւ ահա մեզանում հողագործութիւնը մի պարապմունք է, որ ապրուստի չատ նուազ միջոցներ է տալիս ազգաբնակութեան։ Երբ տարվայ բերքը աջող է, մեր գիւղացին դեռ կարող է ապրել առանց դժուարութիւնների։ Բայց լինում են բնական զանազան պատահարներ, վերջապէս ինքը, գիւղացին զանազան պատճառներով չէ կարողանում հերկել իր գետինը։ Այս տնտեսական ձախորդութեան մէջ նա այլեւս չէ կարող ինքնագլուխ ապրել. դիմում է վաչխառուին, մեծ տոկոսների տակ է ընկնում։ Երկրագործական գործիքները նախապետական դրութեան մէջ են, փող չը կայ նորերը, կատարելագործվածները ձեռք բերելու համար, փող էլ լինի, հասկացողութիւն չը կայ, թէ որքան օգտակար են դրանք։

Ի՞նչ անել։ Լոկ բարոյական քարոզներով բան չի դառնայ. որքան ուզում էք, ասացէք թէ լաւ են կատարելագործված գործիքները, թէ պէտք է հող մշակել, բայց գիւղացին ընկճված է նիւթական-տնտեսական հանգամանքների տակ։ Չը կայ խոշոր հողատիրական կապիտալը, չը կայ ընկերակցական, կօօպերատիվ սկզբունքը, ժողովուրդը ինքնօգնութեան գաղափարը չունի, գիւղական էժան կրեդիտը

թիւնը փոխ տայ մշակներին հիմնական դրա-
մագլուխ՝ մատչելի տոկոսներով։

Ո՞ր ձևն է լաւը.—Արծրունին թողնում է
այս հարցը, նա միայն ասում է, որ առայժմ
աւելի հարկաւոր են արդիւնաբերական կօ-
օպերացիաները. առանց դրանց՝ սպառման ըն-
կերակցութիւնները շատ չնչին օգուտ կը
բերեն։ Եւ նա խորհուրդ է տալիս գիւղե-
րում փոխատու և խնայողական ընկերու-
թիւններ հիմնել։ Այս ընկերութիւնների օ-
գուտը, նշանակութիւնը, կազմակերպութեան
եղանակները «Մշակը» շատ անգամ է բա-
ցատրել իր զանազան յօդուածներում, իսկ
1873 թւականին իր մի քանի համար-
ներում տպագրեց գիւղական փոխատու-խը-
նայողական գանձարանների նորմալ կանո-
նադրութիւնը։ Սկիզբը, ոգին, հիմքը հասա-
րակական ինքնօգնութիւնն է, Արծրունին
չարունակ, անդադար այս փրկարար գաղա-
փարն էր ժողովրդականացնում զանազան
ձևերով, չէր բաւականանում մի անգամ, եր-
կու անգամ կրկնելով։ Այն ժամանակները,
երբ նա սկսեց այդ կազմակերպութեան ան-
հրաժեշտութիւնը քարոզել մեզանում, ընկե-
րակցութիւնները Եւրօպայում արդէն պարզ
հասկացված, գործադրվող ոյժեր էին։ Աշխա-
տաւոր դասակարգը իր կեցութիւնը բարւո-

քելու համար շարժումներ էր գործում, ձեւ-ւեր էր մշակում։ Հարկ չը կայ ասելու որ այդ շարժումների նոյն իսկ ամենահեռաւոր արձագանքները չէին հասնում մեր երկրին։ Մենք դեռ քնած ու անշարժ, անհոգ էինք. բայց ժամանակը մեր առջեւ էլ պիտի դնէր նոյն անհրաժեշտութիւնը։ Արծրունին զգում էր այդ։ Կարիք չը կար որ նա հայ ընթերցողին մտցնէր Արեւմտեան Եւրօպայի շարժումների մանրամասն նկարագրութիւնների մէջ։ Նա վերցնում էր ամենակարեւորը, ամենատարրականը։ Ամէն բանի հիմքը ինքնօգնութիւնն էր, արդիւնագործողների եւ սպառողների համախմբումը փոխադարձ աջակցութեան սկզբունքով։ Եւ նա այս կորիզը շատ էր աշխատում տնկել մեր հողի մէջ։

Բայց չենք կարող ասել թէ նրա քարոզութիւնները առանձին գործնական հետեւանքներ ունեցան։ Հայերը միայն կարդում էին, միայն իմանում էին որ օգտակար հիմնարկութիւններ կան աշխարհիս վրա, իսկ իրագործել իրանց մէջ այդ հիմնարկութիւնները—այդ անհնարին եղաւ, այնքան մեծ էր մեր ասիական աւանդապահութիւնը։ Ներկայումս ընկերակցութիւնների, կօօպերատիվ գործունէութեան անհրաժեշտութիւնը անհագին նուաճումներ է արել մարդու տնտեսա-

նի, լուսաւորված անունով դասի մէջ թէ երիտասարդը և թէ օրիորդը չեն կարողանում իրանց անձնական ոյժերի գործադրութիւն գտնել. ազատ պրօֆէսիաները մեզանում դեռ այնքան չեն զարգացած, որ ապահովեն կեանքը։ Բայց աւելի հետաքրքրական է այն դատողութիւնը, որ անում է Արծրունին հարուստ դասակարգի մասին։

Մեզանում հարուստ դասակարգը աւելորդ է համարում իր որդիներին անկախութիւն տալ։ Ամերիկայում հարուստ հայրը, հէնց որ որդին վերջացնում է ուսումը, տալիս է նրան իր կարողութեան մի մասը և որդին սովորում է անկախ ապրել, գործել իր համար։ Իսկ մեզանում հարուստ դասակարգի որդին պիտի սպասէ իր հօր մահվան —«և այնուհետև պարզ է, որ հարուստ հօր մեռնելուն պէս, որդին դառնում է իր հօրից ժառանգած հարստութեան ամենամեծ թշնամին ու շատ ժամանակ չէ անց կենում մինչև բոլոր հարստութիւնը վատնած է»։

Այսպէս ահա, մեզանում էլ հասարակական երևոյթները ուսումնասիրվում և պատճառաբանվում էին այնպէս, ինչպէս պահանջում են ճիշտ, դրական գիտութիւնները։ Բարոյախօսական քարոզների դարը անցնում էր։ «Ցանցաւորներ և հասարակութիւն» ա-

առաջնորդողի մէջ (№ 17) Արծրունին ասում էր թէ յանցանքների դէմ կռուելու համար բաւական չեն ոչ բարոյական քարոզները, ոչ պատիժները, ոչ դպրոցները։ Յանցագործութիւնները բարդ երեւոյթներ են և բազմաթիւ պատճառներից են առաջանում, որոնց մէջ գլխաւոր տեղը բռնում են տնտեսական պատճառները։ Ընկերակցութիւնները շատ դէպքերում կառնէին յանցանքների առաջը։ Դրա հետ պէտք է փոփոխել սօցիալական պայմանները, լաւ օրէնսդրութիւն տալ և այլն...

Քանի որ խօսքը տնտեսական հարցերի մասին է, մենք պիտի դուրս գանք «Մշակի» առաջնորդողների բաժնից և մի համառօտ ակնարկ գցենք նրա «Ներքին Տեսութիւն» բաժնի վրա։ Այստեղ էլ արծարծվում էին շատ կարեւոր տնտեսական և արդիւնաբերական հարցեր։ Ինչպէս գիտենք, Ներքին տեսութեան բաժնում աշխատում էր Վասիլ Շահվերդեանը. ինքնուրոյն յօդուածներից մի քանիսը կրում են նրա ստորագրութիւնը, բայց աւելի շատ են այնպիսի յօդուածներ, որոնք տպվում էին ինչպէս առաջնորդողները, առանց ստորագրութեան։ Ու՞մ են պատկանում Ներքին տեսութեան անստորագիր յօդուածները,—չը գիտենք։ Բայց որ Գրիգոր

խաղաղարձ վարկի ընկերութիւններ, որոնք միջոց կը տան վաճառականին յարմար և ձեռնտու պայմաններով կրեդիտ ձեռք բերել, այսինքն միմեանց օգնել, պահպանել, կարողութիւն տալով ամեն մէկին դիմադրել աննպաստ պայմաններին։ Առհասարակ վաճառականների համար պահանջվում էր զարգացողութիւն, գիտութիւն։ «Մշակը» առաջարկում էր հիմնել Թիֆլիսում կուրսեր, ուր վաճառականները կարող լինէին օտար լեզուներ սովորել։

Աւելի մեծ էր «Մշակի» հոգացողութիւնը բուն ժողովրդի, այսինքն երկրագործ, արհեստաւոր, բանուոր դասակարգերի մասին։ Առաջին անգամն էր, որ գիւղը երևան էր գալիս մեր մամուլի մէջ իր ցաւերով, իր անօգնական դրութեամբ։ Դա այն աշխարհն է, որ չարունակ հարստահարվում է, կողոպտվում է, բայց որի համար ոչինչ չեն ուզում անել։ Գիւղական և առհասարակ ստորին ժողովրդական խաւերի մէջ տարածված են զանազան ֆիզիկական և բարոյական արատներ. կարծում են թէ դրանց դէմ կռւելու համար բաւական է բարոյախօսութիւնը, բայց չեն իմանում որ բարոյական քարոզներով չի վերացվի դժբախտութեան ամենագլխաւոր պատճառը, որ աղքատութիւնն է։ Ասում են

թէ ժողովուրդը կորստից ազատելու միակ միջոցը կրթութիւնն է և կանչում են շարունակ՝ «ուսումնարաններ, ուսումնարաններ և միշտ ուսումնարաններ»։ Բայց դրանք օդային բառեր են և կը լսէ՞ ժողովուրդն այդ խօսքերին։ Ահա նա ունի առած. «Սոված փորիս ուսումն էր պակաս»։ Սա տնտեսական մի մեծ ճշմարտութիւն է։ Այնտեղ, ուր չը կայ տընտեսական ապահովութիւն, ուր մարդը կատարելապէս կուշտ չէ, չէ կարող դպրոց և ուսում զարգանալ։ Հռչակաւոր Բոկլը ասում է. «Առանց հարստութեան չը կան ազատ ժամեր, առանց ազատ ժամերի չը կայ գիտութիւն»։ Ժողովուրդը քաղցած է,—կարո՞ղ է նա կրթութեան մասին մտածել։ Նա քըրտինք է թափում և աղքատանում է։ Քըրտինք թափելը աղքատութիւն, քաղցածութիւն է նշանակում մեզ մօտ. իսկ ինչ պէտք է անել հարստանալու համար։ Պէտք է ծծել, ինչպէս ծծում են վաճառականները, պէտք է հարստահարել, ինչպէս հարստահարում են նրանք։

Ո՛չ, կամենո՞ւմ էք ուսումը անհրաժեշտութիւն դարձնել գիւղացու համար,—բարւոքեցէք նրա տնտեսական դրութիւնը, հարստացրէք նրան։ Հարստացնել կարելի է, միջոց տալով երկրագործ ժողովրդին զար-

թաքցնելու իր պարապմունքները, աւելի ար-դիւնաւոր դարձնելու նրա աշխատութիւնը։ Վստահ եղէք, որ երբ գիւղացին կունենայ իր հացը, երբ նրան անողորմ կերպով չի' տանջի ապրելու հարցը, այն ժամանակ նա կը սկսէ և մտաւոր գործի մասին մտածել։ Եւ գիւղացուն այդ դրութեան հասցնողը պիտի լինին փոխատու ընկերութիւնները, իբրև գիւղատնտեսութիւնը զարգացնելու ամենալաւ, փորձուած միջոց։

Մեր տնտեսական կեանքը դեռ նահապետական է, դեռ սուր [illegible] չէ ստացել, ուստի պէտք է հէնց այժմից պատրաստուել, հէնց այժմից խելացի կերպով լուծել այն հարցերը, որոնք այսօր սաղմնային դրութեան մէջ են, բայց վաղը պիտի դառնան մի-մի ահաւոր երևոյթ։ Ահա այժմից իսկ երևում են առաջին ծաղիկները։ Մեր երկրում էլ սկսւում են գործարաններ բացվել, որոնք կառաջացնեն բանուոր դասակարգ, պրօլէտարիատ—Դեռ չը կայ մեզանում գործարանական մշակների դասակարգը. սա նշանակում է որ Եւրոպայի հետ համեմատելով, մեր հասարակական կեանքի մէջ մ ի վ ա տ կ ո ղ մ ը պակաս է։ Բայց ինչ որ չը կայ, կարող է լինել։ Բագւում սկսել են գործարաններ հիմնել. Թիֆլիսում գոյու-

*սկսվի, նրան անպատճառ հարկաւոր է սկսել. ուրիշ կերպով մենք տնտեսական առաջադիմութիւն չենք ունենայ, մենք միայն օտարների հարկատու կը մնանք։ Նայեցէք Կովկասին, տեսէք որքան հարստութիւններ ունի նա։ Չը շահագործել այդ հարստութիւնները, կը նշանակէր մեռելութեան դատապարտել իրան։*

Արդեօք հարկաւո՞ր է խօսել նորա վերա, որ գործարանները մեզ օգուտ են։ Ահա ինչ է ասում ինձ մի վաճառական. «Տես էս սուփրէն. սորա մէջ կայ մի գրվանքայ բուրդ, որ արժէ մէկ աբասի. բայց ինչ էք կարծում, ինչ եմ տուել սորան... վեց մանէթ»։ Այս խօսքերը պարզ ցոյց են տալիս մեզ, թէ ինչ կը նշանակէ երկրիս համար իր սեպհական գործարաններ չունենալը։ Մէկ աբասու եւ վեց մանէթի մէջ զանազանութիւնը,—այդ մի սարսափելի հարկ է, որ մեր երկիրը վճարում է օտար ազգերի արվեստագործութեանը։

*Գործարաններ հիմնելու մի յարմարութիւնն էլ այն է, որ մեզանում գործող ձեռքերը էժան են։ Բայց թող ընթերցողը չը կարծէ թէ պէտք է, ուրեմն, որ դրամատէրերը որքան կամենում են օգուտ քաղեն այդ էժանութիւնից, հարստահարեն մշակ դասակարգը։ Ո՛չ, եթէ հարկաւոր է գործարանական կեանքի զարգացումը մեզանում, դրա*

գլխաւոր նպատակներից մէկն էլ այն պիտի լինի, որ գործաւոր դասակարգը միջոց ունենայ աւելի լաւ վարձատրութիւն ստանալու, իր թշուառ դրութիւնից ազատվելու։

«Կարող է ուշ չը լինել» յօդուածում արծարծվում է պրօլէտարիատի հարցը։ Սեփականութիւն չունեցող այդ դասակարգը դեռ բազմաթիւ չէ մեզանում. բայց նա կը ստուարանայ, երբ մեր երկրում էլ կը զարգանայ խոշոր արդիւնաբերութիւնը, որ գործից կը զրկէ, կը սնանկացնէ մանր արդիւնաբերողներին և այսպիսով պրօլէտարիատի բանակը կը մեծացնէ։ Քանի որ խոշոր արդիւնաբերութիւնը դեռ իր սկզբնական քայլերն է անում մեզ մօտ, ժամանակ է ձեռք առնել այնպիսի միջոցներ, որոնք կազատեն մեզ պրօլէտարիատի սպառնացող շարժումից։ Դրա համար հարկաւոր է պահպանել մանր արդիւնագործութիւնը։ Ոյժ տալով խոշոր արդիւնագործութեան, մենք օգնած կը լինենք դրամատէրերին, որ նրանք իրանց ձեռքի մէջ կենտրոնացնեն երկրի ամեն տեսակ արդիւնաբերութիւնը։ Եւ այն ժամանակ մըշակները կը դառնան կենդանի մեքենաներ, որոնց հարկաւոր է այնքան պահպանել և խնամել, որ նրանք չը փչանան, իսկ նրանց մարդկային յատկութիւնների վրայ ոչինչ ու-

երկաթուղին դեռ պատրաստ չէր, երբ յայտնի դարձաւ որ նա մեր երկիրը կը թափէ արտասահմանեան դրամագլուխներ՝ բնութեան հարստութիւնները շահագործելու համար։ Արդէն Թիֆլիսում մի ֆրանսիացի բաց էր արել գրասենեակ, որ պիտի միջնորդ հանդիսանար օտար դրամատէրերի և մեր երկրի մէջ։ Շահագործութեան առարկան առաջ ու առաջ հանքերը պիտի լինէին։ «Մշակը» բնական էր համարում օտար կապիտալների արշաւանքը դէպի մեզ, բնական և օգտաւէտ։ Երբ մենք ինքներս չենք կարող ընկերական սկզբունքով մեր երկրի արդիւնաբերութիւնը զարգացնել, բնականաբար պիտի ենթարկվենք այն օրէնքին, որ աւելի լաւ պատրաստված օտարը գայ և մեր հողերի վրա գործ սկսէ։ Բայց ինչ պէտք է անենք մենք, ինքներս, երբ օտարները երևան կը գան մեր մէջ իբրև արդիւնագործներ։ Մենք ոչ թէ պիտի բաւականանանք մեր հանքերը օտարներին ծախելով կամ կապալով տալով, այլ պիտի աշխատենք ընկերանալ նրանց հետ, բաժին ունենալ արդիւնագործութեան մէջ։ Անգործ նստել ու սպասել հարկաւոր չէ։

Մենք ուշացանք, մենք տգէտ ենք,—այդ ճըշմարիտ է, բայց այդ չէ նշանակում, որ մենք յու-

սահատված պիտի դիմենք կատարեալ անգործու-Թեանը։ Մինչեւ մտաւոր զարգացման մի յայտնի աստիճան, մինչեւ մի յայտնի հասակ, մարդս կարող է ուրիշի խնամակալուԹեան տակ գըտնվել. բայց ինչ կասէինք, եԹէ աշակերտը վարժապետի խնամակալուԹեան տակ մտնելուց յետոյ էլ չէր ուզենայ դուրս գալ այն խնամակալուԹեան տակից։

Այսքանը բաւական համարենք իբրեւ «Մըշակի» տնտեսական բաժնի պատկերացում։ Աւելացնենք այն, որ լրագիրը խօսել է եւ քաղաքային տնտեսուԹեան մասին, հողը պարարտացնելու միջոցներն է ցոյց տուել, առաջին անգամը մեզանում մատնացոյց է արել Թէ տնտեսական ինչ սոսկալի ցաւ է մեր գիւղերում այնքան տարածված վաշխառուԹիւնը եւ այլն... Ո՞րտեղից յանկարծ դուրս եկան այսքան կենսական, կարեւոր հարցերը եւ ու՞ր էին նրանք մինչեւ «Մշակի» հրատարակվելը։ Նրանք, ի հարկէ, գոյուԹիւն ունէին մեր կեանքի մէջ, մի-մի խոշոր երեւոյԹ էին. «Մշակի» անմիջական, մեծ գործը այն էր, որ նկատեց նրանց, առաջ քաշեց, ցոյց տուեց նրանց ահագին կարեւորուԹիւնը մեր կեանքի մէջ։ Իր քաղաքատնտեսական դաւանանքները նա ամփոփում էր «Աշխատանք եւ ԱղքատուԹիւն» գեղեցիկ յօդուածի

մէջ (№ 38), որի համառօտ բովանդակութիւնը հետևեալն է։

Մարդու ամենագլխաւոր հարկաւորութիւններից մէկը այն է, որ հարկադրում է նրան սնուցանել իր անձը։ Այդ կողմից մարդը նման է անասուններին, որոնց նման ուտելու, սպառելու հարկաւորութիւն ունի։ Նմանութիւնը շատ ակներև է. երբ մենք կուշտ ենք, առատութեան մէջ ենք ապրում, մենք բարոյական ենք դառնում, բայց երբ գալիս է սովը, մենք մոռանում ենք ամեն ինչ և պատրաստ ենք ամեն տեսակ ստոր ու խաբեբայ միջոցներից օգուտ քաղել՝ մեր մարմինը պահպանելու համար։ Կերակրվելու անհրաժեշտութիւնից դուրս է գալիս անբարոյականութիւն, յանցանք։ Բայց կայ մի բան, որ թոյլ չէ տալիս մեզ միշտ այդ միջոցով վճռել մեր կեանքի պահպանութեան հարցը։ Դա այն է, որ մենք գիտենք օգնութիւն խնդրել մեր մարմնի և մտքի գործածումից— աշխատանքից և հնարագիտութիւնից։ Որքան կերակրվելու անհրաժեշտութիւնը մեզ նմանեցնում է անասուններին,— այնքան աշխատանքի օրէնքը ազնւացնում, բարձրացնում է մեզ։

Ամեն ինչ, որ ձեռք ենք բերել մենք, աշխատանքի պտուղն է։ Առանց աշխատանքի

ոչ գիտութիւն կայ, ոչ արհեստ, ոչ հարստութիւն։ Բայց աշխատանքն էլ ունի իր չափն ու սահմանը։ Չէ կարելի աշխատել անդադար, առանց հանգստանալու։ Աշխատանքը ծնվում է ապրելու պահանջից. և աշխատանքի հետևանքը մի բանի, մի մթերքի արդիւնաբերութիւնն է։ Այդ արդիւնքով նա բաւարարութիւն է տալիս իր պահանջներին. իսկ ինչ աւելանում է, նա մթերում է այդ աւելորդը ապագայի համար և դա կոչվում է հարստութիւն հաւաքել։ Հարստութիւնը պայմանական հասկացողութիւն է։ Մի միլիօն փողը հարստութիւն է, բայց մի սայլ փայտն էլ նոյնպէս հարստութիւն է։ Երբ մարդը մենակ է օգուտ քաղում բնութեան բերքերից, երբ նա մենակ է սպառում իր արդիւնաբերածը և չունի իր շուրջը արդիւնաբերող, մթերք հաւաքող մարդիկ, նա հարուստ է։ Երբ շատանում են մարդիկ, երբ սաստկանում է մրցութիւնը, այն ժամանակ բնակիչների մի մասըստիպված է լինում օրվայ ապրուստ հայթայթող աշխատանքով բաւականանալ, չը մտածելով մթերքի պաշար կազմելու, այսինքն հարստութիւն ժողովելու մասին։

Անմխիթար է աղքատութեան վիճակը։ Բայց նա բարոյական և տնտեսական մեծ

հետևանքներ է առաջացնում։ Մի կողմից նա աշխատանքի անհրաժեշտությունն է վառ պահում, իսկ դա մի խթան է բարոյական ույժը անդադար արթուն պահելու համար։ Միւս կողմից, աղքատ, մշակ դասակարգին արգելված չէ ձգտել դրամագլուխ կազմելու և իրան ապահովելու. այստեղից ծնվում է տընտեսական այն գաղափարը, որ հնար է տալիս աղքատ դասակարգին իր այդ ձգտումը իրագործելու։ Եւ այդ տնտեսական գաղափարը արդիւնաբերական, ապառման, խնայողական ընկերակցութիւններն են...

Մենք այստեղ չենք ուզում քննել, թէ որքան գործնական էին «Մշակի» այս դատողութիւններն ու ծրագիրը։ Ուշադրութիւն ենք դարձնում միայն մի հանգամանքի վրա։ Բանւորական հարցը, պրօլէտարիատը մեր երկրում դեռ ապագայի գործեր էին, դեռ չէին հասունացել մեզանում։ «Մշակը» առաջարկում էր օգուտ քաղել հէնց այդ հանգամանքից և այժմից իսկ կարգադրել այդ հարցերը այնպէս, որ ապագայում ցնցումների և բարդութիւնների տեղ չը մնար։ Նա, ուրեմն, ուզում էր որ մեր հասարակութիւնը մի աքանչելի կանխատեսութիւն ունենայ, առաջուց պատրաստէ այն հունը, որով պիտի անցնէր ապագայ գետը։ Բայց հնարաւո՞ր էր

դա։ Կարելի՞ է այդքան մեծ իմաստութիւն սպասել մեր իրականութիւնից, երբ եւրոպական ազգերն էլ չեն ունեցել այդ կանխատեսութիւնը։ Մեծ հարցերը այդպէս չեն վճռվում. նրանք դեռ ծնվում են, աճում, իրականութիւն են դառնում, ահաւոր պահանջներ են ներկայացնում և այդպէս հարկադրում են լուծում տալ իրանց։ Առանց կռւի, առանց մրցութեան աջողութիւն ձեռք չէ բերվում։ Այսպէս է օրէնքը։

Բայց այդ օրէնքը, ի հարկէ, չէր արգելում որ «Մշակը» քննէ նոր երևան եկող, ապագայի պատկերը ներկայացնող երևոյթները։ Մեզանում անտեսական նոր կեանքի պահանջներ էին. իսկական, զգայուն հրապարակախօսութիւնը պարտաւոր էր արձագանք տալ նրանց, լուսաբանել, ճանապարհներ, ուղղութիւններ ցոյց տալ, ապագան գուշակել։ Եւ այս պարտականութիւնը «Մշակը» կատարում էր մի լռջութեամբ, որի նմանը դեռ չէր եղել մեր մամուլի էջերում...

## V

Հայերը եւ նրանց հարեւան ազգերը։—Հայ-վրացական յարաբերութիւններ։—Գէորգի Ծերեթելիի ճառը։—«Մըշակ» եւ «Դրօէբա»։—Արտաքին տեսութիւն։—Թիւրքահայեր. գաւառը եւ Կ. Պօլիսը. կրթական պակասութիւն։—Պարսկաստան. Րաֆֆիի նամակները։—Թղթակցութիւններ Գերմանիայից. Անդրէաս Արծրունին։—Գըրական բաժին։—Մեր վէպիկները ու պատմուածքները։—Մէլիքզադէի առաջին փորձերը։—Եզրակացութիւններ «Մշակի» առաջին տարւայ մասին։—Հրաշք եւ աշխատանք։



Դիմելով այժմ հասարակական այն երեւոյթներին, որոնք արձագանք գտան «Մշակի» առաջին տարվայ ընթացքում՝ նրա ուրիշ բաժինների մէջ, մենք ամենից առաջ կանգ ենք առնում Գրիգոր Արծրունու մի ուրիշ մեծ գաղափարի առաջ.—դա նրա վերաբերմունքն է դէպի կովկասեան այլացեղ և այլակրօն ազգութիւնները։

Շատ կարևոր էր այդ հարցը։ Հայերը ապ-

րում էին խառն ուրիշ ազգութիւնների հետ։ Հարևանութիւնը շատ էր մօտիկ, առօրեայ շփումները տնտեսական և մտաւոր հողի վրա այնքան խոշոր երևոյթներ էին առաջացնում, որ անտես անել պատմական այդ իրողութիւնը, կը նշանակէր՝ արհամարհել երկրի առաջադիմութեան ամենամեծ գործօններից մէկը։ Արծրունին խաղաղ կուլտուրական զարգացման քարոզիչ էր. նա պահանջում էր առաջադիմութիւն, պահանջում էր առաջադիմութեան համար ոչ միայն շատ բան սովորել, այլ և շատ բան մոռանալ։ Մոռանալ պէտք էր մանաւանդ այն նախապաշարմունքները, որոնք խոչընդոտ են հանդիսանում մեր առջև, վերանորոգութեան, կատարելագործութեան ճանապարհին։ Զինվելով ազգային սնապարծութեան, շօվինիզմի դէմ, պահանջելով լուրջ, անդադար աշխատանք իբրև բարօրութեան հասնելու միակ միջոց, նա չէր կարող չը զինվել այն փոխադարձ նախապաշարմունքների, ատելութեան դէմ, որ գոյութիւն ունեն զանազան տարբեր ազգութիւնների մէջ։ Եւ նա հէնց առաջին իսկ քայլերից ազգերի եղբայրակցութեան ջերմ պաշտպան հանդիսացաւ։

Կովկասը նրա առջև ներկայացնում էր մի այսպիսի երևոյթ։ Ռուսաց տիրապետութիւ-

նը հաստատել է քաղաքական խաղաղութիւն. երկիրը այլևս պատերազմի դաշտ չէ և նրա մէջ ապրող ազգերը միայն մի նպատակ, մի ձգտում պիտի ունենան—գնալ առաջադիմող մարդկութեան՝ ետևից, իւրացնել եւրոպական լուսաւորութիւնը, ապրել քաղաքակիրթ ազգերի կեանքով։ Մենք տեսանք թէ ինչպէս էր Արծրունին հասկանում ազգերի առաջադիմութեան խորհուրդը. ազգերը անհատներ են և նրանցից իւրաքանչիւրը, պահելով իր ինքնուրոյնութիւնը, իր յատուկ կերպարանքն ու բնաւորութիւնը, պիտի զարգանայ անդադար։ Այստեղից առաջանում է կատարեալ յարգանք դէպի օտար ազգերի ինքնուրոյն սեփականութիւնները, դէպի նրանց լեզուն, պատմութիւնը, կրօնը։ Ահա այդ փոխադարձ յարգանքի վրա էլ պիտի հիմնվի տարբեր ազգութիւնների համերաշխութիւնը, նպատակ ունենալով ընդհանուր հայրենիքի առաջադիմութիւնը։ Կովկասը պէտք է դուրս գայ իր նահապետական դրութիւնից. նա ահագին ջանքեր պիտի անէ մի բարեկիրթ, կուլտուրապէս զարգացած երկիր դառնալու համար։ Սա մի պարտաւորութիւն է, որ դրբել է տեղային ազգաբնակութեան վրա ռուսաց տիրապետութիւնը։ Եւ այս մեծ գործի մէջ հարկաւոր է բոլոր ազգութիւնների միա-

բան, ազնիւ աշխատակցութիւնը։ Իւրաքանչիւր ազգ պիտի մտցնէ իր բաժինը. ոչ մի ազգ, աշխատելով առանձին, անջատված, չէ կարող միայն իր սեփական միջոցներով գըլուխ բերել այն ահագին գործը, որ պիտի կատարէ ամբողջ երկիրը։ Եւ առաջադիմութեան գործը մեզանում հաստատ ու տեւողական չի լինի, եթէ մի ազգ առաջ գնայ, միւսը մնայ անշարժ, մէկը դէպի առաջ քաշէ սայլը, միւսը դէպի յետ։ Հարկաւոր է միաբան, ընդհանուր գործակցութիւն։

Գրիգոր Արծրունին Թիֆլիսում մօտենում է վրացիներին և համերաշխութիւն է հաստատում երկու հարևան ազգերի երիտասարդութեան մէջ։ Բարեբախտաբար, մենք ունենք մի վրացու վկայութիւնը, որ պատմում է թէ ինչպէս հաստատվեցան եղբայրական յարաբերութիւնները հայ և վրացի երիտասարդութեան մէջ։ Այդ վրացին այժմ հանգուցեալ Գիօրգի Ծերեթէլին է, մի ազնիւ, առաջադէմ և լուսամիտ գրական գործիչ։ 1892 թւականի դեկտեմբերի 27-ին, երբ ահագին, չը տեսնված բազմութիւնը Խօջիվանքի գերեզմանատանը հաւաքված էր Գրիգոր Արծրունուն թաղելու համար, ճառախօսների տեղը բարձրացաւ Գիօրգի Ծերեթէլին և յուզված ձայնով, որ խոր տպաւորութիւն թողեց ամ-

*բողջ բազմութեան վրա, արտասանեց հե-տևեալ խօսքերը* *).

Ես եւ Արծրունին առաջին անգամ ծանօթա-ցանք միմեանց հետ 1872 թւին, երբ նա սկսեց հրատարակել իր «Մշակ» լրագիրը եւ իր կենդանի մտքերով ու նոր գծած ճանապարհով սթափեցրեց հայ հասարակութիւնը։ Այդ ժամանակ մեր մէջ հաս-տատվեց մի բարեկամական կապ։ Ես եւ իմ ըն-կերներս այն ժամանակ աշխատում էինք «Դրօէբա», «Կրէբուլի» եւ «Սասօփլօ Գազէթի» լրագիրներում։ Գրիգոր Արծրունին իր կտրուկ մտածողութեամբ եւ եւրօպական գիտնականների մօտ ճոխացրած խելքով շատ շուտով մօտեցրեց իրան այն ժամանակվայ վրացի գրողների փոքրիկ շրջանը։

«Վրացի եղբայրներ, ասում էր Արծրունին, մեր եւ ձեր վիճակը՝ թէ ուրախութեան եւ թէ վշտի կողմից միշտ մէկ է եղել նոյն իսկ հին ժամանակներից։ Մենք դրացի եւ ազգակից ժողովուրդներ ենք եղել, իսկ այսօր, մեր անխելքութեան պատճառով, մենք մոռացել ենք միմեանց եւ ոչ թէ միայն բա-րեկամ չենք, այլ եւ միմեանց թշնամի ենք դարձել։ Շատ կան մեր եւ ձեր մէջ այն տեսակ մարդիկ, որ իրանց անձնական օգտի համար վիրաւորում են ար-դար մարդուն։ Դրանց մէջ կան այնպիսի վրացիներ, որ նեղացնում են հայերին եւ այնպիսի հայեր, որ հարուածում են վրացիներին։ Բայց ինչու պէտք է մենք մի երկու երեք անխիղճ մարդկանց պատճա-ռով ատենք միմեանց։ Ոչ, պէտք է մենք, որպէս մամուլի ներկայացուցիչներ, քարոզենք ու զարթե-

*) «Ցարազ» շաբաթաթերթ, 1892, № 50.

ճնենք վրացիների ու հայերի մէջ սէր եւ եղբայրութիւն, որովհետեւ մենք անկարող ենք առանց փոխադարձ քարեկամութեան հասնել մեր կատարելութեան։ Հօ գիտէք, եղբայրներ, որ միութիւնը ոյժ է, իսկ բաժանութիւնը—թուլութիւն»։

Ահա այսպիսի բաց եւ անկեղծ խօսքերով Գրիգոր Արծրունին մօտեցրեց մեզ իրան։ Նա բացեց մեր առաջ իր խմբագրատան դռները եւ երբեմն մենք էինք գնում նրա մօտ, երբեմն նա էր գալիս մեզ մօտ։ Այդ ժամանակներին այնպիսի մի հասարակօգուտ բան չէ պատահել, որի մասին համերաշխութեամբ ու երկու հարեւան ազգերի համար հաւասարապէս օգտաւէտ կերպով գրած չը լինենք՝ մենք—մեր լրագիրներում ու ամսագիրներում, իսկ նա—իր «Մշակում»։ Նա սովորեցնում էր մեզ Հայաստանի պատմութիւնը, իսկ մենք նրան—վրաց ժողովրդի պատմութիւնը։

Սա առաջին լուսաւորված հայն էր, որ քարոզում էր վրացիների եւ հայերի համերաշխութեամբ գործելու մասին։ Սա էր, որ առաջին անգամ քարոզեց մեզ եւ իր մահից յետոյ էլ կտակեց այն ոսկի տառերով դրոշմվելու արժանի խօսքը թէ «միութիւնը ոյժ է, իսկ անմիաբանութիւնը—թուլութիւն է»։

*Այդ եղբայրական համերաշխութեան արտայայտութիւնն էր, որ երբ հրատարակվեց «Մշակի» յայտարարութիւնը, «Դրօշակ» լրագիրը հետևեալ տողերը նուիրեց նրան.*

Ողջունում ենք եւ երկար կեանք ենք ցանկանում հիմանման պարտաւորութիւն ունեցող մեր եղ-

բայրակցին։ Սրա հետ ցանկանանք, որ այս նոր հայերէն լրագիրը առաջվայ հրատակութիւններից ա-ռաւել համակրութիւն ցոյց տար ամեն բանի մէջ, որովհետեւ միասին ապրելով, մենք միեւնոյն թըշ-նամիներով եւ բարեկամներով ենք շրջապատված, վրացիներս եւ հայերը։

*Գրիգոր Արծրունին «Մշակի» առաջին խսկ համարում այսպէս պատասխանեց այդ ող-ջոյնին.*

Մենք մեզ պարտաւորութիւն ենք համարում պատասխանել վրաց «Դրօէբա» օրագրին, որ մեր կարծիքն էլ չի տարբերվում նորա յայտնած մտքից։ Կովկասը թէեւ զանազան ազգութիւններով է բնա-կեցրած, որոնք այլ եւ այլ, մէկ մէկից տարբեր դաւանութիւնների են պատկանում, բայց իր տե-ղագրական եւ աշխարհագրական դրութեան պատ-ճառով դառնում է այդ բոլոր ազգերի համար ընդ-հանուր հայրենիք եւ միջոց է տալիս նոցա ձգտե-լու ընդհանուր համանման օգուտներին։ «Մշակը», ոգով հայ մնալով, միեւնոյն ժամանակ ուրախու-թեամբ մեկնում է համակրութեան ձեռքը դէպի վը-րաց լրագիրը, անվախ խոստովանելով որ վրաց «Դրօէբայի» պէս յայտնած լուսաւորեալ մտքերը նա չի գտել արդեան ոչ մի հայկական պարբերա-կան հրատարակութեան մէջ։

*Այսպէս միմեանց ձեռք տալով, երկու լրա-գիրները համերաշխութեամբ առաջ են գնում՝*

միմեանց օգնելով, միմեանց ոյժ տալով հասարակական հարցեր լուծելու մէջ։ «Մշակում» տպված անդրանիկ թատրօնական րէցէնզիան (№ 2) վրաց թատրօնին է վերաբերվում. երկու լրագիրները միմեանցից քաղուածքներ են անում և հայ-վրացական մըտաւոր և բարոյական շահերը պաշտպանում են ազնիւ զինակիցների եռանդով։ Ամեն տեղ, ուր խօսք էր լինում տեղական լեզուների, գրականութեան, թատրօնի մասին, Արծրունու համար միայն հայ ազգը չը կար, այլ նրա հետ միասին և համահաւասար՝ վըրաց ազգը։ Այդ գաղափարական զինակցութիւնը շարունակվեց մի քանի տարուց աւել և ներկայացնում էր ընդհանուր, միատեսակ կուլտուրական գաղափարներով տոգորված երկու տարբեր ազգերի երիտասարդութեան միաբանութիւնը։ Նայելով այդ երևոյթին, կարելի է հպարտութեամբ ասել որ քաղաքակրթութիւնը վերացնում է և ցեղական ու դաւանական նախապաշարմունքները՝ խմբելով ազգերը մի մեծ ընտանիքի մէջ, ուր փոխադարձ համակրանքներն ու յարգանքներն են տիրում դարաւոր ատելութեան, անմիաբանութեան տեղ։ Բայց, աւա՜ղ, շատ երկարատև չէր «Մշակի» և «Դրօէբայի» եղբայրակցութիւնը։ Իր տեղում մենք կը տես-

նենք որ փոխվեց վրաց լրագրի խմբագրութիւնը և դրա հետ էլ փոխվեցին յարաբերութիւնները։ Սակայն Գրիգոր Արծրունին մինչև իր կեանքի վերջը հաւատարիմ մնաց իր իդէալին և հաւասար յարգանքով էր վերաբերվում կովկասեան ազգերին։

«Մշակի» շատ կանոնաւոր, հարուստ և հետաքրքրական բաժինն էր և արտաքին տեսութիւնը, ուր աշխատում էր, ինչպէս գիտենք, Պօղոս Իզմայիլեանը։ Այդ բաժնում արտայայտվում էր արտասահմանեան կեանքը իր ամենախոշոր երևոյթներով, որքան այդ հնարաւոր էր մի շաբաթաթերթի մէջ։ Ամենագլխաւորը այն էր, որ այդտեղ տպագրվում էին ինքնուրոյն, խմբագրական յօդուածներ, որոնց մէջ արտայայտվում էր լրագրի որոշ ուղղութիւնը. այնպէս որ արտաքին տեսութիւնը լրացնում, ամբողջացնում էր այն ամենը, ինչ «Մշակը» տալիս էր առաջնորդողների և ներքին տեսութեան մէջ։ Արտասահմանեան կեանքի այնպիսի երևոյթները, ինչպէս են բանուորական շարժումները, կանանց քաղաքական իրաւունքներ տալու հարցը, կրթական սիստեմները, արձագանք են գտնում «Մշակի» մէջ, լուսաբանվում են առաջադիմական տեսակէտից։

Քաղաքական աշխարհի ամենախոշոր իրո-

ղութիւնը ֆրանս-պրուսական պատերազմի բերած հետեւանքներն էին։ Պատերազմը վերջացել էր և երկու ախոյեանները, յաղթողը և յաղթվողը, սկսել էին մեծ եռանդով իրանց ներքին կեանքը կանոնաւորել։ Հերոսական ջանքեր էր գործ դնում մանաւանդ Ֆրանսիան. պատերազմական ահռելի տուգանքը վճարել, երկիրը նորից զարգացման ճանապարհի վրա դնել, բուժել թշնամու անեղ հարուածներից գոյացած վէրքերը, կռւել հանրապետական րէժիմի հակառակորդ տարրերի դէմ,—ահա որքան գործ կար Ֆրանսիայում։ Գերմանիան էլ գործում էր, նա քնած չէր իր վաստակած դափնիների վրա։ Այն գերմանասիրութիւնը, որ Գրիգոր Արծրունին ցոյց էր տուել դեռ «Հայկական Աշխարհում», շարունակվեց և «Մշակի» մէջ։ Արժանի մեծարանքները մատուցանելով Ֆրանսիայում կատարվող առաջադիմական ջանքերին, «Մշակը» միշտ առանձին ոյժով էր շեշտում Գերմանիայի առաւելութիւնները։ Ոչինչ հիմք չունենալով համակրելու կղերական ուղղութեան, «Մշակը» մեծ հաճութեամբ արձանագրում էր այն կռիւը, որ Գերմանիայում սկսել էր Բիսմարկը կաթօլիկ եկեղեցականութեան դէմ (կուլտուրկամֆ)։ Մենք արդէն տեսանք, որ պապականութիւնը «Մը-

շակի» համար խիստ անհամակրելի մի սկըզբունք էր, իբրև անհատական զարգացման թշնամի մի հիմնարկութիւն։ Գերմանիան իր պատերազմով պապականութեան մահացու հարուածներ տուեց. նա ոչնչացրեց Նապօլէօնին, որ Հռոմի պաշտպանն ու հովանաւորն էր, նա թոյլ տուեց որ իտալական զօրքերը գրաւեն Հռոմը և միանգամայն վերջ դնեն պապի աշխարհական իշխանութեան։ Պատերազմից յետոյ էլ Գերմանիան աշխատում էր ընկճել պապականութեան ոյժը իր սահմանների մէջ։ Ահա թէ համակրանքի որքան առիթներ կային «Մշակի» համար։

Պապականութեան խորտակումը օգուտ տուեց և հայերին, ասում էր «Մշակը»։ Ինչպէս յայտնի է, հէնց այդ ժամանակներում Կ. Պօլսի հայ-կաթօլիկ հասարակութեան մէջ սկսվեցին հասունեան և հակահասունեան վէճերը։ Հակահասունեանները, պաշտպանելով ազգային իրաւունքները, դիմադրելով լատինամոլ հասունեաններին, օգուտ էին քաղում քաղաքական այն դրութիւնից, որ ստեղծել էր ֆրանս-պրուսական պատերազմը։ Չը կար այլ ևս Նապօլէօնը, որպէսզի կարողանար ճնշումներ գործադրել Կ. Պօլսում, Վատիկանը թոյլ էր, հեղինակութիւն չունէր իբրև քաղաքական մարմին, և ահա հայ-կաթօլիկ

հաստարակութիւնը համարձակ պահանջում է որ իր ազգային ծէսը, ազգային լեզուն պահվի իր եկեղեցու մէջ։

Արտաքին տեսութեան մէջ էր և այն բաժինը, որ պիտի խօսէր Ռուսաստանի սահմաններից դուրս ապրող հայութեան մասին։ Թիւրքիայի և Պարսկաստանի հայերը պատշաճաւոր տեղ են բռնում «Մշակի» մէջ։ Սակայն Թիւրքիայի հայերի վերաբերմամբ «Մշակի» առաջին տարվայ տուածները համեմատաբար աղքատ են։ Տեղեկութիւնները քաղվում են եւրօպական և թիւրքահայ լրագիրներից, սեփական թղթակցութիւններ չը կան։ Միայն մի հատ խմբագրական ինքնուրոյն յօդուած ենք գտնում, յատկապէս թիւրքահայերին նուիրված։ Բայց այդ յօդուածի մէջ շատ որոշ, աչքի ընկնող պարզութեամբ է արտայայտվում «Մշակի» վերաբերմունքը դէպի թիւրքահայերը, մի վերաբերմունք, որ ապագայում այնքան մեծ տեղ պիտի բռնէր թէ մեր և թէ «Մշակի» կեանքի մէջ։

Հէնց առաջին իսկ քայլից «Մշակը» Թիւրքիայի հայութեան մէջ զանազանում է երկու մաս. գաւառներ և Պօլիս։ Եւ այս երկու մասերը միմեանից հեռ նմանութիւն չունեն. թիւրքահայերը արտօնութիւններ են վայելում, նրանք ունեն սահմանադրութիւն,

**բաւական ազատ մամուլ։ Բայց այդ արտօնութիւնները մայրաքաղաքի հայերին են պատկանում։**

Թէեւ այս արտօնութիւնները առ այժմ այնքան իրական չեն, Թէեւ Փոքր Ասիայի գաւառներում տիրում է կատարեալ կամայականութիւն, հայերին հալածում են, պղծում են նոցա եկեղեցիները, անպատւում են նոցա կանանցը, բռնադատում են քաղաքացիներին, բայց այնուամենայնիւ այսօր օրէնքի մեռած յօդվածները վաղը կարող են իրականութիւն ստանալ, Թղթի վերա յիշված իրաւունքները կարող են կենդանանալ։

Կ. Պօլսում, որպէս կենտրօնում, որտեղ 300,000 հայերի հասարակական կեանքը աւելի զարգացած է, որտեղ օրագրութեան եւ գրականութեան ազատ քննադատութիւն կայ, որտեղ նիստ ունի ազգային քաղաքական ժողովը, այդպիսի զեղծումներին տէրութեան պաշտօնեաների կողմից աւելի դժուար է պատահել։ Կ. Պօլսում աւելի միջոցներ կան կրթվելու, զարգանալու, ազատ, անկախ լուսաւորութեանը ձգտելու, քան Թէ Թիւրքիայի գաւառներում, որտեղ մարդի իրաւունքը դեռ եւս ոտնակոխ է արած…

**Համեմատաբար ազատ Կ. Պօլիսը այդ պատճառով էլ ծաղկեցրել է իր մէջ ժողովրդական կրթութեան գործը. բայց ծաղկեցրել է ոչ թէ կատարելութեան հասցնելով նորան, այլ միայն նորանով, որ միջոցներ ունի ուսումնարաններ բանալու, բարոյական ազա-**

*տութեան ձգտելու։ Պատրիարքարանի հրատարակած տեղեկագիրը ցոյց էր տալիս որ կան բաւական թւով ապահովված դպրոցներ, բայց չը կան պատրաստված ուսուցիչներ։ Այդ առիթով «Մշակը» յայտնում էր որ առհասարակ Թիւրքահայերի ստացած կրթութիւնը, լինելով ֆրանսիական, օգտակար չէ՚*

Սորանից դեռ մէկ երկու տարի առաջ մայրաքաղաքի պրէսսայի ամենանշանաւոր լրագիրներից մինը, խօսելով Գերմանիայի վերա, անուանեց այն երկիրը բարբարոս, եւ այն ազգը, որ հիմնեց եւ զարգացրեց մանկավարժութեան ուսումն, այսինքն մարդի անհատական զարգացման եւ ազատութեան գործին ամենամեծ ծառայութիւն արաւ,—դրոշմեց բ ա ր բ ա ր ո ս ա զ գ անունով։ Մեզ ծանօթ է Կ. Պօլսի միայն մի օրագիր, այն է «Երկրագունտը», որ 1871 թուին քանի մի ուշադրութեան արժանի յօդվածներով բողոքեց այդ վայր ի վերոյ, ֆրանսիական թեթեւ եւ միակողմանի կրթութիւնից առաջացած թերի կարծիքի դէմ։

*Այս տողերի մէջ երեւում է գերմանական ուսանող Արծրունին։ Նա պակասութիւն էր համարում որ Թիւրքահայերը խորշում են գերմանական կրթութիւնից և ասում էր.*

Միայն մի բան պակաս է դեռ եւս Թիւրքիայի հայերի ժողովրդական կրթութեան։ Ճիշտ գիտութեան եւ մանկավարժութեան հետ ծանօթութիւնը, որոնց

աղբիւրը Գերմանիա չը ճանաչելու համար հարկաւոր է կատարեալ կոյր կամ գոնէ սաստիկ կարճատես լինել։

Ո՞րքան հիմնաւոր էր այդ նկատողութիւնը։ Իրանք, թիւրքահայերը այժմ խոստովանում են ֆրանսիական կրթութեան պակասութիւնները և ասում են, որ եթէ ռուսահայերի գրականութիւնը աւելի կրթիչ, ուժեղ ու դաստիարակիչ է, դրա պատճառն այն է, որ ռուսահայ գործիչները գերմանական կրթութեան ազդեցութիւնն են կրում իրանց մէջ։ Եւ իրաւ, Կ. Պօլսում չէր աջողվում բուն ժողովրդական, իրական գրականութիւն հիմնել, գրականութիւն, որի նպատակը լինէր կեանքի լուրջ ու բազմակողմանի ուսումնասիրութիւնը։

Թիւրքիայից անցնելով Պարսկաստան, կը տեսնենք որ վերջինս աւելի մեծ տեղ է գրաւում «Մշակի» արտաքին տեսութեան մէջ, աւելի մանրամասն և բազմակողմանի կերպով է ներկայացրած։ Այստեղ համարեա չը կան քաղուածքներ օտար լրագիրներից, այստեղ ամբողջ նիւթը սեփական է, ինքնուրոյն։ Դրա ամենագլխաւոր պատճառն այն է, որ «Մշակի» խմբագրութեան մէջ էր Պարսկաստանում ծնված ու մեծացած Րաֆֆին։

*Րաֆֆիի նամակները «Մշակի» 1872 թուականի արտաքին տեսութեան գլխաւոր հարստութիւնն են կազմում։ Նրանք մանրամասն, գրաւիչ կերպով նկարագրում են պարսկական իրականութիւնը, և այն հայ ժողովուրդը, որ ապրում է Ուրմիի և Սալմաստի կողմերում, դուրս է գալիս ձեր առջև իր բոլոր հոգսերով ու ցաւերով, իբրև իրաւազուրկ, մշտապէս հարստահարվող մի բազմութիւն, որի ճակատին գրված է աշխատել, քրտինք թափել, արդիւնաբերել, բայց չը վայելել դառն աշխատանքի պտուղները։ Րաֆֆին նկարագրում է և հայերի հարևաններին—ասօրիներին, քրդերին։ Առաջին անգամն է, որ մեր գրականութեան մէջ խօսք էր լինում այդ ցեղերի մասին. շատ հետաքրքրական է մանաւանդ ճանապարհորդութիւնը դէպի Ծուլամերկ և Մար-Շիմօնին ներկայանալը։ «Հիւսիսափայլում» Րաֆֆին իր ճանապարհորդութեան ժամանակ տեսածների մի փոքրիկ մասն էր նկարագրել—Աղթամարը։ Այժմ «Մշակի» մէջ նա ներկայացնում էր այն ամենը, ինչ նա տեսել ու իմացել էր Պարսկաստանում և Թիւրքիայում։ Եւ նրա նկարագրութիւնները այնքան գրաւիչ ու վերին աստիճանի հետաքրքրական էին, որ, ինչպէս հաղորդում էին «Մշակին»,*

արտասահմանի հայ ուսանողները ուզում էին թարգմանել այդ նամակները գերմանական լեզուով։

Բացի այդպիսի ինքնուրոյն գրուածքներից, որոնք պատրաստվում էին խմբագրութեան մէջ, «Մշակը» գնալով աւելի և աւելի յաճախ էր տալիս թղթակցութիւններ։ Ինչպէս գիտենք, Լրագրի հրատարակութիւնը սկսելիս թղթակցութիւնների գործը այնքան անորոշ ու անյուսալի էր, որ հարկադրված էին խմբագրութեան մէջ թղթակցութիւններ կազմել՝ ուրիշներին օրինակ տալու համար։ Եւ այդ օրինակը շուտ ներգործեց. խմբագրութիւնը հարկադրված չէր երկար ժամանակ տանը թղթակցութիւններ կազմել, թխել. թղթակիցներ շուտ պատրաստվեցան և մենք «Մշակի» հէնց առաջին տարվայ ընթացքում տեսնում ենք թղթակցութիւնների բաժնի անդադար զարգացումը։ Խմբագրութիւնը ղեկավարում էր, «Մշակի» առաջնորդողները դրդում էին. և ահա գաւառների կեանքը ըսկսում է հետզհետէ երևան գալ Լրագրի էջերում, այնպէս որ խմբագրութիւնը հնարաւորութիւն ունի իր թղթակիցների հաղորդած տեղեկութիւնները և երևոյթները քըննութեան ենթարկելու իր յօդուածների մէջ։

Թղթակցութիւնները միայն ներքին գա-

ւառներից չէին գալիս, այլ և արտասահմանից։ Առաջին անգամից Գերմանիան է, որ ամենից շատ թղթակցություններ է տալիս «Մշակին»։ Եւ սա հասկանալի է. Գերմանիայում էր ապրում Անդրէաս Արծրունին։ Գերմանիայից յետոյ Պարսկաստանն էր. Թըղթակցություններ ստացվում էին մեծ մա-



Համբարծում Առաքելեան

սամբ Թաւրիզից, Թեհրանն էլ մի երկու բան տուեց։ Թաւրիզից գրում էր Համբարձում Առաքելեանը։ «Մշակի» անդրանիկ թղթակից-

ներից մէկն է Առաքելեանը. նա միակն է կենդանի մնացածներից, որ այսօր էլ շարունակում է գրել «Մշակի» մէջ, երեսուն տարվայ ընթացքում հաւատարիմ մնալով նրա դրօշակին։

«Մշակի» առաջին տարվայ տեսութիւնը վերջացնելու համար մեզ մնում է մի թեթև ակնարկ գցել նրա գրական բաժնի վրայ։ Արծրունին ասում էր՝ անշնորհք ու անկարող է այն խմբագիրը, որ ինքնուրոյն տաղանդներ չէ առաջ բերում, որ իրան շրջապատող գրողներին ուղղութիւն չէ տալիս, չէ որոշում թէ նրանցից ո՛րը ինչ ճիւղի մէջ կարող է աջողութիւն ունենալ իբրև ստեղծագործող։ Ի՞նչ կարողացաւ անել նա այդ ուղղութեամբ առաջին տարվայ ընթացքում։

Գրական բաժինը բաղկացած էր փոքրիկ պատմուածքներից։ Դրանց թիւը բաւական մեծ էր; բայց դրանք դեռ մի առանձին հարըստութիւն չեն կազմում, մանաւանդ եթէ նըկատի ունենանք, որ «Մեղուն» էլ մեծ քանակութեամբ այդպիսի վէպիկներ էր տալիս։ Մեր վիպագրութիւնը առհասարակ շատ դանդաղ կերպով էր զարգանում. Աբովեանից յետոյ երեք տասնեակ տարիներ էին անցել, բայց մեր վէպը շարունակում էր խանձարուրքի մէջ փաթաթված մնալ։ Վաթսունա-

*կան թուականներին Պռօշեանցի ազգագրական վէպին *) հետևեց Աղայեանցի «Արութիւն և Մանուէլը», բայց դա էլ վէպ չէր, դրա մէջ էլ չը կար գեղարուեստ, թէև առատ էին կեանքի տեսարանները։ 1872 թուականին «Մեղուն» առանձին գրքով տուեց իր բաժանորդներին նոյն Աղայեանցի «Երկու Քոյրը», բայց այդ գիւղական հովուերգութիւնը նոյնպէս ոչինչ չէր աւելացնում եղածի վրա։*

*Մենք մի քանի անգամ տեսանք որ Արծրունին մեծ նշանակութիւն էր տալիս վիպական գրականութեան։ Ինքնուրոյն վէպն էր, որ պիտի օգուտ բերէր հայ ընթերցողին, մի կողմից պատկերացնելով նրա առջև նրա սեփական կեանքը, իսկ միւս կողմից զարգացնելով և տարածելով ընթերցանութեան սէր։ Բայց ինչպէս ստեղծել գրականութեան այդ կարևոր ճիւղը, ինչ կար մեզանում «Մշակի» հրատարակութիւնից առաջ։ Եթէ չը հաշուենք Պռօշեանցի և Աղայեանցի գրուածքները, կը մնան այն փոքրիկ պատմուածքները, որոնք տպվում էին «Մեղուի» մէջ 1863 և յաջորդ թուականներում։ Այդ պատմուածքները այն միակ արժանաւորութիւնն ունէին,*

---

*) Տես իմ «Ստեփանոս Նազարեանց», հատ. II, եր. 260։

որ փորձում էին մօտենալ քաղաքային կեանքի մի քանի կողմերին։ Միմիայն այդ ձըգտումն է ուշադրութեան արժանի, որովհետև պատմուածքները գրական արժանաւորութիւններից զուրկ էին, տպաւորութիւն թողնել չէին կարող։ «Հայկական Աշխարհը», չը նայած, որ իրան անուանում էր գրական ամսագիր, միանգամայն ամուլ հանդիսացաւ նոյն իսկ այդքան խեղճ ու կրակ պատմուածքների կողմից. նա ոչինչ չը տուեց։ Մեզանում դեռ թատերագրութիւնն էր ըէալական գեղարուեստի ներկայացուցիչը. նա արդէն տուել էր «Պէպօի» նման սիրուն գոհարը, իսկ վիպագրութիւնը մնում էր փոքրիկ տեսարաններ ցոյց տուողի խղճալի դերում։

Այդ կերպարանքով էլ վիպագրութիւնը 1872 թւին մտաւ «Մշակի», յետոյ և կերպարանափոխված «Մեղուի» մէջ։ Նա տալիս էր պատկերներ, բայց արուեստ չունէր, լեզու չունէր, չափ չունէր և երկու լրագիրների մէջ տպված պատկերների բազմութիւնից հազիւ թէ կարողանանք գտնել մի երկուսը, որոնց այժմ էլ կարելի կը լինէր կարդալ առանց զարմանալու նրանց միամիտ, աղքատ կազմուածքի վրա։ «Մշակի» մէջ այդպիսի պատմուածքներ տալիս էր գլխաւորապէս Գէորգ Ջմշկեանը։ Զբաղվել նրա պատ-

կերպներով ավելորդ է, բայց պետք է ասենք, որ նա «Մշակում» սկսեց իր թատրոնական յիշողութիւնները, որոնք հետաքրքրութեամբ են կարդացվում։ Աւելացնենք և այն, որ «Մշակի» աշխատակիցներին առանձնապէս գրաւում էր ֆելիէտոնական ոճը, և մենք տեսնում ենք պատկերներ, որոնց մէջ ֆելիէտոնիստի հեգնութիւնը մի առանձին ոյժով է ընդգծում աշխարհի անարդարութիւնը։ Այսպէս է, օրինակ, «Կօշկակարի խրճիթից» անունով սիրուն պատկերը։

Արդարացի կը լինէր, եթէ մենք այս ընդհանուր և համառօտ դիտողութիւններով էլ վերջացնէինք «Մշակի» գրական բաժնի տեսութիւնը։ Բայց մեր առջև կայ այն հանգամանքը, որ այդ բաժնում աշխատում էր և Րաֆֆին։ «Մշակի» մէջ զարգացած այդ գրական խոշոր ոյժը պարտաւորեցնում է մեզ հետևել նրան՝ առաջին իսկ քայլերից։

Յակոբ Մէլիք-Յակոբեանը միայն Պարսկաստանի նամակներն էր ստորագրում Րաֆֆի անունով. իսկ մնացած գրուածքների համար նա ունէր մի կեղծ անուն—Մ է լ ի ք զ ա դ է։ Մէլիքզադէի ստորագրութեան մենք յաճախ ենք պատահում «Մշակի» առաջին տարվայ մէջ. դա ցոյց է տալիս որ Մէլիք-Յակոբեանը շատ բան ունէր ասելու, որ նա

Արծրունու ամենաեռանդուն աշխատակիցն էր։ Նա գրում էր զանազան բաներ—կենսագրութիւն, քննադատութիւն, պօլեմիկական յօդվածներ։ Մինչև իսկ փորձեց ֆելիէտօն գրել և այդ ֆելիէտօնի վերնագիրը ճիշտ և ճիշտ այնպէս էր, ինչպէս Նալբանդեանի ֆելիէտօնների վերնագիրը «Հիւսիսափայլում»։ Նմանվելով Կոմս Էմմանուէլին, Մելիք-Ցակոբեանը գրում էր «Ցիշատակարան Գ. Մելիքզադէի Օրագրութիւններից»։ Բայց Մելիքզադէի իսկական կոչումը այն տեղն էր, ուր նա առաջին անգամ երևան եկաւ «Մշակի» № 21-ի մէջ։ Դա բանասիրական բաժինն էր, և այդտեղ տպվեց Մելիքզադէի «Գեղեցիկ Վարդիկը»։

Իր պատկերների համար Մէլիքզադէն նիւթ վերցնում էր իր հայրենիքի, Պարսկաստանի կեանքից։ Այսպէս են նրա «Կուսագրութիւնը», «Սովը», «Անբախտ Հռիփսիմէն»։ Այդ առաջին պատկերները իսկապէս շատ բանով չեն զանազանվում այն պատկերներից, որոնք այդ ժամանակ երևում էին մեր լրագրներում. բովանդակութիւնը աղքատ, միամիտ, նիւթի մշակումը շատ թոյլ։ Բայց այդ անարուեստ պատմուածքների մէջ երևում է և նորութիւնը. Մելիքզադէն բնութեան սիրուն նկարագրութիւններ է տա-

լիս, ունի հարուստ երևակայութիւն։ Բացի դրանից, նրա գրուածքների մէջ արդէն լըսվում է մի հզօր չեշտ—հարստահարված, իրաւազուրկ հայը մահմեդական աշխարհում։ Պարսիկ տիրողների կամայականութիւնը արտայայտվում է հայ աղջիկներ յափշտակելու մէջ, իսկ հայ կտրիճ երիտասարդները դիմադրում են, խլում են զոհերին նրանց ձեռքից,—ահա Մելիքզադէի սիրած սիւժէտը։ Ծնված և մեծացած բռնութեան աշխարհում, պարսկաստանցի երիտասարդը իր առաջին քայլերից պատրաստվում էր դուրս գալու իբրև մի տաղանդ, որի ամենամեծ ոյժն էր՝ բողոք բռնութեան դէմ։ Բայց նա դեռ թոյլ էր իբրև վիպագրող, նրան դեռ պակասում էր իսկական ոգևորութիւնը, նրա առջև դեռ մարմնացած, միս ու արիւն ստացած գաղափար չը կար։ Եւ նա իր Վարդիկների, Հռիփսիմէների դժբախտութիւնն էր նկարագրում, դեռ չիմանալով թէ ինչպէս պիտի մահմեդական լուծի տակ տափակած հայը փրկութիւն որոնէ իր համար։

Ինչպէս երևում է, Մելիքզադէն այդ ժամանակ շատ վիպական գրուածքներ ունէր, բայց դրանց մէջ աջողվածները շատ չէին։ Այսպէս, «Մշակի» մէջ տպվածներից մենք մատնացոյց կանենք միայն «Սովը», մի պատ-

կեր, որ շատ աղդու տպաւորութիւն է թողնում իբրև սովի և գազանացած մարդու նըկարագրութիւն։ Մելիքզադէն ունէր և մեծ վէպեր, օրինակ, «Ջահրումարը», որ գրված է այդ ժամանակներից և հրատարակվեց նրա մահից յետոյ։ Արծրունին իր յիշողութիւնների մէջ ասում է թէ 1872-ին Րաֆֆին՝ բերեց իր «Խըլվըլիկ» վէպը, բայց ինքը չը հաւանեց այդ գրուածքի բովանդակութիւնը, թէև նրա նկարագրական մասերը աննման էին։ Այսպէս է և «Ջահրումարը»։ Նրա մէջ կան շատ նոր մոտիվներ, որոնք դեռ անյայտ էին մեր վիպագրութեան, նրա մէջ գեղեցիկ կերպով նկարագրված են բացասական երևույթներ, դէմքեր, բայց դա, այնուամենայնիւ, մի անաջող վէպ է, թոյլ՝ իբրև գեղարուեստական ստեղծագործութիւն, անբնական շատ տեղերում։

«Մշակի» խմբագրութեան հետ իր վիճակը կապելուց յետոյ,—ասում է Արծրունին—Րաֆֆիի տաղանդի սահմանները և այդ տաղանդի ձևը հետզհետէ որոշվեցան»։ Եւ սա ճիշտ է. 1874 թւականին Րաֆֆին հրատարակեց առանձին գրքով իր «Փունջի» երկրորդ հատորը, որի մէջ տպված վէպիկները արդէն ցոյց են տալիս, որ հեղինակը շատ է առաջ գնացել այն դրութիւնից, որի մէջ

գտնվում էր «Գեղեցիկ Վարդիկը» գրելիս. Նա հետզհետէ զարգանում էր, աւելի հմտութեամբ էր գործադրում իր նկարագրական շնորհքը, աւելի ռէալիստ էր դառնում, գեղարուեստական չափը աւելի լաւ էր ըմբռնում։



Դեկտեմբերի 28-ին հրատարակվեց «Մըշակի» 1872 թուականի վերջին, 51-րորդ համարը։ Արծրունին այդ համարի առաջնորդողի վերնագիր դրեց երկու թուանշան—«1871 և 1872»։ Դրանք երկու տարիներն էին, մէկը «Մշակից» առաջ, միւսը՝ «Մշակի» առաջին տարին։ Համեմատվում էին այդ երկու տարիները.— ինչ կար և ինչ կայ։ Թողենք որ Արծրունին ինքը պատմէ այդ, նա շատ լաւ է պատմում։

1871 թուին կովկասում կային հայերէն լեզվով լրագիրներ։ Այդ լրագիրները հրատարակվում էին անորոշ ժամանակամիջոցներով, անկանօն կերպով... ոչ ոք չէր իմանում մէջը ինչ էր գրած, ոչ ոք չէր կարդում, շատերը հայերից (մանաւանդ բարձր շրջանի հայերը) տեղեկութիւն էլ չունէին նոցա գոյութեան մասին։ Ով որ գիտէր հայերէն կարդալ, կը գտնէր թերթի մէջ հետեւեալ բովանդակու-

թիւնը։ Քանի մի անկապ քաղաքական լուրեր ռուս լրագիրներից եւ «Մասիսից», անծանօթ մարդու երկար կենսագրութիւն, երկար նամակ յարգոյապատիւ խմբագրին պատուական լրագրի, որտեղ ասում էին թէ մեր ազգը շատ յետ է մնացել միւս ազգերից, բայց այսուհետեւ նա պիտի ընթանայ հսկայական քայլերով դէպի լուսաւորութեան ասպարէզը, որովհետեւ մեծապատիւ... Նիրակոս աղա Մարտիրոսեանը ընծայել է 50 ռուբլի Հ... քաղաքի նորաշէն ծխական ուսումնարանին... երանի՜ մեր բոլոր հայրենակիցները հետեւէին այդպիսի պայծառ օրինակին. ո՜հ, ինչու մեր ազգը իր բարերարներին չէ ճանաչում եւ այլն։ Թերթի վերջը գալիս էր մի Թարգմանութիւն աշխարհագրութեան դասագրքից... եւ շատ անգամ երբ նիւթը պակասում էր վերջին երեսը կամ սպիտակ էր մնում, կամ մի որ եւ է պատկերը դատարկ տեղ էր բռնում։

## Եկաւ 1872 թուականը։

Յունվարի մէկն էր... Թիֆլիսի հասարակութեան մէջ, ինչպէս միշտ, թուղթ էին խաղում, խօսում էին Նրուժօկի, պարահանդէսների, այս կամ այն մասնաւոր անձի, մասնաւոր կամ ընտանեկան գործերի վերա... Յանկարծ մէկն ասաւ. «գիտէք վաղը դուրս գալու է նոր հայոց լրագրի առաջին համարը».—մի քանիսները ուշադրութիւն չը դարձրին խօսողի վերա, միւսները արհամարհանքով ժպտեցին, երրորդները ծիծաղեցան, մէկէլները իսկոյն խօսողից հեռացան, կարծես թէ նրանց ականջին դիպաւ անախորժ մի ձայն, վիրաւորական մի խօսք, կամ նրանց աչ-

քերին ներկայացաւ մի գարշելի տեսարան... Թռան տեղից ու հեռացան...

...Ահա փօստից եկաւ մի նամակ. «Պատուելի պարոն, շատ ցաւում եմ, որ մեր հայաքնակ քաղաքում 4 բաժանորդներից աւելի չը գտնվեցաւ։ Ձեր լրագիրը գուցէ շատ օրինաւոր կը լինի, բայց մենք այնքան զզվեցանք մեր հայ լրագրութիւնից, լրագրութիւն սկսողը բոլորովին պատրաստ չը լինելով այդ գործունէութեանը,—որ մենք այժմս էլ չենք հաւատում թէ հ ա յե ր է ն լեզվով կարելի է մի օրինաւոր լրագիր հրատարակել...

Այս յուսահատ դրութեան մէջն էր մեր հայ հասարակութեան կարծիքը 1871 թ. մայրենի լրագրութեան վերաբերութեամբ, այդպէս սկսվեցաւ 1872 թիւը...

Ահա հրատարակվեցաւ նոր լրագրի առաջին համարը... ինչպէս էք գտնում,—վատ չէ... Բայց պէտք է խոստովանած, որ ամեն լրագիրների առաջին համարը լաւ է լինում... տեսնենք ինչ կը լինեն հետեւեալները... մի ամիս չի անցկենայ,—եւ նրանք ստիպված կը լինեն լցնել իրանց էջերը թարգմանութիւններով։

*Բայց անցել էր ոչ թէ մի, այլ ամբողջ տասն երկու ամիս։ Եւ Արծրունին, կանգնած երկրորդ տարվայ շէմքին, հետաքրքրական էր համարում իմանալ այժմ ինչ կարծիք կայ հայ լրագրութեան մասին։*

*Կարծիքը, ի հարկէ, պիտի փոխվէր, բայց ոչ այդքան շուտ։ Եթէ հասարակական անտարբերութիւնը երկար ժամանակ ամրա-*

*ցած մի ժայռ էր, իսկ Գրիգոր Արծրունու հրապարակախօսութիւնը մի կաթիլ ջուր, պէտք էր, ուրեմն, որ այդ կաթիլը երկար ժամանակ ընկնէր ժայռի վրա, որպէսզի կարողանար նրան ծակել։ Մեր հասարակութիւնը առանձին դիւրազգացութիւն չունի, որ իսկոյն հասկանայ, իսկոյն ցնցվի։ Երևոյթը դեռ իր սկզբնաւորութեան մէջ էր, այնքան մօտ էր կանգնած տեսողներին, որ միանգամից գնահատել, ամբողջովին հասկանալ շատ դժուար էր։ Կային, ի հարկէ, շատերը, որոնք զգում էին թէ մեզանում մի նոր բան է սկսվում. «Մշակի» բաժանորդների թիւը այդ էր ցոյց տալիս։ Բայց յաղթանակը այդպէս շուտ ձեռք չէ բերվում. մի տարում շատ բան չէ կարելի անել, մանաւանդ մեզ պէս մի հասարակութեան մէջ, այնպիսի մի ասպարէզում, ուր իւրաքանչիւր քայլը պատերազմով պէտք է նուաճել։*

*Հարկաւոր էին երկար տարիներ։ Բայց այս առաջին տարին ցոյց էր տալիս թէ ինչ պիտի լինէր այդ երկար տարիների շարքը։ Մենք, այսօրվայ մարդիկս, աւելի լաւ և յարմար դրութեան մէջ ենք, քան այն հասարակութիւնը, որին Արծրունին հարց էր տալիս թէ այժմ ինչ կարծիք ունի նա հայ լրագրութեան մասին։ Այսօր մեզ այդ առաջին*

հարցից բաժանում է երեսուն տարիների տարածութիւնը. հեռուից դիտողի հանգըստութեամբ զինված ընթերցողը կարող է այսօր իր վճիռը արձակել անկողմնապահ կերպով, աչքի առջև ունենալով փաստերը միայն։ Հէնց այդ պատճառով էլ մենք՝ այնքան երկար կանգ առանք «Մշակի» առաջին տարվայ վրա, քայլ առ քայլ հետևեցինք Արծրունուն և նրա լրագրին։ Կանգնեցնելով ընթերցողին մի մեծ շինութեան առաջ, մենք պարտք համարեցինք ծանօթացնել նրան այդ շինութեան հիմքերի հետ, ցոյց տալ թէ ինչ նիւթերից են կազմված նրանք, ինչպէս է նրանց դարսել, պնդացրել ճարտարապետը։ Եւ մենք տեսնում ենք որ Արծրունու կառուցած շինութիւնը հիմքից մինչև վերջը միատեսակ է տարված, առանց տատանումների, առանց շփոթութեան։ Դա մի ձեռք է, որ դողալ չը գիտէր, մի միտք, որ շեղումներ անել չէր կարող։ Ճարտարապետը միևնոյնն է թէ հիմքի մօտ, թէ շինութեան ծայրին։

Նա մեր մէջ երևան է գալիս միանգամայն պատրաստված։ «Մշակի» առաջին տարին լիակատար կերպով պարզում է Արծրունու հրապարակախօսական դէմքը. ոչինչ չէ մոռացված, ոչինչ թերատ գծեր չը կան։ Նա կուռ մարդ է. նա տափակ մտքերի անհաշտ

թշնամին է, նա պահանջում է որ իւրաքանչիւր մտածող մի յայտնի գոյն ունենայ, նա հարկադրում է որ կուսակցութիւններ կազմվեն մեզանում, բաժանում է աջակողմեաններին և ձախակողմեաններին, որոշում է դիրքերը և այդպէս բաց անում կռւի դաշտը։ Վրդովվում, տակն ու վրա է դառնում այն խաղաղ ճահիճը, որ հայկական կեանքն էր ներկայացնում։ Խիզախ, համարձակ, ազատ միտքը առաջին իսկ քայլերից փոթորիկ է յարուցանում։ Մենք լսում էինք ու սարսափում։ Մենք գիտէինք որ խաղաղ ու միաբան ապրելը իմաստութեան ծայրն է, իսկ կուսակցութիւնները դժբախտութիւն են. Արծրունին գաղափարական կուսակցութեան սկիզբն է դնում և ասում է որ մեռած է այն կեանքը, ուր կուսակցութիւններ չեն առաջանում։ Մենք գիտէինք որ պէտք է սիրով ու խաղաղ ապրենք, —Արծրունին պարտաւորութիւններ էր դնում մեր առջև և ասում էր. «մտրակով չը խփես, բան չի դուրս գայ»։ Տպագրական խօսքը մեզանում չը տեսնված մի ոյժ էր դառնում. նա խարազանում էր, նա յուզում էր, հարկադրում էր շարժվել, ականջ դնել։ Հայ հրապարակախօսութիւնը պատուաւոր դիրք էր բռնում և նրան լսում էին նոյն իսկ օտարները։

*Անցնում էր հին, բարեմիտ ազգասիրութեան դարը։ Մեզանից պահանջում էին ուսումնասիրել մեր իրական կեանքը, հետազօտել մեր տնտեսական երևոյթները։ Փոխանակ ինքնագոհ ազգասիրութեան՝ մեր առջև դնվում էր ազգային լեզուի նշանակութիւնը. փոխանակ հին, անցած գնացած հերոսների՝ մեր աչքի առաջ էին հանվում վաչխառուի ճանկերում տանջվող գիւղացին, արհեստաւորը, պրօլետարիատը։ Աշխատել դրանց համար, գործ կատարել դրանց օգնելու, դրանց կեանքը ապահովելու, տնտեսական դրութիւնը բարւոքելու համար—ահա իդէալը. աշխատող, ներկայով ապրող և ապագայ պատրաստող սերունդ էր հարկաւոր և ոչ թէ անցեալի համար դատարկ ախ ու վաչ անողներ։ Հարուածելով մեռած, անպիտան, խանգարող ոյժերը, Արծրունին ցոյց էր տալիս գործունէութեան լայն ասպարէզ. որքան գործեր կային ճշմարիտ աշխատողների առաջ, որքան կարևոր կենսական հարցեր կային կախված մեզ վրա և մենք նրանց չէինք նկատում։ Նա անդադար կանչում էր, նրա ձայնը ազդու էր, խօսքը ամենքին մատչելի։ Եւ նա իր հետ բերեց մի շարժում։ «Մշակը» դեռ մի քանի ամսական էր, բայց արդէն*

*օտարներն էլ նկատում էին, որ նա երիտասարդութեան պարագլուխն է...*

*1872 թուականը դարագլուխ է կազմում մեր լրագրութեան, մեր գրականութեան պատմութեան մէջ։ Այդ դարագլուխը բերեց «Մշակը»։ Սա լոկ խօսք չէ. անթիւ ու առատ փաստերը այս պատմական իրողութիւնը հաստատում են ամենադրական կերպով։ 1872-ից մեզանում տիրապետում է նոր ուղղութիւնը և հինը անցնում է աւանդութիւնների կարգը։ Մեզանում սկիզբ է առնում իսկական լրագրութիւնը, մենք սկսում ենք զբաղվել մեր կեանքով, մեր սեփական հարցերն ենք ստեղծում, հրապարակական քննադատութիւնը լայն ու հաստատ հիմքերի վրայ ենք դնում։*

*Առաջադիմութիւնը մեր մտաւոր խեղճ աշխարհի մէջ փայլուն էջեր է բաց անում։ Նա միանգամից խուժեց մեր կեանքի մէջ, միանգամից բաց արաւ իր դրօշակը։ Մնում էր որ նա երկարատև լինի, գործէ անընդհատ յամառութեամբ, տոկունութեամբ։ Եւ կարելի էր ապահով լինել, որ այդպէս էլ կը շարունակվի, որովհետև այն մարդը, որ այսպիսի մի շրջան բաց արաւ մեզանում, չէր նայում իր վրա իբրև մի դիւցազնի, մի մարգարէի, մի հրաշագործ ոյժի վրա։ Ո՛չ։*

«Մենք հրաշք չենք գործել,—ասում է Արծրունին իր առաջնորդողներից մէկում *)։ Մենք անդադար կրկնել ենք թէ հրաշքների դարը անցաւ և այժմեան դարը՝ անընդհատ, տոկուն աշխատանքի դար է։ Նոյն իսկ մեր այդ համոզմունքի խոստովանութիւնը ապացոյց է, որ մենք մեր գործունէութիւնից սպասել չէինք կարող հրաշքների, ոչ երկու, ոչ էլ տասը տարվայ ընթացքում։ Ճշմարիտ է, աշխատանքի հետևանքը շատ անգամ ուշ է բերում շօշափելի պտուղներ,—բայց նրա գոյութիւնը բոլորովին անտես առնելու անկարող է հասարակութիւնը։ Մի անգամ յայտնած միտքը ոչնչացնելու՝ մարդկային հասարակութեան ուժից վեր է... Այժմեան դարում որ և է փոխոխութիւն դէպի լաւը կարելի է սպասել միայն անընդհատ գործունէութիւնից, հրաշք սպասել կարելի է միայն երկարատև և տոկուն աշխատանքից»։

Ահա ամբողջ գաղտնիքը։ Եւ մենք, մանրամասն կերպով ծանօթանալով Գրիգոր Արծրունու երկարատև, տոկուն աշխատանքի սկզբնաւորութեան հետ, այժմ առաջ կը գը-

*) 1874, № 1։

***նանք աւելի համառօտած տեսութիւններով, արձանագրելով այն, ինչ նա աւելացնում էր իր դրած հիմքի վրա։***

---

## VI

*Երկրորդ եւ հետեւեալ տարիները:—Բաժանորդագրութիւն առանց գործակալների:—Մի նոր ոյժ «Մշակի» մէջ—Ասիացին իր ֆելիէտօններով:—Քաղաքային ընտրութեան հարցեր. զինակցութիւն «Դրօէբայի» եւ «Тифлисскій Вѣстникъ»-ի հետ:—Գիւղատնտեսական լրագիր ժողովրդի համար:—Արծրունին եւ թուրքերը. «Աֆինչի» լրագիրը:—Գաւառական մամուլ:—Եկեղեցի եւ հոգեւորականութիւն:—Վերադարձ դէպի նախնական եկեղեցին:—Միսիոնարութիւն:—Կրօն եւ ազգութիւն:—«Արարատը» եւ «Մեղուն» Մշակի դէմ:—Տեսչական հարց Ներսիսեան դպրոցում:—Անդրէաս Արծրունու ընտրութիւնը:—Կղերական կամայականութիւններ:—Պայքարը տեղափոխվում է Կ. Պօլիս:—Դատապարտութիւններ Թիֆլիսում:—Առաջին գրական դաս:—Արծրունին եւ Երիցեան: —«Кавказъ»:—Արծրունու առաջին դատապարտութիւնը: —Կտակներ:—Աշխարհական աբեղայութիւն:—Նոր աշխատակիցներ:—«Դաղբենք, մինչ գաղբենք»:*



Հրատարակութեան երկրորդ տարին «Մշակը» արդէն մօտ 700 բաժանորդ ունի: Աջողութիւնը աստիճանաբար աւելանում է, այնպէս որ երկրորդ տարվայ սկզբում Արծ-

րունին արդէն 1000 բաժանորդի յոյս ունի և մտածում է «Մշակը» շաբաթը երկու անգամ հրատարակելու մասին։

Ի՞նչ էին ցոյց տալիս բաժանորդների՝ մեզանում դեռ չը տեսնուած այդ խոշոր թւերը։ Արծրունին ասում էր թէ դրանք ապացոյցներ են որ հայ լրագիրը այժմ կարողանում է կապ հաստատել հասարակութեան հետ։ Եւ պատճառը այս էր որ լրագիրը ժողովրդի տընտեսական կեանքի վրա մեծ ուշադրութիւն է դարձնում. գիւղերն էլ սկսեցին լրագիր ըստանալ, իսկ օր օրի վրա բազմացող թղթակցութիւնները, որոնց գլխաւոր առարկան ժողովրդի կեցութիւնն է, վկայում են որ լրագրի բռնած ուղղութիւնը միանգամայն համապատասխանում է ազգաբնակութեան էական կարիքներին ու պահանջներին։ Մնում էր աւելի ևս մատչելի դարձնել լրագիրը ժողովրդին։ Եւ Արծրունին թանգ համարելով 7 րուբլի բաժանորդագինը, երկրորդ տարվանից իջեցնում է նրան 5 րուբլու։ «Մեղու», որ մրցութեան գործում ոչինչ չէր խնայում, ուրիշ միջոցի դիմեց. անփոփոխ թողնելով 7 րուբլի բաժանորդագինը, նա մեծացրեց իր դիրքը, որ թոյլ էր տալիս նրան «Մշակից» աւելի նիւթ տալ ընթերցողին։ Սակայն աջողութիւնը «Մշակի կողմն էր, եթէ

աչքի առաջ ունենանք մանաւանդ հետեւեալ հանգամանքները։

Մեր մամուլի պատմութեան մէջ դեռ չէր եղել դէպք, որ մի լրագիր կամ ամսագիր բաժանորդագրութիւն սկսէր առանց գործակալների։ Խմբագիրը ծանօթներ ունէր զանազան քաղաքներում. դիմում էր նրանց, խնդրում էր բաժանորդներ հաւաքել։ Իսկ հաւաքել նշանակում էր դիմել այս կամ այն անձին, խնդրել, թախանձել, գրել տալ բաժանորդ։ Կամաւոր բաժանորդագրութիւն մեզանում համարեա թէ չը կար. մի լրագրի կամ ամսագրի նիւթական դրութիւնը ամբողջապէս կախված էր այն հարցից թէ որքան եռանդոտ, ազդեցիկ են նրա գործակալները։ Այդ դրութեան շնորհիւ մամուլի վիճակը ազդեցիկ անհատների ձեռքում էր գտնվում. կուզէին այդ ազդեցիկները, և լրագիրը կամ ամսագիրը բաժանորդներ կունենար, չէին ուզի—բաժանորդներ չէին լինի, կամ այնքան քիչ կը լինէին որ խմբագիրը յուսահատութեան մէջ կընկնէր։ Պարզ է, որ բաժանորդագրութիւն այս պայմանների մէջ մեզանում չէր կարող զարգանալ անկախ, ազատախօս մամուլը։ Ապացոյց՝ «Հիւսիսափայլը»։ Լրագիրը կամ ամսագիրը պիտի խունկ ծխէր, չողոքորթէր, քծնէր։ Նազարեանցը փորձեց

այդ սովորութեան դէմ գնալ, բայց այնպիսի դիմադրութիւն տեսաւ ազդեցիկ անհատների կողմից, որ հարկադրված եղաւ դիմել Կովկասեան փոխարքայ իշխան Բարեատինսկուն, խնդրելով որ նա տեղական իշխանութիւնների միջոցով տարածէ «Հիւսիսափայլը»։ Պարբերական հրատարակութիւն ստանալը համարվում էր ազգասիրութիւն. յանուն ազգասիրութեան՝ խմբագիրները կամ նրանց գործակալները անդորրագրեր էին ուղարկում դռնէ դուռ. գտնվում էին «ազգասէրներ», որոնք ընդունում էին այդ անդորրագրերը և բարեխիղճ էին փող վճարելու մէջ. շատերը կամ վերադարձնում էին անդորրագրերը կամ ստանում էին պարբերական հըրատարակութիւնը, առանց երբէք մտածելու փողի վճարման մասին։ Դա իսկապէս մուրացկանութիւն էր, ինչպէս իրաւացի կերպով նկատում էր «Կռունկի» հրատարակիչ Էնֆիաճեանցը իր մի յայտարարութեան մէջ։

Սկսելով «Մշակի» հրատարակութիւնը, Գրիգոր Արծրունին էլ ենթարկված էր գործակալներին դիմելու տխուր անհրաժեշտութեանը։ Խմբագրութիւնը իր առաջին յայտարարութեան մէջ առաջարկում էր ցանկացողներին՝ գործակալ լինել «Մշակը» տարածելու համար. 10 բաժանորդ գտնողը մի

օրինակը ձրի էր ստանում, 20 բաժանորդ գտնողը—երկու օրինակ և այլն։ Բայց Արծրունին շատ շուտ զգաց լրագիրը գործակալների միջոցով տարածելու ամբողջ անյարմարութիւնը, վատութիւնը։ Երրորդ տարվայ բաժանորդագրութիւնը բաց արաւ առանց գործակալների միջնորդութեան և միանգամից փայլուն հետևանքների հասաւ։ Մինչև յունվարի վերջը նա արդէն 500 կամաւոր բաժանորդ ունէր, ուստի «Մշակի» մէջ յայտնեց որ երբէք չի դիմի արհեստական միջոցների՝ լրագիրը տարածելու համար։

Մենք մեր կողմից խոստովանում ենք—ասում էր նա—որ մենք միշտ զզվանք ունէինք այդ տեսակ միջոցներից եւ միայն առաջին տարի ստիպվեցանք այդ միջոցները գործ դնելու, որովհետեւ հայերը չէին էլ ուզում հաւատալ որ մայրենի լեզուով կարելի է մի փոքր ի շատէ օրինաւոր լրագիր հրատարակել, այնքան զզված էին նրանք մեր լրագիրներից։ Երկրորդ տարուց սկսած մենք ուղարկել ենք միայն այն անձանց մեր լրագրի տոմսակները, որք իրանք էին խնդրում ու առաջարկում գործակատար լինել։

Բայց այժմ այլ ևս այդ ստիպողական միջոցները չեն գործադրվի։ Աւելի լաւ է ունենալ 500 բոլորովին կամաւոր բաժանորդ, քան 1000 ստիպողական, որովհետև այն հինգ հարիւրը «տարից տարի կաճեն և ժամանակով կը դառնան 1000 կամաւոր ստորագրող և

ուեսլի, կը դառնան մայրենի ճշմարիտ լրագրական գործունէութեան համար հաստատ արմատ։ Սակայն կարող է պատահել որ առանց գործակալների օգնութեան բաժանորդների եղած թիւն էլ կը պակասէ։ Արծրունին դրանից չէ վախենում։ Նա ասում է.

. Քանի որ մեր բաժանորդների թիւը կը նուազվի, այնքան մենք պակաս գործ դնելու ենք որ եւ է ստիպողական միջոցները...

Ի հարկէ շատերը կասեն մեզ՝ բայց ձեր լրագիրը այդպիսով անշուշտ կընկնի, մեր հայոց ժողովուրդը ոչինչ չէ անում առանց ստիպողական միջոցների։

Թող ընկնի... բան չը կայ... այդ էլ կը փորձենք... այն ժամանակ հաւատացած կացէք, որ մեր վերջին համարը հրատարակելով, կասենք հայերին՝ հայե՛ր, դուք ոչ ազգ էք, ոչ հասարակութիւն, որովհետեւ դուք անընդունակ էք այն անընդհատ առաջադիմութեան, որին ընդունակ է ամեն մարդկային հասարակութիւնը, մինչեւ անգամ վայրենիները...

Եւ կոտրած սրտով կը թողնենք այդ երկիրը...։

Հաւատալով իր գործին, հաւատալով որ կենդանի, իրական ուղղութեան հետեւող գրականութիւնը անկախ, կամաւոր ընթերցողների մի դասակարգ կը ստեղծէ մեզանում, Արծրունին այսպիսի խիստ խօսքերով էր կտրում իր կապը արհեստական, ստիպողական միջոցներից, որոնց դիմել էին և այ-

սօր էլ դեռ դիմում են բոլոր հայ պարբերական հրատարակութիւնները։ Եւ զուր չէր Արծրունու այդ վառ հաւատը։ Ճիշտ է, վերոյիշեալ խօսքերից մի քանի տարի անցած, նա, դարձնելով «Մշակը» ամենօրեայ, ստիպուած եղաւ, գործի կատարեալ նորութեան պատճառով, դիմել արհեստական միջոցի, բայց դրանից յետոյ նա երբէք այլ ևս չը կրկնեց այդպիսի փորձեր։ Եւ նրան, միայն նրան աջողվեց պատուով, առանց մուրացկանութեան, առանց տորպացումների, տանել լրագրի հրատարակութիւնը, գրաւելով իր կողմը մշտական, կամաւոր ընթերցողների մի բազմութիւն։ Միւս թերթերը, ամսագիրները հեղեղում էին գաւառները իրանց անդորրագրերով, ամեն ջանք գործ էին դնում բաժանորդներ որսնելու համար, բայց Արծրունին մրցութիւն չէր սկսում անդորրագրերը դնել դուռն ման ածողների դէմ և նրա բաժանորդները այն մարդիկ էին, որոնք իրանց կամքով, գիտակցաբար ընտրութիւն կարող էին անել այս կամ այն լրագրին գըրվելիս։ Ուրիշները խնդրելով, աղաչելով, չողոքորթելով էին բաժանորդներ գտնում, զօռով էին իրանց հրատարակութիւնները ընթերցողի շլինքին փաթաթում, իսկ Արծրունին միայն գաղափարի, ուղղութեան, տա-

ղանդի ոյժով էր գրաւում բաժանորդներին։ Նա միայն կարող էր պարծենալ որ ունի գիտակից, ազատ, հասկացող ընթերցողներ։ Եւ ոչ մի խմբագիր չէ եղել նրա այդ նախանձելի դրութեան մէջ. վկայ թող լինի մեր մամուլի պատմութիւնը։ Հայերէն տպագրական խօսքի պատիւը բարձրացնելու, այդ խօսքը մտաւոր անհրաժեշտ կերակուր, պահանջ դարձնելու մէջ Արծրունու չափ մեծ ծառայութիւն ոչ ոք չէ ցոյց տուել։ Եթէ կան մեր իրականութեան մէջ փայլուն բոպէներ, երբ մեր լրագիրը, մեր գիրքը մի թշուառ մուրացկան չէ, դռների տակ, փողոցների անկիւններում ուշադրութիւն և բարերարութիւն հայցող մուրացկան,—դրանք վերաբերվում են միայն Արծրունու գործունէութեան։ Նա էր, որ ստեղծեց մեր դժբախտ բարքերի մէջ անկախ, իսկապէս բարձրագլուխ, հպարտ, իր արժանապատուութիւնը ամեն ինչից բարձր դասող մամուլ...

Եւ այսպէս, «Մշակը» հէնց առաջին տարվանից սկսում է սերտ կապ հաստատել իր և հասարակութեան մէջ, սկսում է տիրապետել։ Մեռելութեան, անշարժութեան թըշնամի, նա անդադար նորութիւններ է մըտցնում իր մէջ, գրաւում է նոր ու թարմ ոյժեր։ «Մշակի» պատմութեան համար ամե-

նախորդ նորութիւնը, որ երևան է գալիս երկրորդ տարվայ ընթացքում, այն է, որ Գրիգոր Արծրունին սկսում է ֆելիէտօններ գրել։

Ֆելիէտօնը մեր հրապարակախօսութեան սկզբից եղել է այն գրական ձևը, որ սիրել են մեր գրողները և որ առանձնապէս սիրելի է դարձել հայ ընթերցողի համար։ Թեթև, վառվռուն ոճը, համեմած ծաղրի հետ—ահա այն միջոցը, որով աւելի հեշտ ու ազդու է եղել մեր բարքերի, մեր պակասութիւնների մերկացումը։ Ծանր, լուրջ հրապարակախօսութիւնը ամբողջապէս եւրօպական հողի պտուղ էր և մեզ համար խորթ մի բան էր, օտար երկրից բերած մի պատուաստ. մենք դեռ պիտի սովորէինք նրան։ Մինչդեռ ֆէլիէտօնական ձևը մեզ համար այնքան խորթ լինել չէր կարող. որ և է սրամիտ պատմութեան, առակի ձևով պակասութիւններ ծաղրելը մեզ էլ յայտնի էր հին ժամանակներից և մեր ժողովուրդը ամենամեծ հաճութեամբ է պատմում ծաղրածուների արարքները, կրկնում նրանց ասածները։ Ֆելիէտօնը, որի գլխաւոր տարրը նոյն ծաղրն է, ամենից մատչելի, ժողովրդական ձևն էր մեզանում և նա սկզբից ևեթ մեծ աջողութիւն ունեցաւ։ Միքայէլ Նալբանդեանցը ընթերցողնե-

րին գերում էր իր ֆելիէտոններով։ Նրանից յետոյ ֆելիէտոնական գրուածքներ երեւում էին «Կռունկի» և «Մեղուի» մէջ, բայց Թիֆլիսում ֆելիէտոնը դարձաւ գաւառաքանութիւն, նա գրվում էր միայն Թիֆլիսի բարբառով։ Ճիշտ է Թիֆլիսի բարբառը անհման ճկունութիւններ ունի խիստ ծաղր արտայայտելու համար, բայց կար այն պակասութիւնը, որ նա Թիֆլիսեցուն էր միայն ծանօթ և Թիֆլիսից դուրս մեծ աջողութիւն ունենալ չէր կարող։ Բացի դրանից, գրական իւրաքանչիւր ճիւղ, բայց մանաւանդ ֆելիէտոնը, պահանջում է առանձին, ինքնուրոյն տաղանդ։

«Մշակը», ինչպէս տեսանք, առաջին իսկ համարից մտցրեց գրական լեզուով գրված ֆելիէտոնը։ Ջաքուճը բաւական աչքի ընկնող ընդունակութիւն էր ցոյց տալիս այդ բաժնում. մանաւանդ բանակռիւների մէջ Թունալից ֆելիէտոնը արտայայտում էր իր ամբողջ ոչնչացնող ոյժը։ Վերանորոգված «Մեղուն» առաջին տարին չունէր ֆելիէտոն, նոյն իսկ պակասութիւն էր համարում ծաղրական ոճով գրելը։ Բայց Ջաքուճի սուր սլաքները հարկադրեցին որ նա էլ մտածէ այդ բաժնի մասին։ 1873 Թւականի «Մեղուի» առաջին համարը արդէն գծի տակ ունի ֆելիէտոն, ստորագրած Բաղքցի կեղծ անունով։

Քաղքցին խմբագիր Պետրոս Սիմէօնեանցն էր․ նա սկսեց յաճախ երեւան գալ և նրա սրախօսութիւնների ու ծաղրի առարկան, ի հարկէ, «Մշակն» էր։ Զաքուճը սկսել էր շատ ուշ-ուշ երեւալ «Մշակում»։ Ամերիկեանը շուտով հեռացաւ Թիֆլիսից և Թէպէտ ուղարկում էր իր ֆելիէտօնները հեռուից, բայց դրանք, ի հարկէ, այլես ռազմական նախկին նշանակութիւնն ունենալ չէին կարող։

Եւ ահա «Մշակի» 1873 Թւականի № 6-ի մէջ մի նոր ֆելիէտօնիստ է երեւան գալիս, որ այսպիսի վկայութիւն է տալիս իր մասին.

Սովորութիւն կայ, որ նոր ֆելիէտօնիստը պիտի անպատճառ իրան ն ե ր կ ա յ ա ց ն է պատուելի հասարակութեանը,—բայց ես աւելորդ եմ համարում այդ ամեն տեղ ընդունված քաղաքավարութիւնը, որովհետեւ կամենում եմ անյայտ մնալ մեր ընթերցող հայ-հասարակութեանը։

Այսքան իմացէք միայն, իմ սիրելի ընթերցող, որ ես Ասիացի եմ, Ասիայում ծնվել եմ եւ մեծացել, բարձր ուսում ստացած չեմ, ոչ Պետերբուրգի համալսարանից դիպլօմ եմ ընդունել, ոչ գերմանական մի համալսարանում փ ո ղ ո վ դիպլօմ եմ առել,—սարսափելի իրողութիւն, որ Թիֆլիսի «Մեղու Հայաստանի» լրագրի խօսքերին նայելով, ամեն օր կատարվում է կ ր թ վ ա ծ Գ ե ր մ ա ն ի ա յ ո ւ մ։

...Կրկնում եմ, որ ես մի հասարակ, անտաշ Ասիացի եմ, ու կարող եմ միայն այն բանի վրա

խօսել, որ իմ չորս կողմն եմ տեսնում, միեւնոյն ժամանակ անաղնիւ համարելով, առհասարակ խօսել այն բաների վրայ, որոնց մասին ոչինչ տեղեկութիւն չունեմ։

Այս համեստ յանձնարարականն էր ներկայացնում իր մասին Գրիգոր Արծրունին, Ասիացի անուան տակ թագնվելով իբրև նոր ֆելիէտօնիստ։ Բայց յանձնարարականները աւելորդ էլ էին։ Այստեղ գծի տակ էլ, ծաղրի բաժնում, Արծրունին չուտով ցոյց տուեց իր ամբողջ տաղանդը։ Լինելով խիստ խօսքի տէր, լուրջ, տաք ու կրքոտ բնաւորութիւն, հեռու պահելով իրան թղթախաղից, խմիչքից, զուարճութիւններից և քէֆերից, Արծրունին կեանքի մէջ մի մռայլ անկէտ չէր, մի ճգնաւոր չէր, այլ մի վերին աստիճանի ախորժելի խօսակից, որ կարողանում էր մեծ հետաքրքրութիւն մտցնել խօսակցութեան մէջ՝ համեմելով նրան սրախօսութիւններով, հանաքներով, զուարճալի անեկդօտներով։ Ֆելիէտօնիստի կայծը կար նրա բնաւորութեան մէջ և այդ բաժնում գրելը նրա համար նոյնքան ոգևորիչ էր, որքան լուրջ հրապարակախօսական բաժնի մէջ։ Նրան տուած էր ծաղրով ջարդելու, ոչնչացնելու երկնային չնորհքը։ Եւ անողորմ ծաղրը հնչում էր գծի տակից ամեն անգամ, երբ

բաւական նիւթ էր հաւաքվում Ասիացու ֆելիէտոնի համար։

Շատերն են գրել ֆելիէտոններ. Պետրոս Սիմէօնեանցը իր լրագրի էջերը լայն բաց արաւ ամեն մի գրութեան համար, որի ճակատին գրված էր «ֆելիէտոն»։ Հետևելով նրա և Գրիգոր Արծրունու օրինակին, մեր միւս խմբագիրներն էլ գրում էին ֆելիէտոններ։ Բայց Ասիացին մի հատ էր մեզանում. ռուսահայ գրողների մէջ նա ամենատաղանդաւոր երգիծաբանն էր։ Երգիծաբանութիւնը նա պահպանեց տպագրական խօսքի բարձրութեան վրա. ունենալով ծաղրելու, ծիծաղեցնելու շնորհք, նա երբէք, իր հակառակորդների նման, չը ստորացրեց իրան՝ դիմելով անմիտ ծամածութիւնների, էժանագին հանաքչիութեան։ Այստեղ էլ նա պահվում էր գրական վայելչութեան սահմաններում, գիտէր թէ ինչն է թոյլատրված և ինչն է արգելված գրական էթիկայի կանոններով։ Եւ թոյլատրվածի սահմաններում նա անողոք էր, խնայել չը գիտէր. առողջ, բարեկարգիչ ծաղրը, այն ծաղրը, որի միջով, ինչպէս ասում են, արտասուքներ են երեւում, պատկերացնում էր հասարակական ախտերը, հասարակական գործիչներին։ Հասարակական ասպարէզն էր ճանաչում Ասիա-

ցին. Նրանից դուրս, մասնաւոր, ընտանեկան հանգամանքները, հակառակորդի անհատական կեանքը գոյութիւն չունէին նրա համար։ Լուրջ, կրակոտ, յարձակողական, պատերազմող հրապարակախօսութեան մէջ անխոնջ Արծրունին անխոնջ էր ծաղրի բաժնում. Ասիացին ապրեց մինչև այն օրը, երբ Գրիգոր Արծրունու հետ մտաւ դագաղ։ Նա «Մշակի» ամենասարսափելի խայթն էր և գծի տակից միանում էր այն ուժեղ հարուածներին, որոնք ճայթում էին գծի վերևում, առաջնորդողների և այլ յօդուածների մէջ։ Ասիացու ֆելիէտօնները, որոնք մօտ քսան տարի զարդարում էին «Մշակի» էջերը, մեր հասարակական կեանքի հայելին են. իւրաքանչիւր փոքր ի շատէ աչքի ընկնող դէպք արձագանք է գտել այդտեղ, իւրաքանչիւր հասարակական հարց արձանագրվել է այնպէս, ինչպէս պարտաւոր է արձանագրել կոչման բարձրութեան վրա կանգնած, լուսամիտ գաղափարներով տոգորված ֆելիէտօնիստը։ Ասիացու ֆելիէտօնների ժողովածուն մի կալէյդօսկօպ է, որի մէջ մեր կեանքի իրողութիւնները իրար յաջորդում են իրանց բազմակողմանի պատկերներով ու դէմքերով...

Մենք դեռ առիթներ շատ կունենանք Ա-

սիացու մօտ գնալու։ Տեսնենք առայժմ թէ ինչ էր տալիս «Մշակի» հրապարակախօսութիւնը 1873 թուականին և յաջորդ երկու տարիները։

«Մշակի» առաջին տարվայ առաջնորդող յօդուածների ամենամեծ մասը ընդհանուր բնաւորութիւն է կրում, աւելի ծրագիր է, սկզբունքների և աշխարհայեցողութիւնների լայնածաւալ բացատրութիւններ։ Երկրորդ տարվանից հրապարակախօսութեան նիւթը զգալի կերպով տեղական, մասնաւոր, առօրեայ կերպարանք է ստանում։ Միմեանց ետևից յաճախ երևան են գալիս Թիֆլիսի քաղաքային հարցերը (ջրանցք, գազի լուսաւորութիւն, արհեստագիտական դպրոց), Թիֆլիսում նոր բացված առևտրական հիմնարկութիւնները (առևտրական բանկ, փոխադարձ վարկի ընկերութիւն) և այլն։ Բայց Թիֆլիսի գործերն ու շահերը, ի հարկէ, մոռացնել չեն տալիս ընդհանուր կուլտուրական և ազգային շահերը։

Մենք պէտք է այստեղ նկատենք, որ Թիֆլիսի տեղական հարցերը բացի նրանից, որ առհասարակ չօշափում էին բարեգործութեան և ինքնագործունէութեան շատ հետաքրքրական սկզբունքները, ունէին և այն կարևոր նշանակութիւնը, որ իրանց շուրջն էին

կենտրոնացնում զանազան լեզուներով հրատարակվող լրագիրների համերաշխ գործակցութիւնը։ «Մշակի» և Դրօշակի» զինակցութեան մասին մենք խօսեցինք։ Մնում է աւելացնել, որ 1873 թւականից աւելացաւ մի նոր զինակից էլ և դա „Тифлисскій Вѣстникъ“ լրագիրն էր։

Ռուսաց պարբերական մամուլի միակ ներկայացուցիչը Թիֆլիսում „Кавказъ“ պաշտօնական լրագիրն էր, որ իր ուղղութեամբ, իր կոչումով չէր կարող համապատասխանել մի հասարակական անկախ քննադատող օրգանի պահանջներին։ Պակասում էր մասնաւոր մի լրագիր, և այդ պակասը լրացրեց մի հայ, իշխան Կոստանդին Բէհբուտով, „Тифлисскій Вѣстникъ“-ի հիմնադիրը և խմբագիրը։ Առաջին տարին նա լոյս էր տեսնում շաբաթը երկու անգամ և դեռ բոլորովին կազմակերպված չէր իբրև հրապարակախօսական օրգան. ունէր աղքատ բովանդակութիւն, իր էջերը լցնում էր մեծ մասամբ դատաստանական գործերի մանրամասն հաշիւներով։ Սակայն նոր լրագրի մէջ գնահատելին այն էր, որ նա իր ուղղութեամբ մօտենում էր «Մշակին» ու «Դրօշակին» և սրանց հետ ձեռք ձեռքի տուած էր գնում։ Նրա մէջ արձագանք էին գտնում այն հարցերը, որոնք

յարուցվում և քննվում էին հայ և վրացական երկու լրագիրների մէջ և այդպիսով ռուս հասարակութիւնն էլ ծանօթանում էր տեղական լեզուներով հրատարակվող օրգանների հետ։ Այդպիսի մի խղճմտաւոր միջնորդ շատ հարկաւոր էր։ «Մշակը» շուտով էլի բանակուի բռնվեց „Кавказъ“ լրագրի հետ։ Առիթներից մէկը դարձեալ մայրենի լեզուի հարցն էր։ «Մշակ»-«Դրօշակ» ցանկալի էին համարում որ նոր բացված քաղաքային արհեստագիտական դպրոցում դասատուութիւնը լինէր տեղական լեզուներով, որպէս զի աշակերտները կարողանան իրանց ստացած գիտութիւնը տարածել ժողովրդի մէջ, իսկ „Кавказъ“-ը համարում էր այդ միտքը յանցանք պետական լեզուի դէմ։ Բանակուի միւս առիթը հայոց դպրոցների հարցն էր։ „Кавказъ“-ը ծուռ ու գռնաւորված տեղեկութիւններ էր տուել այդ դպրոցների մասին, «Մշակը» բողոքեց դրա դէմ։ Ահա այդ ընդհարումների միջոցին „Тифлисскій Вѣстникъ“-ը արձանագրում էր իր էջերի մէջ «Մշակի» և «Դրօշակի» գրուածքները։ Արծրունին յաճախ գրում էր և ռուս լրագրի մէջ։

Հայ-վրացական համերաշխութիւնը արտայայտվում էր համարեա ամեն մի քայլում։ Ջրանցքի և լուսաւորութեան հարցերում

«Մշակն» ու «Դրօշակն» ընդդիմադիր կու-սակցութիւն կազմեցին, սկսեցին միասին մերկացնել քաղաքային վարչութեան սխալ-ները։ Մի ոմն Բուկօ արտասահմանեան ինչ-որ ընկերութիւնների անունից բանակցու-թիւններ էր սկսել քաղաքի հետ՝ ջրանցքի շինութիւնը և փողոցների լուսաւորութիւնը վերցնելու համար։ «Մշակն» ու «Դրօշակն» սկսեցին մերկացնել Բուկօին և իրանց ա-սածները հաստատելու համար միասին հե-ռագրով դիմեցին Լօնդօն և պատասխան ստա-ցան թէ Բուկօի ցոյց տուած ընկերութիւն-ները գոյութիւն չունեն։ Տպաւորութիւնը ահագին էր, և թէև քաղաքային ինքնավա-րութեան մէջ գործող մի բարձրաստիճան մարդ ասել էր թէ-չը պէտք է ուշադրութիւն դարձնել «Մշակ»-«Դրօշակի» վրայ, որով-հետև դրանց խմբագրողները „мальчишка“ (երեխայ) են, բայց այդ համերաշխ արշաւան-քը կատարեալ յաղթանակ բերեց և քաղաքը չընկաւ Բուկօի սարքած թակարդի մէջ։

Երկու լրագիրները շարունակ իրար էին դիմում, իրարից քաղուածքներ էին անում, իրար օգնում էին՝ տնտեսական երևոյթները բարեխղճութեամբ և ազնւութեամբ լուծելու մէջ։ Թէ համերաշխութիւնը, փոխադարձ ան-կեղծ բարեացակամութիւնը ինչ գեղեցիկ հե-

*տեանքների էին հասցնում, այդ ցոյց է տալիս «Մշակի» և «Դրօշակի» վերաբերմունքը վաչխառութեան հարցին։ Մեր այժմեան օրերում, երբ ազգայնամոլութիւնը այնքան կուրացրել է վրացի գործիչների մի մասը, հայերի դէմ համարեա խաչակրաց արշաւանք է քարոզվում և այդ ատելութիւնը հայերի դէմ վրացի ազգայնամոլները հիմնում են այն իրողութեան վրա, որ Վրաստանում վաչխառու են մեծ մասամբ հայերը։ Մի քանի վաչխառուների պատճառով ատելութիւն քարոզել մի ամբողջ ազգի դէմ, համարել բոլոր հայերին հարստահարիչ, վաչխառու—այս է մեր օրերի վրացական հայրենասիրութեան ամենամեծ արտայայտութիւնը առաջաւոր դասակարգի մի յայտնի շրջանում։*

*Այսպէս չէր այն ժամանակ, երբ «Մշակն» ու «Դրօշակն» եղբայրացած էին։ Այն ժամանակ էլ, ի հարկէ, գոյութիւն ունէր, և անշուշտ անհամեմատ մեծ չափերով, տնտեսական այն սոսկալի դժբախտութիւնը, որ կոչվում է վաչխառութիւն։ «Դրօշակն» իր մի յօդուածի մէջ ասում էր որ իրողութիւն է թէ հայերն են գլխաւորապէս վաչխառութեամբ պարապում և այս հանգամանքը առիթ է տալիս անզարգացած վրացի ժողովրդին վաչխառու համարել բոլոր հայերին,*

*ուրեմն և ատել ամբողջ հայ ժողովուրդը։ Բայց դա մի սխալ հասկացողութիւն է. վաշխառութիւնը կապ չունի ազգայնութեան հետ, նա տնտեսական մի երևոյթ է և գոյութիւն ունի բոլոր ազգերի մէջ։ Վաշխառութեան դէմ պէտք է կռուել տնտեսական խելացի միջոցներով և այդ դժբախտութիւնից ազատվելը պիտի աչքի առաջ ունենայ ժողովուրդը և ոչ թէ ազգայնական հարց դարձնէ նրան։*

*Արծրունին, ծանօթացնելով ընթերցողներին իր դաշնակից լրագրի հայեացքների հետ, մի առաջնորդողի մէջ նոյնպէս պարզեց վաշխառութեան էութիւնը և հասկացրեց թէ որքան մեծ արատ է բերում վաշխառութիւնը հայ ազգի անուան։*

Մինչեւ որ մենք աշխատում ենք հասկացնել երկու հարեւան ազգութիւնների մէջ բարոյական կապերի, փոխադարձ օգնութեան, եղբայրասիրութեան, ընդհանուր շահերի օգուտը,—մեր հայրենակիցների մի խումբ (որք պատիւ չեն անում մեր ազգութեանը) իրանց հարստահարող վարմունքով ոչ թէ միայն հեռացնում են մեզանից վրաց գիւղական ազգաբնակութեան համակրութիւնը, բայց եւ իրանց վնասակար գործունէութեամբ հասնում են բոլորովին հակառակ հետեւանքին՝ նրանք թշնամացնում են կովկասեան վրաց ազգաբնակութիւնը դէպի հայոց տարրը, ատելի են անում հայոց անունը հարեւան եւ նոյն օգուտներ ունեցող ազգի մէջ...

*Ե՞րբ պիտի հասկանանք որ հայը ամեն տեղ, Թէ ընտանիքի, Թէ հասարակութեան մէջ ինքն իր ամենամեծ Թշնամի է, որ եԹէ նրան չեն սիրում, այդ այն պատճառով է, որ նա չէ իմանում իրան սիրելի անել... Հայը զարմանում է որ նրան չեն սիրում, —բայց չէ մտածում որ նա մինչեւ այժմ ոչինչ չէ արել, որ իրան սիրել տար* (№ 26, 1873)։

*Հայ-վրացական այս համերաշխութիւնը բաւական երկար տեւեց։ 1876 Թուին տօնվում էր «Դրօշակի» տասնամեակը։ Տօնին մասնակցում էին և հայ երիտասարդները։ Արծրունին ճաշի ժամանակ դիմեց «Դրօշակի» խմբագիր Մեսխիին մի փոքրիկ ճառով, որի մէջ ասում էր Թէ մինչդեռ Եւրօպայում լրագրութիւնը մի չահաւէտ գործ է, մեզանում նա զրկանքների և արգելքների հետ է կապված։*

*Այդ հանգամանքը—շարունակեց Արծրունին—լաւ յայտնի է եւ իմ քաբեկամ Ս. Մեսխիին, որ իր լրագրի աջողուԹեամբ պարտական է ոչ Թէ միայն իր խելքին եւ ընդունակուԹեանը, բայց եւ այն հանգամանքին, որ նա լաւ հասկացել է հասարակուԹեան բարոյական ցաւերը եւ տանջանքները, ինքն սովոբած լինելով զրկանքներին եւ տանջվելուն։ Զարմանալի է որ ունեւոր մարդիկներին երբէք վիճակված չէ առաջ տանել մտքի պրօպագանդայի գործը, բայց այդ վիճակված է միշտ աղքատ մարդիկներին։ Ես կը վերջացնեմ իմ խօսքերը մի ցանկուԹիւն յայտ-*

նելով, որ Թէեւ ձեզ կերեւայ գուցէ անտեղի, բայց որ ես համարում եմ ճշմարիտ եւ արդար՝ ես ցան-կանում եմ ձեզ, իմ բարեկամ, միշտ տանջվել, որ միշտ հասկանաք, ինքներդ զգաք հասարակութեան բարոյական ցաւերը եւ Նրա բարոյական տանջանք-ները։

Բայց այս գեղեցիկ համերաշխութիւնը ընդհատվեց, երբ «Դրօշակն» անցաւ ուրիշ մարդկանց ձեռք, որոնք սկսեցին ատելու-թիւն քարոզել հայերի դէմ։ Արծրունին ցա-ւելով էր արձանագրում այս հանգամանքը «Մշակի» մէջ։ Նա ինքը անփոփոխ մնաց իր համոզմունքի մէջ ազգերի փոխադարձ հա-մերաշխութեան և եղբայրակցութեան վերա-բերմամբ։ Այդ լայն, հանրամարդկային գա-ղափարը Արծրունուն միայն վրացիներին չը մօտեցրեց։ «Մշակի» խմբագիրը չէր կարող մոռանալ որ մեր երկրի ազգաբնակութեան մի ահագին մասն էլ Թուրքերն են կազմում։ Թուրքերի վերաբերմամբ էլ նա ունէր իր համակրութիւնները, բարի կամեցողութիւնը։

1873 թուականի սկզբում Արծրունին բար-ձրացրեց ժողովրդի համար գիւղատնտեսական լրագիր հրատարակելու հարցը։ Նա Կովկա-սեան Գիւղատնտեսութեան Ընկերութեան անդամ էր և առաջարկութիւն մտցրեց որ ընկերութիւնը ձեռնամուխ լինի մի այդպիսի

լրագրի հրատարակութեան։ Իր պատրաստած գրաւոր զեկուցման մէջ Արծրունին ասում էր որ գիւղատնտեսական լրագիրը, ժողովրդին բոլորովին մատչելի լինելու համար, պիտի խմբագրվի տեղական լեզուներով։ Այս լեզուներից նա առայժմ մատնացոյց էր անում երկուսը—հայերէնը և վրացերէնը։ Ցանկալի էր և թուրքերէն լեզուն մտցնել լրագրի մէջ, բայց, դժբախտաբար, այդ լեզուով հրատարակվող մասնաւոր պարբերական թերթեր չը կան և յայտնի չէ՝ ունի՞ թուրքերէնը այնքան հարստութիւն, որ հայերէնի կամ վրացերէնի նման կարողանայ մի գիտական-ժողովրդական լրագրի լեզու դառնալ։

Գիւղատնտեսական Ընկերութիւնը չը կարողացաւ իրագործել Արծրունու այս առաջարկութիւնը, միջոցների պակասութեան պատճառով, բայց ընդունելով տեղական լեզուների կարևորութիւնը՝ գիւղատնտեսական գիտելիքներ տարածելու մէջ, որոշեց հրատարակել գիւղատնտեսական թերթը միայն վրացերէն լեզուով։ Այն ժամանակ Արծրունին յայտնեց «Մշակի» մէջ, որ ինքը կաշխատէ լրացնել Գիւղատնտեսական Ընկերութեան թողած պակասը՝ տպագրելով իր լրագրի մէջ այնպիսի յօդուածներ, որոնք կը ծանօթացնեն հայ ընթերցողին գիւղատնտե-

ութեան զանազան ճիւղերի հետ։ Եւ իրաւ, «Մշակը» իր գոյութեան ընթացքում առանձին ուշադրութիւն էր դարձնում գիւղատնտեսութեան վրա. Նա տալիս էր բազմաթիւ գրուածքներ ոչ միայն գիւղատնտեսական ընդհանուր գիտելիքների մասին, այլ և մասնաւորապէս գիւղական տնտեսութեան զանազան ճիւղերի մասին։ Այսպէս, 1874 թւականին մենք տեսնում ենք մի շարք մասնագիտական յօդուածներ, որոնք, ըստ երեւոյթին, տեղ չը պիտի ունենային մի գրական-հասարակական լրագրի մէջ։ Հայերէն գիւղատնտեսական մի թերթի պարտաւորութիւնները «Մշակը» կատարում էր երկար տարիների ընթացքում և Արծրունին մինչև վերջը համարում էր այդ ճիւղը իր լրագրի կարևոր բաժիններից մէկը։

Իր զեկուցումը կարդալուց մի քանի ամիս յետոյ Արծրունին լսում է որ Բագւում մտադրութիւն կայ մի Թուրքերէն լրագիր հիմնելու։ Եւ ահա ինչ է գրում նա «Մշակի» մէջ.

Մենք լսում ենք որ Թուրք երիտասարդ Հասան-բէկ Մէլիքօվը, որ դիտաւորութիւն ունի հրատարակել մի Թուրքաց լրագիր Բագու քաղաքում, արդէն ներկայացրած է խնդիրքը։ Անհամբերութեամբ սպասում ենք նոր Թերթի առաջին համարը։ Կովկասեան ազգաբնակութեան մէջ Թուրքերը այն մասն էին

կազմում մինչեւ այժմ, որք միշտ յետ էին մնում ընդհանուր շարժումից, չէին մասնակցում մեր ձըգ-տումներին։ Յոյս ունենք որ մեր Թուրք եղբայրները հասկացած այժմ որքան վնասակար է երկրի բնա-կիչները լինելով, իրանց օտար համարել երկրի մէջ։ Յոյս ունենք որ հայոց եւ վրաց լրագիրները ոչ Թէ միայն խօսքով, բայց եւ գործով կօգնեն Նոր Թուրքաց Թերթին (№ 25, 1873)։

*Դա թուրքերէն առաջին լրագիրն էր, «Աքինչի» անունով։ Մինչև թոյլտուութիւն առնալը, թուրքերէն տառեր պատրաստելը անցաւ երկու տարի։ Եւ այդ ժամանակամի-ջոցում Արծրունին մի քանի անգամ առիթ ունեցաւ իր համակրանքներն ու բարի ցան-կութիւնները յայտնելու թուրքերէն լրագրի առիթով, այնպէս որ խմբագիր Հասան-բէկ Մէլիքօվը* 1875 *թւին «Մշակի» մէջ մի նա-մակ տպեց, որով իր շնորհակալութիւնն էր յայտնում Արծրունուն և ասում էր թէ «Ա-քինչին» եղբայրաբար ձեռք է մեկնում թէ «Մշակին» և թէ միւս լրագիրներին։ Ահա ինչ հրաշքներ էր սկսել ցոյց տալ մեր բազ-մացեղ և բազմալեզու երկրում հանրամարդ-կային եղբայրակցութեան գաղափարով տո-գորված խաղաղ քաղաքակրթական շարժումը։ Ո՜րքան գեղեցիկ տեսարան մի երկրի համար, ուր դարերով ազգերն ու լեզուները ապրել էին փոխադարձ կատաղի ատելութեան, ա-*

րիւնահեղ թշնամութիւնների մէջ։ Նրանց այժմ միացնում էր ընդհանուր շահը—առաջադիմութիւնը քաղաքակրթութեան շաւղի վրա։ Առայժմ այդ եղբայրական համերաշխութիւնը երեք ազգերի երիտասարդութեան բերանով էր քարոզվում և միայն լրագրութեան մէջ էր արձագանք գտնում։ Դա մի սերմ էր դեռ, բայց դրված ամենից վստահելի, ամենից պտղատու հողի մէջ։ Մնում էր ցանկալ որ ժիր, արթուն ու եռանդոտ մըշակներ չը պակասեն՝ այդ սերմը պահելու, խնամելու և աճեցնելու համար։ Դժբախտաբար, մեր երկիրը այդպիսի մշակներ շատ չունեցաւ։

Այդ սրտաշարժ համերաշխութիւնը չէ՞ր ցոյց տալիս արդեօք թէ որքան լաւ էր հասկացնել Գրիգոր Արծրունին առաջադիմութեան էութիւնը։ Պահանջելով անհատի ազատ զարգացում, համարելով ազգերը նոյնպիսի անհատներ մարդկութեան ընդհանուր ընտանիքի մէջ, պահանջելով որ այդ ազգ-անհատները չը զրկվեն առանձնապէս զարգանալու, իրանց առանձնայատկութիւններով ապրելու և առաջադիմելու իրաւունքից, նա տեսնում էր որ այդ գաղափարը արդէն իր պտուղներն էր ցոյց տալիս կեանքի մէջ. ազգերի ասպարէզից վերանում էին նախապա-

չարմունքները, ցեղային ատելությունները և դրանց տեղ հաստատվում էր փոխադարձ յարգանք, համերաշխություն։ Հասկանալի էր դառնում որ իւրաքանչիւր ազգի համար բաւական տեղ կայ մեր աշխարհում՝ աշխատելու, երջանիկ լինելու համար։

Անհատական զարգացման նոյն սկզբունքը ցոյց էր տալիս Արծրունուն և մեր մոռացված գաւառները։ Հասարակութեան հաւաքական մասնիկներ կազմող այդ գաւառները նոյնպէս պիտի ինքնուրոյնաբար զարգանային։ Եւ այդ ինքնուրոյնութիւնը Արծրունին պահանջում էր, ապացուցանելով որ գաւառներում էլ պիտի սկսվի և զարգանայ լրագրութիւնը։

Լուր կար, որ Բագւում հիմնվում է մի նոր հայերէն լրագիր, իսկ Վանում ուզում են վերանորոգել «Արծիւ Վասպուրականի» ամսագրի հրատարակութիւնը։ Այս առիթով Արծրունին այսպիսի խորհրդածութիւններ էր անում։ Հայ լրագրութիւնը սկսվեց հայկական հեռաւոր գաղթավայրերում. մի ժամանակ հնարաւոր և հասկանալի էր որ Վենետիկում կամ Մոսկվայում հրատարակվեն այն պարբերականները, որոնք պիտի առաջնորդէին հայ ժողովուրդը։ Այդքան հեռաւոր տեղերից հայ խմբագիրները չէին կարող ուսումնասիրել հայկական կեանքը, նրանք

միայն կարող էին քարոզել։ Այժմ հայ լրագիրները հրատարակվում են արդէն հայութեան շատ մօտիկ գաղթավայրերում—Թիֆլիսում և Կ. Պօլսում։ Բայց դա վերջնական նպատակ չէ. իր իսկական կոչումը հայ լրագրութիւնը կարող է կատարել ժողովրդի մէջ, բուն հայրենիքում։ Բայց դա առայժմ անկարելի է։ Մնում է որ մեր գաւառներում հիմնվեն տեղական լրագիրներ, որոնք նիւթ կը տան Թիֆլիսի և Կ. Պօլսի լրագիրներին։ Այդ տեղական թերթերը հում նիւթ մատակարարողներ կը լինեն. նրանք կը ներկայացնեն իրանց գաւառների հարցերն ու կարիքները, իսկ կենտրօնական քաղաքների լրագրութիւնը կը մշակէ այդ նիւթերը։

Պէտք է ասենք որ Արծրունին չէր էլ ընդունում թէ առհասարակ լրագիրը պիտի մշակէ նիւթերը, մանրամասն, խնամքով կատարված ուսումնասիրութիւններ տայ։ Այդ պաշտօնը արդէն պէտք է թողնել ամսագրին։ Ամսագրի վերաբերմամբ Արծրունին պահանջում էր որ նա չը լինի պատահական անկապ յօդուածների մի ժողովածու, այլ որոշ ուղղութեամբ ու ծրագրով հրատարակվող մի պարբերական օրգան, որ հաւաքում, դասաւորում է լրագիրների տուած նիւթերը, լուսաբանում է նրանց։ Հայերի մէջ իսկական

ամսագիր, այս բառի եւրօպական նշանակութեամբ, դեռ չէր եղել*)։

Հանդիսանալով մեր գործերի, գործիչների, հին ու նոր սերունդների, հիմնարկութիւնների քննադատ, նրանց պակասութիւնները խարազանող ու մերկացնող, Արծրունին, բնականաբար, չէր կարող աչքից գցել մեր ազգային հին և կարևոր հիմնարկութիւնը—եկեղեցին, և «Մշակի» երկրորդ տարվանից առանձին ուշադրութիւն է դարձնում եկեղեցու և եկեղեցականների վրա։ Ինքն ըստ ինքեան պարզ է, որ Արծրունու պէս մի մարդը չէր կարող գոհ մնալ մեր եկեղեցու ներկայ դրութիւնից։ Այդ բանը բաւական էր, որ նրա հակառակորդները աղմուկ բարձրացնէին թէ նա եկեղեցու թշնամին է, ուզում է քանդել-ոչնչացնել եկեղեցին, անհաւատութիւն տարածել և այլն։ Բայց այս աղմուկը մի նոր բան չէր մեզանում։ Տարիներ առաջ նոյն աղմուկը բարձրացրած էր Ստեփանոս Նազարեանցի դէմ այն պատճառով, որ նա կամենում էր տեսնել իր մայրենի ե-

---

*) Գրիգոր Արծրունու փայփայած մտքերից մէկն էր՝ հրատարակել «Մշակի» հետ և մի ամսագիր։ Այս ցանկութիւնը նա յաճախ յայտնում էր մանաւանդ իր կեանքի վերջին տարիներում։ Բայց նա չը կարողացաւ այդ դիտաւորութիւնը իրագործելու փորձեր էլ անել։

կեղեցին բարեկարգված, ժամանակի պահանջներին համապատասխանող, ուրեմն և մի ուժեղ հաստատութիւն։

Արծրունին, չը լինելով Նազարեանց կրօնական համոզմունքների կողմից, Նազարեանցի պէս մեծ կարևորութիւն էր տալիս հայոց եկեղեցուն, համոզված էր որ եկեղեցին մեզ պէս մի ազգի համար չէ կարող իր դերը վերջացրած համարվել։ Ամբողջ հարցը նրա մէջ էր թէ եկեղեցին ո՛րքան պատրաստված կը լինի իբրև դաստիարակող, հովվող հիմնարկութիւն, ո՛րքան կարող կը լինի հայ ժողովրդի հոգեկան պահանջներին բաւականութիւն տալու։ Նազարեանցի պէս Արծրունին էլ ոչինչ մխիթարական բան չէր տեսնում մեր եկեղեցու վարչական կազմակերպութեան մէջ և նա էլ պահանջում էր հիմնաւոր՝ վերանորոգումներ։ Բայց Նազարեանցը վերանորոգումների որոշ, մանրամասն ծրագիր չէր առաջարկում. նա միայն ցոյց էր տալիս անհրաժեշտութիւնը, ընդհանուր ըսկզբունքները, պախարակելով եկեղեցականների անչարժութիւնը, ծիսականութեան տիրապետութիւնը և ոգու բացակայութիւնը։ Այն ինչ Գրիգոր Արծրունին հէնց սկզբից որոշակի է դնում իր պահանջները, անուանապէս յիշատակում է թէ ինչեր պէտք է փոփոխել։

Կարևոր է որ մենք փոքր ինչ մանրամասն կերպով ծանօթանանք այս հարցի հետ, քանի որ Գրիգոր Արծրունու գործունէութեան մէջ շատ նշանաւոր տեղ է բռնում եկեղեցին, քանի որ այդ հաստատութեան շուրջն էր, որ նա մղել է իր ամենախիստ պատերազմները և վաստակել է թշնամիների բանակներ։

Իր այն յօդուածներում, որոնք տպվեցան «Հայկական Աշխարհի» մէջ և «Մշակի» առաջին տարվայ մէջ, Արծրունին շատ անգամ չեշտել է որ ժամանակակից քաղաքակրթութիւնը քրիստոնէութեան արգասիքն է, որ քրիստոնէական վարդապետութիւնը հիմնված է մարդկային այն ամենանուիրական, ամենաբարձր գաղափարների վրա, որոնք են ազատութիւն, հաւասարութիւն և եղբայրութիւն։ Բայց միևնոյն ժամանակ Արծրունին հասկացնել էր տալիս, որ ինքը քրիստոնէութիւնը չէ շփոթում աստուածաբանութեան հետ։ Այլ է քրիստոնէութիւնը, այլ է աստուածաբանութիւնը։ Եկեղեցին—սա համաշխարհային պատմութեան մէջ ապացուցված տարրական ճշմարտութիւն է—այն չէ, ինչ էր այն ժամանակ, երբ աստուածաբանութիւն չը կար, երբ առաջին դարերի քրիստոնեաները, պարզ ու համահաւասար մարդիկ, աշխատում էին իրագործել Աւետարա-

նի վարդապետութիւնները։ Եկեղեցին ընկա-
փառքի, իշխանութեան, տիրապետութեան
ետևից և հեռացաւ առաջին դարերի քրիս-
տոնէութիւնից. փառքի, զարդերի, տիրապե-
տութեան ներկայացուցիչ հոգևորականու-
թեան բոլոր ձգտումների և իղձալների խը-
տացումը պապականութիւնն է, որ 1870
թւականին սեփականացրեց իրան նոյն իսկ
մի այնպիսի յատկութիւն, որից զուրկ է
մարդը—անսխալականութիւնը։

Այստեղից արդէն պարզ է թէ ինչ վերա-
բերմունք պիտի ունենար Արծրունին դէպի
եկեղեցին։ Բայց մինչև 1873 թւականը նա
դուրս չէ գալիս այս ընդհանուր դատողու-
թիւնների շրջանից։ Մինչև 1873 թւականը
նա իր դէմ ունէր հին սերունդը, «սպառված
երիտասարդութիւնը», բայց եկեղեցականու-
թիւնը դեռ առիթ չունէր նրա հակառակորդը
լինելու։ Էջմիածնի «Արարատը» 1872 թւա-
կանին գտնում էր որ «Մշակի» «ցարդ հրա-
տարակեալ մի քանի թերթից պարունակու-
թիւնք կապացուցանեն որ օգտաւէտ և ար-
դիւնաւոր կարող է լինել Ազգիս համար»*)։
Բայց ահա «Մշակի» մէջ Արծրունին տպում
է «Հոգևորականութիւն և ժողովուրդ» առաջ-

*) 1872, № 1.

նորդողը (№ 9)։ Այդտեղ՝ նա նորից կրկնում է որ եկեղեցին շատ է հեռացել առաջին դարերի քրիստոնէութիւնից, որ անընական կուսակրօնութիւնը յետոյ է մտցրվել նրա մէջ։ Դիմելով յատկապէս հայոց եկեղեցուն, նա յայտնում էր որ այդ եկեղեցին էլ բացառութիւն չէ կազմում, որ նա շեղվել է իր նախնական դրութիւնից։

Միթէ նա (եկեղեցին) նոյն է որ Լուսաւորչի ժամանակն էր,—հարցնում է Արծրունին։— Միթէ մեր այժմեան հոգեւորականները նոյն խորին յարգանք եւ պատիւ ունեն ժողովրդի մէջ, ինչպէս հինգերորդ դարի հայ հոգեւորականները, որք առաջնորդում էին իրանց հզօր ձեռքով ժողովրդական շարժմանը Զրադաշտի հետեւողների դէմ... Միթէ նրանք ժողովրդական են, ինչպէս առաջ...

Բնութեանը համեմատ ընտանեկան կեանքից հեռու, ժողովրդական փողերը վատնող, խռովութիւն գցող, ինտրիգաներ վարող, փառքի պատուանշաններին հետեւող, անգործ, անշարժ, տգէտ, մոլեռանդ, ժամանակակից գիտութենից եւ ճշմարտութենից յետ մնացող, ժողովրդական կրթութիւնը խօսքով քարոզող, բայց գործով նրա զարգացմանը արգելող, ամեն նորութեան եւ լուսաւորութեան ընդդիմադրող մարդիկ... Սրանք են ժողովրդական հոգեւորականների մեծ մասը...

Եւ զարմանալի չէ, որ քանի գնում է, հայոց եկեղեցու ծոցից, Սուրբ Լուսաւորչի ջանքերով մաքուր հիմնած, բայց մեր աբեղաներով եւ քահանաներով սկզբնական մաքրութեամբ չը պահպանված

եկեղեցուց, անդադար անջատվում են եւ Թշնամա-նում են մեր եղբայրները՝ մին բողոքական է դառ-նում, միւսը կաթօլիկ։

*Սիմօնականութիւնը, սրբավաճառութիւ-նը, կաշառակերութիւնը այնքան զարգացած են, այնքան բացարձակ կերպով են գործա-դրվում, որ ժողովուրդը վաղուց հեռացած կը լինէր եկեղեցուց, եթէ այնքան պինդ կապ-ված չը լինէր նրա անցեալի հետ, եթէ նա պաշտելիս չը լինէր Լուսաւորչի հիմնած ե-կեղեցին։*

Աստուած տայ որ ժողովուրդը այնքան զարգա-նայ, որ հասկանալով ձեր անիրաւութիւնները ու հարստահարութիւնները, մեղադրի միայն ձեզ, պաշ-տօնեաներին, բայց ոչ Թէ իսկոյն անջատվի, գնայ բողոքական կամ կաթօլիկ դառնայ, վրէժխնդիր լինե-լով ձեր ճնշող վարմունքից… որ լուսաւորվելով, սո-վորի զանազանել *ս կ ի զ բ ը  գ ո ր ծ ա դ ր ու թ ի ւ-ն ի ց*, սովորի պաշտել մեր եկեղեցու մաքուր հիմքը հոգեւորականների անմաքուր վարմունքից…

Այն ժամանակ զգոյշ լինէք… դուք կը կորցնէք ձեր ժողովրդականութիւնը։

Եւ այն ժամանակ ժողովուրդը զարգանալով եւ ազգով հայ մնալով, չի ընդունի բողոքականութիւն, կաթօլիկութիւն, կամ այլ կրօնք,—ոչ, նա կը հան-դիսանայ *պ ա շ տ պ ա ն* Լուսաւորչի եկեղեցու *մ ա-ք ու ր  եւ  ս կ զ բ ն ա կ ա ն* գաղափարի, ընդդէմ նրա անարժան ժամանակակից պաշտօնեաների։

Սա առաջին հարուածն էր։ Ինչպէս միշտ, չը հասկացան թէ ինչ է այդ հարուածի միտքը. ինչպէս միշտ, հոգևորականութիւնը սկսեց բացատրել այս պարզ, հանրամատչելի պահանջները այն մտքով թէ Արծրունին անպատուում է մեր եկեղեցին, ուզում է ոչնչացնել նրա հեղինակութիւնը, անջատել ժողովուրդը իր հոգևոր հովիւներից։ «Մշակը» իր ուրիշ յօդուածներում էլ պարզ ձևակերպեց իր պահանջները։ Վերադառնանք, ասում էր նա, մեր եկեղեցու նախնական պարզ ձևին, վերակազմենք մեր եկեղեցին այնպէս, ինչպէս նա գոյութիւն ունէր քրիստոնէութեան առաջին դարերում. թող չը լինի կուսակրօն հոգևորականութիւն, թող եպիսկոպոսները, վարդապետները ամուսնացած մարդիկ լինեն, ինչպէս ամուսնացած էին Գրիգոր Լուսաւորիչը և նրա ժառանգները։ Գըլխաւոր ուշադրութիւնը դարձնելով քահանաների վրա, «Մշակը» պահանջում էր, ինչպէս տեսանք, որ քահանան լաւ պատրաստուած լինի ժողովուրդը առաջնորդելու, նրա ցաւերն ու կարիքները ամոքելու համար։ Աստուածաբան քահանաներ չեն մեզ հարկաւոր, այլ կրթուած, ժողովրդից իրանց գիտութեամբ բարձր կանգնած հովիւներ։ Հեռացնենք կըղերականութեան ոգին, թող մեր եկեղեցում

միայն մի բան լինի հիմք, խարիսխ—ժողովրդականութիւն։ Մենք ցաւում, արտասվում ենք որ օտար քարոզիչները, միսիօնարները գալիս են, հանում հայերն իր եկեղեցու ծոցից։ Բայց ցաւելով արտասվելով ինչ դուրս կը գայ։ Կազմակերպվենք և մենք. պրօպագանդային հակադրենք պրօպագանդա. օտար միսիօնարների դէմ հանենք մեր միսիօնարներին, որոնք քարոզեն, թոյլ չը տան կրօնափոխութիւն։

Ծանրակշիռ, կարևոր հարցեր էին սրանք, կարօտ ամենալուրջ ուշադրութեան։ Կարելի չէր պահանջել, որ եկեղեցականները և նրանց կուսակիցները անպատճառ համաձայն լինէին Արծրունու հետ այս հարցերի մէջ. բայց պահանջվում էր որ այդ առաջարկութիւնները գոնէ քննվէին լրջութեամբ, որ հակառակորդները իրանց ծրագիրները առաջարկէին՝ գոյութիւն ունեցող և ամենքի համար անուրանալի պակասութիւնները վերացնելու համար։ Այդ տեսակ վերաբերմունք տեղի չունեցաւ. դրա փոխարէն լսվեց էլի նոյն հին երգը. առաջ քաշվեց աստուածաբանութիւնը, բայց աւելի կարևոր համարվեց բարձրացնել վայնասուն եկեղեցին քանդողների, օտարութիւն մտցնողների դէմ։ «Արարատը» 1874-ին արդէն կիսատ-պռատ ակնարկներով խօսում

էր օտարներին վաճառված մարդկանց մասին, հասկացնում էր որ հարազատ հայը չէ կարող և չը պիտի խօսէ իր եկեղեցու պակասութիւնների մասին։

«Մեղուի» համար հօ երկնքից իջած մանանայ էր «Մշակի» բռնած այս ուղղութիւնը։ Այժմ հօ կարելի էր ապացուցանել որ վերանորոգութիւններ պահանջող «Մշակը» եկեղեցու, ուրեմն և ազգութեան հիմքերը փորող մի թշնամի է։ Եւ այդպէս անողը այն իսկ «Մեղուն» էր, որ խունկ էր ծխում Ստեփաննոս Նազարեանցի առջև, որ «Հիւսիսափայլի» ամենամօտիկ բարեկամն էր ձևանում։ Նրա համար ոչինչ նշանակութիւն չունէր որ «Մշակը» կրկնում էր «Հիւսիսափայլի» պահանջները. հարկաւոր էր հակառակութեան նիւթ, և «Մեղուն» ջուխտ ձեռքով գրկեց եկեղեցու բարեփոխութեան հարցը, որպէսզի ցոյց տայ թէ ինքն է հարազատ հայ, իսկ իր հակառակորդը օտարացած է, կօսմօպօլիտ է, ֆարմասօն է և այլն։ «Մեղուն» մտաւ այն դերի մէջ, որ ինքն էր իր ձեռքով դատապարտել վաթսունական թւականներին։ Մեր ներկայ գործի առաջին հատորում մենք ցոյց տուինք թէ ինչպէս լաւ էր «Մեղուն» նկարագրել այդ ժամանակ իր ապագայ կերպարանքը։

Չենք կարող այստեղ հետևել այն բանա-կռուին, որ ծագեց «Մշակի» յարուցած այս հարցերի առիթով։ Մենք դեռ առպագայում էլ շատ պիտի տեսնենք այսպիսի բանակռիւներ։ Արձանագրենք այստեղ այն փաստը, որ «Մը-շակի» երկրորդ տարեշրջանից մեր հոգևորա-կանութիւնն էլ կանգնած է նրա թշնամինե-րի շարքում և տեսնենք թէ սկզբունքի ուրիշ ինչ հարցեր էր դնում Արծրունին եկեղեցու վերաբերմամբ։

Հոգևորականների սովորութիւնն է ասել թէ իրանք են կազմում եկեղեցին, թէ իրանք են պահում-պահպանում եկեղեցին։ Դա մեծ սխալ է. եկեղեցին կազմում են ժողովուրդը և հոգևորականները։ Մի ժամանակ, օրինակ հինգերորդ դարում, հոգևորականներն էին առաջնորդում աշխարհականներին, որովհետև նրանք աշխարհականներից շատ էին զարգա-ցած։ Այժմ այդպէս չէ։ Այժմ գիտութիւնը, կրթութիւնը աշխարհականների ձեռքին է և հոգևորականութիւնը առանց աշխարհական-ների ոչինչ չէ կարող անել։ Եկեղեցու պաշ-տօնեաները չեն կարող մնալ առանց ուսման, առանց գիտութեան, իսկ այդ բանը նրանց կարող է տալ միայն աշխարհական դասը. հետևաբար, ինչպէս են կարող հոգևորական-ները եկեղեցու պաշտպան հանդիսանալ,

*միայն իրանց սեփականացնել եկեղեցին պաշտպանելու իրաւունքը՝ առանց աշխարհականների օգնութեան։ Հարկաւոր է, ուրեմն, սերտ կապակցութիւն այդ երկու տարրերի մէջ, հարկաւոր է հասկանալ որ հոգեւորականը առանց աշխարհականի ոչինչ է։*

*Կան բթամիտներ, որոնք մեղադրում են թէ «Մշակը» հոգեւորականութեան թշնամի է,—ասում է Արծրունին և շարունակում է.*

Այո, մենք թշնամի ենք տգիտութեան,—ուրեմն եւ հոգեւորականութեան տղէտ ներկայացուցիչների։

Մենք թշնամի ենք հարստահարութեան,—ուրեմն եւ այն հոգեւորականների, որոնց մէջ նշմարում ենք այդ հակաընկերական եւ հակաքրիստոնէական յատկութիւնը...

Բայց կարող ենք մենք արդեօք թշնամի լինել նոցա, որք իրանց պաշտօնը կատարում են ճշտութեամբ, որք հասկացել են իրանց կոչումը, որք արժանի են այդ կոչման։

Ի հարկէ ոչ։

Այժմ հարցնում էք՝ ինչ ենք պահանջում հոգեւորականութիւնից։

Նախ պահանջում ենք որ նա թէ մտաւորապէս, թէ բարոյապէս բարձր լինէր մնացած հասարակութիւնից, եթէ ոչ՝ նրա գոյութիւնը հասարակութեան մէջ ոչինչ նշանակութիւն չունի, նա բոլորովին անօգուտ է։ Եթէ ես ոչխար եմ, իսկ դուք իմ հովիւ,—պէտք է այնքան բարձր լինէք ինձանից՝ թէ ձեր

քարոյականութեամբ, թէ ձեր ուսումով, որ ես կամայ ակամայ ենթարկվեմ, խոնարհվեմ ձեր առջեւ։ Ես ժողովրդի մարդ լինելով, պէտք է ձեր քարոյականութիւնից օրինակ առնեմ, ձեր քարոզներից մըտաւորապէս շահվեմ։ Եթէ ոչ, ինչ կը դուրս գայ...

Դուրս կը գայ, որ վ ա ր ժ ա պ ե տ ը աւելի տըգէտ է քան թէ ա շ ա կ ե ր տ ը... ի հարկէ աշակերտըն էլ նորանից ոչինչ սովորել չէ կարող։

*Զարմանալին այն է, որ այդքան պարզ, այդքան՝ հասկանալի, տարրական պահանջը վիճելի էր համարվում և այժմ էլ համարվում է, երբ խօսքը մեր հոգևորականութեան է գալիս։ Արծրունին իբրև մի նմուշ վերցնում էր Էջմիածնի «Արարատը»։*

Ով չէ հաւատում մեզ որ մեր հոգեւորականութիւնը հ ա յ ե ր է ն, այսինքն կենդանի, կանոնաւոր ա շ խ ա ր հ ա բ ա ր չը գիտէ, որի միջոցով միայն կարելի է այժմ խօսել եւ հասկացնել իր մտքերը թէ լրագրի, թէ ուսումնարանի, թէ քարոզի մէջ,—թող վեր առնի «Արարատ» ամսագրի, մեր հոգեւորականութեան այդ օ ր գ ա ն ի մի համար,—եւ կը տեսնէ թէ ինչ խայտառակ լեզուով է գրվում այդ ամսագիրը՝ ոչ գրաբառ ոչ աշխարհաբառ, ամեն տեղ ոչ թէ միայն հայոց լեզուի ոգու, բայց եւ ընդհանուր մարդկային առողջ դատողութեան դէմ լեզուի լօգիկական սխալներ։

Իսկ հիմնութիւնները թէ աստուածաբանական, թէ բնագիտական, թէ աշխարհագրական, թէ պատմական,—Աստուած ազատէ։

Եւ սրանք պէտք է մեզ բան սովորեցնեն։

Հարցը այնքան պարզ է, որ ամեն մեկը միայն բացատական պատասխան կարող էր տալ։ Բայց հոգևորականները ու նրանց հուսակիցները երկար ու բարակ մտածելիք չունէին. կար պատրաստ պատասխանը, և դա այն էր որ «Մշակը» եկեղեցու երդուեալ թշնամին է։ Եւ երբ այդպէս էր այս պարզ ու անպաճոյճ հարցի մէջ, հասկանալի է թէ ինչ կը լինէր այն դէպքերում, երբ «Մշակը» ցընցող, արմատական պահանջներ էր դնում։ Այդպիսի պահանջներից մինչև ժամասացութեան լեզուի հարցը։ Արծրունին ասում էր որ ժողովուրդը եկեղեցում ոչինչ չէ հասկանում, որովհետև ժամասացութեան գրաբար լեզուն նրան միանգամայն անմատչելի է։ Նա պահանջում էր որ եկեղեցական գրքերը աշխարհաբարի թարգմանուեն. Եւ ամենից առաջ թարգմանել հարկաւոր էր ս. Գիրքը։ Այս պահանջը շատ վաղուց, դեռ 1850-ական թուականների սկզբում դրել էր Ստեփանոս Նազարեանցը։ Բայց այժմ էլ, 20—25 տարուց յետոյ էլ, այդ պահանջը անհասկանալի, անգործադրելի էր համարւում հոգևորականների կողմից և Գրիգոր Արծրունին ստիպուած էր յօդուածների մի շարք նուիրել այդ հարցին, նոյն իսկ թարգմանել կտորներ ս.

Գրքերը՝ տպագրութեան համար թէ թարգմանել կարելի է և հեշտ է։

Խօսելով կրօնի և եկեղեցու մասին, Արծրունին չէր կարող առանց ուշադրութեան թողնել և մի մեծ հարց, որ գոյութիւն ունէր մեզանում վաղուց։ Դա կրօնի և ազգութեան հարցն էր։ Մեզանում, ինչպէս յայտնի է, կարծիք էր ազգութեան նշանաբան միայնը, նա դիտւում էր կրօնի կամ եկեղեցու համակարգութիւնը։ Հայը նա էր, ով պատկանում էր լուսաւորչական եկեղեցուն. հեռանալ այդ եկեղեցուց, նշանակում էր հեռանալ հայութիւնից։

Գրիգոր Արծրունուց առաջ շատերն էին աշխատել ցոյց տալու, որ կրօն և ազգութիւն տարբեր բաներ են։ Ստեփանոս Նազարեանցի կենսագրութեան մէջ մենք գրեցինք այդ նոր շարժման պատմութիւնը։ Շարժումը սկսուեց Կ. Պօլսում, իսկ ռուսահայերի մէջ Նազարեանցը առաջինն էր, որ սկսեց քարոզել թէ լուսաւորչական եկեղեցուց դուրս էլ հայը շարունակում է հայ մնալ։ Արծրունին նոյն այդ հարցին դիպեց «Մշակի» հրատարակութեան երկրորդ տարին (№ 24)։ Նա էլ, ի հարկէ, կրկնեց այն, ինչ ասել էին մեր լաւագոյն գործիչները։ Բայց այստեղ մենք կը բաւականանք լոկ այս իրողութիւնը յիշատակելով։

Մենք շուտով կը տեսնենք որ Արծրունուն վիճակված էր այս հարցի առիթով մի երկարատև, ահագին կռիւ սկսել։ 1873-ի այս առաջնորդողը այդ մեծ պայքարի առաջաբանն էր։

Այո՛, այսպիսի հարցերը մեզանում մեղք, սրբապղծութիւն էին հրատարակվում։ Անմիտ հակառակութիւնը ուրանում էր ամեն մի, նոյն իսկ համատարած ճշմարտութիւն։ Եւ Գրիգոր Արծրունին իր տեսութիւններից մէկի մէջ (№ 1, 1875) ասում էր․

Մենք սկսեցինք հրատարակել մեր թերթը, սկսեցինք ամենքին *մեր կարծիքը ուղիղ երեսին ասել*... հին ու նոր սերունդ, հոգեւորականներ, կանայք, մանկավարժներ, գիւղացիներ,—ամենքը, որք անցան մեր գրչի տակով, միթէ սպասում էին որ մենք լրագիր ենք սկսում հրատարակել այն նպատակով, որ *շողոքորթենք*...

Մեր այդ բոլոր հասարակական տարրերից երեք ամենաուժեղ, ամենանշանաւոր տարրեր մեզ ատելով ատեցին, դարձան մեր անհաշտ թշնամիներ...

Հին սերունդ՝ *բարոյականութեան ներկայացուցիչ*։

Նոր սերունդ, ուսումնական երիտասարդութիւն՝ գիտութեան ներկայացուցիչ։

Հոգեւորականներ՝ *կրօնքի* ներկայացուցիչներ։

Այդ երեք, մեր հասարակութեան մէջ ամենանշանաւոր, ամենամեծ հեղինակութիւն ունեցող գործիչները ինչպէս վարվեցին մեզ հետ...

Առաջինը սկսեց բերանացի անէծքներ Թափել մեր գլխին։

Երկրորդը, որ առաջ երբէք չէր մտածում կարդալու, գրելու եւ մտաւորապէս պարապելու, կազմեց մեզ դէմ մի հակալրագիր, մեր ամեն շարժումնք, ամեն մէկ խօսք լրտեսելու եւ աղաւաղած կերպով ներկայացնելու համար։

Երրորդները փորձեցին հանդէս դուրս գալ, ինչպէս նրանց սովորութեանը վայել է, մասամբ գրականութեան մէջ, մասամբ զանազան այլ գաղտնի միջոցներով...

Արդեօք վախեցանք, արդեօք կատաղեցինք, արդեօք վրդովվեցանք...

Չը գիտենք,—բայց գիտենք Թէ սաստիկ ատեցինք երեքդ էլ...

Այդ գիտենք, տեսնում ենք եւ զգում...

Ի՞նչ էր պատճառը։

Արդեօք ձեզ կատաղեցրեց մտքերի նորութիւնը, խօսքերի ճշմարտութիւնը, կամ գաղափարների ազատութիւնը...

Երեք պատճառներն էլ, ի հարկէ, կային։ Այնքան առատ ու անողորմ էին այդ պատճառները որ երեք տարվայ ընԹացքում Արծրունին արդէն տեսնում էր և զգում սաստիկ ատելուԹիւն իր դէմ։ Դէմ էր հայոց ամբողջ մամուլը, դէմ էր ինտելիգենցիայի մեծ մասը։ «Մշակը» մենակ էր, հայերի մէջ զինակից չունէր։ Այդ մենակուԹիւնը հարկադրում էր Արծրունուն յուսահատական

մաքեր յայտնելու Այսպէս, նա ասում էր թէ հայ երիտասարդները սխալվեցան որ գնացին Եւրոպա գիտութիւն սովորելու։ Նրանք պէտք է նախ գնային արհեստներ սովորելու, որպէսզի վերադառնալով Եւրոպայից, սկսէին կամաց-կամաց պատրաստել հասարակութիւնը։ Ուզում առած, գիտնական երիտասարդներ չէին հարկաւոր մեզ, այլ նախ և առաջ՝ կօշկակարներ և այլ արհեստաւորներ։ Մենք ոչինչ չը կարողացանք սովորեցնել, բացականչում էր Արծրունին. մեր գրուածքները ոչինչ չը փոփոխեցին մեր կեանքի մէջ. այսպիսի հասարակութեան վրայ մենք յոյս չունենք։

Բայց այդ խօսքերը մենակ մարտնչողի մաղձոտ տրամադրութիւններ էին միայն ցոյց տալիս. Արծրունին չէր վախենում իր մենակութիւնից, նա յայտնում էր որ մինչև վերջին շունչը պիտի հրատարակէ իր լրագիրը, պիտի գրէ անդադար։ Եթէ ժամանակակից հասարակութիւնը ոչինչ յոյս չէ ներշնչում, նա իր յոյսը դրել է ապագայ սերունդի վրա։

Մենք, սակայն, պէտք է ասենք որ հասարակութիւնը լսում էր նրան, ուշադրութեամբ էր լսում։ «Մշակը» կարդացվում էր. նա հարկաւոր էր ամենքին, հարկաւոր էր մանաւանդ նրա թշնամիներին։ Չէ որ կովկա-

տեան հայոց մամուլի մէջ յառաջացած նորա-նով և նորա համար էր արդարև մի հ ա կ ա-լ ր ա գ ի ր։ Այդ անունը Արծրունին տալիս էր «Մեղուին»։ 1872 թուականին, երբ հա-կառակութիւնից ծնուեց այդ լրագիրը, մենք տեսանք մի թունոտ բանակռիւ։ Երկրորդ տար-ւայ առաջին կէսում Արծրունին շատ քիչ էր ուշադրութիւն դարձնում հակառակորդի վրա, որի պաշտօնն էր «լրտեսել» իր իւրաքանչիւր շարժուածքը, իւրաքանչիւր քայլը և ներ-կայացնել աղաւաղած կերպով։ Ընդհարում-ները մի-մի առիթ էին ունենում ֆելիէտօննե-րի և զաւեշտական թղթակցութիւնների մէջ։ Բայց առանձնապէս չէր բորբոքւում բանակռիւը։ Եւ պատճառը Ներսիսեան դպրոցն էր. այդ-տեղ Արծրունին հոգաբարձու էր, իսկ Գէո-րգ Սիմէօնեանցը՝ տեսչի պաշտօնակատար։

Ներսիսեան դպրոցի այն հոգաբարձու-թիւնը, որ ընտրուեց 1872 թ. և որի մէջ էր և Գրիգոր Արծրունին, իր պաշտօնավարու-թեան սկզբից նախ անհատական հարցերին նուիրեց իր ուշադրութիւնը։ Ուսումնական մասը բարեկարգելու համար հոգաբարձու-թիւնը իր միջից հինգ հոգուց բաղկացած մի մասնաժողով ընտրեց, որի առաջին գործը ե-ղաւ պատրաստական դասարան բաց անելը։ Այդ դասարանի համար զանազան ծրագիր-

ներ առաջարկվեցան, բայց լաւագոյն ճանաչվեց «Մշակի» աշխատակից Վ. Շահվերդեանի առաջարկածը. ինքը Շահվերդեանն էլ ուսուցիչ հրաւիրվեց. Նրա «Նկատողական Ուսումն» գիրքը հրատարակվեց դպրոցի ծախսով։ «Մշակը» ուրախութեամբ էր արձանագրում այդ իրողութիւնները։

Հոգաբարձական մասնաժողովը, պատրաստականի հարցը լուծելուց յետոյ, պիտի անցնէր բարձր դասարանների հարցին. բայց յայտնեց, որ չէ կարողանում շարունակել իր պարապմունքները, քանի որ դպրոցը չունի տեսուչ, որ տայ մասնաժողովին հարկաւոր նիւթերն ու տեղեկութիւնները։ Տեսչի պաշտօնակատարին մասնաժողովը անտես էր անում. միայն այսքանը բաւական էր որ Պետրոս Սիմէօնեանցը հասկանար հոգաբարձութեան տրամադրութիւնը։ Տեսչական հարցը դրված էր հոգաբարձական սեղանի վրա. բայց նա դեռ չէր լուծվում։ Սկսվեցին դպրոցի տարեկան քննութիւնները. «Մշակը» մի քանի անգամ շեշտեց թէ որքան անբաւարար է ուսումնական մասը, կրօնի փոխարէն աւանդվում էր միջնադարեան սխօլաստիկա, մինչ առարկաների քննութեան մէջ աւելի ուսուցիչների գիտնականութիւնն էր երեւում, քան աշակերտների պատրաստութիւնը։

«Մեղուն» չէր կարող լուռ մնալ. Նա դարձեալ սկսեց իր աշաւանքը կօսմօպօլիտների դէմ, իր ամբողջ ոյժով ընկաւ «Մշակի» վրա։ Բանակռիւը բորբոքվեց դեռ ամառվանից, երբ հոգաբարձութիւնը դեռ որոշ դիրք չէր բռնել տեսչական հարցի մէջ։ Յայտնի էր որ հոգաբարձութեան անդամների մեծամասնութիւնը «Մշակի» մարդիկ են, ուստի պէտք էր ցոյց տալ որ այդ կօսմօպօլիտները չեն կարող մի ազգային դպրոց կառավարել, որ նրանք ճշմարիտ հայեր չեն և այլն։ Արծրունին էլ սկսեց մերկացնել «Մեղուի» դաւանանքներին հետևող մարդկանց։ Նա անխնայ քննադատում էր նրանց աշխարհայեցողութիւնները, անընդունակութիւնը։

Սովորել են բառեր գործածել, բայց իրանք էլ չեն հասկանում իրանց գործածած բառերի միտքը։ Կօսմօպօլիտ... Բայց ի՞նչ է կօսմօպօլիտը. մի՞թէ նա իրաւ այնքան սարսափելի բան է։ Կօսմօպօլիտը ի նկատի ունի ամբողջ մարդկութեան բարիքը, բայց նա չէ կարող ծառայել ամբողջ մարդկութեանը, ուստի ծառայում է այն ազգին, որին ինքն է պատկանում, համոզված լինելով որ դրանով նա ծառայում է մարդկութեանը։ Ի՞նչպէս է կօսմօպօլիտը կատարում իր ծառայութիւնը։ Նա գիտէ որ ազգերը չեն կարող զարգա-

նալ, եթէ կղզիանան իրանց մէջ, եթէ չը հասկանան փոխատուութեան օրէնքը։ Չէ կարող լինել մի ազգ, որ իր մէջ ունենայ բոլոր մտաւոր պաշարները. իւրաքանչիւր ազգ մարդկութեան գանձարանի մէջ մտցնում է իր մի հարստութիւնը, այդ գանձարանից էլ ազգերը փոխ են առնում այն ամենը, ինչ հարկաւոր է իրանց երջանկութեան համար։ Քրիստոնէութիւնը աշխարհը փոխ առաւ մի փոքրիկ Հրէաստանից։ Մի ժամանակ Յունաստանն էր լուսաւորութեան հայրենիքը և այնտեղ էին դիմում հինգերորդ դարի հայերը, որպէս զի սովորեն, վերադառնան իրանց հայրենիքը և սովորածը տարածեն հայ ժողովրդի մէջ։ Միթէ նրանք էլ այն կոսմօպօլիտներից էին, որոնցից այնքան վախենում է «Մեղուն»։

Իսկ եթէ կան կոսմօպօլիտներ, որոնք ամենեւին չեն ճանաչում իրանց ազգը, չեն աշխատում նրա համար, այդ միայն ցոյց է տալիս որ նրանք անբարեխիղճ մարդիկ են։ Եւ այդ երեւոյթը կարելի է նկատել ոչ միայն կոսմօպօլիտների մէջ։ Միթէ բոլոր վարժապետները լաւ են. միթէ միապետական կոչվողները մի գլուխ բռնաւորներ են, կամ ազատամիտ կուսակցութեան պատկանողները մաքուր, ազնիւ մարդիկ են։

Դուք հարկաւոր էք համարում ամենայն հայի վրա կոչմերը, հայի պարտաւորութիւնները միայն նրա համար, որ նրանք հ ա յ ի պարտաւորութիւններն են,— եւ աղաղակ էք բարձրացնում, կոսմոպոլիտ էք կանչում նրանց, որք իրանց կարողութեան չափ օտարների նոր գաղափարները աշխատում են հ ա յ ա ց ն ե լ...

Ցիշեցէք մեր խօսքերը՝ մի տաս տարի չի անցկենայ, եւ մ ե ղ ո ւ ա կ ա ն խօսքը կը դառնայ մի ածական, որ կը նշանակէ խ ա ւ ա ր ա ս է ր եւ յ ե տ ա դ է մ։

Այդ մարգարէութիւնը Արծրունին դուրս էր բերում այն տեսած փաստերից, որ տալիս էին մեղուականները։ Ո՞րտեղից եկան դրանք և ինչ բերին իրանց հետ։ Մի քանի տարի առաջ, ասում է Արծրունին, հայ ժողովուրդը քնած էր, անշարժ, նա մոռանում էր իր մայրենի լեզուն, պահանջ չէր զգում կատարելագործվելու իբրև ազգ, հասկանալու իր չարն ու բարին։ Այդ դրութիւնից սթափեցնելու համար գուցէ հարկաւոր էր մի ծայրայեղ ուղղութիւն, հարկաւոր էր գուցէ ոչ միայն ազգասիրութիւն, այլ և ազգամոլութեան գաղափարը տարածել։ Այդպէս էլ արին այն մարդիկ, որոնք վերադարձան համալսարաններից։ Ժողովրդին զարթեցնելու համար նրանք հայութիւնից դուրս ոչինչ չէին տեսնում և ուղղակի քարոզում էին.

«լաւ է հայ լինել և անկիրթ, քան թէ լուսաւորված մարդ և հայութիւնը կորցրած լինել»։ Այդ գաղափարը գուցէ և հարկաւոր էր մի ժամանակ, բայց դա մի ուղղութիւն է, որ Արծրունին կնքում էր «տիրացուական» անունով։ Տիրացուների կրթութեան դարը անցաւ, ասում էր նա։ Դուք այլ ևս չէք կարող ազդել հասարակութեան վրա, դուք այլ ևս չը պիտի կրթէք նոր սերունդը ուսումնարանների մէջ։

Ազգամոլութեան արատներից մէկն էլ այն էր, որ կազմում էր «Մեղուի» ուղղութեան գլխաւոր յատկութիւնը։ Մի համեմատութիւն դնելով «Մեղուի» և «Արարատի» մէջ, Արծրունին ասում էր որ վերջինը, որքան էլ դատարկ լինի, որքան էլ արժանաւորութիւններից զուրկ լինի, ունի այն առաւելութիւնը, որ մի յայտնի գոյնի, մի որոշ ուղղութեան է պատկանում։ Կարելի է նրան չը համակրել, բայց չէ կարելի արհամարհել նրան, զզուել նրանից։ Մինչդեռ «Մեղուն» ամեն երևոյթի, ամեն հարցի վերաբերմամբ երկու տարբեր չափ ունի։ Օտար երկիրներում տեղի ունեցող երևոյթների համար ուրիշ չափ կայ նրա ձեռքին, մեր կեանքի համանման երևոյթների համար՝ ուրիշ։ Այն, ինչ վատ է, ատելի է, յետադիմական ու խաւար է ուրիշ եր-

*կիրներում, շատ հաճելի է դառնում, երբ մեզանում է տեղի ունենում։ Մի խօսքով՝ նա ազատամիտ է, երբ հարցը ուրիշ երկիրներին է վերաբերվում և պահպանողական ու յետադէմ, երբ պէտք է մեր մասին խօսել։ Սա ոչ միայն «Մեղուի», այլ և առհասարակ մեր պահպանողական ամբողջ մամուլի մի հարազատ պատկերն է։*

*Դուք—ասում էր Արծրունին—սպանեցիք հայ լրագրութիւնը ձեր անընդունակութեամբ։ Դուք այն դրութեան հասցրիք տպագրական խօսքի վիճակը, որ ոչ ոք նրան չէր հաւատում, ոչ ոք չէր ուզում նայել նրան։ Ձեր լրագրութիւնը այժմ էլ արժանի չէ իր կոչմանը. փոխանակ ամբոխի մտաւոր մակերևոյթից ձեզ բարձր պահելու, դուք շողոքորթում էք նրա բոլոր վատ կրքերին, որ բաժանորդ շատ ունենաք։ Եւ երբ այդպէս է, «մենք չենք վախենայ ասել, որ այդ տեսակ լրագրի գոյութիւնը մենք վնասակար ենք ճանաչում, և մեզ պարտաւորութիւն պիտի համարենք մեր բոլոր ջանքը գործ դնել՝ նրան ոչնչացնելու համար»։*

*Յիշենք այստեղ թէ ինչպէս էր Գրիգոր Արծրունին իր ուսանողութեան ժամանակ վերաբերվում համոզմունքով և ուղղութեամբ տարբերվող մամուլին։ Այն ժամանակ նա*

տեսում էր թէ տարբեր ուղղութիւնները ան-
հրաժեշտ են, թէ հակառակ ուղղութիւն ու-
նենալը չէ նշանակում թշնամութիւն։ Այժմ
իջնելով կռուի դաշտը, տեսնելով թէ ինչ զէն-
քերով են գործում իր հակառակորդները, նա
թողնում է քնքշութիւնը դէպի այդ հակա-
ռակորդները և խորացնում է այն համոզմուն-
քը թէ վատ, իր սրբազան կոչման դաւաճա-
նող մամուլը մի չարիք է, որը պէտք է
ոչնչացնել և այնուհետև, մինչև իր կեանքի
վերջը, նա նոյն այդ համոզմունքն էր պաշտ-
պանում։ Անշուշտ, նա այժմէս տեսում էր ոչ
թէ այն պատճառով որ կայ հակառակ մա-
մուլ. ոչ, հակառակ մամուլի գոյութեան ան-
հրաժեշտութիւնը նա ընդունում էր միշտ։
Բայց ոչնչացնելու արժանի էր համարում
տպագրական անազնիւ խօսքը, այն մամուլը,
որ չէր կարողանում իր կոչման բարձրու-
թեան վրա մնալ։

Բերենք մի օրինակ։ «Էջք իրանց էշն են
քշում» առաջնորդողի մէջ (1873. № 41) Արծ-
րունին նորից վերադառնում էր այն հարցին
թէ ինչ է կոսմոպօլիտը։ Նա գրում է այդ-
տեղ մի այսպիսի նախադասութիւն. «Հազար
անգամ ենք մեկնել որ կոսմոպօլիտը ընդհա-
նուր մարդկութեան երջանկութիւնը աչքի
առաջին ունենալով, աշխատում է և այն ազգու-

թիւնը, որին պատահմամբ ինքն էլ պատկանում է, օգտաւէտ կացուցանել մարդկութեան համար»։ Անոր այդ «պատահմամբ պատկանում է» բառերը առիթ են տալիս «Մեղուին» ակնարկելու, թէ Արծրունին իր հայութիւնը պատահական բան է համարում։ Ընթերցողը տեսնում է որ այդտեղ Արծրունին իր մասին չէ խօսում, այլ միայն բացատրում է թէ ինչ է կոսմոպոլիտութիւնը։ Բայց «Մեղուի» համար այդ «պատահմամբ» բառը փրկութեան խարիսխ է դառնում և տարիների ընթացքում չէր դադարում կրկնելու թէ Արծրունին իսկական հայ չէ, այլ միայն պատահական։ Նա գրում էր թէ «Մշակն» ասում է, որ «չափաւոր կոսմոպոլիտական գաղափարներից ծառայում է հայ ազգին հասարակութեանց (ազգին), որին պատահմամբ ինքը պատկանում է»։ Կամ թէ՝ «կոսմոպոլիտական գաղափարներից զրկած ծառայում է ազգին, որին կարծես ցաւում է որ պատկանում է պատահմամբ»։ Ի՞նչ ազնիւ բացատրութիւն. Արծրունին նոյն իսկ ցաւում էլ է որ հայ է ծնւել։ Եւ ոգևորուած իր այդ անմիտ քաջագործութեամբ, նա վեհաբար ասում էր, որ հայոց ազգը մեծ անհատներ է ունեցել, որ այսօր էլ շատերը կան ազգասէր և ազգի մասին մտածողներ։ «Միթէ, ասում էր, պա-

տուական «Մշակին» պատիւ չէր պատկանելու ի թիւս այսպիսեաց Հայ ազգին, որ թէ իւր անցեալ տառապանքներով և ներկայ վիճակով կարեկցութեան և յարգանաց է արժանի և ոչ անարգանաց։ Մի՞թէ չը յիշեց ազնիւ «Մշակը», որ որևիցէ ազգի դէմ անարգանք արտայայտելը սրբապղծութիւն է ամեն հասկացող, բարեկիրթ, բարեխիղճ և ազնիւ անհատի աչքում»։

Ահա մինչև ուր էր գնում հակառակորդի անազնւութիւնը։ Զարմանանք որ Արծրունին ասում էր թէ պէտք է ոչինչ ջանք չը խնայել այսպիսի մամուլը ոչնչացնելու համար։ Եւ նա անխնայ մերկացնում էր թէ ինչ է իր հակառակորդների ազգասիրութիւնը։ Այդ բանակուից ամիսներ առաջ Ասիացին իր ֆելիէտօնում տուել էր «Մեղուի» ծաղրական նմանութիւնը, ասելով թէ ինքն էլ պիտի հրատարակէ «Լու Հայաստանի, լրագիր անչարժական և ոչխարային» թերթը։ Իսկ այդ բանակուի միջոցին բացատրում էր թէ ինչ են նշանակում «Մեղուի» «ազգային և ներքին» բաժինները։

Ընթերցող, հասկանու՞մ էք ինչ զանազանութիւն կայ ներքին եւ ազգային բաժինների մէջ…

Զանազանութիւնը այն է, որ ներքինը ներ-

քին է, իսկ ազգայինը ազգային է, կամ պարզելով մեր միտքը՝ ներքինը ազգային չէ, իսկ ազգայինը ներքին չէ...

Օրինակ, դուք շատ անգամ կարդալով «Մեղու Հայաստանի» լրագիրը, պատահած կը լինէք միեւնոյն համարում երկու նամակ միեւնոյն քաղաքից, —որոնցից մինը տպվում է ազգայինի մէջ, իսկ միւսը ներքին բաժնի մէջ... Ի՞նչու է այդպէս: —Որովհետեւ մինը խօսում է այս կամ այն քահանայի, եպիսկոպոսի հրաշագործութիւնների վրա, կամ ծխական ուսումնարանի հարցաքննութիւնների վրա՝ այդ ազգային է,—իսկ միւս նամակը նոյնտեղից խօսում է օրինակ այն բանի վրա, թէ այս տարվայ երկրի անբերրութեան, կամ այլ պատճառով, յիշեալ հայաբնակ քաղաքի մէջ առաջին պիտոյքի, հացի թանգութիւն է կամ հարկաւոր մթերքի պակասութիւն է, սաստիկ աղքատութիւն է,—այդ ազգային երեւոյթ չէ: Ուրեմն երբ հայը աղօթում է, ուսում է առնում, ուսումնարան է կառավարում,—այդ ազգային է, իսկ երբ հայը քաղցած է,—այդ ազգային չէ...

Բացի սրանից նոյն երեւոյթը, նայելով թէ որտեղ է պատահում նա, լինում է կամ ազգային, կամ ներքին... Օրինակ երբ մի հայ ծխական ուսումնարանի փողերը կամ եկեղեցու փողերից է գողանում,—այդ ազգային է, իսկ եթէ մի հայ քաղաքի փողերից օրինաւոր գումար իր ջիբին է նուիրում,—այդ ներքին է...

Վերջապէս ցոյց տանք մի շօշափելի օրինակ. եթէ մի էշ զռում լինի մի որ եւ է վանքապատկան այգում,—այդ ազգային է, իսկ եթէ նոյն խելացի կենդանին ձայն հանելիս լինի յիշեալ այգու պա-

րիսպներից փոքր ինչ դուրսը, այդ անշուշտ ն ե ր-
ք ի ն է...

Իր հակառակորդների թուլութիւնները, անկարողութիւնը այսպիսի կծու ծաղրի ենթարկելու ընդունակութիւն ունեցող հրապարակախօսը, այո, իրաւունք ունէր ինքնավստահութեամբ ասել—«մենք կոչնչացնենք ձեզ»։ Մեր դարում, մասւոր գործի մէջ, ոչնչացնողը այն ողորմելի, երեխայական աղմուկը չէր կարող լինել թէ Արծրունին իրան պատահական հայ է համարում, այլ տաղանդը, հոգեկան այն մեծ կարողութիւնը, որ հարուածում է տափակութիւնը, ստեղծագործում է, ըմբռնում է յաղթանակի ամբողջ գաղտնիքը։

Այս ընդհարումների մէջ էին երկու լրագիրները, երբ Ներսիսեան դպրոցում հաստատուն տեսուչ ունենալու հարցն էր արծարծվում։ «Մեղու» գիտէր թէ ինչ բան է պատրաստվում և աւելի ու աւելի սաստկացնում էր իր յարձակումները գերմանական դոկտորների դէմ։ Արծրունին դեռ չարունակում էր գերմանական և ոչ-գերմանական կրթութիւն ստացածների կռիւ համարել մրցութիւնը առաջադիմական և յետադիմական տարրերի մէջ։ «Մեղու» ասում էր թէ գերմանական

դօկտօրները անընդունակ հանդիսացան, թէ ժողովուրդը զզուել է նրանցից և բարդում էր նրանց վրա զանազան մեղադրանքներ, սակայն բաւականալով մութ, անանուն ակնարկութիւններով։ «Մշակը» ասում էր թէ պատրաստ է նոյն իսկ երդւել, որ այդ մեղադրանքները անհիմն են։

Դեկտեմբերի 8-ին տեսչի ընտրութիւն էր նշանակված։ Պետրոս Սիմէօնեանցը դրեց իր թեկնածութիւնը. քուէարկեցին, և նա չընտրվեց։ Ապա ձայների ահագին մեծամասնութեամբ (8-ով 1-ի դէմ) տեսուչ ընտրվեց Անդրէաս Արծրունին։ Մի քանի օրից յետոյ Սիմէօնեանցը տեսչի պաշտօնակատարութիւնից հրաժարական տուեց։ Պէտք է ասել որ Գրիգոր Արծրունին սկզբում ապետաբար վերաբերվեց իր հակառակորդին. յայտնելով «Մշակի» մէջ Անդրէասի ընտրութեան մասին, նա չասաց որ Պետրոս Սիմէօնեանցը քուէարկվել է և սեւացել։

Պէտք էր սպասել Կաթողիկոսի հաստատութեան։ Բայց այդտեղ միջամտեց կղերական կամայականութիւնը։ Թիֆլիսի առաջնորդ Մակար արքեպիսկոպոսը ներկայ չէր եղել այն նիստին, ուր ընտրվել էր Անդրէաս Արծրունին։ Պատրուակ ստեղծվեց նոր ընտրութիւն նշանակելու համար. և հոգաբար-

ձութիւնը, երևի հաստատ համոզված լինելով որ նոր ընտրութեան հետևանքն էլ նոյնն է լինելու, կամայ-ակամայ համաձայնութիւն տուեց նոր նիստ նշանակելու։ Այդ նիստը տեղի ունեցաւ 1874-ի յունվարի 12-ին։ Եւ ահա ինչ ենք կարդում դպրոցի պատմութեան մէջ*). «Մակար արքեպիսկոպոսը եկաւ ժողով, հետը բերելով հայրապետական կոնդակ, որով իրան հրահանգ էր տրվում տեսուչ ընտրելու մասին, և յայտարարեց, թէ ինքը եկել է ժողով ոչ իբրև նախագահ հոգաբարձութեան, այլ իբրև վիճակի առաջնորդ, և համաձայն է տեսչի ընտրութիւն կատարելու քուէարկութեամբ, միայն այն պայմանով, որ հոգաբարձուները խոստանան չընտրել Անդրէաս Արծրունուն, աւելացնելով թէ «Անդրէաս Արծրունի ըստ ուսման և բարոյականութեան արժանաւոր անձն է, սակայն ինքն չկարէ համաձայնել առ ընտրութիւն նորա ըստ յայտնի իւրեան պատճառանաց»։ Հոգաբարձութիւնը, առանց ընտրութիւն կատարելու, կազմեց այս մասին օրագիր «ի տեղեկութիւն յապագային» և ըստորագրելով օրագիրը՝ ցրուեց»։

---

*) Ս. Մալխասեան, «Համառօտ պատմ. Ներսէս. դըպրոցի» եր. 147։

Անկարելի եղաւ կռիւը շարունակել օրինական հողի վրա, և ահա առաջ քաշվեց հոգևոր իշխանութիւնը։ Նա ոտնակոխ արեց դպրոցի կանոնադրութիւնը, խեղդեց ազատ ընտրութեան սկզբունքը, որպէս զի ցոյց տայ թէ ինքը համամիտ է «Մեղուի» հետ և նոյնքան վախենում է «կօսմօպօլիտ հայերից», որքան Պետրոս Սիմէօնեանը։ Սա առաջին դէպքն է, երբ պահպանողականութիւնը իր շահերը պաշտպանելու համար, մտնում էր կղերականութեան փէշի տակ և յատկացնելով նրան միապետական իրաւունքներ, քանդում էր սահմանադրական կարգերը։ Սարգիս եպիսկոպոս Ջալալեանի և Ալէքսանդր Թայիրեանի միապետական կամայականութիւններից դպրոցը ազատելու համար մի ամբողջ շարժում սկսվեց Թիֆլիսում և այդ շարժման մէջ, որ քուէով պաշտօնեաները ընտրելու սկզբունքը մոցրեց, բուռն մասնակցութիւն ունեցաւ Պետրոս Սիմէօնեանը։ Այժմ նա ինքն էր քանդում. այն գործը, որի համար մի ժամանակ մարտնչում էր։ Պատճառն այն էր, որ երևացել էր նոր երիտասարդ կուսակցութիւն։ Մակար արքեպիսկոպոսի կամայական վարմունքը արդէն մի ապացոյց էր որ Գրիգոր Արծրունին մի վախեցնող ոյժ էր դարձել։ Նա յարձակվում էր

հոգեւորականութեան վրա, մերկացնում էր նրա տգիտութիւնը, նրա արատները։ Եւ նրան պատասխանում էին, ապօրէն կերպով արգելելով նրա եղբօր ընտրութիւնը։ Բայց դա մի նոր զէնք էր, որ տալիս էին Արծրունու ձեռքը։

Յունվարի 12-ի կամայականութեան դէպքը շատ վատ տպաւորութիւն գործեց հոգաբարձուների վրա։ Դեռ յոյս ունէին որ կարելի կը լինի վերականգնել հոգաբարձութեան ազատ իրաւունքները. Անդրէաս Արծրունին եկաւ Թիֆլիս, սպասում էր թէ ինչ ելք կը ստանայ հարցը։ Ամառն էլ հասաւ, բայց դեռ տեսչի ընտրութիւն չէր կատարվել։ Վերջապէս, օգոստոսին հոգաբարձութիւնը, այլ ես աւելորդ համարեց դիմադրութիւնը, ընդունեց վիճակաւոր առաջնորդի կամայականութիւնը և տեսուչ ընտրեց Սեդրակ Մանդինեանին։ Սա էլ գերմանական կրթութիւն ստացածներից էր, բայց «կօսմօպօլիտների» շարքում չէր դասված, ուստի անմիջապէս տեսուչ հաստատվեց։

Հետաքրքրական է, որ Գրիգոր Արծրունին էլ համակերպողներից մէկն էր և շարունակեց հոգաբարձու մնալ։ Ճիշտ է նա բողոքեց «Մշակի» մէջ, ցոյց տուեց թէ ինչ պիտի լինի կօլլեգիալ հիմնարկութեան նա-

խագահը, ինչ է տրամադրում դպրոցի կանօնադրութիւնը և ինչպէս պիտի հասկանալ ընտրողական իրաւունքը, բայց այդ բոլորը քիչ էր. Արծրունին դեռ չը գիտէր կռուել իրաւունքների պաշտպանութեան համար այնպէս, ինչպէս կռուեց իր կեանքի վերջին տարիներում։

Լրագրական պայքարը շուտով անցաւ Կ. Պօլիս. Պետրոս Սիմէօնեանցը իր կրած պարտութեան վրէժը հանեց «Մասիս» լրագրի մէջ՝ յարձակվելով հոգաբարձութեան վրա։ Միայն այդ ժամանակ Արծրունին յայտնեց որ Սիմէօնեանցը տեսուչ էր ուզում ընտրվել, բայց չընտրվեց։ Մի կողմ թողնելով նրան, Արծրունին իր յարձակումները ուղղեց «Մասիսի» դէմ այն պատճառով, որ նա, առանց հանգամանքներին ծանօթ լինելու, բռնել էր Սիմէօնեանցի կողմը։ Այս դէպքը առիթ դարձաւ որ Արծրունին Կ. Պօլսի հայոց մամուլի պակասութիւններն էլ մերկացնէ։ Բայց չը պէտք է կարծել թէ առիթը և պատճառը միայն տեսչական բանակռիւն էր։ Դրանից առաջ էլ նա մի քանի անգամ անուանել էր Կ. Պօլսի լրագրութիւնը «ողորմելի» և մատնացոյց էր արել որ թէև Թիւրքիայում մամուլը համեմատաբար ազատ է, բայց հայերը, շնորհիւ այն հան-

գամանքի որ Ֆրանսիական Թեթևամիտ կըրթութիւն են ստացել, անկարող են հանդիսանում մի լուրջ, ազդեցիկ լրագրութիւն ստեղծելու։

Մանդինեանի տեսչութիւնը Ներսիսեան դպրոցում խռովութիւնների մի շրջան բացեց։ Մակար արքեպիսկոպոսը տեսչի ընտրութեան հարցում արդէն ցոյց էր տուել որ ինքը կոչման բարձրութեան վրա կանգնած նախագահ լինել չէ կարող, այլ իր գործողութիւնները յարմարեցնում է մեղուական կուսակցութեան շահերին։ Անելով մի քայլ, նա այլ և աւելորդ համարեց կանգ առնել, և կամայականութիւնները օրէնքի ու կարգի տեղը բռնեցին։ Գրիգոր Արծրունին և Մուշեղ քահանայ Տէր-Ղևոնդեանը, իբրև հոգաբարձուներ, գրաւոր բողոքներ տուին տեսչի դէմ, պահանջելով հեռացնել նրան, բայց այդ բողոքները առանց հետևանքի մնացին։ Դպրոցի տէրերը երեք հոգաբարձուներ էին, որոնք միացած էին առաջնորդի հետ. նրանք կայացնում էին վճիռներ և ուղարկում էին այդ վճիռները միւս հոգաբարձուներին որ ստորագրեն։ Տասն և չորս աշակերտներ բողոքեցին տեսչի դէմ, բայց արձակվեցին դպրոցից։ Մուշեղ քահանան շարունակ բողոքում էր թէ դպրոցում և թէ

«Մշակի» մէջ։ Մակարը նրան պատժեց իր առաջնորդական իշխանութեամբ։ Թիֆլիսի կօնսիստօրիան հրաման արձակեց, որով հեռացնում էր այդ քահանային հոգաբարձութիւնից և նոյն իսկ զրկում էր նրան քահանայագործութիւնից։ Իր հրամանի մէջ նա բացարձակապէս յայտնում էր թէ քահանայի յանցանքն այն է, որ նա համարձակուել է կարծիք յայտնել որ դպրոցի տեսուչը իբրև թէ անյարմար է և անընդունակ է։ Ահա թէ որտեղից էր հասել փաշայական կամայականութիւնը, ահա ինչ միջոցներ էին գործադրում «իրանց մարդուն» պահպանելու համար։

Եթէ դպրոցում ասիական բռնութիւնը այսպէս ոտքի տակ էր տալիս ամեն կարգ ու օրէնք, կար բարեբախտաբար ազատ մամուլ, որ մերկացնում էր այդ արարքները։ «Մշակը» արշաւանք սկսեց տեսուչ Մանդինեանի դէմ և, ուշադրութիւն չը դարձնելով մեղուականների վայնասունի վրա, հրապարակ էր հանում այն ամենը, ինչ ասում էին դպրոցի կարգերից դժգոհները։ Ինչպէս վայել է այն մարդկանց, որոնց ղեկավարողները սկզբունքները չէին, այլ անձնական հաշիւները, մեղուականները աղաղակում էին թէ «Մշակը» կարգապահութիւնը խախտում է՝

տպելով աշակերտների բողոքները։ Կարծես առաջնորդի գործ դրած կամայականութիւնները, կաթողիկոսից հաստատված հոգաբարձուին հեռացնելը չատ կարող էին նպաստել որ դպրոցում գոյութիւն ունենայ որ և է հաստատ հասկացողութիւն օրէնքի, իրաւունքների և պարտաւորութիւնների մասին։

Մակար արքեպիսկոպոսը հոգաբարձական կոչումը ոչնչացնել էր ուզում, բայց Գէորգ կաթողիկոսը ցոյց տուեց նրան, որ նա իր իշխանութիւնից և իրաւունքներից վեր բաներ է անում. կօնսիստօրիայի հրամանով արձակված Մուշեղ քահանային կաթողիկոսը նորից հաստատեց հոգաբարձուի պաշտօնի մէջ։ Բայց բարձր իշխանութեան այս կարգադրութիւնը բաւական չէր կամայականութիւնները սանձահարելու համար։ Հոգաբարձուների մի մասը, որոնց թւում և Գրիգոր Արծրունին, գործերից հեռու մնացին մինչև որ Մակարը հեռացրվեց առաջնորդութիւնից և նրա տեղը նշանակվեց Գաբրիէլ արքեպիսկոպոս Այվազեանը։ «Մըշակը» Մակարին ճանապարհ դրեց մի յօդուածով, որի մէջ ցոյց էր տալիս նրա պակասութիւնները *)։ Այվազեանի գալուստը

---

*) Այդ պակասութիւններից «Մշակը» չեշտում էր

*(1876-ից) այնքան խաղաղացրեց մարդկանց, որ հեռացած հոգաբարձուները նորից իրանց գործին գնացին։ Բայց նրանց պաշտօնավարութեան ժամանակը լրացել էր և նոր ընտրութիւններ նշանակվեցին։ Արծրունին այլ ևս հոգաբարձու չընտրվեց։*

*Միայն մեղուականութիւնը և ազգային հարցերը չէին բանակուի դաշտ բաց անում Արծրունու համար։ 1874 թւականի մեծ պասին Թիֆլիսում տեղի ունեցան մի շարք հրապարակական դասախօսութիւններ ռուսերէն լեզուով։ Դասախօսութիւններ կարդացողներն էին Ալէքսանդր Երիցեան, տիկին Սիմօնօվիչ, Սկօրօվ, Ստադլին, Լիխաչօվ, Գալիբին, Մօլչանօվ։ Արծրունին «Մշակի» մէջ յայտնեց որ դասախօսներից միայն Սիմօնօվիչն ու Սկօրօվն են տիրապետում իրանց ընտրած առարկաներին, իսկ մնացածների կողմից «անասելի յանդգնութիւն» էր*

---

մանաւանդ այն, որ Մակարը, իբրև առաջնորդ և հոգաբարձութեան նախագահ, չէր կարողանում կուսակցութիւններից բարձր պահել իրան, լինել կարգի և օրէնքի խիստ պաշտպան։ 1874 թւին, Էջմիածնի հոգեհանգստի ժամանակ, Գրիգոր Արծրունին կամեցաւ, իբրև հոգաբարձու, մի քանի խօսք ասել եկեղեցում, բայց Մակարը թոյլ չը տուեց։ Այս պատճառին էր հասցրել ալքեպիսկոպոսը իր կուսակցական անհամբերողութիւնը։

հասարակութեան առաջ դուրս գալ ուսուցանողի դերում, քանի որ նրանցից ոչ ոք չունի հիմնաւոր պատրաստութիւն։ Խօսելով մի առանձին յօդուածում յատկապէս Երիցեանի մասին, որի դասախօսութեան առարկան էր հայ կնոջ դրութիւնը անցեալում և ներկայում, Արծրունին ասում էր թէ Երիցեանը չունի քննական կարողութիւն, թէ նիւթը մշակել նա չէ իմանում։ Ընդունելով որ դասախօսը «ընդարձակ բնական ընդունակութիւնների տէր մարդ է, և ցուցէ նրան պակաս չէ անհագին աշխատասիրութիւնը», Արծրունին գտնում էր որ «գիտութեան սիստեմական ուսումը, որ և է կրիտիկական հայեացք, որ անհրաժեշտ է ամեն հասարակական դասախօսութեան մէջ—պակաս է պարոնին... Ամեն երկրում գիտութեան ամենաբարձր յատկութիւնը՝ համեստութիւնն է,—իսկ մեր երկրում նա ընդունված չէ»։

Միւս դասախօս Ստադլինը անտեղի յարձակումներ էր գործել անգլիացի նշանաւոր գիտնական Բօկլի դէմ։ Արծրունին մի քանի կծու տողեր գրեց այդ առիթով, Ստադլինը պատասխանեց „Кавказъ“ լրագրում, ծաղրելով Արծրունուն, անուանելով նրան երեխայ և այլն։ Այդ յարձակումների դէմ Արծրունին գրեց մի մեծ յօդուած, որի մէջ նախ

***ցոյց տուեց Բօկլի գրքի նշանակութիւնը և ապա ուղղեց Ստասովինի հասցէին հետևեալ խօսքերը.***

Մի քան խորհուրդ կը տայինք միայն պ. Ստասովինին չը մոռանալ. վատ թէ լաւ լինի մեր գործունէութիւնը, մենք ժամանակաւոր չենք եկել այստեղ՝ մենք մեզ նպատակ չենք կարող դնել քանակութեան բռնվել մի որ եւ է քաղդախնդիր թափառական, ինքնակոչ կրթողի հետ... Նրա պէս շատերը եկան ու գնացին... մեզ այլ եւս այս տեսակ անդրածովային էժան փիլիսոփայութիւններով եւ խեօք յիմարութիւններով զարմացնել չէ կարելի... վիրաւորել մեզ ինքնահաւան տգիտութեամբ նմանապէս չէ կարելի...

*Ստասովինը դիմեց դատարանին, մեղադրելով Արծրունուն վիրաւորանքի և զրպարտութեան համար։ Առաջին անգամն էր մեզանում, որ հայ խմբագիրը կանչվում էր դատարան՝ իր գրուածքը այնտեղ պաշտպանելու համար։ Գործը քննվում էր հաշտարար դատաւորի մօտ 1874-ի մայիսին. երկու կողմերն էլ սկսեցին ապացուցանել որ հաշտարար դատաւորը ձեռնհաս չէ այդ գործը քննելու։ Դատաւորը առաջարկեց վէճը հաշտութեամբ վերջացնել. և երբ կողմերը համաձայնութիւն չը տուին, նա դադարեցրեց գործը։ Բայց թէ որքան Արծրունին իրաւացի*

էր յարձակվում Ստաղլինի վրա, կարելի է եզրակացնել նրանից, որ մայրաքաղաքի պարբերական թերթերից մի քանիսն էլ խիստ քննադատեցին Ստաղլինի դասախօսութիւնը, որ տպված էր առանձին գրքով. իսկ „Недѣля" չաբաթաթերթն ասաց որ Թիֆլիսը չը պիտի թոյլ տար այդպիսի վայրիվերոյ և անմիտ դասախօսութիւն։

Մնում էր Երիցեանը. Արծրունին ֆելիէտօնների մէջ էլ ծաղրում էր նրան, անուանելով նրան «պառաւած գիմնազիստ»։ Եւ Երիցեանն էլ կարողացաւ իր վրէժը առնել Արծրունուց՝ „Кавказъ" լրագրի գլխաւոր աշխատակիցներից մէկն էր Երիցեանը և այդտեղ էլ նա մաքրում էր իր հաշիւները Արծրունու հետ իբրև հարազատ մեղուական։ Ահա այդ վրէժխնդրութեան մի փոքրիկ պատկերը։

1875 թուականի սկզբում Անդրէաս Արծրունին Թիֆլիսում կարդաց մի դասախօսութիւն ծծումբի մասին։ Երիցեանը „Кавказъ" լրագրում մի ընդարձակ յօդուած տպագրեց և մոռանալով որ ինքը մասնագէտ չէ, ոչնչութիւն հրատարակեց ամբողջ դասախօսութիւնը, թէև մի վրացի, Էրիսթօվ ազգանունով, նոյն „Кавказъ"-ի մէջ ցոյց տուեց Երիցեանի սխալները և Անդրէաս Արծրունու տե-

սութիւնների ճշտութիւնը։ Այս դեռ ոչինչ։ Կարելի էր հաշտվել այն մտքի հետ որ հնագիտութեամբ պարապողը քննադատում էր մի մասնագէտի գրուածքը։ Երիցեանը, խօսք սկսելով դատախօսութեան մասին, պարտք էր համարել ծանօթացնել ընթերցողներին Անդրէաս Արծրունու հետ։ Եւ որպիսի բարեխղճութեամբ։ Նա ասում էր թէ Անդրէասը «Մշակի» խմբագրի եղբայրն է, թէ Գրիգոր Արծրունին միջնորդում էր որ եղբօրը տեսուչ նշանակեն Ներսիսեան դպրոցում, բայց հայոց հոգևոր իշխանութիւնը չատ խելացի վարվեց՝ սերժելով նրա այդ միջնորդութիւնը։ Եւ ոչ մի խօսք Ներսիսեան դպրոցի կանօնադրութեան մասին, ոչ մի խօսք այն մասին թէ Անդրէասին ընտրել են դպրոցի հոգաբարձուները 8 ձայնով ընդդէմ մէկի…

Վրիժառութեան մի քայլն էր դա։ Շուտով „Кавказъ“ լրագիրը մի արշաւանք սկսեց «Մշակի» դէմ. ֆելիէտօնիստ Nemo-ն, որ եթէ Երիցեանը չէր, անշուշտ Երիցեանի ցուցմունքներով էր ղեկավարվում, կրկնեց Արծրունու դէմ այն ամենը, ինչ ասել էր «Մեղուն»։ Դուրս գջլելով «Մշակի» զանազան յօդուածներից այս կամ այն կտորը, նա աշխատում էր ցոյց տալ, որ Արծրունին երեք տարվայ ընթացքում ոչինչ հասարակա-

կան հարց չէ արծարծել, աչքի ընկնող ոչ մի բան չէ գրել, այլ միայն և միմիայն գովել փառաբանել է իրան, իր եսին է երկրպագել, իր անձնական հաշիւներն է տեսել։ Մի բան միայն չէր ուրանում սուտ լրագրի ֆելիէտոնիստը, այն, որ «Մշակը» 1872 թուականից չէ դադարում գրական աշխարհը տակն ու վրա անելուց։ Հայոց կեանքի մէջ նա մտցնում է վայրենի և անգործնական գաղափարներ, որոնք հակառակ են հայի նահապետական կեանքին և սովորութիւններին։ Ցօղուածագիրը խոստանում է փաստեր բերել, քայլ առ քայլ քննելով երեք տարվայ «Մշակը», բայց չէ կատարում իր խոստումը, արդարանալով նրանով, թէ Արծրունին շատ է վիրաւորվում իր գրուածքներից և ինքը խըղճում է նրան։ Բայց բերած մի քանի փաստերն էլ բաւական են իմանալու համար թէ ինչ տեսակ գրական հակառակորդ էր այդ Nemo-ն։ Մենք կը բերենք միայն մի նմուշ։ «Մշակի» այդ քննադատը, կրկնելով մեղուականների այն խօսքը թէ Արծրունին հայերէն բոլորովին չը գիտէ, իբրև ապացոյց բերում էր մի բառ. հայոց լեզուի մէջ գոյութիւն չունի «ազգագրութիւն» բառը և նրան հնարել է Արծրունին. այդ բառը „Кавказъ"-ի աշխատակիցը թարգմանում էր „Націогра-

фія“ և ծաղրում էր Արծրունու տգիտութիւնը հայերէնի մէջ։ Սարսափելի ապացոյց էր, չէ՞։ Դրանով յօդուածագիրը իր սեփական տգիտութիւնն ու անբարեխղճութիւնն էր ցոյց տալիս։

Արծրունին միայն մի քանի խօսքով պատասխանեց „Кавказъ“-ի այդ ընդարձակ յօդուածներին։ Վիրաւորվելու մի առանձին առիթ չունէր նա, քանի որ միևնոյն բաները նա միշտ տեսնում էր «Մեղուի» մէջ։ Ռուս լրագրի աշխատակիցը ցոյց էր տալիս իր ով և ինչ լինելը նրանով, որ Թիֆլիսում հրատարակվող լրագիրներից հաւանում էր միայն «Մեղուն»։ Նրա համար «Մշակը» չափ վատ և վնասակար էին և „Тифлисскій Вѣстникъ“ ու «Դրօէբա» լրագիրները։ Կարօ՞ղ էր Արծրունին վիրաւորվել այդպիսի մի քննադատի գրուածքներից...

Բայց Երիցեանը դեռ իր բոլոր վրէժը չէր հանել։ 1876 թուականին Թիֆլիսում պիտի կատարուէր միօրեայ ժողովրդագրութիւն։ Արծրունին «Մշակի» մէջ մի շարք յօդուածներով բացատրեց թէ ինչ է ժողովրդագրութիւնը, ինչ նշանակութիւն ունի նա։ Չը բաւականանալով այդքանով, նա 1875 թուականի նոյեմբերի 16-ին Թիֆլիսի կլասիկական գիմնազիայի դահլիճում կարդաց հայերէն լե-

դուով մի դասախօսութիւն, որ նուիրված էր նոյն առարկային։ Դա առաջին հայերէն դասախօսութիւնն էր մեղադրում Թէնէկեանցներին մէջ կայծին շատ աշակերտներ և Մարիամեան դպրոցի աշակերտուհիները, որոնց Արծրունին ձրի տոմսակներ էր տուել։ Մի քանի ժամանակից յետոյ նա կրկնեց այդ դասախօսութիւնը Հաւլաբարում, Թիֆլիսի այն թաղում, որ թէև կպած է քաղաքին, բայց նրա խորթ զաւակն է՝ մնացած կրթական հիմնարկութիւնների կողմից։ Այդտեղ ապրում է հասարակ ժողովուրդը, և Արծրունին գնաց նրա մօտ՝ կենդանի խօսքով մի բան հասկացնելու համար։

Իր առաջնորդողներից մէկում Արծրունին ասում էր որ գիտութիւնը հանրամատչելի պիտի լինի, և այն գիտութիւնը, որ ծածուկ է պահվում ժողովրդից, գիտութիւն չէ։ Հետևելով իր այդ հայեացքին, նա ամեն բանի մէջ վերին աստիճանի պարզ, հեշտ հասկանալի լեզու էր գործ ածում։ Այսպէս էր նա և իր դասախօսութեան մէջ։ Բայց Երիցեանը, „Кавказъ“-ի մէջ հաշիւ տալով այդ դասախօսութեան մասին, ամենամեծ պակասութիւնը համարում էր այն, որ նրա մէջ ամեն ինչ շատ էր պարզ, շատ էր տարրական, ինքն ըստ ինքեան հասկանալի։ Դիլխուսրա-

պէս այդ «պաշտպանութեան» պատճառով էլ նա ծաղրում էր Արծրունուն, գործ ածելով համարեա նոյն խօսքերը, որ Արծրունին ասել էր իր, Երիցեանի, դատախօսութիւնների առիթով։ Բայց այդ երկուսի մէջ կար հիմնաւոր տարբերութիւն. Արծրունին, քննադատելով Երիցեանին, ինչպէս տեսանք, յայտնի արժանաւորութիւններ էլ էր գտնում նրա մէջ, մինչդեռ Երիցեանը ոչինչ արժանաւորութիւն չէր տեսնում Արծրունու մէջ։

„Кавказъ" լրագրի թշնամութիւնը «Մըշակի» դէմ շարունակվեց, քանի որ նրա գըլխաւոր աշխատակիցը Երիցեանն էր, իսկ խմբագիրը—Սմոլենսկին։ Վերջինս չը մոռացաւ Արծրունու հարուածները և այն ժամանակ, երբ հեռացել էր Թիֆլիսից։ 1878-ին նա Խարկովում հրատարակում էր „Харьковъ" անունով լրագիրը, որի մէջ յարձակվում էր «Մշակի» վրա։

Թողնենք առ այժմ բանակռիւների դաշտը. շուտով մենք կը տեսնենք որ տեղական ուրիշ ռուս լրագիրներ էլ վէճի բռնվեցին Արծրունու հետ։ «Մշակը» խօսեցնել էր տալիս ամենքին, և Արծրունին շատ լաւ էր ըմբռնում այն դերը, որ կատարում էր իր լրագիրը։ Նա ասում էր թէ «Մշակը» ունի ջերմ երկրպագուներ, ունի կատաղի թշնամիներ,

բայց չունի անտարբեր վերաբերվողներ։ Նրան կամ պաշտում են կամ ատում, բայց երբէք անտես չեն անում, երբէք չեն մոռանում նրա գոյութիւնը։

Եւ այդ զարմանալի յատկութիւնը բղխում էր նրա խմբագրի անապառ տաղանդից։ Դա մի անհանգիստ ոյժ էր, որ գործում էր միանման վառ եռանդով։ Շատ քիչ են «Մշակի» այնպիսի համարները, ուր նա առաջնորդող յօդուած կամ մի այլ գրուածք չունենայ։ Ամէն տեղ նա կարողանում էր գտնելու այնպիսի կտրուկ, աղդու տողեր, որոնք անպատճառ մի միտք էին յարուցանում, այսպէս կամ այնպէս ցնցում էին։ Նրան մեղադրում էին, նրան ատում էին՝ նրա անփոփոխ, մշտական խստութիւնների համար։ Բայց ինչու էր նա խիստ ու անողոք, ինչու նրա գրիչը միշտ թաթախված էր թոյնի մէջ։

Նրան ներկայանում էր մի հիւանդ, անդամալոյծ, վէրքերով պատած հասարակութիւն, և նա կամենում էր մի օր առաջ ցոյց տալ այդ անդամալոյծին նրա անկումը, նրա սարսափելի հիւանդութիւնը։ Ասում են թէ նա չոյելով ու գգվելով պիտի բժշկէ վէրքերը։ Բայց կարելի՞ է այդպիսի պահանջ դնել։ Գրողը, եթէ նա մի ողորմելի միջակութիւն չէ, եթէ ներկայացնում է մի ամբողջացրած

ինքնուրոյնութիւն, մանաւանդ եթէ վերևից տուած է մի առաքելութեան կոչում, ունի իր յատուկ բնաւորութիւնը, խառնուածքը, իր խօսքն ու խօսելու եղանակը։ Համաշխարհային գրականութեան մէջ փառաւորուած մեծ երգիծաբաններն ու մերկացնող հրապարակախօսները կարող էին իրանց ժամանակի պահանջներին ենթարկվել. բայց եթէ ենթարկվէին, էլ ինչպէս կը լինէին Սուիֆտներ, Բէօրնէներ, Հէյնէներ։ Արծրունու դաւանանքն էր՝ «Դժգոհութիւնը առաջադիմութեան մղողն է» (1875, № 34)։ Եւ ինքը, իբրև առաջադիմութեան գինուոր, յայտնում էր իր դժգոհութիւնը ամենախիստ կերպով։ Ահա մի քանի տողեր Ասիացու ֆելիէտոնից (1875, № 49).

*Չէ, պէտք է հրաժարվել հայերի մէջ հանճար լինելուց։ Այդ ազգի մէջ հանճար լինել անհնարին է, այդ ազգը ազգ չէ, դա մի տեսակ հ ա ն ե լ ո ւ կ է։ Նրան ուսումնասիրել, ճանաչել, ըմբռնել՝ դժուար է եւ մինչեւ անգամ անհնարին է...*

*Ի՞նչ անենք, ո՞ր ջուրն ընկնենք...*

*...Եւ ի՞նչպէս կարելի է այն ազգին ուսումնասիրել, ճանաչել, ըմբռնել, որ ոչինչ որոշ բնաւորութիւն, ոչինչ որոշ բարոյական պատկեր չունի, որ չունի իդէալներ, ձգտումներ, կատարելատիպեր...*

*Նրա կատարելապատկերը, Նրա իդէալը երկու բան են, որ կեանքի ամեն քայլափոխում Նրա միակ չափ ու կշիռք են՝ մի ա ր շ ի ն եւ մի ր ո ւ բ լ...*

Գուցէ միայն այն ժամանակ հանճար կը համարվես այդ ազգի մէջ, երբ որ զանազան աններելի միջոցներով կը հարստանաս...

Կրակոտ, անհամբեր, ըմբոստ բնաւորութիւնը գործ է սիրում, բարեկարգութիւն, պարտաճանաչութիւն է պահանջում, իսկ նրան շրջապատած է մոխրագոյն, հիւանդոտ իրականութիւնը։ Եւ նրա գրչի ծայրից այսպիսի թոյն է թափվում. «Ո՞ւմ ենք խաբում», հարցնում է նա. հարցնում է այն մարդկանցից, որոնք առաքինութիւն են համարում ազգային պակասութիւնները ծածկելը։ Խաբենք մեզ, աչք փակելով, կոյր ձեւանալով, թէ խաբենք օտարներին, ցոյց տալով նրանց որ հայը պարտաճանաչ է, միաբան է, կարող է իր հոգեկան պահանջների, իր մտաւոր շահերի համար մոռանալ իր նիւթական բարեկեցութիւնը։ Ո՛չ, մեզ կամ օտարին խաբելուց օգուտ չը կայ։ Խաբելով մենք ոչինչ չենք բժշկի մեզանում, ոչինչ չենք փոխի։ Դժգոհութիւնը առաջադիմութեան մղողն է. դժգոհ լինենք մեզանից, որպէսզի փրկվենք։

Ինքնագոհութիւնը, ազգասիրական լռութիւնը օտարների առաջ երբէք մեզ չէին թոյլ տայ քննադատութեան սուր նշտրակը խրել մեր հասարակական մարմնի մէջ, դուրս

քերեց մեր յետամնացութեան, մեր դժբախտ անշարժութեան յատկանշանները։ Եւ Արծրունին իր այդ սուր դժգոհութեան, մերկացնող ընդունակութեան շնորհիւ որքան ազգային բնորոշ գծեր դրեց հրապարակում, որքան դառն ճշմարտութիւններ գտաւ, որոնք մինչև այդ շատ բնական, արդար ու ցանկալի երեւոյթներ էին համարվում։

Վերցնենք «Հայի տնտեսութիւնը» յօդուածը (1873, № 27)։ Հայը յայտնի է իբրև տնտեսող, իբրև դիզող։ Խնայողութիւնը տնտեսական կեանքի մէջ կատարում է առաջին դեր։ Բայց երջանի՞կ է նա իր այդ յատկութիւններով։ Ո՛չ, երջանիկ լինել չէ կարող։

Հայը հաւաքում է, այո, հարստութիւններ, դիզում է նիւթերը,—բայց անհաշիւ. եւ նրա հաւաքած հարստութիւնը բոլորովին անձնական է եւ չէ անցնում ապագայ սերունդին։ Նրա աշխատանքը ապարդիւն մի աշխատանք է, ինչպէս մրջիւնների ծիծաղելի ջանքերը։ Ոչ մի հարստութիւն կովկասեան հայերի մէջ չէ տեւել մի սերունդից աւելի։

Հայը հաւաքում է, այո, բայց հաւաքում է միայն նրա համար, որ սնդուկներում պահի իր հաւաքածը... Նրան պակաս է այն յատկութիւնը, առանց որի խնայողութիւնը դատարկ խօսք է՝ նա զուրկ է իր հաւաքածը մի որ եւ է ձեռնարկութեան գործ դնելու յատկութենից։ Նա զուրկ է անձնավստահութեան յատկութենից։

Նա հաւաքում է, բայց չէ գործդնում, նա

հաւաքում է, բայց չէ մտածում այնպէս կրթել նոր սերունդը որ շահեցնի իր հաւաքածը։

Այդ է պատճառ, որ կան մեզանում հայերի մէջ հարուստ անհատներ, բայց չը կայ հարուստ հայ տարրը։

Հայ հարուստների այդ պատկերացումը Արծրունին շարունակում է մի քանի համարից յետոյ՝ «Մահուան Հերոսներ» յօդուածի մէջ (№ 39)։ Այդտեղ խօսքը կտակների մասին է։ Հին ժամանակներից մենք պարծենում ենք մեր հարուստների կտակներով։ Կտակը նուիրագործում է հարուստ հայի յիշատակը, սրբացնում է նրան հասարակութեան աչքում, ազգային մեծ բարերարների շարքն է անցկացնում նրան։ Սակայն տեսնենք ինչ էր տեսնում Արծրունին այդ վաղուց սրբացրած կտակի մէջ։

Կենդանութեան ժամանակ հայը,—ասում է նա,—մարմնացած եսականութիւն է, մտածում է միայն իր մասին, ապագան նրա միտքը չէ զբաղեցնում։ Նա ոչ միայն ինքը չէ օգուտ քաղում իր դիզածից, այլ և թոյլ չէ տալիս որ ուրիշները իրանց ոյժերը գործադրեն հասարակութեան օգտին։ «Հասարակաց օգուտը» նրա համար անհասկանալի մի խօսք է։

Բայց յանկարծ մօտենում է նրա մահվան րօ-

պէն եւ նոյն մարդը պահանջում է որ իր մահից յետոյ հրաշքի պէս փոխվէին հանգամանքները դէպի լաւը, չը նայելով որ ինքն ոչինչ չէ արել, կարողու-Թեան չափ, իր գործը աջողեցնելու նպատակով յար-մար արդիւնաքեր մի հող պատրաստելու համար։

*Կենդանութեան ժամանակ միայն մի հոգս ունէր նա—դիզել և դիզել, ինչ միջոցներով էլ լինի՝ դիզել, այդ դիզածը երբէք գործա-դրութեան մէջ չը մտցնել։ Ինչպէս որ դի-զած գումարը նրա կենդանութեան ժամա-նակ մի մեռած դրամագլուխ է, այնպէս էլ նա անգործադրելի է համարում գիտութիւ-նը. ուսումը նրա համար մեռած դրամագլուխ է։ «Նրա որդին մի կ ե ն դ ա ն ի կ տ ա կ է, որ այժմս գործ դրվելու չէ, այլ պահվելու է մի անորոշ ժամանակի համար»։ Մեռնում է այդ հայը, և յանկարծ ինչ է յայտնվում։*

Այն մարդը, որ իր կենդանուԹեան ժամանակ եր-բէք մտածած չէ ապագայի վրա,—պատրաստ ունի մ ի կ տ ա կ, որով նա իր բոլոր կարողուԹիւնը, կամ նրա մասը կտակում է ապագայ սերունդի օգտին, բ ա ր ե գ ո ր ծ ա կ ա ն ն պ ա տ ա կ ո վ, ի նպաստ մ տ ա ւ ո ր զ ա ր գ ա ց մ ա ն իր ազգի նոր սերունդի, —որի մտաւոր զարգացման բարոյական, օգտաւէտ եւ գործադրելի լինելը նա իր կեանքի ժամանակ հերքում էր...

Բայց մեռնողը չի մտածում, որ իրանից յետոյ մնացած հայրենակիցները ամենքն էլ իրան նման են,

ամենքն էլ նայն բնաւորութիւն ունին, նոյն ուղղութեան են ձգտում։

Հանգուցեալը յանձնում է իր կ տ ա կ ի կ ա տ ա րումը իրան նմաններին, իրանցից նշանակված կըտակակատարներին… նրանք էլ մտածում են՝ ինչի ինքներս օգուտ չը քաղենք կտակած գումարից, որ նրան պ ա հ ե ն ք… ինչի համար գործ դնենք գումարը,—աւելի լաւ չէ պահենք ու էլի դիզենք… խօ մեռնելու ժամանակ էլի կարող ենք եթէ ոչ բոլորը, գոնէ մի մաս կտակել բարեգործական, ազ գ ա յ ի ն նպատակով…

*Եւ փաստերի այս դեզեցիկ վերլուծումից Արծրունին գալիս հասնում է այսպիսի եզրակացութիւնների.*

Մինչեւ որ հայը իր կ ե ն դ ա ն ո ւ թ ե ա ն ժ ա մ ա ն ա կ բարի գործ չը գործէ, մինչեւ որ իր կենդանութեան ժամանակ հասարակական ոգի իրան չը սեփականացնէ,—մեր հասարակութիւնը երբէք առաջ չի գնայ…

Հայը իր կեանքի ժամանակ հասարակութեանը չէ ծառայում, նրան ոչինչ օգուտ չէ բերում, չէ գործ դնում ձեռքին ունեցած բարոյական եւ նիւթական միջոցները,—բայց պահանջում է որ իր մահից յետոյ հայրենակիցները իր կտակը կատարեն… սպասում է ուրեմն նրանցից այն հասարակական ոգին, այն հասարակական արժանաւորութիւնները, որ ոչ թէ միայն նոքա չեն կարող ունենալ, բայց որ նա ինքն էլ չունէր։

Եթէ մենք ինքներս մեր կեանքի ժամանակ ոչ թէ միայն բան չենք անելու, բայց եւ հ ա կ ա հ ա-

սարակական ընթացքը կը պահպանենք, եւ յետոյ կը պահանջենք որ մեր կտակակատարները այն անեն, ինչ որ մենք ինքներս ընդունակ չէինք անելու —հաւատացէք որ մեր յոյսերը միշտ խաբված կը լինեն...

Առաջադիմութիւնը մարդկային հասարակութեան մէջ կ տ ա կ ն ե ր ի միջնորդութեամբ չէ կարող ընթանալ,—այլ միայն հասարակութիւնը կազմող իւրաքանչիւր անհատի ա ն ձ ն ա կ ա ն ա շ խ ա տ ա կ ց ո ւ թ ե ա ն օգնութեամբ։

**Այսպէս ահա, Արծրունին մեր ուսանողական սուրբ հասկացողութիւններից մէկի ամբողջ աննպատակայարմարութիւնն էլ էր ցոյց տալիս։ Մենք սովորել էինք հարուստ աղաների կտակների վրա աչք տնկել, նրանցից սպասել մեր փրկութիւնը. բայց Արծրունին ասում էր. կտակներով առաջադիմութիւն չի լինի, աշխատեցէք ամենքդ, աշխատեցէք ձեր կենդանութեան ժամանակ, հասկացէք հասարակաց օգուտը այն ժամանակ, երբ դուք ապրում էք, կարող էք ձեր անձնական գործակցութեամբ նպաստել հասարակական գործին։**

**Տեսնելով այս անընդհատ յարձակումները մեր պակասութիւնների դէմ, այս մշտական բողոքները, այս անխնայ քննադատութիւնները, մենք կարող ենք կարծել թէ Արծրունին, ուրեմն, ոչինչ առաջադիմութիւն չէր տես-**

*նում մեր երկրի մէջ։ Ո՛չ, նա տեսնում էր, նա ուրախութեամբ էր արձանագրում ամեն մի երևոյթ, որ առաջ գնացող քայլի նշան ունէր։ Թէ որքան էր նա նշանակութիւն տալիս մեր կեանքի մէջ տեղի ունեցած փոփոխութիւններին, երևում է նրանից, որ 1873-ին նա արդէն ընդունում է որ Թիֆլիսում կարող է բացվել համալսարան։ Հինգ տարի էր անցել այն ժամանակից, երբ նա բոլորովին ապարդիւն էր համարում բարձրագոյն դպրոցի գոյութիւնը Կովկասում։ Բայց մինթէ այդքան կարճ միջոցում Թիֆլիսը այնքան փոխվեց, որ կարող էր համալսարանական կրթութեան վայր դառնալ։ Արծրունին գտնում էր որ փոխվել է Թիֆլիսը։ Ի հարկէ, ժողովուրդը նոյնն էր, ի հարկէ տեղացի ընտանիքը շարունակում էր իր դերը կատարել։ Բայց կար և այն հանգամանքը, որ այժմ, հինգ տարուց յետոյ, բաւականաչափ ինտելիգենցիա կայ հաւաքված Թիֆլիսում. այժմ շատացել են բարձր ուսում ստացածները և Արծրունին ասում էր. «Հիմի ժամանակ է»* (№ 31), *կարելի է համալսարան ունենալ, արդեօք պատրաստ է ժողովուրդը այդպիսի մի հիմնարկութիւն պահպանելու։*

*Տղամարդկանց կրթութիւնը Արծրունին այսքան առաջացած էր համարում։ Բայց կա-*

նանց կրթութեան վերաբերմամբ Նա այսքան մխիթարական եզրակացութեան հասնելու առիթ չունէր։ Համեմատում էր հայ կանանց վրացուհիների հետ և տեսնում էր որ վերջիններս աւելի բացված են, աւելի շատ են նուիրված հասարակական գաղափարներին, անհամեմատ բարձր են հայուհիներից նրանով, որ սիրում են իրանց մայրենի լեզուն, գրականութիւնը։ Հայ կինը շարունակում էր դեռ սառն, խորթ մնալ իր ազգի մտաւոր պահանջների վերաբերմամբ։ Իսկ առանց նրա օգնութեան չէ կարող լինել առաջադիմութիւն հայերի մէջ։ Հայ կնոջ այդ դրութիւնը այնքան յուսահատական է, այնքան վատ ազդեցութիւն ունի մեր մտաւոր շահերի տեսակէտից, որ Արծրունին, մի ճար գտնելու համար յայտնում էր մի շատ ինքնուրոյն միտք։ Նա ասում էր թէ լաւ կը լինի, որ գաղափարներին ծառայող երիտասարդը չամուսնանայ։

Աբեղայութիւնը հարկաւոր էր քրիստոնէութեան առաջին դարերում, երբ պէտք էր տարածել այդ կրօնը։ Նա հարկաւոր է մեր հասարակութեան պէս մի հասարակութեան մէջ էլ։

Սիրել կ ի ն, սիրել ը ն տ ա ն ի ք եւ միեւնոյն ժամանակրել սիրել մի գ ա ղ ա փ ա ր եւ սիրել մ ա ր դ-

կուԹիւնը,—մին միւսին ստրկում է։ Մէկը խըլում է մարդից այն ոյժը, այն եռանդը, որ հարկաւոր է գործ դնել միւսի վրա...

Վառված լինելով մի նոր գաղափարով, ոգեւորված լինելով մի նոր վարդապետուԹեան քարոզուԹեամբ եւ հասարակուԹեան մէջ նորան ընդունել տալու եւ արմատացնելու մտքով—մարդը վհատւէր նորանով յափշտակվելով, իր ամբողջ հոգին նորան նուիրելով, ստիպված է հեռանալ, փախչել կնոջից, ընտանիքից, որ մասամբ կը խլեն նրանից նրա յափշտակված, վառված եռանդը...

**Ֆրանսիացի գրող Պրուդօնը իր գրուածքներից մէկում ասել է որ նոր հասարակական, սօցիալական գաղափարներ տարածելու համար հարկաւոր է [illegible], կոյս կեանք, որ մարդը կարողանայ ամբողջովին նուիրուել իր գաղափարներին։ Արծրունին գտնում էր որ այդ խորհուրդը մանաւանդ օգտակար կը լինի հայերի համար, քանի որ կինը մեզանում չէ մասնակցում մեր մտաւոր շարժմանը։**

Մտաւոր կեանքով ապրող, նոր հասարակական գաղափարներ քարոզող հայը, պսակվելով ժամանակակից կրԹված հայ աղջկայ հետ, չէր գտնի նրա մէջ արձագանք իր այն մտքերի, որք կազմում են նրա համար ամբողջ կեանքի նպատակը, այլ կը գտնէր նրա մէջ միայն սառնուԹիւն, անտարբերուԹիւն դէպի իր իղէալը։

Ժամանակակից հայ երիտասարդը, որ զբաղված է իր հայրենակիցների բարոյական եւ մտաւոր վե-

բանորոգման գաղափարի քարոզութեամբ, պատահելով ժամանակակից կրթված հայ աղջկայ հետ, կը պատահէր նրա մէջ մի ապարդիւն ոյժ, մի անտարբեր սառնութիւն դէպի իր ամենասիրելի գաղափարները, եւ այդ հակառակ եւ սարսափելի անտարբերութիւնը մի անգամից կը սպանէր նրա մէջ կամ փոքր առ փոքր կը մեռցնէր նրա այն բոլոր ամենաթանկագին իղձերը, որ նա տարիներով մշակել է, իր սրտում օրօրել է, յայտնել է, քարոզել է, որոնց տարածելը, որոնց հասարակութեան մէջ սերմանելը եղել է նրա համար ամբողջ կեանքի միակ եւ վերջնական նպատակ... (1875, № 27)։

Բայց ինչպէս հասկանանք այն, որ առանց կնոջ համակրութեան, առանց նրա աջակցութեան՝ հասարակութեան մէջ առաջադիմական գաղափարներ չեն տարածվի։ Մի՞թէ հակասութիւն չէ. պէտք է կնոջ համակրութիւնը գրաւել, բայց միևնոյն ժամանակ չամուսնանալ կնոջ հետ՝ համարելով նրան արգելք, խոչընդոտ, սպանիչ ոյժ։ Արծրունին մի համարից յետոյ ասում է որ իր ասածների մէջ հակասութիւն չը կայ։ Եւ ահա ինչպէս.

Երբ որ մի նոր վարդապետութիւն քարոզողը ունի այդ զօրեղ դաշնակցին, որի ոյժի առջեւ ամեն բան հպատակում է—կնոջ համակրութիւնը—նա կարող է վստահ լինել որ իր վարդապետութիւնը հիմք ստացաւ, կընդունվի, կիրագործվի եւ երկար կեանք կունենայ։

Բայց իսկ այն պատճառով, որ այդ մաքուր, այդ

անկեղծ համակրուԹիւնը, այդ զօրեղ, այդ անյաղԹելի դաշնակցուԹիւնը այնքան Թանկագին է քարոզչի համար,—նա պէտք է ա ռ հ ա ս ա ր ա կ կ ա ն ա ն ց ս ր տ ի ն դիմէ, եւ ոչ Թէ գրաւէ մ ի կ ն ո ջ սիրտը մասնաւորապէս…

Եւ մինչեւ անգամ մի կնոջ սրտի գրաւած սէրը պէտք է զոհվի ընդհանրուԹեան օգտի համար։

Այդ է նշանակում կոյս մնալ, այդ է նշանակում զոհել կնոջ, ընտանիքի, զաւակների սէրը, գաղափարը սիրելու համար. այդ է նշանակում կենտրոնացնել իր ոյժերը, իր ամբողջ է ս ը գաղափարի ծառայուԹեանը նուիրելով։

Ընդհանուրի օգտի մասին մտածողը ի ր ա ւ ո ւ ն ք չ ո ւ ն ի մտածել եւ իր ա ն ձ ն ա կ ա ն բ ա ղ դ ա ւ ո ր ո ւ Թ ե ա ն վրա։

Վերացական գաղափար, հասարակական վերանորոգուԹիւն քարոզողը, վերջապէս մտաւոր արդիւնաբերողը իրաւունք չունի ինքն բ ա ղ դ ա ւ ո ր լինել…

Նա կ ա ր ո ղ է ձգտել բաղդին, բայց երբէք չ ը պ է տ ք է հասնի նորան։

Գուցէ բաղդը կը սպանէր նրա մէջ դիւրազգացուԹիւնը դէպի ամբոխի կարիքը…

Դատելով տեսականապէս, ճիշտ է այս բոլորը։ Գաղափարի քարոզիչը ամբողջապէս գաղափարին պիտի նուիրվի, ոչինչ չը պիտի խանգարէ նրան իր առաքելուԹիւնը կատարելու համար։ Աբրահամու համար այս տեսակ գործիչը մի իդէալ էր. «Էվէլինայի» մէջ էլ նա բարձրացրել է գաղափարական գործու-

նէութիւնը մասնաւոր, անհատական զգացմունքից. Ջարդված եսական երջանկութիւն հասարակաց բարիքի համար—սա այն զոհաբերութիւնն էր, որ Արծրունին պահանջում էր իսկական գործիչից։ Ինքը անձամբ զոհեց իր անձնական բարօրութիւնը, իր բարեկեցութիւնը՝ հասարակական շահերին ծառայելու համար։ Բայց պահանջելով անպայման մընալ, աբեղայական սկզբունք գործադրել գաղափարական առաքելութեան համար, Արծրունին մոռանում էր մի բան,—որ դա հակառակ է մարդկային բնութեան։ Եկեղեցու վերանորոգութիւնների հարցում նա պահանջում էր որ եպիսկոպոսներն ու վարդապետները ամուսնացած լինեն, կուսակրօնութիւնը համարում էր հակաբնական երևոյթ։ Ի՞նչպէս էր որ աշխարհական վարդապետութեան համար նա պահանջում էր կուսութիւն, հրաժարումն ընտանիքից, կնոջից, երեխաներից։

Եւ այդպիսի անձնուրացութեան, այդպիսի ծանր զոհաբերութեան քանիսները կարող էին ընդունակ լինել։ Կարող էին, ճիշտ է, լինել անհատներ, բայց դրանց հերոսներ պէտք էր համարել։ Մտաւոր քարոզութիւնը, գաղափարական գործունէութիւնը այն իսկ հողն է, որի վրա շատ յաճախ բռնկվում է սէր քարոզողի և ունկնդրի կնոջ մէջ։ Արծ-

*բունին պահանջում էր խեղդել այդ ոէրը, զոհել նրան։ Չենք վիճում, գաղափարի այդքան վիթխարի հերոսներ ցույց է և յաճախ պատահեն, բայց օրէնք դարձնել այդ բանը, ընդհանրութեան համար պարտադիր մի կարգ, —այդ անկարելի էր։ Եւ մենք պէտք է ընդունենք, որ Արծրունին այդքան խիստ պահանջներ դնում էր՝ ճնշված իրականութեան տակ։ 1891 թւականին Նա խոստովանում էր որ մի ժամանակ հայ կնոջ դրութիւնն այնպէս էր, որ հրապարակախօսը Նրա վերաբերմամբ քնքոյշ լինելու հարկաւորութիւն չէր զգում. հեռու էր հայ կինը մտաւոր գործունէութիւնից, Նա չէր կարդում, չէր հետաքրքրվում։ Եւ հրապարակախօսը, ենթարկված չը լինելով Նրա մեղմացնող ազդեցութեան, խիստ էր գրում, իր պահանջների մէջ անողոք էր։ Բայց հայ կինը միշտ այդ դրութեան մէջ չը պիտի մնար։ Նա սթափվեց, սկսեց առաջադիմել, հասկանալ ու սիրել հայ գրականութիւնը, հասարակական գաղափարները։ Եւ հրապարակախօսը պիտի փոխէր իր կարծիքը Նրա մասին։*

*Մենք, սակայն, պիտի Նկատի ունենանք այս հանգամանքը։ Անպատ, կոյս գործիչների պահանջի մէջ Արծրունին պաշտամունքի՝ կուլտի աստիճանին էր հասցնում հասարակա-*

կան գաղափարները։ Գլխաւորը, թանկագինը այս է։ Մեզ պէս մի ազգի մէջ, ուր սկզբից ևեթ թոյլ ու հաշմանդամ է եղել հասարակական, ընդհանրական շահերի հասկացողութիւնը, Արծրունու պէս մի գործիչի, հասարակական իդէալների այդ ֆանատիկոսի երեւան գալը արդէն մի բախտ էր մեզ համար…



«Մշակի» երկրորդ, երրորդ և չորրորդ տարիների ընթացքում աշխատակիցների, թղթակիցների թիւը գնալով ստուարանում է։ Հարստանում է մանաւանդ գաւառական բաժինը և Գրիգոր Արծրունին յաճախ դիմում էր գաւառներից գրողներին, նրանց ուշադրութիւնը հրաւիրում էր տնտեսական երեւոյթների վրա, ազգաբնակութեան կարիքները ուսումնասիրելու ծրագիրներ էր տալիս։ Ներքին տեսութեան մէջ տեսնում ենք Արծրունու բազմաթիւ յօդուածները, բայց այս բաժինը այլեւս այն ակադեմիական կերպարանքը չունի, ինչպէս առաջին տարում, երբ տպագրվում էին ընդհանուր սկզբունքներ բացատրող քաղաքատնտեսական և այլ յօդուածներ։ Այժմ յօդուածները աւելի մաս-

*նաւոր, առօրեայ, տեղական բնաւորութիւն էին կրում։ 1873 թուականի մայիս ամսից «Մշակի» մէջ իբրև թղթակից սկսում է գրել Ալէքսանդր Քալանթարը, «Մշակի» այժմեան*



*խմբագիրը։ Նա բնակվում էր Բագւում և իր թղթակցութիւնների մէջ գլխաւորապէս ու-*

չադրութիւն էր դարձնում նաւթային արդիւնաբերութեան վրա, որ այն ժամանակները դեռ նոր էր սկսել զարգանալ։ Բագուից անցնելով Մոսկվա՝ ուսում շարունակելու համար, Ալէքսանդր Քալանթարը այնտեղից սկսում է աւելի մեծ եռանդով աշխատակցել «Մշակին», մանաւանդ եօթանասնական թւականների վերջից։

Նոր աշխատակիցների թւում էր և Յովհաննէս Տէր-Գրիգորեանը, որ «Մշակի» երկրորդ տարվանից սկսում է գրել պատկերներ Թիֆլիսի կեանքից։ Այդ ժամանակ նա մօտ էր «Մշակի» խմբագրութեան, բայց ուսուցչի պաշտօնով գնալով գաւառները, թղթակցութիւններ էր գրում զանազան տեղերից. եօթանասնական թւականների վերջերում, երբ «Մշակը» դառնում է ամենօրեայ, Տէր-Գրիգորեանը խմբագրութեան մէջ աշխատող գլխաւոր աշխատակիցներից մէկն է դառնում։ Գրելով գլխաւորապէս ներքին տեսութեան յօդուածներ, թատրօնական քննադատութիւններ, երբեմն նաև վէպիկներ։ «Մշակի» մի քանի առաջնորդողների տակ մենք տեսնում ենք նրա ստորագրութիւնը։

Նոր աշխատակից էր և Սողոմոն Եղիազարեանը, որ «Մշակի» մէջ զետեղեց մի քանի պատկերներ գաւառական կեանքից (նա

Երևանեան Նահանգի Դավալու գիւղից էր)։

Արտաքին տեսութեան բաժինը նոյնպէս գնալով նւարստանում է։ Ճիշտ է, այժմ այլ ևս այնքան առատ չեն առաջին տարվայ խմբագրական տեսութիւնները, բայց դրանց փոխարէն երևան են գալիս մի չարք թղթակիցներ։ Պօղոս Իզմայլեանը Թիֆլիսում չէր, գնացել էր արտասահման և թղթակցութիւններ էր ուղարկում Պարիզից։ Բայց նա երկար չաշխատակցեց «Մշակին»։ Նրա տեղ Պարիզից սկսեց նամակներ ուղարկել Ցարոն, որ դասախօսութիւններ էր լսում հայագէտ Դիւլօրէի մօտ։ Նա գրում էր յաճախ, գրում էր շատ, գրում էր ոչ միայն ֆրանսիական կեանքի, այլ և մեր ներքին կեանքի հարցերի մասին։ Ցարոն քանի արտասահմանում էր, մեծ եռանդով էր աշխատակցում «Մշակին»; պաշտպանում էր «Մշակի» գաղափարները, Արծրունու արծարծած հարցերին արձագանք էր տալիս իբրև առաջադիմական գրող։ Վերադառնալով Թիֆլիս, նա շարունակեց աշխատել «Մշակի» մէջ, թէև ոչ առաջվայ եռանդով, մինչև 1878 թւականը։

Արտասահմանեան աշխատակիցների մէջ մեր յիշած ժամանակամիջոցում աչքի է ընկնում և Փիլիպպոս Վարդանեան, որ գրում էր Շվէյցարիայից։ Յաճախ թղթակցութիւն-

ներ էր գրում և բժշկապետ Գ. Բուչարեան։

Բայց «Մշակը» իր աշխատակիցների թը-ւում ունէր և օտարներ։ Թիֆլիսում մի քանի յօդուածներ տուեց ուսուցիչ Կարլ Հան, ազ-գով գերմանացի։ Իսկ Գերմանիայից մի ժա-մանակ թղթակցութիւններ գրում էին Միւլ-լէր և դօկտօր Ցան-Կրիկէն։ Վերջինս Արծ-րունի եղբայրների ուսանողական ընկերն էր և կապված էր նրանց հետ բարեկամական անկեղծ սիրով։ Ցան-Կրիկէն երկար չաշխա-տակցեց «Մշակին». նա մեռաւ 1875-ին, ծա-ղիկ հասակում։ Նրա մահացուցակը, որ գրել էր Անդրէաս Արծրունին, «Մշակը» զետեղեց առաջին երեսի վրա, սև շրջանակների մէջ (1876, № 17)։ Գրիգոր Արծրունին իր կողմից հետևեալ տողերը նուիրեց իր աշխատակցին.

Այս համարը հրատարակելով, մենք գտնվում ենք մի շատ տխուր - տպաւորութեան տակ։ Մեր սիրելի բարեկամ եւ աշխատակից Ց ա ն-Կ ր ի կ է ն ի մահվան անսպասելի լուրը յարուցեց մեր մէջ հե-տեւեալ տխուր մտածմունքները։ Միթէ նորերը, ի-թանց պատերազմը չը վերջացրած, պիտի գնան, պիտի թողնեն պշխարհը... Մեր ազնիւ բարեկամը, օտար լինելով, հետաքրքրվեց մեզանով, ուզեց օգնել մեզ, սկսեց աշխատակցել մեր նոր լրագրութեանը։ Եւ նա դեռ շատ երիտասարդ էր, նա դեռ կարող էր երկար ժամանակ իր տաղանդը արդիւնաւոր ա-նել մարդկութեանը...

Այսքան ջերմ համակրությունը դէպի մի օտարազգի երիտասարդ, որ մի քանի յօդուածներ էր տուել «Մշակին», դարձեալ հասկանալի և բնական է երևում, երբ մենք աչ-



Գրիգոր Արծրունի (1873)

քի առաջ ենք բերում այն հանգամանքները, որոնք շրջապատում էին Արծրունուն։ Օտարները համակրում էին, սիրում էին, իսկ հայերը։ Ինչպէս երևում է, հէնց այդ տարին էր, որ «Մշակի» շուրջը հաւաքված մարդկանց վերջնական զտումը տեղի ունեցաւ, հեռա-

ցան և նրանք, որոնք դեռ չէին հեռացել։ Եւ Արծրունին, ինչպէս պէտք է ենթադրել, նրանց հասցէին էր ուղղում իր «Դաւաճաններ» յօդուածը (1875, № 43)։ Այդտեղ նա նկարագրում էր մի նոր մարդու, որ վերջացնելով ուսումը, սկսում է մի գործ և տեսնելով որ իրան համակրում են համամիտ մարդիկ, սկզբում ուրախանում է։ Բայց որքան զարմանում և զայրանում է նա, երբ տեսնում է որ այդ համամիտները դիմակաւորված մարդիկ են, որ փոխանակ նոր ուղղութեան կուսակից լինելու, նրանք յետադիմական գաղափարներ են պաշտպանում և հին սերունդից էլ վատ յատկութիւններ ունեն։ Դրանց Արծրունին անուանում էր դաւաճաններ։ Հիներին պէտք է հարուածել, բայց կարելի է չատել։ «Իսկ նոր սերունդի դաւաճաններին մենք ատելով ատում ենք, և երդվում ենք նրանց միշտ ատելու և մեր բոլոր ոյժից հարուածելու և հալածելու»։ Եւ նա վերջացնում էր այդ յօդուածը հետևեալ տողերով.

Հիներից մենք ոչինք չէինք սպասում եւ ոչին չենք էլ սպասում, իսկ դոցանից, նորերից սպասում էինք...

Դիմակներդ լաւ չեն ծածկում ձեր երեսը, գի-

տուԹեան, յաւիտենական ճշմարտուԹեան, ազատամտուԹեան եւ նոր ուղղուԹեան դաւաճաններ...

Հիներին մենք խղճում ենք,—իսկ ձեզ, դաւաճաններ, ատելով ատում ենք։

*Եւ իրաւ Արծրունին երբէք չխնայեց դաւաճաններին, երբէք չը դադարեց նրանց հալածելուց։ Նա գիտէր անողորմ կերպով դուրս չպրտել ամէն մէկին, որ դաւաճանում էր իր դրօշակին, իր ուղղութեան։ Այս առիթով էլ շատ ու շատ գանգատներ են լսվել մեզանում։ Բայց կարելի՞ է մեղադրել Արծրունուն։ Յիշենք քիչ վերևում բերած նրա պահանջները։ Հասարակական գործունէութեան նուիրված մարդուց նա պահանջում էր կատարեալ անձնազոհութիւն. նա չէր թոյլ տալիս որ հասարակական գործիչը իրաւունք ունենայ անձնական երջանկութեան մասին անգամ մտածելու։ Այդքան վեհ, այդքան սըրբազան բարձրութեան վրա դնելով հասարակական օգուտը, նրան ծառայելու անհրաժեշտութիւնը, կարո՞ղ էր Արծրունին ուրիշ կերպով վարվել դաւաճանների հետ։ «Դաւաճանները միշտ աւելի ատելի են, քան պարզ թշնամիները», ասում է նա։ Եւ ո՞վ կարող է ուրանալ այս ճշմարտութիւնը...*

*Եղած աշխատակիցների, հաւատարիմ մը-*

նացածների մէջ մենք առանձնապէս պիտի խօսենք երկուսի մասին—Անդրէաս Արծրունու և Րաֆֆիի մասին։

Անդրէասը, ինչպէս տեսանք, Թիֆլիս եկաւ 1874-ի սկզբում։ Ներսիսեան դպրոցի տես-



Անդրէաս Արծրունի

չութիւնը չաջողվեց և երիտասարդ գիտնականը, մի տարի մնալով Թիֆլիսում, մեծ եռանդով աշխատակցում էր «Մշակին»։ Գրում էր նա գլխաւորապէս իր մասնագիտութեան վերաբերված յօդուածներ, բայց միանգամայն խորթ չէր մնում հասարակական ըն-

թացիկ հարցերին։ Ամառը Անդրէաս Արծրունին մի երկար ճանապարհորդութիւն կատարեց Կովկասի զանազան կողմերում՝ ընտական հարստութիւնները ուսումնասիրելու համար. այցելեց Լոռին, Գանձակի գաւառը, գնաց Բագու, Դաղստան... Իր այցելած բոլոր տեղերից նա թղթակցութիւններ էր ուղարկում «Մշակին», որոնց մէջ նկարագրում էր իր հետազօտութիւնների արդիւնքները։ Առանձին ուշադրութիւն դարձրեց նա Ղուբայում տորոնի արդիւնագործութեան վրա։ Տորոնը Կովկասի արդիւնագործութեան մէջ շատ խոշոր դեր է կատարել, բայց եօթանասնական թուականների սկզբից սկսել էր սաստիկ ընկնել, որովհետև գտնվել էր ալիզարին անունով գոյնը, որ իր էժանութեամբ դուրս էր մղել տորոնը։ Ղուբայում արդէն տագնապ էր տիրում և Անդրէաս Արծրունու, իբրև մասնագէտի, կարծիքներն ու խորհուրդները մեծ նշանակութիւն ունէին արդիւնագործների համար։ Եւ Անդրէասը խղճմտաւոր հետազօտութիւններ կատարեց, յայտնեց իր եզրակացութիւնները «Մշակի» մէջ։ Բացի դրանից, նա տպագրեց մի շարք յօդուածներ Կովկասեան հանքերի մասին, ուշադրութիւն հրաւիրեց այն հանգամանքի վրա, որ ծծումբի արդիւնագործութիւնը կա-

րող է հարստութեան մեծ աղբիւր դառնալ Կովկասի համար։ Թիֆլիսում, ինչպէս տեսանք, նա դասախօսութիւն էլ կարդաց ծըծումբի մասին։

Իր հայրենիքում երիտասարդ գիտնականը շատ օգուտներ կարող էր տալ իր մասնագիտական պատրաստութեամբ։ Մեր երկիրը այդպիսի ոյժերի կարօտութիւն ունէր՝ իր բնական հարստութիւնները երևան հանելու համար։ Բայց Անդրէաս Արծրունին մեզանում տեղ չը գտաւ, չը նայած իր պատրաստականութեան, աշխատելու յօժարութեան։ Եւ չը գտնելով իր ոյժերի, իր ընդունակութիւնների գործադրութեան տեղ և յարմարութիւն, նա հեռացաւ մեր անհիւրընկալ երկրից, գնաց աշխատելու քաղաքակիրթ մարդկութեան մէջ, իր հայրենիք դարձրեց Գերմանիան, ուր նրա համար պատրաստված էր յայտնի գիտնականի փառքը...

Ճանապարհ դնելով իր եղբօրը, Գրիգոր Արծրունին իր դառն գանգատները թափեց՝ «Գաղթենք, միշտ գաղթենք» առաջնորդող յօդուածի մէջ (1875, № 10)։

Դարձեալ մի երիտասարդ, եւրոպական ուսում ստացած, Թողնում է մեր երկիրը եւ գնում է օտար երկիրներ՝ իր ստացած հմտութիւնները գործ դնելու համար։

Մեր երիտասարդները գալիս են մի քանի ժամանակով, տեսնում են որ գործադրութիւն չը կայ իրանց հմտութիւններին,—եւ կրկին գնում են։

Ո՞վ է մեղաւոր...

Իրանք։

Նրանք պիտի գիտենային, որ մեր երկրում ոչ թէ միայն հարկաւորութիւն չը կայ բուն գիտութեան, բայց եւ տեխնիկական արհեստները գրեթէ բոլորովին գործադրութիւն չեն գտնում մեզ մօտ։ Մեր երկրում, ինչպէս մենք մի անգամ ասացինք, գործ են դրվում միայն ամենաստոր արհեստները՝ դերձակութիւն, կօշկակարութիւն... ինչի այդ չը սովորեցին...

Եկան գինեգործներ,—ինչ հարկաւոր են մեզ գինեգործներ. եկան գիւղատնտեսներ,—ինչ հարկաւոր է մեզ գիւղատնտեսութիւն. եկան բարձր բազմարվեստեան դպրոցում աւարտած երկրագործներ,—ինչ հարկաւոր է մեզ երկրագործութիւն... վերջապէս եկան հանքաբաններ,—ինչին են պէտք մեզ հանքաբաններ։

Ուզում էք մնալ ձեր սիրելի հայրենիքում, կամենում էք որ ընտանիքը ձեզ գնահատէր, որ հասարակութիւնը ձեզ ընդունէր,—պիտի սովորէիք ամենաստոր արհեստներ, որ ոչ բուն գիտութեան, ոչ էլ նրա տեխնիկական գործադրութեան վրա են հիմնըված,—պիտի սովորէիք՝ կօշիկներ կարել, շոր ձեւել ու կարել, ձի նալել...

Իսկ դուք վերադառնում էք ճշմարիտ գիտութենով, վերադառնում էք տեխնիկական, բազմարվեստեան հմտութիւններով... ումից էք սպասում օգնութիւն... հասարակութենից, ծիծաղելի բան է։ Գուցէ կարծում էք որ այս կամ այն ա ղ ա ն, որ

*այս կամ այն հաստափորը կը խոստովանի որ դուք նրանից աւելի էք հասկանում, ու կը տայ ձեզ գործ՝ մինը իր խաղողի այգիների, միւսը իր ֆաբրիկայի կառավարութիւնը… սխալվում էք։*

*Եւ չը կայ էլ ոչինչ կառավարելու. ամենալաւ կապիտալիստները այնպէս են կառավարել իրանց կայքը, որ այժմ մէկը չը կայ, որ գիտենար՝ ինչ ունի, ինչ չունի…*

*…Չունէք հարստութիւն, իսկ ունենալով գիտնական, տեխնիկական հմտութիւններ, աւելորդ էք դեռ եւս մեզ համար… մի ամենաստոր եւ ապրուստը ապահովող արհեստն էլ չը գիտէք… պէտք է կրէք ձեր արած սխալմունքի պատիժը։*

*Սխալմո՛ւնք,—ոչ, յանցանք։ Այդ յանցանքը նորանումն է կայանում, որ դուք հաւատացիք մեր հասարակութեան խոստումներին, եւ չը գիտէիք որ խաբված էք…*

*Դուք սխալվեցաք, պէտք է կրէք ձեր արած սխալմունքի պատիժը,—եւ պէտք է գաղթէք…*

*Երեւի հայի ճակատագիրն է գաղթել, անդադար գաղթել… որովհետեւ հայ հասարակութիւնը վճռել է մնալ անշարժ, երդուել է յաւիտենական անշարժութեան գաղափարին…*

*Իսկ ինչ որ յայտնվում է նրա մէջ նոր, թարմ, առաջ մղող, զարկ տուող,—նա պէտք է դուրս գցվի, աքսորվի, ժայթքվի նրա միջից…*

*Մեր ժամանակակից հայ հասարակութիւնը կարծում է որ կարող է հայ մնալ միայն մի պայմանով, այն է անշարժ մնալով։ Իսկ եթէ մի որեւէ շարժում, առաջադիմութիւն ընդունեց,—նա այլ եւս իրան հայ չէ համարում…*

*Այս է հայի պատմական յատկութիւնը։*

Հետեւեցէք, հետեւեցէք այդ զովնղի յատկութեանը, գաղթել տուեցէք, ստիպեցէք ձեր վարմունքով գաղթել օտարութեան մէջ այն բոլորը, ինչ որ բացառութեամբ ձեր մէջ յայտնվում է՝ *նոր, թարմ, առողջ, բարոյապէս եւ մտաւորապէս բարձր*...

Բայց չը մոռանաք որ վերջը դուք ինքներդ կը պատժվէք այդպիսի հակաընկերական վարմունքի համար...

Գիտես, հասարակութիւն, քո վարմունքը քո որդիների վերաբերութեամբ ինչպէս է անուանվում՝ *հասարակական անձնասպանութիւն*։

Այն ժամանակ, երբ Արծրունին գրում էր վրդովված սրտից բղխած այս կծու, բայց զարմանալի ճշմարիտ տողերը, Թիֆլիսից նոյն գաղթողի դրութեամբ հեռացել էր և «Մշակի» միւս մշտական աշխատակիցը՝ Րաֆֆին։ Վաճառականի խանութում ծառայելը այլ ևս անկարելի էր դարձել յուսատու գրողի համար. «Մշակի» շրջանը այն ազդեցութիւնն էր արել նրա վրա, որ նա թողեց խանութը։ Բայց գրական աշխատանքը դեռ ոչ մի հայ գրողի համար ապրուստի միջոց չէր դարձել. Րաֆֆին ստիպված եղաւ ուսուցչութեան ասնից գնալ և ճանապարհվեց Թավրիզ ուսուցչի պաշտօնով։ Բայց իր կապը չը կտրեց «Մշակից», և Պարսկաստանից

էլ շարունակեց իր աշխատակցությունը։ Ի՞նչ էր նա տուել մինչև 1875 թուականը։

Վերջացնելով Պարսկաստանի նամակները «Մշակի» երկրորդ տարվայ մէջ, Յակոբ Մէլիք-Յակոբեանը երկար ժամանակ երևան չէր գալիս լրագրում Րաֆֆի ստորագրութեամբ։ Դրա փոխարէն մենք յաճախ հանդիպում ենք Մէլիքզադէին։ Բայց նա երեք տարվայ ընթացքում կարծես չէ զգում իր իսկական կոչումը—վիպագրութիւնը, թէև 1874-ին առանձին գրքով հրատարակել էր «Փունջի» երկրորդ հատորը, որի մէջ կային փոքրիկ գեղեցիկ վէպիկներ։ «Մշակի» մէջ նա ամբողջ այդ ժամանակամիջոցում ունի «Մի օրավար հող» պատկերը միայն։ Մնացած նրա գրուածքները գրական-հրապարակախօսական բնաւորութիւն ունէին։ Թւում էր թէ նա հեռանում էր վիպագրութիւնից և իր կոչումը որոնում էր քննադատական և հրապարակախօսական հարցերի մէջ։ Նշանակութեան արժանի է, որ Րաֆֆին այդ ժամանակներում առանձին ուշադրութիւն է դարձնում թիւրքահայերի գործերի վրա։ Մի առանձին աշխոյժով նա հետևում էր Թիւրքիայի կեանքին և «Մշակի» մէջ ընդարձակ յօդուածներ էր գրում, որոնց նիւթը թիւրքահայերի ընթացիկ հրատապ հարցերն էին—Հասունեան

խառնակութիւնները, Խրիմեանի պատրիարքութիւնը և նրա շուրջը գործող կուսակցութիւնները, Վանի տխրահռչակ Պօղոս վարդապետը, Սրուանձտեանի գրական աշխատութիւնները և այլն։

Գեղարուեստական բաժինը «Մշակի» մէջ դեռ թոյլ է։ Յովհաննէս Տէր-Գրիգորեանի, Սողոմոն Եղիազարեանի և ուրիշների պատմուածքները թոյլ են, անմշակ են, չատ-չատ միայն բարքերն են կարողանում պատկերացնել։ Վիպագրութիւնը առհասարակ մեր գրականութեան մէջ դեռ մտածելու նիւթեր չէր տալիս, ռէալական տիպեր և կեանքի հանգամանքներ չէր լուսաբանում։ Դեռ իր առաջնութեան մէջ էր թատերագրութիւնը։ Սունդուկեանի «Քանդած Օջախը» և «Էլի մէկ զոհը» նոր-նոր յայտնութիւններ էին մեր գրականութեան մէջ և Արծրունին մեծ հաճութեամբ զբաղվում էր տաղանդաւոր թատերագրողի ստեղծած տիպերով թէ իր առաջնորդողների, թէ ֆելիէտօնների մէջ։ Բեմը՝ մերկացնող հրապարակախօսութեան դաշնակիցն էր դառնել։ «Մեր բարձր ուսում ստացած Օսէփներ», «Հին և նոր սերունդի պատերազմը բեմի վրա» առաջնորդողները գրված են «Քանդած Օջախի» և «Էլի մէկ զոհի» առիթով։

Նկատենք այստեղ որ «Մշակի» մէջ առաջին տարվանից առանձին աչքի ընկնող երևոյթ է դառնում գրական քննադատութիւնը։ Մատենախօսական յօդուածները բազմանում են մանաւանդ յետագայ տարիներում։ Այդ բաժնում ամենից շատ աշխատում էր Րաֆֆին. նա է գրել քննադատական յօդուածներ և Սունդուկեանցի պիէսների մասին։

Իսկ ոտանաւորներ «Մշակը» երբէք չէր տպագրում։

---

# ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՆՇԱՆԱՒՈՐ ՇՐՋԱՆ

### I

*Հասարակական շարժում Ռուսաստանում։—Սլաւօնական երկիրներ եւ ազատարար հոսանք։—Նոր շրջան մեր կեանքի մէջ։—Բալկանեան դէպքերը։—Արծրունին թիւրքահայերի դրութեան մասին։—Ամենքը յարձակվում են Արծրունու վրա։—Պատմական տեսութիւն. գաւառների ձգտումը դէպի Ռուսաստան։—Պատրիարքարանի եւ ազգային ժողովի գործերը։—Արծրունու նշանաբանը—յոյս միայն Ռուսաստանի վրա։—«Մեղուի» հակառակութիւնը։—«Փորձ» հանդիսի դատողութիւնները։—Ի՞նչ է կղերականութիւնը։—Կ. Պօլսի մամուլը Արծրունու դէմ։—Գաղթականութեան հարց. «Մենք էլ հրէաներ ենք»։—Ներսէս պատրիարքի շրջաբերականը, Արծրունու առաջին յարձակումը Ներսէսի դէմ։—Կ. Պօլսում սարքված առասպել Կովկասի մասին։—«Մասիսի» յօդուածը։—«Այժմ կամ երբէք»։—*Восточный Вопросъ *բրօշիւրը։—Թիֆլիսի հայերի ուղերձը։—Դեսպանաժողով։—«Ազգասիրական խաբեբայութիւն»։—Վանի հրդեհը։—Հայի հոգեբանութիւնը։*



Առաջադէմ ազգերի կեանքը շատ անգամ ներկայացնում է մի պատկեր, որը մենք կարող ենք նմանացնել ծովի մակընթացութեան

և տեղատուութեան։ Տեսնում ենք այդ կեանքի մէջ ամբողջ շրջաններ, երբ բարձրանում, լեռնանում է գաղափարական շարժումը, ողողում է առօրեայ մոխրագոյն իրականութեան բոլոր շարքերը, երբ ազգի բոլոր ստեղծագործական ընդունակութիւնները լարվում են, միանում են մի մեծ պաշտամունքի առաջ և միաբան գործակցութեամբ իրագործում են ամբողջ մարդկութեան համար սուրբ մի միտք։ Սա մակընթացութիւնն է, տենդային եռանդի այն լարումը, որ կլանելով ազգի ամբողջ ուշքն ու միտքը, տանում է նրան դէպի համաշխարհային մեծագործութիւնները՝ արհամարհել տալով ամեն մի զրկանք, ամեն մի զոհողութիւն։ Եւ շարունակվում է այդ շարժումը, մինչև որ գալիս է տեղատուութիւնը, և ուռած գաղափարականութիւնն իջնում է, ընկնում, որպէս զի դարձեալ առօրեայ, սովորական կարգը գայ տիրելու։

Մենք էլ, ռուսահայերս, մեր կեանքի մէջ ճաշակել ենք այդպիսի մի երկու շրջանների նուիրական ազդեցութիւնը։ Ճաշակել ենք ասում, որովհետև մենք, իբրև մի փոքրիկ ազգ, որ ենթարկված է մեծ ազգերի մտաւոր և կուլտուրական ազդեցութեան, չէինք կարող ինքնուրոյն, անկախ, ինքնագլուխ շարժումներ սկսել։ Մենք միշտ իւրացնում

էինք, միշտ ենթարկված էինք. մեր դաստատուն, մեզ ոգևորողը մեզ վրա տիրող մեծ ազգի կեանքն էր։ Տանզիմաթներորդ դարում Ռուսաստանը երկու անգամ գաղափարական մեծ շարժումներ է սկսել և այդ երկու շարժումներն էլ արձագանք են գտել մեր կեանքի մէջ։

Վաթսունական թւականների մեծ շարժման հետ մենք արդէն լաւ ծանօթ ենք։ Ներքին բարեկարգութեան, ինքնաճանաչութեան, ժողովրդական դառի այդ գեղեցիկ շարժումը քնած հասարակութեան մէջ յարուցեց գաղափարական գործիչներ, առաջադիմութեան առաքեալներ. Նազարեանց, Նալբանդեանց, Գամառ-Քաթիպա, Շահազիզ այդ ժամանակների ծնունդներ են, Գրիգոր Արծրունին վաթսունական թւականների իդէալների վրա ստացաւ իր առաջին դաստիարակութիւնը։

Բայց վաթսունական թւականներին մենք դեռ նոր-նոր էինք սկսում զգալ, ապրել. շարժումը մասնաւոր ազդեցութիւն արաւ մեզ վրա։ Այդպէս չէր երկրորդ մեծ շարժումը, որ սկսվեց Ռուսաստանում 1875—1876 թւականներին։ Վաթսունական թւականների շարժումը ազատեց միլիօնաւոր ճորտերին Ռուսաստանի խորքերում, իսկ եօթանասնական թւականներին նոյն այդ ազատված Ռուսա-

տանը ցոյց է տալիս համաշխարհային նոր պատմութեան մէջ շատ հազուադէպ մի մեծագործութիւն. Նա ահագին շարժում է սկսում մի բարբարոս պետութեան լուծի տակ ճնշված ազգերը ազատելու համար։ Կանգնած համարեա ամբողջ Եւրոպայի թշնամական, կասկածոտ, սառն վերաբերմունքի առաջ, նա մենակ, սեփական ոյժերի վրայ յոյս դրած, սկսում է մի ագիտացիա յանուն արդարութեան, մարդկային իրաւունքների, քրիստոնէական գաղափարի. ռուս ժողովուրդը բորբոքվում է ազատարար տենչանքներով, հրապարակ է հանում իր նիւթական և բարոյական ոյժերի մի ահագին պաշար և ալեոր, բարբարոսական Արևելքում նրա ջանքերով տեղի են ունենում ահաւոր դէպքեր, որոնք կերպարանափոխում են շատ փոքր ազգերի պատմութիւնը։

Այդ խոշոր շարժումը աւելի մեծ արձագանք է տալիս մեզանում և մեր կեանքի մէջ առաջ է գալիս մի շատ նշանաւոր, շատ փայլուն շրջան, որը մենք կարող ենք անուանել 1876—1883 թւականների շրջան։ Ոչ միայն տասնիններորդ դարում, այլ և նրանից էլ առաջ, դարերի մի երկար շարքում մենք չենք կարող գտնել մեր ազգային կեանքի տարեգրութիւնների մէջ այդքան փայլուն մի եօթնեակ։ Այդ ժամանակը մի անկիւնա-

քար է կազմում մեր պատմութեան մէջ. մեր ժողովրդական կեանքը ստանում է մի նոր ուղղութիւն՝ ասպարէզ հանելով մեր բոլոր մտաւոր կարողութիւնները։ Գրականութեան, մամուլի, դպրոցական գործի, թատրոնի, հասարակական հիմնարկութիւնների համար զարգացման, բարգաւաճման ոսկէ շրջան է դա։ Հրապարակախօսութիւնը աւելի ևս կրակոտ թափ է ստանում, գեղարուեստական գրականութիւնը մեծ թռիչք է անում. Գամառ-Քաթիպան իր նոր երգերն է գրում, Րաֆֆին մեր նոր վիպագրութիւնն է սկսում իր «Ջալալէդդինով», «Խենթով», «Դաւիթ-բէկով», «Կայծերով»։ Մենք հիմնում ենք ամենօրեայ լրագրութիւն, մամուլի նոր օրգաններ են ծնվում։ Հայոց թատրոնը Ադամեանի փառաւոր շրջանի մէջ է մտնում։ Հիմնվում են բարեգործական և հրատարակչական ընկերութիւններ, բազմանում են դպրոցները, մանկավարժական հարցերը վէճերի նիւթ են դառնում, ուղղութիւններ են ստեղծում, ուսուցչական ժողով գումարում։ Ոչնչանում է անջրպետը ռուսահայերի և թիւրքահայերի մէջ և Հայաստանի գաւառների կրթական գործը դառնում է արևելեան և արևմտեան միացած, մոտեցած հայութեան ընդհանուր սուրբ գործը։ Ո՛րքան եռանդ ժողովրդի զարկերակի մէջ,

*որքան հիւթ նրա կեանքի մէջ. գաղափարներ, ձգտումներ, ապագայի վարդագոյն յոյսեր— այս եռուն նիւթերից էր խմորվում շարժումը։*

*Հատորներ են հարկաւոր այդ եօթնամեակի ամբողջ պատմութիւնը ներկայացնելու համար։ Բայց այդ պատմութեան նոյն իսկ համառօտութիւնն անգամ այժմ չէ կարելի տալ օրինաւոր կերպով. դեռ ժամանակը չէ եկել, դեռ հանգամանքները չեն թոյլ տալիս ազատ ու համարձակ մտնել այդ շըրջանի մէջ։ Մեր ընթերցողների ուշադրութիւնը հրաւիրելով այս տողերի վրա, մենք կը փորձենք, որքան հնարաւոր է, գոնէ համառօտ կերպով յիշատակել դէպքերը և եղելութիւնները։*

*Ապագայ պատմագիրը, կասկած չը կայ, կը վկայէ անաչառութեամբ, որ այդ նշանաւոր ժամանակների ամենախոշոր գործիչներից մէկը Գրիգոր Արծրունին էր։ Եւ այս իրողութիւնը արձանագրելու համար նա կունենայ իր առջև փաստերի մի ամբողջ կոյտ։ Դա «Մշակ» լրագիրն է։ Նշանաւոր եօթնամեակի ամբողջ պատմութիւնը որքան առատ նիւթեր ունի «Մշակի» հատորների մէջ. այնտեղ արձանագրված է իւրաքանչիւր քայլ, իւրաքանչիւր միտք, դիտաւորութիւն, դէպք։ Ինքը, Արծրունին, իր յետագայ գրուածքնե-*

*րից մէկում* *) *ասում է որ այդ ժամանակներում «Մշակը» յարուցեց այնպիսի հարցեր, «որոնց յետոյ երբէք այլևս չը կարողացաւ յարուցանել», որ «ա ռ ա ջ ն ո ր դ ո ղ յօդուածը ամենից մեծ դեր էր խաղում և ամենից շատ տեղ էր բռնում «Մշակի» համարներում»։ Դա, ասում է Արծրունին, «Մշակի» ամենափայլուն ժամանակն էր։*

*Յայտնի է, որ Ռուսաստանի շարժումը սլաւօնասիրական խիստ գոյն ունէր։* 1875 *թ. ապստամբութիւն ծագեց Բօսնիա և Հերցեգովինա սլաւօնական նահանգներում. Թիւրքաց կառավարութիւնը, իր վաղեմի սովորութեան հետևելով, սկսեց արեան և գազանութիւնների մէջ խեղդել այդ ապստամբութիւնը։ Բայց այս անգամ զոհերի ձայնը անլսելի չը մնաց, որովհետև սլաւօն ռայեայի հզօր պաշտպան հանդիսացաւ Ռուսաստանը։ Եղելութիւնը քաղաքական մեծ հարցի կերպարանք ընդունեց։ Ռուսաստանը դիմեց եւրօպական դիպլօմատիայի աջակցութեան և ամեն ջանք գործ դրեց, որպէս զի հարցը խաղաղ լուծում ստանայ և ապստամբութեան տեղերում մտցնվեն րէֆօրմներ, որոնք պիտի ապահովէին քրիստոնեաների կեանքն ու ստացուածքը։*

---

*) «Մշակ», 1889, № 5։

Մինչդեռ դիւանագիտութիւնը իր գրագրութիւններն էր սկսել, մինչդեռ առաջարկութիւններ էին անում Թիւրքիային և նրանից բացատրութիւններ էին ստանում, Ռուսաստանում սկիզբ առաւ և լայն չափերով տարածվեց ապստամբներին օգնութիւն հասցնելու գործը։ Լրագիրներում տպագրվեցին Սերբիայից, Չերնոգորիայից եկած կոչերը, որոնց մէջ սրտաշարժ գոյներով նկարագրվում էին ազատութեան համար զէնք վերցրած սլաւօնացիների դրութիւնը, երկրի աւերումը, արիւնահեղութիւնները, Թիւրքական գազանութիւնները։ Օգոստոսի կէսին Սլաւօնական Բարեգործական Ընկերութիւնը սկսեց գործել, նուէրներ հաւաքել. ազգաբնակութեան բոլոր խաւերի մէջ նա ջերմ համակրանք գտաւ և չորս ամսվայ ընթացքում կարողացաւ Բօսնիա և Հերցեգովինա հասցնել մօտ 400 հազար րուբլու օգնութիւն։ Այդ օգնութիւնից աւելի կարևոր էր այն, որ Ռուսաստանի մէջ կազմվում էր հասարակական կարծիք, թէ չը պէտք է ոչինչ զոհողութիւն խնայել՝ տանջվող եղբայրներին Թիւրքաց լուծից ազատելու համար։

Խաղաղասէր Ալէքսանդր Երկրորդը աշխատում էր փոխադարձ համաձայնութիւնների և զիջումների միջոցով կարգաւորել արևելեան

հարցը, որ սպառնում էր ահաւոր բռնկումով տակն ու վրա անել ամբողջ քաղաքական աշխարհը։ Սակայն դիւանագիտական ջանքերը զուր էին անցնում, Եւրօպան սովորել էր կասկածով նայել Ռուսաստանի վրա, ենթադրելով այս անգամ էլ թէ սլաւօնասիրական շարժումը ծածկում է ռուսաց փառասիրական-նուաճողական ձգտումները։ Անգլիան սկսեց դիմադրել Ռուսաստանի պահանջներին և Թիւրքամոլ Դիզրայէլիի կառավարութիւնը ամեն քայլում զգալ էր տալիս սուլթանին որ նա մենակ չէ և կարող է վստահութեամբ առաջ տանել ձգձգումների, անպտուղ խոստումների քաղաքականութիւնը։

Իսկ դէպքերը Բալկանեան Թերակղզում զարգանում էին ճակատագրական ընթացքով և աւելի ու աւելի արծարծում էին այն հրդեհը, որ վառուել էր Բօսնիա-Հերցեգօվինայում։ Եկաւ 1876 նշանաւոր թուականը, նշանաւոր այն ահեղ ցնցումներով, որոնց ասպարէզը Թիւրքիան էր։ Ռուսաստանի եռանդուն միջամտութիւնը վառեց մահմեդական ֆանատիկոսութիւնը։ Գարնանը եւրօպական Թիւրքիան արիւնոտուեց։ Կ. Պօլսում գահընկէց եղաւ և սպանուեց սուլթան Աբդիւլ-Ազիզը. սպանուեցին Թիւրք մինիստրներից երկուսը. Սալօնիկում մահմեդական ամբոխի ձեռքով

չարաչար սպանվեցին եւրոպական երկու հիւպատոսներ. Բոլղարիայում ապստամբութիւն բարձրացաւ և Թիւրքերը այնտեղ այնպիսի զարհուրելի գազանութիւններ գործեցին, որ սարսափի աղաղակ բարձրացաւ Եւրոպայում և պետական մեծ գործիչ Գլադստոնը սկսեց իր հռչակաւոր արշաւանքը Դիզրայելիի Թրքամոլ մինիստրութեան դէմ, որ բարբարոս Թիւրքերի պաշտպան էր հանդիսացել և չէր Թոյլ տալիս որ քրիստոնեաները ազատվեն մօնգօլական անիծված լուծից։

Արևելքի հրդեհը այլ ևս ոչ մի կերպով չէր կարելի հանգցնել։ Դէպքերը յաջորդում էին իրար շշմեցնող արագութեամբ։ Ամառը Սերբիան և Չերնօգօրիան պատերազմ յայտարարեցին Թիւրքիային։ Աբդիւլ-Ազիզի յաջորդ սուլթան Մուրադը նոյնպէս գահընկէց եղաւ և փակվեց Ստամբուլի պալատներից մէկում իբրև խելագար։ Ռուսաստանի համակրութիւնը դէպի ապստամբված և պատերազմող սլաւօնները անհագին չափեր ընդունեց. հասարակական կարծիքը լարման ծայրայեղ աստիճանին հասաւ. խումբ-խումբ կամաւորներ Թափվեցան Սերբիա՝ իրանց արիւնը նուիրելու ազատութեան գործին։ Դա մի ամբողջ խաչակրաց արշաւանք էր յանուն

քրիստոնէութեան, յանուն արդարութեան և մարդկային նուիրական իրաւունքների։

Որքան էլ եւրոպական պետութիւնների համար ցանկալի էր որ արևելեան արիւնոտ հարցը սուր կերպարանք չընդունէ, չը պահանջէ իր արմատական, միակ հնարաւոր լուծումը քրիստոնեաների ազատութեան միջոցով, դէպքերը անհամեմատ զօրեղ հանդիսացան և արեան ու արտասունքների իրականութիւնը խլացրեց միջազգային քաղաքական հարցերը, դառնալով ուշադրութեան և ընդհանուր հոգացութեան միակ առարկայ։ Ռուսաստանը անտարբեր չէր, և ոչ ոք չէր կարող խեղդել արևելեան հարցը։ Ալէքսանդր II կայսրը բոլորովին հարկաւոր չէր համարում ծածկել որ իր կամքն է մարդավայել կեցութիւն ստեղծել Թիւրքիայում քրիստոնեաների համար. դա Ռուսաստանի պատուի, հեղինակութեան հարց էր դարձել, և նահանջման ճանապարհ այլ ևս չը կար։ Կայսրը գործում էր համբերութեամբ, նա ամենից առաջ ուզում էր որ արևելեան հարցի արդարացի լուծումը կատարվի եւրոպական պետութիւնների համաձայնութեամբ. իսկ եթէ եւրոպական համաձայնութիւնը անկարող կը լինի իրականացնել քրիստոնէութեան և մարդկայնութեան պահանջները, այն ժա-

մանակ Ռուսաստանը կը գործէ մենակ, իր սեփական միջոցներով։

Այս հաստատակամութիւնը, այս բացարձակ, անդառնալի վճիռը այլ ես ոչ մի կասկած չէր թողնում որ արեւելեան հարց անունը կրող դարաւոր հանգոյցը միայն ռուսաց սրով պիտի կտրվի։ Թիւրք-սերբիական պատերազմի ժամանակ արդէն մի աւելի մեծ, աւելի ահաւոր պատերազմի հոտ էր փչում, ռուս-թիւրքական պատերազմի հոտը։ Թէև դիպլօմատիան դեռ չարունակում էր ջանքեր թափել, բայց Ռուսաստանը, յոյս չունենալով ոչ Եւրօպայի բարեացակամութեան, ոչ էլ Թիւրքիայի խոստումների անկեղծութեան վրա, իր պատրաստութիւններն էր տեսնում։ Զօրքը պատերազմական դրութեան մէջ դրըվեց։ Ամբողջ քաղաքակիրթ աշխարհը նայում էր այդ մեծ պայքարին, որ մղում էր քրիստոնէական խաչը մահմեդական կիսալուսնի դէմ։ Թէ որքան մեծ էր հետաքրքրութիւնը, կարելի է եզրակացնել հէնց նրանից, որ, ինչպէս հաշւել էին լրագիրները, երկու տարվայ ընթացքում այլ և այլ երկիրների մէջ լոյս տեսան մօտ 12,000 բրօշիւրներ և գըրքեր, նուիրված արեւելեան հարցին։ Իսկ որքան էին գրում պարբերական հրատարակութիւնները...

Հայ լրագիրներն էլ, ի հարկէ, արձագանք էին տալիս այդ ընդհանուր շարժման։ Խօսքը միմիայն բալկանեան սլաւօնների մասին էր, Եւրոպական Թիւրքիայի սահմաններից դուրս չը կար տանջվող քրիստոնեաններին ազատելու հարց։ Եւ ահա ամբողջ հայ մամուլի մէջ «Մշակը» գրաւում է մի բացառիկ դիրք, բարձրացնելով և արծարծելով Թիւրքահայերի հարցը։ Արծրունին սկսում է իր կրակոտ առաջնորդողների շարքը, առաջնորդողներ, որոնց նման ահագին դեր կատարած լրագրական յօդուածներ մեզանում չեն եղել և որոնք Արծրունու գրական գործունէութեան փառքն ու պսակն են կազմում։

1876 թուականին, երբ ամբողջ Արևելքը այնքան խօսեցնել էր տալիս իր մասին, երբ հասունանում էին և իրանց լուծման էին հասնում ազգերի ազատութեան մեծ խնդիրները, «Մշակը» դեռ շաբաթաթերթ էր։ Արծրունին դեռ հազար բաժանորդի էր սպասում, որ շաբաթը երկու անգամ հրատարակէ իր լրագիրը. բայց այդ թիւը չը կար, իսկ ժամանակը այնքան պահանջում էր աւելի յաճախ երևալ, աւելի շատ խօսել իր մասին։ Այդ պահանջը շատ լաւ էր զգում Արծրունին և նա վճռեց չը սպասել հազար բաժանորդի, այլ յոյս դնել անձնական զոհողու-

թիւնների վրա։ Սակայն շաբաթը երկու անգամ կարելի էր հրատարակել միայն յաջորդ, 1877 թուականից, իսկ մինչև այն պէտք էր բաւականանալ շաբաթաթերթով։ Եւ պէտք է խոստովանել, որ շաբաթը մի անգամ խօսելով էլ Արծրունին կարողացաւ մեծ աղմուկ և իրարանցում բարձրացնել։ Նրա դէմ զինվեց ամբողջ հայոց մամուլը թէ Թիֆլիսում և թէ Կ. Պօլսում. բայց նա իր փոքրիկ շաբաթաթերթով առաջ էր տանում մի յաղթական պրօպագանդա, սաստիկ ազդելով ընթերցողների վրա թէ մեզ մօտ և թէ Թիւրքիայում։

Դեռ ապրիլ ամսից Արծրունու ուշադրութիւնը գրաւում էր այն հանգամանքը, որ Թիւրքիան անբաւական տարրերի մի խառնարան է դարձել։ Անբաւական են ամենքը, անբաւական են ոչ միայն քրիստոնեաները, այլ և մահմեդականները։ Ոչ ոք չէր կարծի որ երկու փոքրիկ նահանգների (Բօսնիա-Հերցեգօվինա) ապստամբութիւնը այնքան խոշոր հետևանքների կը հասցնէ, այնքան պարզ կերպով ցոյց կը տայ աշխարհին որ Օսմաննե-րի պետութիւնը քայքայման է հասել։ Բոլոր զրկուածների համար ամենայարմար միջոցն էր մարդկային իրաւունքներ պահանջելու. Նոյն իսկ Կ. Պօլսի սօֆթաները բարեկարգութիւն, սահմանադրութիւն են պահան-

ջում։ Եւ այդ ժամանակ լուռ ու անգործ էր միայն մի ազգ—հայերը, որոնց թիւը հասնում էր երեք միլիոնի։ Սա անքնական էր թւում Արծրունուն. սա միայն այն էր ցոյց տալիս որ հայերը անասնական դրութեան են հասել իրանց դարաւոր ստրկութեան միջոցում։ Պէտք է որ հայերն էլ ձայն բարձրացնեն միւս քրիստոնեաների նման։

Մինչ վերջապէս Թիւրքահպատակ հայերը չեն հասկանայ որ Թիւրքիայի այժմեան անմխիթար դրութիւնը այնքան յարմար է մարդկային իրաւունքները պահանջելու համար, որ գուցէ դարերով այդ տեսակ յարմար դրութիւն դարձեալ պատահելու չէ։ Ամօթ կը լինի հայերին, եթէ նրանք իրանց իրաւունքները պաշտպանելու եւ նոր իրաւունքներ սեփականացնելու համար ձայն չեն բարձրացնի, մինչեւ որ Թիւրքիային հպատակ այլ քրիստոնեայ ազգութիւնները իրանց անձն են զոհում, իրանց արիւնն են թափում ազատութիւնը ձեռք բերելու համար, մինչեւ որ մահմեդականներն անգամ ոտքի են կանգնում, տէրութենից սահմանադրութիւն պահանջելու համար։

Թէ այս և թէ ուրիշ այս տեսակ տողեր սարսափի և զայրոյթի աղաղակ բարձրացրին մեր մամուլի մէջ։ Արծրունին քարոզում է ապստամբութիւն, ասում էին մեր լրագիրները։ Արծրունին ուզում է կոտորել տալ Թիւրքիայի հայերին, մինչդեռ նրանք, այդ

հայերը, խաղաղ ապրում են իրանց համար, արտօնութիւններ են վայելում և Թէպէտ գաւառներում նրանց հարստահարում են քըրդերը, բայց Թիւրք կառավարութիւնը այդ բանի մէջ մեղք չունի, նա բարեացակամ է դէպի հայերը։

Սակայն Արծրունին իր սածն էր պընդում։ Եւ նա իրաւունք ունէր, քանի որ նրա տեսակէտը միանգամայն ճիշտ էր և համապատասխանում էր իրականութեան։

Մենք արդէն տեսանք որ Արծրունին հէնց սկզբից Թիւրքահայերին բաժանում էր երկու մասի.—Կ. Պօլիս և գաւառներ։ Ըստ երևոյթին, այս երկու մասերը մի ժողովուրդ, մի տեսակ կացութիւն պիտի ներկայացնէին։ Բայց իրապէս դրանք միմեանցից սաստիկ տարբերվող մասեր էին։ Կ. Պօլիսը մի հատուած էր, մի գաղութ. այնտեղ, ճիշտ է, հայերը ունէին համեմատական բարեկեցութիւն, ազատութիւն։ Նրանք կրթութիւն էին ստանում Եւրօպայում, ունէին իրանց դպրոցները, մամուլը, գրականութիւնը, հարստանում էին վաճառականութեան և պետական կապալների մէջ, բարձր պաշտօնների էին հասնում։ Նոյն իսկ Ազգային Սահմանադրութիւնը, որ կոչված էր Թիւրքիայի ամբողջ հայութեան փրկիչը լինելու, համարեա միայն

Կ. Պօլսի հայերին էր պատկանում, Կ. Պօլսի տեղական մի հիմնարկութիւն էր։

Բօլորովին ուրիշ աշխարհ էր ներկայացնում գաւառը, բուն Հայաստանը։ Այնտեղ էր իսկական ռայեան. նա տգէտ ու խաւար էր մնում, իրաւազուրկ մի նախիր էր, տնտեսապէս քայքայված, մշտական հարստահարութիւնների մատնված, կեանքի և գոյքի ապահովութիւն չունէր. նա քրդերի աւարն էր և ոչինչ պաշտպանութիւն չէր գտնում թիւրք իշխանութիւնների մօտ. սանձարձակ կամայականութիւնների հայրենիքն էր նրա երկիրը, ուր տիրողը ոյժն էր։ Բայց նրան չէին նկատում։ Կ. Պօլսի հայութիւնը ծածկում էր նրան։ Այդ գաղութի բարեկեցութիւնը հայաբնակ գաւառների բարեկեցութիւնն էր համարվում։ Մի որ և է հայ ամիրայի, տղրուկ կապալառուի, բարձրաստիճան էֆէնդիի առատ ու զարդարուն կեանքը ամբողջ ազգի լաւ ապրուստի նշան էր համարվում. եթէ սուլթանը մի չքանչան էր տալիս որ և է եպիսկոպոսի, հայ փաշայի, դա նշանակում էր թէ ամբողջ հայ ժողովուրդն է արժանանում սուլթանական բարեհաճութեան և սէրին։

Ահա այս մոլորութիւնն էր, որ պարծենկոտ յաւակնութեամբ հակառակում էր

Արծրունուն, ասում էր թէ հայութեան ապագան Թիւրքիայումն է, և քարոզել թէ Թիւրքահայն էլ պիտի ձայն բարձրացնէ, իր դատը խառնէ միւս քրիստոնեայ ազգերի դատի հետ, նշանակում է լինել ազգի դաւաճան, օտարների շահամոլ քաղաքականութեան գործիք։ Արծրունին հարկաւոր չէր համարում երկար ու բարակ բանակռիւ մղել այդ սաստիկ հակառակութեան դէմ։ Նա միայն զգում էր, լաւ էր զգում որ հայը Թիւրքիայում բացառութիւն կազմել չէ կարող, որ Կ. Պօլիսը հայութիւն չէ, որ գաւառների համար մարդկային իրաւունքներ պահանջելու ամենալաւ, միակ յարմար ժամանակն է։

Ո՞վ էր ճիշտ հասկանում իրերի դրութիւնը։ Մի փոքրիկ պատմական տեսութիւն այստեղ աւելորդ չը պիտի համարվի, որպէս զի մենք կարողանանք անաչառ դատողութիւն ունենալ այս հարցի մէջ։

Գաւառների և Կ. Պօլսի շահերի տարբերութիւնը նկատելի էր դեռ հին ժամանակից, և մենք XVII դարում տեսնում ենք այդ շահերի ընդհարումը։ Կ. Պօլսի արտօնված, բարեկեցիկ գաղութը ապրում էր իր համար, իսկ գաւառներին վերաբերվում էր արհամարհանքով, նայում էր նրան բարձրից։

«Ըրմպըլ» արհամարհական անունը, որ տալիս էին պօլսեցիները գաւառացիներին, ինչպէս երևում է, վաղուց գոյութիւն ունէր։ Մայրաքաղաքը չէր օգնում խաւար, հարստահարված գաւառներին։ Հարուստ ամիրայական դասակարգի համար, որ Կ. Պօլսում ազգային գործերի միակ տէրն էր, նոյն իսկ շատ ձեռնտու էր գաւառների խղճալի դրութիւնը։ Ինչպէս յայտնի է, ամիրաներից իւրաքանչիւրը դառնում էր որ և է բարձրաստիճան փաշայի հովանաւորութիւնը վայելող սեղանաւոր, փող էր տալիս իր բարերարին և փոխարէնը վերցնում էր հարկերի կապալը և կեղեքում էր հասարակ ժողովուրդը՝ փաշայի վայելած գումարները յետ ստանալու համար։ Դա, այսպէս ասած, փողի արիստօկրատիան էր, և որովհետև փողի համար չը կայ ազգութեան, կրօնի հարց, այլ նա միայն խոնարհ, հեշտ կեղեքվող մարդիկ է որոնում, ուստի ամիրաները (բացառութիւնները շատ չեն) հայ ժողովրդի պատիժն էին հանդիսանում։ Այդ ազդեցիկ, իշխող, հրամայող դասակարգի համար շատ լաւ, շատ ձեռնտու էր թիւրքական բէժիմը։ Եւ այդ պատճառով Կ. Պօլսի հայութիւնը աչքի էր ընկնում իր թիւրքասիրութեամբ։

Գաւառների հայութիւնը, մենակ ու ան-

պաշտպան մնացած, կրում էր իր ծանր խաչը։ Բայց նրա մէջ չէր մեռել լաւ օրերի յոյսը։ Նա գիտէր թէ որն է իր ծանր դրութիւնից դուրս գալու միջոցը և յարմար դէպքերում գործում էր ինքնագլուխ, առանց Կ. Պօլսի հայութիւնից խորհուրդ հարցնելու։

Յարմար դէպքերը ներկայացնում էին ռուս-թիւրքական պատերազմները։ Այն ժամանակից, երբ ռուսաց իշխանութիւնը հաստատուեց Անդրկովկասում և սկսեց զէնքի ոյժով ոչնչացնել Պարսկաստանի տիրապետութիւնը, Թիւրքիայի հայերը նոյնպէս աչք դարձրին դէպի հիւսիսային քրիստոնեայ ազգը, նրա մէջ էին տեսնում այն ոյժը, որ կարող էր ազատել իրանց թիւրքական լուծից։ 1829 թուականի ռուս-թիւրքական պատերազմի ժամանակ, մինչդեռ Կ. Պօլսում հայ լուսաւորչականներն ու հայ կաթօլիկները իրար մատնում էին Թիւրք կառավարութեան ձեռքը, իրար ամբաստանելով պետական դաւաճանութեան մէջ, Ալաշկերտի հայերը զէնք վերցրին, միացան ռուս զօրքերի հետ և հերոսաբար կռիւ էին մղում թիւրքերի դէմ՝ պաշտպանելով ռուսներից գրաւված Բայազէտը։ Պատերազմից յետոյ մօտ 30 հազար ժողովրդի գաղթականութիւնը Էրզրումից, Ալաշկերտից և Բասէնից դէպի ռուսաց հողը

*շատ պարզ ապացոյց էր որ գաւառների հայութիւնը ձգտում է ազատութեան, որ նրա համար անտանելի է թիւրքական և քրդական լուծը։ 1854—1855-ին նորից պատերազմ սկսվեց Ռուսաստանի և Թիւրքիայի մէջ։ Այս անգամ տեղի չունեցաւ մեծ գաղթականութիւն, բայց հայ ազգաբնակութիւնը դիմաւորում էր ռուսներին իբրև ազատողների, և Ալաշկերտում գործող ռուս բանակն էին գալիս Մուշի և այլ տեղերի հայերը, խնդրելով գալ և նուաճել իրանց երկիրներն էլ։ Ոչ Կ. Պօլիսը, ոչ ուրիշ հայաբնակ կենտրօնները չը գիտէին գաւառական հայութեան իսկական դրութիւնը։ Ոչ ոք չէր ուսումնասիրել, ոչ ոք չէր ծանօթացրել այդ թշուառ, ամենքից մոռացված խուլ անկիւնները քաղաքակիրթ աշխարհին։ Ռուս զինուորականներն էին տեսնում այդ դրութիւնը և ահա ինչ էր գրում նրանցից մէկը, գեներալ Լիխուտին.*

Աւերողները դեռ գոյութիւն ունեն, նոյնքան ուժեղ եւ վայրենի, ինչպէս առաջ, քանի որ դեռ պահվում են իրանց երկրի սահմաններում. բայց թէ ինչ կը լինի յետոյ—յայտնի չէ։ Կարելի է, սակայն, ենթադրել բաւական ճիշտ կերպով, որ եթէ պարսկական եւ թիւրքական իշխանութիւնները ոչ միայն չընկնեն, այլ մնան թուլութեան ներկայ դրութեան

մէջ, այն ժամանակ էլ հետզհետէ բնաջինջ կը դառնայ կամ դէս ու դէն կը հալածվի խեղճ ազգաբնակութիւնը, որ կենդանի է մնացել Ջինգիս-Խանի, Լէնկթիմուրի եւ ուրիշ նուաճողների արշաւանքներից յետոյ,—եթէ մի որ եւ իցէ կողմնակի ոյժ չը կանգնեցնէ եւ չը բարեկարգէ աւերողներին։ Պատերազմի ընթացքում մենք տեսանք թէ որքան հեշտ եւ հնարաւոր են այսպիսի անկարգութիւնները, տեսանք հայերի կոտորածը քրդերի ձեռքով, բայց դեռ փոքր չափերով. իսկ երբ տեսնում ես այս տարածութիւնները, ուր բնակեցրած են տակն ու վրա անելու եւ միմեանց ոչնչացնելու պատրաստ ազգերով, այն ժամանակ զգում ես որ անհրաժեշտ է եւրօպացիների արագ, գործունեայ եւ իշխանական ազդեցութիւնը, որ կարող կը լինէր լուսաւորել կամ ճնշել այդ վըտանգաւոր ազգերը եւ այդպիսով մեծ դժբախտութիւնների առաջը առած կը լինէր։ Եւ հէնց միայն հայերը արժանի են գթութեան. Նրանք թէեւ ճընշված ու անզօր են, բայց հեզ են, սովոր են քաղաքացիական կեանքին՝ օրէնքների սահմանում, եւ քըրդերից, թուրքմէններից եւ առհասարակ բոլոր մուսուլմաններից աւելի ընդունակ են աւելի շուտով իւրացնելու լուսաւորութիւնը, որ բարձրացնում է մարդու եւ հասարակութեան արժանաւորութիւնը։

...Ազգութիւնների, լեզուների եւ կրօնների այնպիսի խառնուրդի մէջ, որ գոյութիւն ունի այստեղ, նկատի առնելով եւ այն, թէ որքան ընդհանրապէս լարված են յարաբերութիւնները նրանց մէջ, չէ կարելի սպասել որ կարգն ու հանգստութիւնը իրանք իրանց հաստատվեն այստեղ, որ նուաճվածները կարողանան խաղաղ ճանապարհով ձեռք բերել իրանց իրաւունքները եւ վերադարձնել իրանցից խլված բա-

ներից մի մասը։ Ասիական Թիւրքիայում անհրաժեշտ է մի նոր ուժեղ իշխանութիւն, որովհետեւ զանազան ազգութիւնների մէջ եղած յարաբերութիւնները փոփոխելը նրանց արդարութեան չափով հաւասարացնելը դժուար գործ է, որին ընդունակ չէ թիւրքական իշխանութիւնը թէ իր բնաւորութեան եւ թէ ներկայ թուլութեան պատճառով։ Այստեղ հարկաւոր են եւրոպացիներ...։ Քրիստոնեաների մշտական կոտորածը Թիւրքիայում կարծեմ ապացոյց է թէ որքան ոչինչ է այն ազդեցութիւնը, որ ուղում են ունենալ երկրի վրա եւրոպական դեսպանատները եւ հիւպատոսարանները թիւրքաց կառավարութեան միջոցով։ Քրիստոնեաները իրանք պիտի դիմեն իրանց պաշտպանութեան աւելի ուղիղ միջոցին, իրանց սեփական զէնքին. բայց կասկած չը կայ որ ամենքը չեն կարող պաշտպանել իրանց։ Ես հաւատացած եմ, որ վերջին ժամանակներս քիչ հայեր չեն կոտորվել առանձին-առանձին դէպքերում. այդ մասին չեն կարող տեղեկութիւններ հասնել այս հեռաւոր, խուլ անկիւններից եւրոպական լրագիրների խմբագրութիւններին, իսկ դեսպանատների եւ հիւպատոսարանների համար, երեւի, ձեռնտու է թաքցնել այդ դէպքերը։ Քրիստոնեաների պաշտպանութիւնը հնարաւոր է ոչ թէ խօսքերով, այլ գործով եւ բանակների ներկայութեամբ։ Այս տեղերը գալիս են անհատ եւրոպացիներ առեւտրական գործերով կամ թէ կաթոլիկ պրոպագանդան, եւ միեւնոյն ժամանակ այստեղ կանգնած են ռուսաց ամբողջ բանակներ, մենք այստեղ համարեա մեր տանն ենք *)։

*) Генералъ-Маіоръ Лихутинъ—„Русскіе въ Азіатской Турціи въ 1854—1855 годахъ“. СПБ., 1863, եր. 270—272։

Պատահական այցելուի այս՝ երկու-երեք էջ գրաւող դատողութիւնների նմանութիւնն անգամ ունեցող մի բան մենք չենք կարող գտնել մեր այն ժամանակվայ ամբողջ գրականութեան, մամուլի մէջ։ Կ. Պօլիսը ունէր պարբերական մամուլ, որ, սակայն, բացի տեղային եկեղեցական հարցերից ոչինչ չէր ճանաչում. Թիֆլիսի հայերի դրութիւնը աւելի եւ վատթար էր—այստեղ նոյն իսկ լրագրութիւն էլ չը կար և եթէ լինէր անգամ, դարձեալ նոյն հարցերով միայն կարող էր զբաղվել։ Եւ Թիւրքիայի կորած գաւառներում հարստահարվող հայ ժողովրդին մընում էր մի տարերական ձգտում դէպի Ռուսաստանը, մնում էր փայփայել իր մէջ այն յոյսը, թէ ռուսները երբ և իցէ կը գան ու կազատեն իրան քրդերի և թիւրքերի ձեռքից։

Ղրիմի պատերազմը բերեց իր հետեից գաղափարական շարժման մի նոր դրդում։ Կ. Պօլսի հայութեան մէջ բուն ժողովրդական շարժումը վաղուց էր սկսվել, շարժում, ուղղված ամիրայական դասի բռնակալութեան դէմ։ Սակայն գաւառների դատը համարեա ոչինչ տեղ չունէր այդ ժողովրդական շարժման մէջ։ Ղրիմի պատերազմի ժամանակ արդէն կար երիտասարդների մի կուսակցութիւն, որ տոգորված էր լաւագոյն

ձգտումներով։ Այդ ժամանակ գաւառների ազատութիւնը դառնում է գաղափար, որ երգի մէջ է մտնում և Պէշիկթաշլեանը ունի շատ էջեր, որոնք ցոյց են տալիս ժամանակի տրամադրութիւնն ու յոյսերը։ Մի ուրիշ վառվռուն երիտասարդ, Ստեփան Ոսկանը, Պարիզում աշխատում էր որ եւրոպական քաղաքականութիւնը ուշադրութիւն դարձնէ Թիւրքաց Հայաստանի վրա։ Բայց դրանք լոկ բարի ցանկութիւններ էին, լոկ սկզբնաւորութիւն։

Աւելի հիմնաւոր բան էր երևում նոյն երիտասարդութեան ձեռքով ստեղծված ազգային սահմանադրութիւնը։ Դա թիւրքահայերի ընդհանուր գործն էր, գաւառներն էլ մասնակցութիւն պիտի ունենային եկեղեցական-ազգային այդ ինքնավարութեան մէջ, հետևաբար կարող էին իրանց տեղային ցաւերը հրապարակ հանել։ Բայց այլ է մի խելացի օրէնք խմբագրելը, այլ է այդ օրէնքը գործադրելու հնարաւորութիւնը։ Սահմանադրութիւնը, ինչպէս ասացինք, պոլսական մի հիմնարկութիւն դարձաւ. գաւառը շատ թոյլ կերպով էր ներկայացվում ազգային ժողովի մէջ, այնտեղ պատրաստված ժողովուրդ չը կար, այնտեղից երեսփոխաններ չէին գնում Կ. Պոլիս։ Եւ գնային էլ, շատ մեծ գործ չէին կատարի։ Թիւրքիայի պէս մի պետութեան

մէջ սահմանադրութիւնը կարող էր լինել, ինչպէս ճիշտ նկատել էր Թիւրք բարձրաստիճան պաշտօնեաներից մէկը, մի քառակուսի անիւ։ Երկար ժամանակ ազգային ժողովը զբաղված էր ապարդիւն վէճերով, գաւառները ոչինչ իրական օգուտ չունէին այդ վիճաբանութիւններից, որոնք մեծ մասամբ վերաբերվում էին սահմանադրութեան վերաքննութեան, ներքին վարչական հարցերին։ Իրականութիւնը գաւառներում մի և նոյն էր մնում։ Եւ մենք տեսնում ենք որ 70-ական թւականների սկզբում Վանի մէջ ծագում է մի ամբողջ շարժում, որի նպատակն էր ընդունել ռուսաց հպատակութիւն և այդպիսով ազատվել մշտապէս հարստահարվող ռայեայի դրութիւնից։

Սակայն սահմանադրութիւնը էլի մի քայլ էր դէպի առաջ։ Որքան էլ նա քիչ լինէր բուն ժողովրդի, գաւառների ներկայացուցիչ, որքան էլ գաւառների դրութիւնը ազգային ժողովի առանձին ուշադրութեան չէր արժանանում, կար այն կարեւոր հանգամանքը, որ նա գոնէ գաւառների արձագանքը դարձաւ, հաւաքեց հարստահարութիւնների փաստերը, կազմեց գաւառների տանջանքների պատմութիւնը։

Առաջին նշանաւոր քայլը արվեց Խրիմ-

*եանի պատրիարքութեան օրով: Մեծ ժողո-
վրդականութիւն վայելող այդ եպիսկոպոսի
պատրիարք ընտրվելը մի յարմար առիթ էր
որ գաւառացի ժողովուրդը ձայն բարձրացնէ:
Ազգային ժողովը Սիսի կաթողիկոսութեան,
սահմանադրութեան վերաքննութեան և այլ
այսպիսի հարցերի առիթով անվերջ և ան-
պտուղ վիճաբանութիւններ ունէր, բայց և
այնպէս, պատրիարքի պահանջելով, մի քա-
նի նիստ էլ գաւառական հարստահարութիւն-
ներին նուիրեց: Եւ ինչ դուրս եկաւ: Տգի-
տութիւնից ոչխարացած ժողովուրդը կեղեք-
վում էր անդադար. Նրան կեղեքում էին
հայ վաշխառուները, կեղեքում էին քրդերը,
կեղեքում էին և թիւրք պաշտօնեաները: Ահա
ինչպէս էր նկարագրում դրութիւնը գաւա-
ռում մեծացած, գաւառի կեանքին այնքան
լաւ ծանօթ Խրիմեան պատրիարքը՝ ազգային
ժողովի առաջ արտասանած իր մի ճառի մէջ.*

Հայաստանի մէջ հարստահարութիւնը միշտ կայ
եւ պիտի շարունակէ, քանի որ հոն երկու եղբայր,
երկու ժողովուրդ կը բնակին, որոց մէկին ձեռք ա-
ւետարան եւ միւսին ձեռք ղուրան կայ: Ղուրանի
հաւատացեալը այնպէս կը կարծէ թէ՝ նա, որ հա-
ւատք չընծայէր անոր, արժանի է հարստահարու-
թեան. իսկ աւետարանը կըսէ, ուրիշ իրաւունք մը
չունիս, այլ պիտի հարստահարուիս մինչ ի գերեզման:

Հիմա ինչպէս հաշտեցնելու է այս երկու ժողովուրդը իրարու հետ։ Երբ տէրութիւնը Եւրոպայի լուսաւորութիւնն ընդունեց, Նիւլհանէի օրէնսդրութեան օրէն օրինագիրք մը շինեց, տ է ս Թ ո ւ ր դրաւ անունը, եւ զանի այս երկու եղբարց տուաւ ու ասաւ. դուրանը մզկիթին եւ աւետարանը եկեղեցւոյ մէջ պաշտեցէք, իսկ ձեր ընկերային կեանքին այս օրինագիրքն ըլլայ ուղեցոյց։ Կառավարութիւնը զայս ընելով իւր պարտքը կատարած է, բայց քիւրդը այս օրինագրին երեսն անգամ չը նայիր, եւ Թէ որ այս վիճակը շարունակվի, անհնար է որ քիւրդն ու հայը իրարու հետ հաշտվեն, մանաւանդ որ մէկը սուր ունի եւ կը հարուածէ, միւսն աւետարան ունի միայն եւ կը չարչարվի... Պէտք է խնդրել (տէրութիւնից) որ հաւասարութեան օրէնքը՝ որ կայ արդ՚ն եւ գաւառներու մէջ չէ լսված՝ գործադրվի։ Իսկ անհաւասարութեան վիճակին մէջ ով որ դուրան ունի ձեռքը, անոր վերապահված է մարզպանի, կուսակալի պաշտօնը. բայց երբ հաւասարութեան սկզբունքը ի գործ դրվի, եւ քիւրդը տեսնէ Թէ քրիստոնէին մէջ քըն ալ պաշտօնական Թուր մը կայ կախված եւ կուսակալի պաշտօն կը բարձրանայ, իրօք կըմբռնէ այն ատեն օրինագրքին ոգին եւ տէրութեան հրամանը... Տէրութեան շնորհիւ քիւրդերն ալ կը զըսպուին, հարստահարութիւններն ալ կանհետին, բայց առանց ներքին աւերումները քառնալու ամեն ինչ անօգուտ է։ Ես կըսեմ, արտաքին աղէտները ներքինին հետեւանքներն են. Ժողովուրդն անմռունչ ոչխար մը դարձած՝ ոչ իւր իրաւունքները կը ճանչէ, ոչ պիտոյքները կըզգայ եւ ոչ օրինաց տեղեկուԹիւն ունի։ Իսկ աշխարհի արդի դրուԹեան համե-

ժամտ ով որ տգէտ է, պիտի բռնաբարվի, և լոյսը միայն ազատութիւն վայելէ *)։

Ահա՛ դարերի իրականութիւնը, որ երևան էր գալիս 1871-ին Թիւրքիայի հայոց պաշտօնական ներկայացուցչի ատենաբանութեան մէջ։ Ի՞նչ պէտք էր անել։ Այժմ կայ սահմանադրութիւն, կայ երեսփոխանական ժողով, ճառեր, վիճաբանութիւններ. ոչինչ չէ մոռացված, սահմանադրութիւնը խմբագրված է հիանալի կերպով, Եւրօպայի ռամկապետական կարգերը վերցրված են ճշտութեամբ, Կ. Պօլսի ժողովուրդը ամեն տարի մայիսին տօնում է այդ ինքնավարութեան տարեդարձը, «Արիք հայկազունք» է երգում։ Բայց որքան կարողութիւն և պատրաստութիւն ունի երեսփոխանական ժողովը իր պատրիարքի ատենաբանութեան մէջ պարզված իրականութեան հանդէպ։ Սիսի կաթողիկոսութեան նուիրված մի նիստում, երբ վիճաբանութիւնները պտտում էին այն հարցի շուրջը թէ ով է կենտրօնական վարչութիւնը, երեսփոխանական ժողովը թէ խառն ժողովը, Խրիմեան պատրիարքը ասաց հետևեալ խօսքերը.

*) «Փորձ» հանդէս, 1876, № 4։

Հոս նստեր եմ ձեր մէջ, բայց ո՞ գիտէ թէ իմ երեւակայութիւնս ուր է գնացեր, ո՞ գիտէ թէ որ գաւառներու մէջ կը դեգերիմ մտովի, ուր չարչարեալ ժողովուրդներ, անոք մանկիկներ, վշտահար հարսեր ու փեսաներ կը ներկայանային աչքիս, եւ ականկառոյց մենէ զօրավիգն կը խնդրեն։ Մենք հոս անդուլ կը վիճաբանենք... վիճաբանութիւնը սահման մը պիտի ունենայ...

Երեսփոխանական ժողովը ութ հոգուց բաղկացած մի մասնաժողով ընտրեց՝ մի մանրամասն տեղեկագիր կազմելու համար։ Մասնաժողովը պատրիարքարանի արխիվը քըրքրեց, քսան տարվայ տեղեկութիւններ քաղեց, բացի դրանից դիմեց գաւառական առաջնորդներին և իր մի քանի հարցերի պատասխանը խնդրեց։ Այդ բոլոր աշխատանքի հետևանքն եղաւ մի հարուստ, փաստալից տեղեկագիր, որի մէջ գաւառների անմխիթար դրութիւնն էր պատկերացած։ Տեղեկագիրը ուղարկվեց Բ. Դուռը։ Դա ազգային ժողովի իրաւունքն էր, որ տալիս էր սահմանադրութիւնը։ Շատ լաւ իրաւունք էր դա, սահմանադրութեան յատուկ յօդուածով դրված այդ կարգը։ Սահմանադրութիւնը բացի դրանից ուրիշ շատ լաւ բաներ էլ ունէր։ «Ամեն ինչ կար նրա մէջ—ասում է միջազգային իրաւունքի նշանաւոր մասնագէտ

Ռօլէն Ժաքմէն—ամեն ինչ, բացի մի յօդուածից, որի վրա մատնացոյց անել կարողանայ հայը, որպէս զի թոյլ չը տայ քիւրդին խլել իր ոչխարները, բէյին—բռնաբարել իր աղջիկներին և քարուքանդ անել իր հողը, հարկահանին—երկու կամ երեք անգամ պահանջել մի և նոյն հարկը. մի խօսքով կար ամեն բան, բացի մի այնպիսի կարգադրութիւնից, որ իսկական երաշխաւորութիւն լինէր թիւրք կառավարութեան կամայականութիւնների դէմ» *)։

Ազգային ժողովի տեղեկագիրը, որ հրատարակվեց 1872-ին, գաւառների դրութիւնը մազի չափ չը պիտի բարւոքէր. դրա համար ոչինչ երաշխաւորութիւն չը կար։ Բայց նա մի թանկագին դօկումենտ էր, որ շատ բնորոշ փաստեր էր պարունակում։ Նա ցոյց էր տալիս թէ ինչ տեսակ հարստահարութիւններ մշտական երևոյթի կերպարանք են ընդունել. ցոյց էր տալիս և այն, որ պատրիարքարանը քսան տարիների ընթացքում գաւառից իրան հասած իւրաքանչիւր հարստահարութեան մասին թագրիրներ է ուղարկել Բ. Դուռը, բայց այդ պաշտօնական թղթերի մեծ մասը

---

*) „Положеніе Армянъ въ Турціи“, М. 1896, եր. 9։

մնացել է առանց հետևանքի, իսկ եթէ մի քանի դէպքերում Բ. Դրնից կարգադրութիւններ և հրամաններ են ուղարկվել հարըստահարութեան տեղերը, դրանք մնացել են անկատար։ Հարստահարութիւնների մի մանրամասն տեղեկագիր էլ ազգային ժողովը 1876-ին հրատարակեց և այդտեղ էլ վկայեց որ 1872-ի տեղեկագիրը ոչինչ չօչափելի արդիւնք չէ ցոյց տուել, պատրիարքական «թագրիրները» նոյն վիճակին են ենթարկվել, ինչպէս միշտ։ Թղթեր գրվում էին, բողոքներ յայտնվում էին, հրամաններ ուղարկվում էին, բայց այդ բոլորը մնում էր մեռած տառ, թուղթ։

Այսպէս էր հայ դրութիւնը, երբ վրա հասան 1875—1876 թւականների դէպքերը և անհագին կարևորութիւն ունեցող հարց դարձրին Թիւրքիայի հպատակ քրիստոնեաների դրութիւնը։ Հայ գործիչներից միայն Գրիգոր Արծրունին էր, որ իսկոյն ըմբռնեց րոպէի անչափ կարևորութիւնը։ Ազատութեան գաղափարը, ինչպէս տեսանք, վաղուց ապրում էր ժողովրդի մէջ. Արծրունին չը ստեղծեց գաղափարը, նա միայն հասկացաւ որ ոչ թիւրքահայերի գեղեցիկ սահմանադրութիւնը, ոչ Կ. Պօլսի էֆէնդիների բարեկեցութիւնն ու չքանչանները չեն կարող կեանքի, գոյքի,

պատուի ապահովութիւն տալ գաւառներում ապրող հայութեան։ Արծրունու կատարած գործի մեծութիւնը հէնց նրանում է, որ նա հասկացաւ թէ Բօսնիա-Հերցեգօվինայի և Բօլգարիայի արիւնոտ դաշտերում գլուխ բարձրացրած սոսկալի իրականութիւնը մի է Թիւրքիայում բնակվող բոլոր քրիստոնեաների համար, թէ ժամանակ է մի կողմ դնել խաբուսիկ յոյսերը, ժամանակ է իմանալ թէ իրական ինչ արժէք ունեն· Թիւրքաց կառավարութեան սիրունիկ խոստումները, սահմանադրութիւն, րէֆօրմ և այլ այսպիսի զարդարուն էտիկէտներ կրող դատարկութիւնները։ Ոյժ պէտք է, որ փոփոխէ իրերի դրութիւնը Թիւրքիայում, զինուորական մեծ ոյժ։ Կար այդ ոյժը և գործում էր անչահասիրութեամբ։ Դա Ռուսաստանն էր։ Եւ Արծրունին խորապէս համոզված էր որ Ռուսաստանը բարերարութիւն կանէ և հայերին, որ յոյսը միայն Ռուսաստանի վրա պէտք է դնել։

Ընթացիկ քաղաքական դէպքերն ու հոսանքներն էին այդպիսի ջերմ հաւատ ներշնչում Արծրունուն։ Դրանից համարեա երկու տարի առաջ Փոքր-Ասիայում սով էր և հայերը սոսկալի տառապանքներ էին կրում։ Արծրունին միայն չեշտեց այդ իրողութիւնը, հրաւէր կարդաց օգնել սովատանջներին, բայց

չը զբաղվեց գաւառացի Թիւրքահայերի դըրութեամբ, չասաց թէ ինչ պէտք է անել նրանց դրութիւնը մշտապէս բարելաւելու համար։ Նա մինչև անգամ չը կարողացաւ մի մեծ գումար հաւաքել սովատանջների համար, որովհետև բաւականացաւ մի անգամ հրաւէր կարդալով և մի քանի արտատպութիւններ անելով այլ և այլ լրագիրներից։ Այդ ժամանակ էլ, բանակռիւ մղելով «Մասիսի» դէմ Ներսիսեան դպրոցի առիթով, Արծրունին խօսք բացեց Կ. Պօլսի հայ ինտելիգենցիայի մասին և յայտնեց թէ որքան չնչին դեր է կատարում նա։ Եթէ Կ. Պօլսի գրողներն ու գործիչները լաւ պատրաստված լինէին, մտաւոր մեծ ոյժ ունենային, հայոց մամուլը Թիւրքիայում կը դառնար քաղաքական մի հեղինակաւոր հիմնարկութիւն և Եւրոպան այդ մամուլից կը քաղէր տեղեկութիւններ Թիւրքիայի մասին։ Բայց հայոց մամուլը ոչինչ լուրջ ուսումնասիրութիւն չէ տալիս, ազդեցիկ դեր չէ կատարում և Եւրոպան չէ էլ ճանաչում հայերին։

Այսպիսի դատողութիւններով էր բաւականանում Արծրունին այն ժամանակ, երբ Թիւրքիայում սուր քաղաքական հարցեր չը կային, երբ արևելեան հարցը, այսպէս ասած, մոխրի տակ թաղված կայծի էր նման։ Ու-

րիշ բան էր 1876 թւականը․ քաղաքական աշխարհը տակն ու վրա դառած, հոգեհը վառւած էր․ ռուսաց լրագրութիւնը կրակում էր հասարակութեան զգացմունքները, անձնուիրութիւնը, անազին զոհողութիւններբ միացել էին խօսքի հետ։ Կրակվեց և «Մշակը»։ Բալկանեան թերակղզի, սլաւօններ, այո, ճիշտ է, նրանք արժանի են կարեկցութեան։ Բայց հայե՞րը։

Սկզբում Արծրունին այնքան մեծ աշխոյժով չէր զբաղվում այս հարցով։ 1876 թւականի առաջին կէսում նա իր առաջնորդողները նւիրում էր սովորական հարցերին—Ս. Գրքի թարգմանութեան, կղերականութեան, և միայն լրագրի արտաքին տեսութեան մէջ, խօսելով Թիւրքիան տակն ու վրա անող փոթորիկների մասին, աւելացնում էր մի քանի տողեր թէ հայերն էլ պիտի ձայն բարձրացնեն։ Բայց տարվայ ուղիղ կէսից թիւրքահայերի հարցը նա մտցնում է առաջնորդողների մէջ և այնուհետև մի կողմն է թողնում աւետարանի թարգմանութեան, դպրոցների բարեկարգութեան միտքը, ընդհանուր հարցերը։ Նրա ուշքն ու միտքը կլանում է թիւրքահայերի դրութիւնը։

Առաջին առաջնորդող յօդուածը տպվեց յուլիսի 1-ին (№ 24) և կրում է «Բրիտա-

*նէութիւն և Մահմեդականութիւն» վերնագիրը։ Այստեղ Արծրունին բացատրում էր իր հիմնական հայեացքները և այն միջոցները, որոնցով թիւրքահայը մարդկային իրաւունքների տէր կը դառնայ։ Այդ բոլորի հետ ծանօթանալու համար մենք կը բերենք այդ առաջնորդողի ամենանշանաւոր մասերը.*

Ամբողջ տարի է արդէն որ թէ եւրօպական հասարակական կարծիքը, թէ ընդհանուր քաղաքականութիւնը զբաղված են արեւելեան հարցով։ Թիւրքահպատակ քրիստոնեաների պատերազմը մահմեդականութեան ճնշող ոյժի դէմ՝ քննադատութեան առարկայ է դարձել ամբողջ աշխարհի լրագրութեան եւ գրականութեան համար, հոգսերի եւ պարապմունքների առարկայ է դարձել կրթված աշխարհի դիպլօմատիայի համար... Քրիստոնեայ ազգերի անունները, որք ապստամբված են թիւրքաց անտանելի լուծի դէմ, յիշվում են իւրաքանչիւր լրագրում. Թիւրքահպատակ քրիստոնեայ ազգերի անունները, որք այդքան դար ճնշված են մնում մահմեդականութեան անողորմ եւ քաղաքակրթութեան թշնամի տարրի տիրապետութեան տակ, լսվում են ամեն բերաններից,—միայն մ ի ա զ գ ի անունը ոչ մի տեղ չենք պատահում՝ ոչ լրագիրներում, ոչ դիպլօմատիական թղթերում, ոչ էլ առօրեայ խօսակցութեան մէջ։

Իսկ այդ ազգը, հ ա յ ե ր ը, փոքր ազգ չեն։ Մօտ երեք միլիօն քրիստոնեայ ժողովուրդ, թիւրքաց տէրութեանը հպատակ, նոյնքան եւ գուցէ աւելի թըշ-

ուար դրութեան մէջ է գտնվում, քան թէ սլաւօնա-կան ազգերը։

Այդ ազգը դարեւոր քաղոյական, մտաւոր եւ տնտեսական ճնշման պատճառով դարձել է բոլորովին կրաւորական, նա չունի այնքան քաղոյական զօրութիւն, որ իր ճնշման դէմ բողոք բարձրացնէ անգամ... Նա կորցրել է հաւատ դէպի իր սեփական ոյժերը, նա հաշտվել է այն մտքի հետ, որ ինքն ոչ թէ միայն ա զ գ չէ, այլ որ իր անհատներից իւրաքանչիւրը իրաւունք չունի մինչեւ անգամ մ ա ր դ ի անունը կրելու, իրաւունք չունի այն հասարակ ընդհանուր մարդկային իրաւունքները վայելելու, որ վայելում է ամեն մի մարդկային էակ...

Թիւրքիայի հայերը ճնշված, ստորացրած են, մինչեւ այն աստիճան կրաւորական են դարձրած, որ իրանց սեփական շրջանից անկարելի է սպասել բռնաւորութեան, հալածանքի, ճնշման դէմ բողոք...

...Պէտք է մի դրսի հզօր ոյժ, դրսի ազդեցութիւն յայտնվի, որ մարդասիրական զութից շարժված, մեկնէր այդ հողով ընկած, անդադար բռնաբարութեան տակ յուսահատված եւ մաշված ազգութեանը իր օգնութեան ձեռքը...

*Հայերը առաջին քրիստոնեայ ազգն են, 16 դար նահատակվում են քրիստոնէութեան համար։*

Քաղաքակրթված աշխարհի համար այդ քրիստոնէական քաղոյապէս պատերազմող տարրը, քրիստոնէութեան այդ կարապետները Ասիայում պէտք

է Թանկագին լինէին որպէս աւետարանի առաքեալները բարբարոսական աշխարհում...

Մինչէ Եւրոպան Թիւրքահպատակ քրիստոնեայ խօսքով հասկանում է միայն սլաւոնացիներին եւ ուղղափառներին, մինչէ մինչեւնոյն չէ ընդհանուր մարդկային օգուտների համար ո՛ր ցեղին եւ քրիստոնէական եկեղեցու ո՛ր դաւանութեանն է պատկանում ճնշված քրիստոնէական այս կամ այն ազգութիւնը, որի կոչումն էր միշտ եւ պէտք է լինի՝ միջնորդ լինել Ասիայում քրիստոնէութեան, ուսեմն եւ քաղաքակրթութեան լոյսի տարածման...

Եթէ այդ կոչումը առաջ անգիտակցական էր,—նա ապագայում պէտք է գիտակցական դառնայ։

Մանաւանդ մի եւրոպական պետութեան, այն է Ռուսաստանի ձեռքում, որի կոչումն է տարածել Արեւելքում համաշխարհային քաղաքակրթութիւնը, այդ տոկուն, աշխատասէր, քրիստոնէութեան գաղափարին իրան զոհած ազգութիւնը, հայերը՝ կարող էին որպէս միջոց ծառայել Փոքր-Ասիայում Ռուսաստանի նպատակը իրագործելու համար։

Հայերը կարող էին Ռուսաստանի համար ամենահաւատարիմ միջնորդներ լինել, նպաստելով այդ պետութեան նպատակներին եւ կոչմանը՝ տարածել եւ մտցնել Փոքր-Ասիայում աւետարանի եւ եւրոպական կրթութեան լոյսը, ուսեմն եւ ընդհանուր մարդկային քաղաքակրթութիւնը։

Հետեւեալ համարում Արծրունին նորից պարզում է իր հայեացքները արեւելեան հարցի վերաբերմամբ։ Նա ասում է. «Այժմ կամ

երբէք»։ Պէտք է օգուտ քաղել դէպքերից, մի ուրիշ անգամ այսպիսի յարմարութիւն չը պիտի ներկայանայ։ Հայերը միմիայն Ռուսաստանի վրա պիտի յոյս դնեն։ Անգլիական քաղաքականութիւնը խորամանկ է, նենգաւոր. նա ոչ միայն պաշտպանում է Թիւրքիան, այլ և սովորեցնում է նրան նենգաւոր, խարդախ միջոցներով խաբել քաղաքակիրթ աշխարհը։

Ցաւալի է—ասում է Արծրունին—երբ տեսնում ենք մի եւրոպական զորեղ պետութիւն, Անգլիան, ընդունել է եւ պաշտպանում է այդ անխղճութեան, այդ անիրաւութեան քաղաքականութիւնը։

Մենք ասացինք մեր անցեալ համարում եւ կրկնում ենք որ Թիւրքահպատակ հայերը իրանց Թշուառ դրութենից դուրս գալու համար կարող են օգնութիւն սպասել եթէ ոչ անպատճառ նիւթական, գոնէ բարոյական միայն մի եւրոպական պետութենից, այն է Ռուսաստանից։

Միայն Ռուսաստանը կարող է հասկանալ որքան օգտաւէտ է թէ ընդհանուր մարդկային քաղաքակրթութեան կէտից, թէ իրան ռուսաց պետութեան օգուտների համար որքան նշանաւոր է շահել, գրաւել՝ կորած, ընկած, յուսահատված քրիստոնեայ տարրը Փոքր-Ասիայում։

Արծրունու այս մտքերի դէմ ամենից առաջ վայնասուն բարձրացրեց, ի հարկէ,

*Թիֆլիսի «Մեղուն»։ Պետրոս Սիմէօնեանցի լրագիրը խիստ հետեողական էր ամենագըլխաւորը մի քանի մէջ—«Մշակի» դէմ գնալու մէջ։ Հանգամանքները շատ անգամ էին ցոյց տալիս այդ հակառակութեան անմտութիւնը, բայց ուրիշ կերպ, ինչպէս երեւում է, անհընարին էր, «Մեղուն» չէր կարող հակառակ չը լինել «Մշակին», ինչ հանգամանքի մէջ էլ ուզում է լինի։ Սակայն մենք պէտք է ասենք որ այդ հակառակութիւնը Սիմէօնեանցի անձնական համոզմունքների արդիւնքը չէր միայն. ինչպէս ուրիշ շատ դէպքերում, այստեղ էլ նա հանդիսանում էր մի ամբողջ հոսանքի արձագանք, մի ամբողջ աշխարհայեցողութեան թարգման։ Եւ Արծրունու կատարած դերը լաւ ըմբռնելու համար մենք պարտաւոր ենք մօտիկուց և մանրամասնաբար ծանօթանալ այդ հակառակ հոսանքի հետ։ Ինչպէս կը տեսնենք, «Մեղուի» գաղափարները միայն Թիֆլիսում չէին դաւանվում, այլ և, որ աւելի կարեւորն է, Կ. Պօլսում։*

*Ահա ինչ ենք կարդում «Մեղուի» № 27-ի մէջ, որ լոյս տեսաւ «Մշակի» առաջնորդողից երկու շաբաթ յետոյ.*

Վերջին ժամանակ, երբ Եւրոպական Տաճկաստանի մի քանի գաւառներում ծագեցաւ ապստամ-

*բութիւն, մի քանի հայ երիտասարդներ սկսան երազել, եւ առանց հեռատեսութեան եւ հանգամանքները կշռելու, որոնց մէջ գտնվում է հայ ազգը Տաճկաստանում, աշկարայ գրգռել եւ Հայերին զէնք առնելու եւ ապստամբելու։*

*Բերելով այնուհետև այն հանգամանքը, որ հայերը մի փոքրիկ ժողովուրդ են, շրջապատված թիւրք և քիւրդ ցեղերով, որ ապստամբութիւնը հայերին զուր կոտորելու պատճառ կը դառնար, Արագիրը շարունակում էր.*

*Մենք կարծում ենք, որ նոյն իսկ Տաճկաստանի կառավարութիւնն, որ հայեցուածքներով բարձր է իւր մոլեռանդ ժողովրդից, ճանաչում է Հայ ազգի նշանակութիւնը իւր տէրութեան ապագայի համար, իբրեւ լուսաւորութիւն տարածելու միջնորդ, ուստի եւ չէ կարող նրան մոռանալ եւ ապահովել զլանալ։ Իսկ մեր խորհուրդն է. Նախ մեր քաջ եւ քաղաքագէտ պուբլիցիստներին, որ նոքա փոխանակ խեղճ եւ թշուառ եղբարց կեանքի հետ խաղ անելու, լոկ իրանց ազատասէր ցոյց տալու համար, մարդոց աչքին փոշի փչելու կամ կուրութեամբ օտարների գործիք լինելու. եթէ ծանծրացել են իրանց կեանքից՝ թող իրանք ժողովեն եւ կազմեն անյաղթելի սրբազան գունդ Մշակի քաջ խմբագրի առաջնորդութեամբ եւ երթան պատերազմ, տեսնենք թէ առաջին թնդանօթի ձայնը ո՞ր ծակը կփախցնէ նրանց։*

*Անտարակոյս ենք, որ առհասարակ ըժգոհութիւնք անհաճոյ են ամեն բարեկարգ կառավարութեանց,*

որոնց համար Թանկագին են իրանց ժողովրդոց ապահովութիւնն եւ կանոնաւոր զարգացումն, նոյն իսկ իրանց ապահովութեան համար։

Երկրորդ մեր համեստ խորհուրդը մեր սիրելի Հայ եղբարց, որոնք ամեն ուրեք ցրուած են, է այն, որ նոքա պահպանելով իրանց պարզ հայկական կեանքը, հեռու մնան շռայլութիւնից, եւ զարգանալով մտաւորապէս եւ բարոյապէս եւ ապահովելով իրանց նիւթապէս, դառնան անհրաժեշտ կարեւոր խաղաղ քաղաքացիք այն երկիրներում եւ տէրութիւններում, ուր նոքա բնակվում են եւ վայելեն տիրապետող ազգերի հետ հաւասար քաղաքական իրաւունքներ, պահպանելով իրանց ազգայնութիւնը՝ լեզուն եւ կրօնը, զարգացնելով սոցա ժամանակի պահանջներին համաձայն։ Իսկ Տաճկահայերի կոչումն մինչեւ անգամ աւելի լաւ է քան այս. Թող նոքա ուսմամբ եւ բարոյապէս զարգանալով ջանան եւ նրանք մեծ կշիռ կստանան այստեղ անշուշտ, վասն զի ժամանակը պիտի պահանջէ իւր հարկը եւ Տաճկից եւ Քրդից եւ կիսավայրենի Թիւրքմէնից, որոնք այն ժամանակ ակամայ պիտի դառնան դէպի Հայերը՝ սրանցից ժամանակի պահանջած ուսումն եւ գիտութիւնը ստանալու։ Հայի այս մտաւոր եւ բարոյական գերազանցութիւնն անշուշտ ժամանակով կը կազմէ Տաճկաստանի մէջ երկու զօրեղ տարրեր՝ Տաճկական եւ Հայկական, որոնց իւրաքանչիւրը կլրացնէ միւսի պակասութիւնն եւ այսպէս երկուսը միասին ներդաշնակութեամբ կը կազմեն մի Տաճկա-Հայկական քաղաքական մարմին, որպիսի կերպարանք ունեն աշխարհիս երեսին շատ զօրեղ քաղաքական մարմիններ։

Մեղրի հետ կարագ էլ էր ծորում «Մեղուի» բերանից։ Ո՜րքան հեշտ ու գեղեցիկ էր նա վճռում արեւելեան հարցը։ Միամտութիւնը, ինչպէս տեսնում էք, այն աստիճանին էր հասցրած, որ ենթադրվում էր թէ Փոքր-Ասիայում հնարաւոր է մի թիւրքա-հայկական պետութիւն՝ հիմնված կուլտուրական եղբայրակցութեան վրա։ Աւելորդ է ասել անգամ, որ այսպէս ասողը բոլորովին ծանօթ չէր երկու ազգերի ցեղական, կրօնական, կուլտուրական յատկութիւններին ու հակումներին, ծանօթ չէր պատմութեան, իրերի լօգիկային, աշխարհի օրէնքներին։ «Մեղուն», այս քաղցրիկ ապագային հաւատացած, յորդոր էր կարդում թիւրքահայերին չը լսել «Մշակի» խօսքերին, հանգարտ նստել իրանց տանը, զարգանալ—իսկ թէ ինչպէս զարգանալ, ինչպէս շունչ քաշել, կեանք ու պատիւ պահպանել, այդ «Մեղուի» գործը չէր, մանաւանդ որ նա հաւատացած էր թէ թիւրքաց «բարեխնամ» կառավարութիւնը ամեն ինչ կը հոգայ հէնց իր սեփական օգուտի համար։

Սա մի հէքիաթ էր, որ ստեղծել էր ազգային ինքնագոհութիւնը։ Եւ փաստերը, հէնց «Մեղուի» էջերում արձանագրվող փաստերը, գալիս էին ջախջախելու այդ հէքիաթը։ Այսպէս, թիւրքաց կառավարութեան

բարի խնամքների վրա այնքան մեծ յույսեր դրած լրագիրը իր № 40-ի առաջնորդող յօդուածում ստիպուած էր խոստովանել որ Թիւրք կառավարութիւնը թոյլատրել է ու թոյլատրում է բռնութիւն հայերի դէմ և խորամիտ կերպով աւելացնում էր. «Նորա հիմքն էր թողնել Քրդին և Տաճկին հարստահարելու Հային և այլոց, որ սոքա չը զօրանան»։ Ահա այդ իրականութեան մէջ պիտի հայերը այնքան զարգանային, որ զարգացնէին և Թիւրքերին ու մի Թիւրքա-հայկական միութիւն կազմէին...

Մի քանի ուրիշ առաջնորդողներ էլ գրեց «Մեղուն», որոնց մէջ շարունակեց աղմուկ բարձրացնել թէ «Մշակը» տնաքանդութիւն է անում, ուզում է Թիւրքահայերին կոտորել տալ և այլն։ Քաղքցին լաւ նիւթ էր գտել և մի առանձին հաճութեամբ ծաղրում էր թէ ինչպէս Գրիգոր Արծրունին բանակ է կազմում ու գնում է պատերազմելու։ Յուլիսի վերջերում Արծրունին մի գրական երեկոյթում կարդաց իր գրած «Մի պատկեր»։ Դա մի փոքրիկ պատմութիւն էր այն մասին, թէ ինչպէս մշեցի մշակը, Թիֆլիսում տարիներ տանջվելուց յետոյ, ծանր աշխատանքով վաստակած կօպէկները վերցրած տուն է վերադառնում, բայց տեսնում է որ

տուն չէ մնացել, գիւղ էլ չը կայ։ Ամէն ինչ աւերակ է, յարձակվել են քրդերը, քանդել են, տարել ու կոտորել։ «Մեղուն» մինչև իսկ այդ անմեղ պատկերից էլ կատաղեց։ Նա գրում էր.

«Մշակի» 29-դ համարի մէջ տպուած է մի յօդուած, որի անունը ճ ի ւ ա ղ դնելու տեղ՝ սխալմամբ պ ա տ կ ե ր է դրուած։ Ոչ մի մշեցի դորա մէջ չի գտնիլ իւր պատկերը, այլ մի հրէշ, որ կարող էր վիժուել միայն խանգարուած երեւակայութիւնից։ Իսկ լեզո՜ւն, լեզո՜ւն... կարծես մարախներից կերուած արտ լինի։

Բայց ի զուր էր կարծում «Մեղուն» թէ Արծրունին իր մի քանի յօդուածներով ոտքի կը կանգնեցնէ Թիւրքահայերին, կոտորել կը տայ։ Արծրունին ինքն էլ շատ լաւ ճանաչում էր հայերին, գիտէր թէ որքան բթացած, անզգայացած ժողովուրդ է ապրում ասիական Թիւրքիայում։ Իր ամենակրակոտ յօդուածներից մէկի մէջ (№ 28) նա ասում էր թէ տեսնելով Թիւրքաց Հայաստանում տեղի ունեցող հարստահարութիւնները, դուք կասէք թէ հայերը «դիակ են, լէշ են, աղբ են»։ Կոտորածը ասիական Թիւրքիայում «Մշակի» առաջնորդողները չը պիտի առաջացնէին, քանի որ կոտորածների

ու հարստահարութիւնների համար հարկաւոր էլ չէ եղել, որ հայերը ապստամբվեն։

Բալկանեան թերակղզում տեղի ունեցող անցքերը արձագանք գտան և Փոքր-Ասիայի խորքերում։ Քրիստոնէութիւնը ահաւոր մենամարտ էր սկսել մահմեդականութեան հետ. վերջինս գրգռված էր, ֆանատիկոսութեան և վայրենութեան տեսարաններով էր սարսափ ազդում քրիստոնեաներին։ Թէև հայերը չատ հեռու էին սլաւոնների երկրից, թէև նրանք լուռ ու մունջ նստած էին իրանց տներում, բայց ամառվանից սկսեցին տխուր լուրեր գալ և Թիւրքաց Հայաստանից. հարստահարութիւնները, կողոպուտներն ու սպանութիւնները մեծ չափեր ընդունեցին և «Մեղուի» թղթակիցը գրում էր Կ. Պօլսից հետևեալը.

Մեր Տաճկաստանցի Հայոց արդի կացութիւնը խիստ տխուր է, վիճակնիս խիստ վատթար. հանրածանօթ մոլեռանդութիւնը կատաղի կերպիւ գրգռուած է քրիստոնէից դէմ. հոս մայրաքաղաքիս մէջ արդէն ցոյցեր կըլլան ու կխօսուին, մէկ քանի անգամ է որ Թուրքերը քրիստոնէից դռները քարի քռնեցին գիշեր ատեն։ Իսկ Հայաստանի մէջ սարսափելի վիճակ մը ունին քրիստոնեայք, որք ընդհանրապէս հայք են։

Մի կողմից այսպիսի թղթակցութիւններ և բազմաթիւ այլ տեղեկութիւններ, միւս կողմից ծաղր ու հայհոյանք Արծրունու դէմ, թէ ինչու է նա ասում որ Թիւրքահայերը լաւ չը պիտի մնան։ Այո, իւրաքանչիւր հրապարակախօսին չէ տուած հասկանալ ժամանակի խորհուրդը, լինել նրա ոգու արտայայտութիւն։

Այս դեռ «Մեղուն»։ 1876 թւականի յուլիսից սկսեց հրատարակվել Թիֆլիսում «Փորձ» անունով եռամսեայ հանդէսը, որի խմբագիրն էր Աբգար Յովհաննիսեան։ Ռուսահայ մամուլի մէջ աւելանում էր մի նոր օրգան։ Բայց «Մշակը» չէր կարող ասել թէ դա իր զինակիցն է։ Որքան էլ թոյլ ու անգոյն լինէին այդ հանդէսի այն խմբագրական յօդուածները, որոնց մէջ պիտի երևար նրա ուղղութիւնը, նոյն իսկ առաջին համարից կարելի էր նկատել որ «Փորձը» ասում է այն, ինչ ասել էր և ասում էր «Մեղուն», և սխալված չէր «Արշալոյս Արարատեան» լրագրի թղթակիցը, որ անուանեց «Փորձը» «Մեղուի» արձագանք։ Իր անդրանիկ յայտարարութեան մէջ անուանելով իրան «Հայաստանեայց, ազատութեան սկզբունքների վերայ հիմնած, Սուրբ Եկեղեցւոյ հարազատ որդի», Նոր հանդէսը առաջին համարի «Ազ-

գային Տեսութիւնը» (ներքին տեսութիւն չը կար) սկսեց մի խուլ արշաւանքով «Մշակի» դէմ։

Հայոց ազգը—ասված էր այդ տեսութեան մէջ—իւր քաղաքական ինքնուրոյն գոյութիւնը կորցնելուց յետոյ պահպանել է իւր ազգութիւնը գլխաւորապէս Սուրբ Գրիգոր Լուսաւորչի հիմնած եկեղեցու շնորհիւ. ով որ պատկանել է այդ եկեղեցուն, համարուել է եւ մինչեւ այժմ էլ համարվում է հայ, թէեւ իրօք նա այլ ծագումից եւս լինէր, եւ միւս կողմից՝ այն հայը, որ ուրիշ եկեղեցու գիրկն է մտել, դադարել է իւրեան հայ անուանել, չփոթելով ուրեմն եկեղեցու գաղափարը ազգութեան գաղափարի հետ։

Այս նախաբանից յետոյ՝ եռամսեայ հանդէսը գալիս էր ասելու որ «Մշակը» (անունը չէ տուած) նայում է եկեղեցու հարցի վրա ոչ թէ պատմութեան և քաղաքականութեան տեսակէտից, այլ այնպիսի հայեացքով, որ կարծես նրա սամծները հայոց ազգին չեն վերաբերում։ Մեզանում հոգեորականութիւնը առանձին դասակարգ չէ կազմում, նա հակառակ չէ գիտութեան և առաջադիմութեան։

«Փորձը» ոչինչ նոր բան չէր ասում. այդ բոլորը շատ և շատ անգամ կրկնել էր «Մեղու»։ Արծրունին, քննադատելով հանդիսի առաջին համարը, ասաց որ դա պատահական

յօդուածների մի ժողովածու է, որի մէջ չը կայ ներքին կապ, պատահում են լաւ յօդուածներ, բայց քիչ չեն և այնպիսիները, որոնք ընտանեկան ընթերցանութեան համար բոլորովին անպէտք են։ Ուրեմն «Փարձը» ոչ ամսագիր է, այս բառի խսկական իմաստով, ոչ էլ նոյն իսկ ընտանեկան ընթերցանութեան համար պիտանի մի ժողովածու։ Մի ընդարձակ առանձին յօդուածով էլ Արծրունին պատասխանեց «Ազգային Տեռութեան» մէջ յայտնած այն մտքին, թէ մեզանում չը կայ կղերականութիւն։

Այդ բառը—կղերականութիւն—առաջին անգամ Արծրունին էր, որ սկսեց գործ ածել մեր մէջ։ Նա ցոյց էր տալիս որ մեզանում էլ, ինչպէս և ուրիշ ազգերի մէջ, կղերական առանձին դասակարգ է կազմում կուսակրօն հոգևորականութիւնը, որ չունենալով որոշ պաշտօն, ստեղծել է իր համար արտօնութիւններ և այդ արտօնութիւնների տէր մնալու նպատակով արգելում է, որքան կարողանում է, որ ազատ մտաւոր զարգացում չը լինի ժողովրդի մէջ, որ ժողովրդական իրաւունքները բռնաբարված լինեն, որ բուն ժողովրդական հոգևորականութիւնը—քահանաները—միշտ նուիթապէս անապահով դրութեան մէջ լինի, միշտ կախված կուսակրօն

*հոգեորականութեան կամքից և իշխանութիւնից։ Մեզանում կղերականութիւն կայ, բայց եթէ թոյլ կերպով է դեռ արտայայտում իր գոյութիւնը, պատճառն այն է, որ կուսակրօն հոգեորականութիւնը դեռ տգէտ է։ Եւ Արծրունին գրում էր հեռևեալ՝ խորապէս ճշմարիտ և մանաւանդ այժմ անհերքելի դարձած տողերը.*

Կայ տգէտ, բայց կայ եւ քաղաքակրթված կղերականութիւն... Դժբաղդաբար մինը միւսից վտանգաւոր է։ Մինչեւ անգամ կարելի է ասել որ քանի կղերական ոգի ունեցող դասակարգը լուսաւորվում է, նա աւելի վտանգաւոր է դառնում ժողովրդի ազատ, անհատական, ազգային զարգացման։ Տգէտ կղերականութիւնը միամիտ կերպով կարծում է որ երբէք ժողովուրդը չի զարթնի, եւ աշխատում է ոչ մի տեղ չը հիմնել ուսումնարաններ, չը նպաստել նրանց հիմնելուն եւ եղածների բարեկարգելուն, ընդհակառակն միշտ արգելում է նրանց բարոյական եւ նիւթական ծաղկմանը։ Բայց լուսաւորված կղերականութիւնը հասկանում է, որ եթէ ինքն չը հիմնէ, —ուրիշները կը հիմնեն դպրոցներ, ուրեմն լաւ է համարում ինքն հիմնել, իր ձեռքից չը թողնելու դպրոցները... եւ հիմնելով, առաջնորդելով, կառավարելով դպրոցները, աշխատում է մտցնել ուսման մէջ սկօլաստիկական սահմանափակ ուղղութիւն, որ արգելէ մարդի ազատ, լայն, ընդարձակ մտաւոր զարգացման, մտցնում է սահմանափակ ուղղութիւն, որպէս մարդի վրա խիստ հսկելու ամենալաւ միջոց, մտցնում է կոյր հնազանդութիւն, սաստիկ դիսցիպ-

լինա, եւ աշակերտների միմեանց մէջ ու նրանց վերաբերութեամբ վարժապետների լրտեսութեան սիստեմա, մտաւոր կեանքի վրա հսկողութիւնը հասցնում է մինչեւ լրտեսութեան երեխաների միմեանց մէջ ունեցած զաղտնիքների...

...կղերականութիւնը ի բնէ եւ սկզբունքով Թշնամի է բարձրագոյն կրթութեան, բայց երբ որ տեսնում է Թէ քահանայութեան մէջ զարԹնում է իր իրաւունքների հասկացողութիւնը, սկսում են բազմանալ նրա մէջ կրԹված մարդիկ,—կղերական կուսակցութիւնը իսկոյն շտապում է ինքն հիմնել մի հոգեւոր աստուածաբանական դպրոց *), բարձրագոյն ընԹացքով (որ ինքն սկզբունքով սրտի խորքից ատում է), որպէս զի ինքն ներգործութիւն ունենայ քահանաներ պատրաստվող երիտասարդների զարգացման վրա, ձեւէ նրանց ուղեղը սահմանափակ, կրաւորական կերպով, ինչպէս որ ինքն ուզում է։ Եւ քանի լուսաւորվում է կղերականութիւնը, այնքան նա աւելի ճարպիկ է լինում այդ տեսակ գործերում։ Միայն տգէտ կղերական կուսակցութեան մէջ լաւ չեն որոշվում կղերական ձգտումները, կամ շատ անշնորհ եւ անվտանգ են երեւում, որովհետեւ նա տգէտ է... Հէնց որ նա մտաւոր զարգացման աստիճանը կը բարձրանայ, նա աւելի եւ աւելի վըտանգաւոր կը լինի։

*Ահա ինչ բաներ չէր կամեցել տեսնել նորածին եռամսեայ հանդէսը։ Բայց նա ուրիշ*

---

*) Արծրունին այստեղ ինկատի ունէր Էջմիածնի ճեմարանը։

շատ բաներ էլ չէր տեսնում։ «Մեղուին» նմանւելը կատարեալ դարձնելու համար նա իր երկրորդ համարում սկսեց նոյն երգը երգել Թիւրքահայերի մասին։ Մի ազգ, ասում է հանդէսը, կարող է ապրել իր տոկուն աշխատութեամբ, իր ինքնուրոյն առաջադիմութեամբ։ «Օսմանեան պետութեան այժմեան կազմակերպութիւնը և քաղաքական դրութիւնը ամենայն միջոց տալիս է, որ ազգն այդ ճանապարհով յառաջ գնայ»։ Հայ ազգի դրութիւնը բարւոքելու համար պէտք է ուսումնասիրել Հայաստանը, տեսնել թէ ինչ պակասութիւններ կան այնտեղ։ Դժբախտութեան պատճառը գաղթականութիւնն է։ Բայց ինչո՞ւ է գաղթում հայը։

Գուցէ փողը պակաս է՝ երկիրը մշակելու, գուցէ ճանապարհներ չկան՝ արդիւնքները վաճառահանելու. ուրեմն պէտք է գիւղական բանկեր բանալ, ինչի չենք աշխատում ընկերութիւններ կազմել ճանապարհներ շինելու համար, ինչի չենք դիմում եւրոպական դրամագլուխներին, եթէ մեր միջոցները սահմանափակ են։

Մեզ հաւատացնում են, թէ Տաճկական Հայաստանում մարդու կեանքն ու կայքը անապահով դրութեան մէջ են։ Բայց մի ոք քննե՞լ է թէ երբ եւ ինչ հանգամանքներում են պատահում յարձակմունքներ հայոց կայքի եւ կեանքի վերայ։ Մենք, օրինակի համար, հաստատ աղբիւրներից լսած ենք, որ

քրդերն ու աւազակները հայ գիւղերի վերայ գրեթէ միայն այն ժամանակ են յարձակվում, երբ գիւղի մէջ մնում են ծերեր ու կանայք, իսկ տղամարդիկը գնացած են լինում Թուրքիայի մեծ քաղաքները եւ Կովկասու կողմերը փող աշխատելու։ Գուցէ քարու-քելով գիւղերի դրութիւնը, մենք աննկատելի կերպով հասնենք եւ այն հետեւանքին, որ ոչ միայն գաղթականութեան առաջն առնենք, այլ եւ գաղթականներին ետ դարձնենք իրանց հայրենիքը։

Մեղադրում են Օսմանեան պետութեան աստիճանաւորներին, փաշաներին, կայմակամներին, որոնք նպաստում են մեր ազգի թուլանալուն։ Նախ՝ այդպիսեաց թիւը հազիւ թէ խիստ շատ լինի. երկրորդ, ո՛ր պետութեան մէջ չեն պատահում գուցէ աւելի մեծ յանցանքներ կառավարիչների կողմից։ Մենք միայն հաւատի ենք, որ այդպիսիներին ամեն իշխանութիւն, ուրեմն եւ Բարձրագոյն Դուռը, երբ նոցա յանցաւոր գործերին տեղեկանում է, առանց պատժի չի թողնում։ Բացի դորանից՝ պիտի ընդունենք, որ այն նեղութիւնները, որ քրդերն ու աւազակները պատճառում են քրիստոնեաներին Հայաստանում, յ ա ն ց ա ն ք ն ե ր են, պատժելի արարմունքներ են։

Ահա ինչ տեսակ հասկացողութիւն ունէին հայ հրապարակախօսները, գրողները իրանց թիւրքահայ եղբայրների մասին։ Մենք վերևում բերեցինք գեներալ Լիխուտինի գրուածքը և ասացինք որ հայոց ամբողջ գրականութեան մէջ չէր կարելի գտնել այդ տողերի պէս մի գրութիւն։ Բայց այդ տողերը գրվել

*էին դեռ 1855 թուականին։ Անցել էր այն ժամանակից քանի տարի և հայ գրողը դեռ այս տեսակ վայրի վերոյ դատողութիւնների մէջ էր խարխափում, թէև Կ. Պօլսի պատրիարքարանը երկու մանրամասն տեղեկագրեր էր հրատարակել, թէև արևելեան հարցի առիթով գրված անթիւ յօդուածների, գրքերի մէջ պարզվում, ապացուցվում էին թիւրքական կառավարութեան հիմնական, օրգանական պակասութիւնները։ Թէ մինչև որ աստիճանին էր հասնում «Փորձի» միամտութիւնը, երևում է նրանից, որ այդ գրական-հասարակական հանդէսը ասում էր թէ հայերը ինքնապաշտպանութեան համար կարող են զէնք ունենալ, թէ հրացան բանեցնելը Թիւրքիայում, «գոնէ հայերին Հայաստանում» արգելված չէ, մինչդեռ պատմութիւնը դաս է տալիս որ դեռ Օմար խալիֆան սահմանել էր թէ մահմեդականի հպատակ այլակրօնը իրաւունք չունի զէնք կրելու։ Ի վերջոյ «Փորձը» իր զարմանալի դատողութիւններին աւելի զարմանալի վերջ էր տալիս։ Իրաւունքը, ասում էր նա, ձեռք է բերվում կռւով և իսկոյն աւելացնում էր.*

Իսկ ասելով չենք ուզում հասկանալ յեղափոխական միջոցները, ապստամբութիւնը եւ այլն։ Հայե-

քի դրութիւնը Թուրքիայում, Նոցա վալելած իրաւունքներն ու արտօնութիւնները դեռ այնքան են, որ առանց ապստամբութեան դիմելու, կարող են քարւոքել իրանց դրութիւնը...

Պէտք է, սակայն, խոստովանել որ «Փորձը» հաստատ համոզմունք չունէր այդ հարցում։ Երրորդ համարից նա սկսում է տպել Գամառ-Քաթիպայի «Ազատ երգերը».—«Բողոք առ Եւրոպա», «Վանեցու Հայր մերը» և այլն, երգեր, որոնք ոչ միայն արմատապէս հակառակ էին հանդիսի խմբագրութեան վերոյիշեալ թիւրքասիրական խոհերին, այլ և հարկադրում էին խմբագրութիւնը քիչ յետ քաշվել, քիչ ուղիղ հասկանալ իրերն ու հանգամանքները։ Գամառ-Քաթիպան Արծրունուց յետոյ առաջինն էր, որ ռուսահայերի մէջ սկսեց ձայն բարձրացնել Թիւրքաց Հայաստանի ժողովրդի մասին։ Նա մարգարէքանաստեղծներից էր, գուշակում էր մօտիկ ապագան, տեսնում էր գալոցը, զգում էր։

Այժմ թողնենք Թիֆլիսը, անցնենք Կ. Պօլիս։ Այստեղ Արծրունու գրուածքները աւելի կատաղի, վայնասուն բարձրացրին. Թիւրքաց մայրաքաղաքի հայերը, իրանց պատրիարքի հետ, թիւրքասիրական ցոյցեր արեցին, որպէս զի իմացնել տան թէ չեն ուզում Ռուսաստանի օգնութիւնը։

*Նախ և առաջ յիշատակենք որ Թիւրքահայ մամուլը այդ կարևոր ժամանակներում միանգամայն անգիտակ և անհոգ էր։ Մինչդեռ իրաւունքների, սեփական երկրի, ապահովված աշխատանքի հարցեր էին արծարծվում, Թիւրքահայ գրողները ամենայն հանգստութեամբ քննում էին թէ որքան լաւ կը լինէր որ հայերը գաղթէին օտար երկիրներ։ Ամենից առաջ այդ միտքը պաշտպանում էր դօկտոր Շիշմանեան, որ յայտնի է Ծերենց կեղծ անունով, Զմիւռնիայի «Արևելեան Մամուլ» ամսագրի մէջ։ Ծերենցի դէմ սաստիկ բողոքեց Րաֆֆին Թաւրիզից գրված իր մի յօդուածով, որի վերնագիրն է՝ «Գժատուն»։ Իսկ երբ նոյն միտքը սկսեց քարոզել և Կ. Պօլսի «Մանզումէի Էֆքեար» լուրջ լրագիրը, այն ժամանակ Արծրունին գրեց՝ «Մենք էլ հրէաներ ենք» գեղեցիկ առաջնորդողը։ Իբրև ազգային մի արատի վառվռուն պատկերացում՝ նա չէ կարող մոռացութեան տրվել, ուստի մենք կը բերենք նրան քաղուածօրէն.*

Երկրագործութիւնը, արհեստները, վաճառականութիւնը իրանց մայրենի հողի վրա թողնելով, հայերը անդադար ձգտում են գաղթել, միշտ գաղթել...

Մի փոքրիկ խումբ հայերի գաղթում է իր մայրենի հողից մի քանի հազար վերստ հեռաւորութեամբ,

զետեղվում է մի որ և է մայրաքաղաքի մէջ, շինում է եկեղեցի,—ու սկսում է վաճառականութեամբ պարապել...

Հարցնող լինի թէ ինչի են այնքան հեռու գնացել,—իրանք էլ չեն կարողանայ պատասխանել...

Այդ խմբի մէջ յանկարծ յայտնվում է մէկը, որ այս կամ այն ճանապարհով հարստանում է՝ կամ սուտ Թղթաղրամով, կամ Թղթախաղով, կամ սուտ, խաբեբայ վաճառականութեամբ, անազնիւ կապալներով... Եւ ահա ամբողջ խումբը սկսում է այդ մարդուն Աստուծու տեղ պաշտել, նրան առաջին մարդ համարել ամբողջ ազգի մէջ,—որովհետեւ այդ զուցէ ամենաանազնիւ միջոցներով հարստացած մարդը օտար երկրում զետեղված այդ հայ վաճառականների խմբին տոկոսով փող է տալիս...

Եւ ահա նա ազգի բարերար դարձաւ...

Բայց ինչ օգուտ ազգին օտար երկրում զետեղված այդ վաճառականների խմբից, որոնք կտրել են իրանց բոլոր յարաբերութիւնները մնացած ազգի հետ, աշխատող, քրտինք Թափող, իրանց մայրենի հողի վրա մնացած բազմութեան հետ, արհամարհանքով խօսում են եւ նայում են իրանց հայրենակիցների վրա, ապարդիւն ոյժ են կազմում իրանց ազգի համար եւ միեւնոյն ժամանակ օտարազգի հասարակական կարծիքի առաջ ներկայացնում են իրանց անձնական յատկութիւններով ազգի ամենաստոր, ամենաանմխիԹար կողմից, կոտրելով օտարերկրեայ հասարակութեան աչքում իրանց ազգի անունը...

...Այն ազգը, որ չունի իր մէջ ոչինչ քաղաքական հիմունքներ,—այդ տեսակ ազգ գոյութիւն ունենալ չէ կարող։

Այն ժողովուրդը,՛ որ ներելի է համարում փախչել իր մայրենի հողից, գնալ հեռու աշխարհներ, թողնել իր հայրենիքը, որ չը բաժանէ իր հայրենակիցների հետ նրանց բարոյական կամ տնտեսական աննախանձելի դրութիւնը, որ քաջութիւն չունի իր տան մէջ դիմանալ կեանքի այս կամ այն դժուարութիւններին եւ արգելքներին, չը գիտէ, ընդունակ չէ որ եւ է զոհաբերութիւն անելու,—այդ տեսակ ժողովուրդ՝ որպէս ա զ գ գոյութիւն չէ կարող ունենալ...

Լաւ է որ այդ մարդիկը իրանց մայրենի հողի վրա ապրէին, աշխատասէր ու աղքատ լինէին, երկրագործութեամբ կամ արվեստներով պարապէին, քան թէ հեռու երկրում զետեղվելով, կտրեն իրանց բոլոր հասարակական կապերը իրանց ազգութեան հետ եւ հ ա ր ս տ ա ն ա ն այնտեղ։ Այդ տեսակ հարստութիւնը մեզ համար, ազգի մնացած մասի համար, որ իր հայրենի հողի վրա է մնացել՝ մի կօպէկ չարժէ...

Այն ազգը, որի անդամները իրանց մէջ չունեն ոչինչ հասարակական կապեր, որոնք անդադար աշխարհի չորս կողմը ցրվում են, որոնք չը գիտեն միասին ապրել, միասին իրանց ցաւերը եւ ուրախութիւնները տանել,—այն ազգը որ զոհ է լինում երբ հեռու աշխարհում իր հայրենակիցներից կտրված, կարողանում է անաղնիւ վաճառականութիւն անել, խաբել օտարազգիներին, շահվել, հարստանալ, եւ միեւնոյն ժամանակ պարծենալ թէ հաւատարիմ է մնում իր ազգութեանը, որովհետեւ կառուցած ունի իր հայրենիքից հազարաւոր վերստ հեռու մի եկեղեցի, թէեւ մոռացած եւ արհամարհում լինէր իր մայրենի լեզուն,—այդ տեսակ ազգ՝ ազգութիւն չէ, նա

մինչեւ անգամ հասարակութիւն չէ,—այլ միայն մի *աղանդ* է...

Հրէաներն էլ ազգ չեն, այլ միայն մի աղանդ...

...Անբարոյական մարդիկ, անհատներ ամեն ազգութեան մէջ կան,—բայց եթէ գրեթէ ամբողջ ազգը նախանձով է նայում այն մարդու վրա, որ հարստացել է ամենակեղտոտ միջոցներով, համարում է նրան *առաջին* մարդ, պաշտում է նրան, երկրպագում է նրան, ներում է նրան իր անցեալը, անուանում է նրան ազգի *բարերար*, այն պատճառով որ այդ մարդը, ամենաաններելի միջոցներով հարստանալուց յետոյ, մի կողմից տոկոսով փողեր է տալիս օտար երկրում զետեղված խաբեբայ *ազգային* վաճառականներին, միւս կողմից կեղծաւոր կերպով իրան ազգասէր է ձեւացնում՝ գողացած փողից մի քանի աւելորդ կոպէկներ *ազգային գործերի* վրա նուիրելով,—այդ տեսակ ազգ, ցաւելով պէտք է ասենք, եթէ չը փոխէ իր ընթացքը, կարող է ապագայի համար, որպէս ազգային բարոյական միաւոր, որպէս մարդկութեան մի անհատ՝ կորած համարվել։

Գաղթական հայութեան այս պատկերը, ընդհանուր առմամբ, անհատական բացառութիւնները մի կողմ թողնելով, ճիշտ է։ Այսպէս է վկայում երկար անցեալը, այսպէս է խօսում և ներկան։ Եւ սակայն այսպիսի մի դրութիւնը նախանձելի էին համարում Թիւրքահայ գործիչները, Ծերենցի նման յայտնի գրողները, այն էլ երբ,—1876 թւականին, երբ

Արևելքը իր աւերակների տակից նոր օրերի, նոր դրութիւնների էր սպասում։ Սա ցոյց էր տալիս որ Թիւրքիայի ամբողջ հայութեան ներկայացուցիչ համարվող Կ. Պօլիսը միան-գամայն միամիտ, խիստ ինքնագոհ էր այդ ժամանակներում, չունէր ոչինչ ակնկալու-թիւններ, և միակ գաղափարը, որ մատչելի էր նրան, Թիւրքասիրութիւնն էր։

Այդ տրամադրութիւնը տիրում էր թէ պաշտօնական շրջաններում, թէ լրագրու-թեան մէջ։ Թիւրքիան նեղված էր. և Կ. Պօլսի հայութիւնը ամեն կերպ աշխատում էր այդ նեղված պետութեան աչքն ընկնել իր հաւատարմութեամբ։ Թիւրք-սերբիական պատերազմի ժամանակ եղան հայեր, որոնք կամաւոր գրվեցին և մտան Թիւրք զօրքերի շարքը։ Ներսէս պատրիարքը յուլիսի սկզբում մի շրջաբերական հրատարակեց, որով հրա-ւիրում էր Թիւրքահայերին օգնել Օսմանեան գահին։

Մի այնպիսի ժամանակ, երբ քրիստոնեայ հպատակների հարցը սպառնում էր կեանքի և մահվան հարց դառնալ, Թիւրքաց կառա-վարութիւնը ամենայն հաճութեամբ մի քանի բարեկամական ցոյցեր էր անում դէպի հայե-րը, որպէսզի նրանց հաւատարմութեան վրա յենվելով, կարողանայ ասել Եւրօպային, թէ

*Թիւրքիայում տանջվող քրիստոնէութեան հարց չը կայ, այլ միայն պլատօնական խնդիր։ Հայոց պատրիարքին խոստումներ էին անում, բանը հասաւ այն տեղին, որ մեծ վէզիրը այցելութիւն տուեց Ներսէս պատրիարքին, մի բան, որի նմանը չէր եղել հայոց պատրիարքարանի տարեգրութեան մէջ։ Եւ Ներսէսը—դեռ դէպքերը չէին խրատել նրան, դեռ ևս հաւատացող էր նա—կարծում էր թէ Թիւրքասէր քաղաքականութեամբ կարելի է ձեռք բերել այն, ինչ ուրիշ քրիստոնեայ ազգեր ուզում էին զէնքով ստանալ։ Այդ պատճառով նա հրատարակեց վերոյիշեալ շրջաբերականը, որով յորդորում էր հայերին ոչ միայն աղօթքներ կարդալ Թիւրքական զէնքի աջողութեան համար, այլ և զինուոր գրվել *)։ Դա մի շատ հետաքրքրական դոկումենտ է. պատրիարքը այդտեղ վկայում էր թէ ճիշտ է այն ընդհանրական կարծիքը որ հայերի ապագան Թիւրքիայումն է։ Ահա ինչպէս էր փաստաբանվում այդ միտքը.*

Այն օրէն ի վեր—գրում է Ներսէսը—որ Հայոց ազգին ամենամեծ մասն Օսմանեան հզօր Տէրութեան հպատակասէր քաղցր հովանոյն ներքեւ մտաւ, իւր

---

*) «Մշակի» Թղթակիցը Կ. Պոլսից հաղորդում էր որ հայ կամաւորների թիւը հասնում էր 40-ի։

հինգ դարուց պատմութիւնը կը ցուցանէ, թէ ինչ մեծամեծ շնորհներ իրեն պարգեւած է այս հզօր Տէրութիւնը։ Եթէ այսօր Թուրքիոյ մէջ կը տեսնենք Հայ ազգը որ կը պահէ իւր Կրօնը, իւր Եկեղեցին, իւր Լեզուն, իւր Պատմութիւնն ու աւանդութիւնները, վերջապէս եթէ այսօր Հայ ազգն կը զգայ իւր էութիւնը, նոյն բարեխնամ Տէրութեան՝ շնորհաց արդիւնք են։ Այս ճշմարտութեան ամեն Հայու միտք համոզուած է եւ չը կայ Հայ մը գրեթէ որ սորա դէմ խօսի առանց իւր պատմութիւնն անգիտանալու եւ Ազգին շահերը չը ճանչելու։

Հայոց ազգն ալ իւր այս վայելած շնորհներուն փոխարէն հաւատարիմ հպատակութիւն ցուցած է արդեամբ, եւ յարատեւ երախտագիտութիւն իւր սրտին մէջ կրած է յորդւոց յորդիս։ Ինչ սապարէզ որ բացուած է իւր առջեւ, հոն բերած արգասաւորած է իւր բոլոր մտաւորական, բարոյական եւ նիւթական կարողութիւնները եւ ապացուցած է այսու՝ թէ Օսմանեան պետութեան ամենակարեւոր տարրն է։

Ստոյգ է թէեւ որ Հայ ազգը մերթ ընդ մերթ գաւառներու մէջ բարեխնամ Տէրութեան կամաց հակառակ հարստահարութեանց ենթակայ եղած ալ է, հարստահարութիւնք՝ որոնք միայն մարմինը կը վնասեն, եւ հեռի են այն տեսակ հարստահարութիւններէն՝ որոնք ոգին եւ մարմինը միանգամայն կը վնասեն եւ ազգին գոյութեանը կը սպառնան, սակայն վերջին օրերս ձեռք առնուած միջոցներով եւ մանաւանդ Վեհափառ Սուլթանի գահակալութեան առթիւ հրատարակուած հրովարտակին սկզբանց յենլով՝ մեծ յոյս ունինք որ այնպիսի մասնաւոր ճընշմանց ու անկարգութեանց ալ հիմնական բարեկարգութեամբք առաջքը պիտի առնուի, եւ մեր գաւա-

ռացի ազգայինք լիովին պիտի վայելեն բարեկամ Տէրութեան մեր Ազգին վրայ ունեցած մասնաւոր սիրոյ եւ համակրութեան արդիւնքը։

Արդ Հայ ազգն՝ որոյ ճակատագիրն այսչափ դարերէ ի վեր նուիրագործեալ կապերով միացած է Օսմանցւոյն ճակատագրին հետ, չը կրնար անտարբեր մնալ Օսմանեան Տէրութեան գտնուած արդի ծանրակշիռ պարագայից մէջ, այլ պարտաւոր է ինչպէս ամեն ժամանակ, նոյնպէս եւ առաւել եւս ներկայ ժամանակիս մէջ անկեղծ օժանդակութիւն մատուցանել։ Այս օժանդակութիւնն ընելով հայրենասէր Հայը՝ նոյն իսկ իւր ազգային շահը պաշտպանած կըլլայ. վասն զի Օսմանեան երկիրը պաշտպանել՝ Հայաստանը պաշտպանել ըսել է. նոյն իսկ Հայուն կրօնը, Դպրոցը, ինչքը, տունը, ընտանիքը եւ պատիւն ու կեանքը պաշտպանել ըսել է։

Ուստի խորհրդակցութեամբ Խառն Ժողովոյ Ազգային Վարչութեան՝ նուիրական պարտք կը համարիմ այսու Շրջաբերական կոնդակաւ յորդոր կարդալ բոլոր Հայ ժողովրդեան որ ամեն ոք իւր կարողութեան սահմանին մէջ հայրենեաց պաշտպանութեան համար պէտք եղած օգնութիւններն ընել փութայ. նախ աղօթելով հրապարակաւ յատենի Եկեղեցւոյ առ Ամենաբարձրեալն Աստուած, Թագաւորն Թագաւորաց, որպէս զի Իւր նախախնամական հզօր հովանեաւ պաշտպանութեամբն մեր Օգոստափառ Սուլթան Մուրատ Ե. կայսրն եւ նորա աթոռն անսասան պահպանէ, իւր նախարարաց եւ պաշտօնէից խոհեմութիւն եւ իմաստութիւն պարգեւէ, եւ կայսերական արիազունդ բանակաց եւ զինուց յաջողութիւն շնորհէ։ Նոյնպէս աղօթելով այն ամեն ազգէ կամաւորելոց համար՝ որք հայրենասիրական եռանդով վա-

առած զէնք կառնուն հայրենեաց թշնամիներուն դէմ։

Երկրորդ՝ ըստ կարողութեան իւրաքանչիւր ուրուք եւ ըստ յօժարութեան կամաց օգնելով թէ նիւթական եւ դրամական նպաստից մասնակցութեամբ եւ թէ անձնական ծառայութեամբ։

- Վերջապէս ամենքս ի մի բերան եւ ի մի սիրտ չը խնայենք մեր Վեհապետին եւ մեր Հայրենեաց պաշտպանութեան համար որ եւ է զոհողութիւն եւ ծառայութիւն, որոնք ներկային եւ ապագային մէջ մեր ազգին համար փառք եւ օգուտ կը բերեն։

Մի կողմ թողնելով ուրիշ բոլոր հանգամանքները, նկատի առնենք միայն այն, որ Թիւրքիայի պէս մի մեծ, զինուորական բռնապետութիւն պատերազմ էր մղում երկու փոքրիկ, թոյլ, նոյն իսկ կանօնաւոր զօրքեր չունեցող սլաւօնական իշխանութիւնների դէմ, որ Թիւրքաց բանակները, Սերբիայի սահմանները հասնելու համար, պիտի անցնէին Բօլգարիայի արիւնոտ դաշտերով, ուր դեռ նոր այդ զօրքերը կատարել էին այնպիսի գազանութիւններ, որոնցից սարսափահար էր դարձել ամբողջ քրիստոնեայ աշխարհը։ Միայն այս հանգամանքները աչքի առաջ բռնելով, մենք տեսնում ենք որ առնուազն չափազանցութիւն էր քրիստոնեայ ազգի հոգևոր ներկայացուցչի կողմից այդպիսի շրջաբերական հրաւէր հրատարակելը։ Կարծեմ ոչ մի

ժամանակ Կ. Պօլսի հայութիւնը այս սատիճանի թիւրքասիրութիւն չէր ցոյց տուել։ Ճիշտ է, յոյներն էլ էին կամաւորներ տալիս, գուցէ նոյն իսկ աղօթում էլ էին իրանց եկեղեցիներում որ կիսալուսինը ջախջախէ Չերնօգորիան և Սերբիան, բայց հայերի ջերմ թիւրքամոլութիւնը մի առանձին, աչքի ընկնող երևոյթ էր կազմում։

Միայն մի մարդ գտնվեց հայերի մէջ, որ բողոք հրատարակեց Ներսէս պատրիարքի այս շրջաբերականի դէմ։ Եւ դա Գրիգոր Արծրունին էր։ Հրատարակելով շրջաբերականը «Մշակի» մէջ, նա նոյն համարում (№ 33) տպեց մի առաջնորդող, որի վերնագիրն էր «Կ. Պօլսի Ներսէս պատրիարքի խայտառակ և ամօթալի շրջաբերականը»։ Դա առաջին խիստ յարձակումն էր Ներսէսի դէմ։ Այդ շրջաբերականի մէջ Արծրունին տեսնում էր կղերականութեան յաղթանակը։

Ներսէս սրբազանի շրջաբերականը կարդալուց յետոյ—ասում է Արծրունին,—մենք ոչինչ զանազանութիւն չենք գտնում նրա ամօթալի վարմունքի եւ Հռօմի անսխալական հրէշի վարմունքի մէջ Թիւրքաց տէրութեան վերաբերութեամբ...

Ի՞նչ սքանչելի պատկեր՝ քրիստոնէական առաքելական եկեղեցու հովիւը քարոզում է հրապարակապէս թէ աւետարանի պահպանողը իսլամն է,

թէ՝ «Օսմանեան երկիրը պաշտպանել՝ Հայաստանը պաշտպանել ըսել է. նոյն իսկ Հայուն կրօնը, դըպրոցը, ինչքը, տունը, ընտանիքը եւ պատիւն ու կեանքը պաշտպանել ըսել է»։

Մենք միշտ համոզված էինք որ ք ր ի ս տ ո ն է ո ւ թ ի ւ ն ը՝ թէ իր բարոյական, թէ հասարակական վարդապետութեան կողմից բարձր է, քան թէ մ ա հ մ ե դ ա կ ա ն ո ւ թ ի ւ ն ը, որ միայն քրիստոնէութեան միջոցով կարելի է մարդկութեան հասնել լայն, ընդարձակ՝ բարոյական, հասարակական եւ քաղաքական զարգացմանը։ Մենք միշտ համոզված էինք որ քրիստոնէութիւնը դաւանող ազգը չէ կարող իր բոլոր մտաւոր, հոգեւոր, տնտեսական եւ հասարակական կարողութիւնները զարգացնել մինչեւ որ ենթարկված կը լինի մի պետութեան լուծին, որի դաւանութիւնը՝ մահմեդականութիւնը սկզբունքով թշնամի է մարդու ազատ, անհատական զարգացման, այն դաւանութիւնը, որ իրան երբէք ընդունակ չէ ցոյց տուել՝ նպաստել պետական կանոնաւոր, հաստատ, զօրեղ կազմակերպութեան զարգացնելուն, որ միշտ սկզբունքով թշնամի է եղել լոյսի, առաջադիմութեան, ժամանակակից գաղափարների ընդունելուն...

Բայց Ներսէս սրբազանը այսպէս չէ կարծում։ Այդ քրիստոնեայ հովիւը, այդ աշակերտը եւ առաքեալը Քրիստոսի՝ անհրաժեշտ է համարում քրիստոնէական ազգի գոյութեան տեւողութեան համար մ ա հ մ ե դ ա կ ա ն ո ւ թ ե ա ն հ ո վ ա ն ա ւ ո ր ո ւ թ ի ւ ն ը, քրիստոնեայի պատիւը ենթարկում է իսլամի պատւի հովանաւորութեանը, աւետարանը ստորադրում է ղուրանին ...Փրկչի հօտի գոյութիւնը կարօտ է համարում Մահմէդի պաշտպանութեան...

Մենք խօսքեր չենք գտնում մեր զարմանքը, զայրացումը, մեր զզվանքը արտայայտելու համար, տեսնելով որքան ստոր է ընկել բարոյապէս մեր հոգեւորականութիւնը եւ որ նրա երարխիական կազմակերպութեան այդքան բարձր աստիճանների վրա բուն է դրել կաթօլիկ կղերականութեան Թշուառ ոգին։

Բայց Կ. Պօլսի Թիւրքամոլական ցոյցերը այդքանով չը բաւականացան։ Այդ ցոյցերը զաւեշտական, ծիծաղելի կերպարանք ստացան Ներսէս պատրիարքի շրջաբերականից քիչ յետոյ։ Մի օր Կ. Պօլսի Թիւրքախօս հայ լրագիրներից մէկը վերցրեց և հաղորդեց թէ Կովկասում ապստամբութիւն է ծագել ռուսների դէմ։ Մի քանի ուրիշ լրագիրներ ազատութեամբ ընկան այդ լուրի վրա և սկսեցին նրան ուռցնել, մեծացնել։ Հնարվեցին մի շարք առասպելներ։ Իբր թէ կովկասեան ազգերը միացել են, հայերը 80 հազար մարդ են հանել ռուսների դէմ, Կովկասեան փոխարքայ Մեծ Իշխան Միխայիլը թագաւոր է հրատարակվել Կովկասում, հայոց կաթողիկոսը բանտարկված է, և, որ գլխաւորն է, ապստամբները ջարդել են ռուս զօրքերը։ Այս առասպելներին հաւատացին. մի քանի հոգևորականներ նոյն իսկ քարոզներ տացին եկեղեցիներում, յորդորելով հայերին,

որ դէնք վերցնեն, գնան Կովկասում ապըստամբվածներին օգնելու։ «Մանզումէի Էֆքեար» լրագիրը փորձեց հերքել այդ հրէշաւոր առասպելները, բայց ժողովուրդը յարձակվեց լրագրի տպարանի վրա. անկարգութիւնները այնպիսի կերպարանք ստացան, որ ռուսաց դեսպանութիւնը ստիպված եղաւ միջամտել և պաշտպանել «Մանզումէի» խըմբագրին։

Թիւրք կառավարութիւնը, ի հարկէ, հաճութեամբ էր նայում իր հաւատարիմ հպատակների այս ցոյցին։ Առասպելը գոնէ այն միտքը կունենար որ զուր է Ռուսաստանը իրան քրիստոնէութեան, ազատութեան պաշտպան հրատարակում. ահա նրա հպատակներն էլ ապստամբվում են։ Եթէ այս առասպելին չը հաւատար Եւրոպան, հօ հայ ազգը, որ ապրում էր գաւառներում, պիտի համոզվէր որ զուր է յոյս դնել Ռուսաստանի վրա։ «Մշակը» եռանդոտ, ուժեղ բողոքներ հրատարակեց Թիւրքամոլական այդ յիմար ցոյցերի դէմ. Նա դատապարտեց Կ. Պօլսի հայ ինտելլիգենցիայի թեթևամտութիւնը և ասաց որ այդ արարմունքը նպատակ ունի Թիւրքիայի հայերի միտքը պղտորելու և մոլորեցնելու։ Այդպէս էլ եղաւ իրապէս։ Երբ Թիւրք կառավարութիւնը հարց ու փորձի

ենթարկեց առաջին անգամ այդ. հրէշաւոր ստութիւնը հրատարակող խմբագրին, սա պատասխանեց թէ արել է այդ բանը «Մշակի» ջգրու. «Մշակը» քարոզում է որ թիւրքահայերը ապստամբվեն, նա ինքն էլ, դրա փոխարէն, հրապարակ է հանել ռուսահայերի ապստամբութեան առասպելը։

Այն հրէշաւոր լուրերը, որ տարածեց նորերումս Կ. Պոլսի լրագրութիւնը Ռուսաստանի վրա,—ասում էր Արծրունին,—պարզ ցոյց են տալիս մեզ թէ կայ Կ. Պոլսում հայերի մի յայտնի կուսակցութիւն, որ մեծ հակակրութիւն ունի դէպի Ռուսաստանը։

...Ցիշեալ երկու բանակները սրանք են՝ մի կողմից Կ. Պոլսի սահմանադրական հայերը, բուրժուազական օգուտներ ունեցող, հարուստ հայերը եւ նրանց հոգեւորականութիւնը, եւ ուրիշ կողմից՝ հասունեան կաթօլիկները։

Որքան Հայաստանի հայոց ամբոխը, մօտ երեք միլիօն Փոքր-Ասիայի մեծ մասամբ երկրագործ եւ արուեստաւոր հայոց ժողովուրդը ցանկանում է միանալ Ռուսաստանին, ապրել հաստատ օրէնքների հովանաւորութեան տակ, դուրս գալ այնպիսի դրութենից, որտեղ նա ապրում է անսահման կամայականութեան տակ, անպաշտպան լինելով հարստահարութիւնների, բարբարոսութիւնների, մահմեդական ամբոխի, աւազակների եւ թիւրք պաշտօնեաների կամայականութեան դէմ,—այնքան Կ. Պոլսի հայոց հասարակութեան մեծ մասին ձեռնտու է Օսմանեան պետութեան հովանաւորութեան տակ ապրելը։ Կ. Պոլսի հայերը ապրում են օտար հողի վրա, կտրված

են հողից, երկրի տնտեսական եւ բարոյական օգուտներից, պարապում են վաճառականութեամբ, կապալառութեամբ, վաշխառութոամբ եւ շատերը նրանցից կապված են Թիւրքաց տէրութեան հետ աւելի էլ սերտ կապերով, օսմանեան տէրութեան պետական ծառայութեան մէջ գտնվելով։ Հասկանալի է որ նրանց ձեռնտու է Թոյլ, միշտ փոփոխական ուղղութիւն ունեցող կառավարութիւն...

Բոլոր արտօնութիւնները որ ունեն Կ. Պօլսի հայերը, չեն տարածվում գաւառների հայերի վրա։ Ասիական գաւառների հայը, քրտինք Թափող հայը կամենում է միայն որ իր անձը, իր ստացվածքը, իր օրական աշխատանքը ապահոված լինէին, նա չէ կամենում հարստանալ։ Ընդհակառակն զանազան անազնիւ միջոցներով հարստացած Կ. Պօլսի հայ էֆէնդին կամ ամիրան մոռացել է այն երկիրը, որից դուրս է եկել, նա կտրել՝է իր կապերը իր ազգութեան հետ, նա աւելի բարձր է դասում իր նիւթական շահերը, քան Թէ իր ազգութեան տնտեսական եւ բարոյական օգուտները։ Նա ունի Կ. Պօլսում եկեղեցական եւ ուսումնարանական ինքնավարութիւն, —Նրան ինչ փոյթ որ այդ ինքնավարութիւնը լոկ խօսք է գաւառների համար եւ որ տեղական վարչութեան կամայականութեան եւ Թուլութեան պատճառով, այդ երեւակայական ինքնավարութիւնը չէ կարող ոչ գործադրված, ոչ պահպանված լինել գաւառներում։ Կ. Պօլսի հայ ամիրան, էֆէնդին եւ հոգեւորականը գիտեն Թէ քանի գոյութիւն կունենայ Թիւրքաց պետութիւնը, նրանց հարկաւոր չէ ոչ մեծ ուսում, ոչ ազգութիւն, ոչ բարոյական զարգացում, ոչ մասնագիտական կրԹութիւն, ոչ քաղաքացու ժամանակակից արժանաւորութիւններ եւ յատկութիւն-

ներ,—նրանց հարկաւոր է միայն փող, որով նրանք ամեն բան կարող են անել այդպիսի Թոյլ պետութեան հետ, իրանց արիւնակից զաւառացի հային էլ հարկաւոր ժամանակ հարստահարելով։

Գալով միւս կուսակցութեան, Արծրունին ասում էր որ «հասունեան·կաթօլիկ եղուիտական կուսակցութեան» էլ ձեռնտու է Օսմանեան պետութեան գոյութիւնը, քանի որ Թիւրքական Թոյլ կառավարութիւնը տալիս է նրան ամեն յարմարութիւն՝ առաջ մղելու իր պրօպագանդան ինտրիգների, զանազան որոգայթների միջոցով։ Եւ որպիսի համերաշխութիւն է տիրում Կ. Պօլսի հայ և Թիւրք լրագիրների մէջ։ «Նորերումս—շարունակում է Արծրունին—«Բասիրէթ» Թիւրքաց լրագիրը Թիւրքիայի հայերին գրաւելու համար իր մի համարի մէջ բացականչում է՝ «Թիւրքաց պետութեան կոչումն է ազատել հայերին ռուսաց տիրապետութեան անտանելի լուծից»։

Ահա Թէ որքան մեծ աղմուկ հանեց «Մըշակը», որքան կատաղի դիմադրութիւն առեղծեց իր այն յօդուածներով, որոնց մէջ մարդկային տարրական իրաւունքների ապահովութիւն էր պահանջում գաւառների հայ ժողովրդի համար։ Կ. Պօլսում միայն «Մանզումէ» լրագիրն էր իրան փոքր ի շատէ օ-

*րինաւոր պահում։ Նոյն իսկ «Մասիսը», որ հայոց պատրիարքարանի կիսապաշտօնական օրգանն էր համարվում և լուրջ ու խոհեմ թերթի համբաւ ունէր, պարտք համարեց ամենախիստ լեզուով յարձակում գործել «Մըշակի» դէմ։ Ահա ինչ էր գրում պատրիարքարանի այդ օրգանը.*

Բնաւ չէր յուսացուեր մայրաքաղաքիս հայ լրագրաց ոմանց մէկ չափազանցութեան փոխարէն, Թիֆլիզ հրատարակեալ եւ ամեն մէկ տողը գրաքննիչին սուր քննութեան ենթարկեալ թերթ մը, գուցէ անկէ առնելով, Թուրքիոյ Հայոց եւ զանոնք կառավարող տէրութեան դէմ նախատինք եւ թշնամանք տեղայ, ոչ թէ Հայու այլ Մոսկովի մը բերնին մէջ վայլող լեզուաւ մը... «Մշակը» Թուրքիոյ Հայերը դի՞ակ, լէ՞շ, ա՞ղբ կը կոչէ։ Մեք ամենքս անոր աչքին առջեւ մարդ ըսուելու անգամ արժանի չենք եղեր, այլ գրաստ, անբարոյական, ինկած, անշունչ էակներ ենք եղեր։ Ասկէ վար բան մը կը մնայ զմեզ կոչելու։ Եւ եթէ պատճառը հարցնելու լինինք, այս է եղեր որ «Թուրքիոյ Հայերը Թուրքերուն եւ քիւրդերուն սիրտը դանակ չե՞ն կոխեր»... Ի՞նչ մարդասիրական պահանջում։

...«Մշակի» խմբագիրն ի՛նչ փաստ ունի ապացուցանելու թէ Թուրքիոյ Հայն այն աստիճան ընկած է, ինչպէս որ կը կարծէ. ի՛նչպէս պիտի կրնայ ապացուցանել թէ Ռուսիոյ Հայը բարոյապէս գերագոյն է Թուրքիոյ Հայէն. ի՛նչ յառաջադիմութիւն, ի՛նչ լուսաւորութիւն, ի՛նչ ազգային կեանք կրնայ

ցուցնել Ռուսական Հայաստանի մէջ, որպէս որ Թուրքիոյ մէջ հայութեան ջնջումը կը պահանջէ։ Որովհետեւ Փոքր-Ասիոյ խորերն եւ Հայաստանի մէջ կը պատահին երեք մասնաւոր եղեռնագործութիւններ հակառակ կայսերական կառավարութեան կամաց՝ ի վնաս այս կամ այն Հայ անհատին, եղեռնագործութիւններ՝ որոց հեղինակներն եթէ ձեռք անցնեն, իրենց արժանաւոր պատիժը կը կրեն, ասոր համար պէտք է եղեր որ Հայերն ի զէն դիմեն իրենց կառավարութեան դէմ եւ «Մշակի» քարոզած քաղաքական ընթացքը բռնեն իրենց Խալամ հայրենակցաց նկատմամբ, որոց ամենամեծ մասը սիրով եւ համակրութեամբ վարուած են իրենց հետ այսչափ դարերէ ի վեր, եւ այնպէս կը վարուեն միշտ, մանաւանդ ներկայ լուսաւորեալ դարուս մէջ։

...Ըլլել ընկերական պատերազմի եւ ապստամբութեան հրաւէր կարդալ Հայոց, ստուգիւ՝ եթէ ոչ ազգատեցութեան, գոնէ յիմարութեան վերջին ծայրն է։ Եթէ Հայն իւր ազգային անհատականութիւնը պահած է, կը հարցնենք թէ որու շնորհիւ է։ Ո՞չ ապաքէն այն կառավարութեան պարտի իւր ազգութեան եւ լեզուին պահպանութիւնն, որ այսչափ ժամանակէ ի վեր ոչ միայն բնաւ չը բռնադատեց զինքն իւր ազգութիւնը փոխելու, երբ ամեն բանի կարող էր, այլեւ պաշտպանեց եւ առանձնաշնորհութիւններ տուաւ։ Նոյն իսկ այն դարերուն մէջ՝ երբ Թուրքիա տակաւին Թանզիմաթը գործադրած չէր, երբ եւրոպական տէրութեանց ներդաշնակութեան մէջ մտած չէր, Հայերը մեծամեծ շնորհներ կը վայելէին. Թուրքիոյ ել ու մուտքն իրենց ձեռքն էր. վաճառականութեան մեծ մասն իրենք կընէին, եւ կայսերական մեծամեծ գործարաններ կը բանեցնէին։ Ահա

այս ՝շնորհիւ Թուրքիոյ Հայք կրցած են անթիւ եկեղեցիներ ու դպրոցներ կանգնել, իրենց կրօնքը պաշտել եւ լեզուն մշակել, զարգանալ եւ աճել։

Եւ Կ. Պօլսի հայութեան շահերի այդ փաստաբանութիւնը լրագիրը վերջացնում էր հետեւեալ «խորիմաստ» եզրակացութեամբ.

Կարծենք Ռուսիոյ մէջ ալ խելքը գլուխ հայ մը չը կայ որ համոզուած չըլլայ այս ճշմարտութեանց. ուստի տարակոյս չունինք որ «Մշակի» յօդուածները ճշմարիտ Հայու մը գրչէ չեն կրնար ելած ըլլալ, այլ կամ Ռուսի մը կամ ազգուրացի մը, որ չը գիտենք ինչ նպատակաւ իւր Թուրքիոյ ազգակիցներն այսպէս Ռուսիոյ փառասիրութեան զոհելու փորձ կը փորձէ։

Այս անմիտ ակնարկութիւններն էին միակ զէնքը Արծրունու բազմաթիւ հակառակորդների ձեռքում։ Թողնելով որ յետագայ դէպքերը ապացուցանեն թէ ով էր ճշմարիտ հայը, ով էր լաւ հասկանում իրերի դրութիւնը, մենք այստեղ կը յիշեցնենք ընթերցողին, որ «Մշակի» հակառակորդները ձեռնտու էին համարում մոռանալ, չեղածի պէս համարել նրա ասածների էական, ամենագլխաւոր մասը և աղմուկ հանել երկրորդական բաների շուրջը։ Նրանք մոռանում էին, որ Արծրունին հաստատ

կերպով ասում էր. «Այժմ, կամ երբէք»․ մոռանում էին, որ Արծրունին, նկարագրելով թիւրքական ռայեայի տրկութիւնը, բթացած դրութիւնը, ասում էր որ նրան կարող է ազատել մի դրսի մեծ ոյժ և այդ ոյժը Ռուսաստանն է, որ իր վրա է վերցրել արեւելեան քրիստոնեաների պաշտպանութիւնը։ Հայերի համար էլ յոյսի դուռ է բացվում. «Այժմ, կամ երբէք»։

Եւ ահագին աղմուկն ու փայլատակումը չը կանգնեցրին Արծրունուն։ Նա չը նահանջեց, կէսից յետ չը դարձաւ, այլ շարունակեց իր պրոպագանդան աւելի մեծ եռանդով։ «Մշակի» միջոցով նա կարող էր միայն հայերի հետ խօսել, բայց պէտք էր ռուս հասարակութիւնն էլ ծանօթացնել թիւրքահայերի դրութեան հետ։ Ռուս լրագիրների մի նշանաւոր մասը թշնամաբար էր տրամադրված դէպի հայերը։ Գլխաւոր չարժառիթներից մէկը, ի հարկէ, այն թիւրքամոլական տրամադրութիւնն էր, որ տիրում էր Բօսֆօրի ափերում ապրող հայերի մէջ։ «Կովկասեան պատմութեան» մասին յօրինված առասպելների առիթով Պետերբուրգի լրագիրները խիստ յարձակումներ գործեցին հայերի դէմ և Ասիացին իր ֆելիէտօններից մէկում արխրութեամբ ասում էր թէ մեզ հայհոյում են,

անտղատղար հայհոյում են։ Անհրաժեշտ էր ռուս հասարակութեան առաջ պարզել իրողութիւնը, այն, որ Կ. Պօլսի հայութիւնից դուրս կայ հայերի մի ահագին բազմութիւն, որ տանջվում է սլաւօնների պէս։ Բայց ով պէտք է անէր։ Արծրունին մի կողմից զարմանք էր յայտնում որ հայ ուսանողները Պետերբուրգում և Մօսկվայում թարգմանութիւններ չեն անում հայոց լրագիրներից և չեն տպագրում ռուս լրագիրների մէջ, միւս կողմից ինքը աշխատում էր այդ անհրաժեշտ պահանջը իրագործել։

Այս պատճառով նա յուլիսի վերջից սկսեց տպագրել „Тифлисскій Вѣстникъ“ լրագրում մի շարք յօդուածներ՝ «Հայերի դրութիւնը Թիւրքիայում» ընդհանուր վերնագրով։ Դա մի բարեխիղճ, մանրամասն ուսումնասիրութիւն էր, հիմնված 1872-ի այն տեղեկագրի վրա, որ հրատարակել էր Կ. Պօլսի հայոց պատրիարքարանը և լուսաբանված այն տեղեկութիւններով, որ տալիս էր Կ. Պօլսի հայոց մամուլը։ Յօդուածների տակ դրված է Ա. ստորագրութիւն, բայց ոչինչ կասկած չը կայ թէ դրանք Արծրունու գրչին են պատկանում, քանի որ այնտեղ ամեն ինչ ներկայացրած է «Մշակի» ոճով և հայեացք-

*ներով և շատ տեղ նոյն իսկ Թարգմանութիւններ կան «Մշակից»։*

*Հոկտեմբեր ամսին, երբ արևելեան հարցի յարուցած ուշադրութիւնը իր ծայրայեղ լարման էր հասել, Արծրունին հրատարակեց ռուսերէն մի փոքրիկ բրօշիւր՝* „Восточный Вопросъ“ *վերնագրով։ Վեց փոքրադիր երես գրաւող այդ գրուածքը «Մշակի» մի առաջնորդողից մեծ չէր* *) *և նրա մէջ Գրիգոր Արծրունին աշխատում էր յիշեցնել մի անհաւոր ճշմարտութիւն, որ մոռացվում էր արևելեան հարցի քննութիւնների ժամանակ։*

*Ամբողջ Եւրոպան համոզված էր որ արևելեան հարցի արդար, բնական լուծումը կը լինէր վռնդել Թիւրքերին Եւրոպայից։ Նոյն իսկ պետական այնպիսի մեծ խելք, ինչպիսին էր Գլադստօն, իր ճառերի, իր հրատարակած նշանաւոր բրօշիւրի մէջ ասում էր թէ Թիւրքերի Եւրոպա անցնելը մի սոսկալի անէծք էր քաղաքակիրթ մարդկութեան համար և այդ անէծքից աշխարհը կազատվի այն ժամանակ, երբ Թիւրքերը կը հաւաքեն իրանց ունեցած-չունեցածը և կը հեռանան Եւրոպայի հողից։ Այդ վճիռը շատ վաղուց էր*

---

*) *Թարգմանութիւնը տպվեց 1877-ի առաջնորդողներից մէկում։*

կայացրել քրիստոնեայ Եւրոպան, դա, ի հարկէ, յայտնի էր Թիւրքերին, որոնք և ժամանակաւոր հիւրեր էին իրանց համարում եւրոպական հողի վրա։ Ցայտնի է, որ շատ բարձրաստիճան Թիւրքեր կտակում էին Թաղել իրանց Բօսֆորի ասիական ափերի վրա. Նրանք գիտէին որ Թիւրքի իսկական հայրենիքը, վերջ ի վերջոյ, Փոքր-Ասիան է։ Եւ իրաւ, դարերի ընթացքում եւրոպական քրիստոնէութեան ջանքերը ի նկատի ունէին միայն եւրոպական հողի վրա ապրող քրիստոնեաների ազատութիւնը Թիւրքական լուծից և եթէ օսմանեան Թագաւորները իրանց օժար կամքով անցնէին Բօսֆորի ասիական ափը, արեւելեան հարց չէր լինի։

Արեւելեան հարց այդ դէպքում չէր լինի։ Բայց որքան ճիշտ էր դա. Արծրունին իր բրօշիւրի մէջ հէնց այդ հանգամանքն էր քննում։

Արեւելեան հարցը—ասում էր նա—միայն սլաւոնականութեան եւ օրթօդօքսութեան հարց չէ, նա նոյն իսկ միայն քրիստոնէութեան հարց չէ, այլ աւելին. դա կուլտուրական հարց է, կուլտուրական ցեղերի կոււի հարցն է բարբարոսութեան դէմ, արիական եւ սեմական ցեղերի կոււի հարց Թուրանական ցեղի դէմ։

Արեւելեան հարցը—դա սլաւոնների, յոյների, հայե-

րի, ասօրիների, վրացիների, հրէաների խուլ, համր, օրհասական կուլի հարցն է նրանց ճնշող մօնգօլական լուծի դէմ։

Ահա ինչ պէտք է հասկանայ Եւրօպան։

Եթէ այդ ցեղերից մի քանիսը կուլում են զէնքերը ձեռքին, իսկ միւսները տանջվում, արիւն են Թափում առանց կուլի, մեռնում են անօգնական,—դրանից չը պէտք է հետեւցնել Թէ վերջինները քիչ են տանջվում, քան առաջինները...

Ահա, կրկնում եմ, ինչ պէտք է հասկանայ Եւրօպան։

Արիական եւ սեմական ծագում ունեցող այս ցեղերը, որոնք հպատակ են Թիւրքիային, Օսմանների պետուԹեան մէջ ազգաբնակուԹեան բացարձակ մեծամասնուԹիւնն են կազմում։ Իսկ եԹէ այդ ցեղերին միացնենք Թիւրքիայի այն ազգաբնակուԹիւնը, որ Թէեւ մահմեդական կրօնին է պատկանում, բայց նոյն արիական ծագումն ունի, այն է՝ մահմեդական սլաւօններին, մահմեդական յոյներին, մահմեդական հայերին, մահմեդական վրացիներին եւ նոյն իսկ քրդերին (հին մեդացիներին) եւ սեմական ցեղին պատկանող մահմեդական հրէաներին եւ մահմեդական ասօրիներին, որոնք մահմեդականուԹիւն ընդունել են մօնգօլների բարբարոսական ճնշման տակ, —այն ժամանակ դուրս կը գայ որ Թիւրքիայում կուլտուրական ցեղերը ահագին, ճնշող մեծամասնուԹիւն են կազմում, համեմատած սելջուկեան Թիւրքերի մի բուռն Թոռների հետ։

Ահա դարձեալ, կրկնում եմ, ինչ պէտք է հասկանայ Եւրօպան։

ԵԹէ Եւրօպան ուզում է, որ զարգացման եւ կուլտուրայի ընդունակ ցեղերը, այն ցեղերը, որոնք ժամա-

նակաւորապէս ճնշված են, բայց կ ո ւ լ տ ո ւ ր ա կ ա ն են, նորից վերադարձնվեն կուլտուրային, վերադարձնվեն մարդկուԹեան,—նա Թուրանական լուծից պիտի ազատէ բոլոր ո չ-Թ ո ւ ր ա ն ա կ ա ն ցեղերը։

Գարիբալդիի պէս քաղաքագէտները եւ Եւրոպայի հասարակական կարծիքի այնպիսի ղեկավարներ, ինչպէս Էմիլ դը-Ժիրարդէն, վճռում են արեւելեան հարցը չափազանց հեշտ կերպով. բաւական է միայն, ասում են նրանք, վռնդել Թիւրքերին Եւրոպայից Փոքր-Ասիա—եւ արեւելեան հարցը լուծված է։

Իսկ ինչ պիտի անէք հնդկա-եւրոպական ցեղերի այն միլիոնների հետ, որոնք բնակված են Փոքր-Ասիայում, կուլտուրական մարդկուԹեան այդ օրօրանում։

Եւրոպան միԹէ այդ ցեղերը մոնղոլական ցեղի կերը կը դարձնէ, մորեխի պէս բաց կը Թողնէ Թիւքերին Փոքր-Ասիա։

Դրանով դուք չէք վճռի արեւելեան հարցը, այլ միայն կը ձգձգէք նրան, կը բարդացնէք։

Ժամանակ կար, երբ սլաւոններն էլ, եւրոպական յոյներն էլ չէին համարձակվում կռւել Թիւրքական լուծի դէմ, ինչպէս այժմ չեն համարձակվում այդ անել Փոքր-Ասիայի յոյները եւ հայերը, այլ արիւն էին Թափում, կոտորվում էին լուռ, ինչպէս այսօր արիւն են Թափում եւ լուռ կոտորվում են Փոքր-Ասիայի հայերը եւ յոյները...

Բայց վերջապէս սլաւոնները միաբան զէնք վերցրին։

Ո՞վ կարող է երաշխաւոր լինել, որ Փոքր-Ասիայի ազգաբնակուԹիւնն էլ ժամանակով զէնք չի վերցնի։

ՄիԹէ դրանով կը լուծվի արեւելեան հարցը։

Ո՛չ, նա միայն կը ձգձգվի։

Այսօր ապստամբել են Թիւրքիայի եւրոպական հպատակները, հինգ, տասը տարուց յետոյ կապստամբվեն Թիւրքիայի ասիական հպատակները...

Միթէ դրանով կը լուծվի արեւելեան հարցը։

Եթէ Եւրոպան ուզում է պահպանել Թիւրքական կալուածների ամբողջութիւնը, թող պահանջէ Թիւրքիայից հաւասար եւ լայն մարդկային իրաւունքներ նրա այն բոլոր հպատակների համար, որոնք Թուրանական ծագում չունեն։ Իսկ կարող է Թիւրքիան այդ կատարել, կարող է պահել իր տուած խօսքը, իրագործել խոստացած ռէֆորմները... Երբէք։

Իսկ եթէ նա ուզում է ազատել միայն եւրոպական նահանգները Թիւրքական լուծից եւ դրանով կարծում է լուծել արեւելեան հարցը, այդ դէպքում նա կարող է համոզված լինել որ հինգ, շատ-շատ տասը տարուց յետոյ նա նորից կունենայ ա ր ե ւ ե լ ե ա ն հ ա ր ց եւ գուցէ աւելի յուսահատական, աւելի սարսափելի կուով...

Կարող է Եւրոպան երաշխաւոր լինել, որ այն ժամանակ նա կարողութիւն կունենայ խցել իր ականջները եւ չը լսել միլիօնաւոր մարդկանց հեծեծանքները միայն այն պատճառով, որ յուսահատական, գուցէ եւ օրհասական կռիւը տեղի կունենայ ոչ թէ Եւրոպայում, այլ Փոքր-Ասիայում։

Թող Եւրոպան լուծէ արեւելեան հարցը այժմ եւ եթ, եւ լուծէ արմատական կերպով, թէ չէ՝ չը պէտք է լինել մեծ մարգարէ՝ գուշակելու համար, որ մօտիկ ապագայում նրան հարկաւոր կը լինի լուծել այդ հարցը նորից։

Եթէ Եւրոպան ուզում է Թիւրքիայի կալուածները անձեռնմխելի պահել, պէտք է պահանջէ նրա բոլոր

հպատակների համար հաւասար մարդկային իրաւունքներ։

Դրանով դեռ չի լուծվի արեւելեան հարցը, այլ նա նորից կը ծագէ մի քանի ժամանակից յետոյ։

Եթէ կը բաւականանայ միայն նրանով, որ կը վռնդէ Թիւրքերին Եւրոպայից Փոքր-Ասիա, այդ դէպքում մի քանի ժամանակից յետոյ նրա առաջ նորից յարութիւն կառնէ *արեւելեան հարցը*՝ իր հեծեծանքներով, հառաչանքներով, զէնքը ձեռքին։

Ո՞րն է արեւելեան հարցի արմատական լուծումը։

Այն ցեղերը, որոնք ընդունակ չեն պետական կեանքին, ինչպէս մօնղօլական ցեղը, պատմութեան անդառնալի վճռով պէտք է զրկվեն պետական կեանքով ապրելու իրաւունքից, մանաւանդ որ պետական կեանքին անընդունակ ցեղի ձեռքում տանջվում են կուլտուրական կեանքին ընդունակ միլիօններ արիական եւ սեմական ցեղերից։

Ուզո՞ւմ է Եւրոպան տարածել քաղաքակրթութիւնը Եւրոպական Թիւրքիայում եւ Փոքր-Ասիայում, վերադարձնել կուլտուրական ժողովուրդները եւրոպական կուլտուրային,—այդ դէպքում նա պիտի հասկանայ, որ Թիւրքական տիրապետութիւնը մի անյաղթելի արգելք է՝ քաղաքակրթութիւնը Թէ սլաւօնական ցեղի եւ Թէ Փոքր-Ասիայի ցեղերի մէջ տարածելու դէմ։

Պատմութիւնը անողոք է։

Ազգերի գոյութեան կռւի եւ մարդկութեան ընդհանուր զարգացման մէջ պատմութիւնը զրկում է գոյութեան իրաւունքից, *որպէս պետութիւն*, բոլոր այն ազգերը, որոնք ապացուցել են պետական կեանքով ապրելու իրանց անընդունակութիւնը։

*Այս բրօշիւրի վրայ ուշադրութիւն դարձրին մայրաքաղաքի մի քանի ռուս լրագիրներ։ Առհասարակ, ռուսաց մամուլի մէջ, գլխաւորապէս «Մշակի» և նորա խմբագրի ջանքերով, սկսեց փոքր առ փոքր երևան գալ համակրութեան մի հոսանք հայերի վերաբերմամբ։ Աւելորդ է ասել թէ «Արևելեան Հարց» բրօշիւրը որքան պատիւ էր բերում մի լուրջ, մտածող հրապարակախօսի. ընթերցողը ինքը կարող է դատել այդ մասին, դատել մանաւանդ թէ որքան իրաւացի նըկատողութիւններ և ճիշտ գուշակութիւններ էր դրել Արծրունին իր այդ փոքրիկ, բայց աշխոյժ ու կտրուկ ոճով գրած աշխատութեան մէջ։ Մենք այստեղ նորից մի փոքրիկ նմուշ կը տանք, թէ երդուեալ, կոյր թշնամութիւնը, ինչպէս վերաբերվեց Արծրունուն և այս դէպքում։ Ահա ինչ էր գրում «Մեղու Հայաստանին» իր № 41-ի մէջ.*

Ամբողջ տարի է, որ բոլոր Եւրոպան տակն ու վրայ եղաւ Արեւելեան հարցի պատճառով, Թագաւորներ եւ կայսրներ ճանապարհորդեցին, դեսպաններ ամեն տեղ վազեցին, խօսեցին ու վիճեցին, միլիօնների ծախսեր եղան, զօրքերը տեղափոխվեցան —դեռ էլի հարցը անվճիռ մնաց, որ ի վերջոյ Մշակի խմբագիր պ. Գր. Արծրունին 5 կոպէկով վճռեց— վասն զի նորա «Արեւելեան հարց» ռուսերէն բրօ-

շիւրը հինգ կոպէկ արժէ։ Ի՞նչպէս, այնպէս որ Եւրոպան չգիտէր թէ ինչ պիտի անէ եւ պ. Գրիգոր Արծրունին սովրացրեց նրան։ Նա պէտք է Տաճկաստանի բոլոր հպատակ ազգերին ազատութիւն տայ, որովհետեւ նոքա Իրանական եւ Սեմիտական ազգեր են, իսկ Տաճիկներին ենթարկէ նրանց, որ այսուհետեւ սոքա նրանց հարստահարեն, որովհետեւ Տաճիկները Մողոլեան ցեղին են պատկանում եւ կուլտուրական ազգ չեն (?)։

Ի՞նչ է մնում այլ եւս Եւրոպային. սա, ինչպէս եւ Տաճկաստանը անշուշտ կընդունեն պ. Արծրունու վճիռը։

Եւ այսպիսի ծամածռութիւնների միջոցով լրագիրը գալիս էր այն եզրակացութեան, որ Արծրունու բրօշիւրը մանկական բան է և ծիծաղ է յարուցանում հասկացող հասարակութեան մէջ։ Ի՞նչ դատաստան...

Երրորդ գործը, որ ձեռնարկեց Արծրունին «Մշակից» դուրս յօգուտ Թիւրքահայերի, աւելի կարևոր էր։ Հոկտեմբերի վերջերում Ալէքսանդր կայսրը Մօսկվայում մի շատ նշանաւոր ճառ արտասանեց։ Թիւրքերը յաղթող էին հանդիսացել Սերբիայում և խեղճ իշխանութեան վերջը հասած կը լինէր, եթէ ռուսաց կայսրը միջամտած չը լինէր. Նա պահանջեց Թիւրքերից զինադադար և այդ պահանջը Թիւրքիան անկարող եղաւ չը կատարել։ Օգուտ քաղելով զինադադարից, եւ-

բողոքական դիպլօմատիան վճռեց Կ. Պօլսում դեսպանաժողով կազմել՝ թէ Թիւրք-սերբիական հաշտութեան պայմանները որոշելու և թէ Բալկանեան թերակղզում րէֆօրմներ մտցնելու համար։ Ալէքսանդր կայսրը, յայտանելով այդ մասին իր ճառի մէջ, աւելացրեց թէ ինքը վճռել է, դեսպանաժողովի անաջողութեան դէպքում, գործել անկախ և ծայրայեղ դէպքում նոյն իսկ զէնքի դիմել։

Կայսրի այդ խօսքերին արձագանք տուեց ամբողջ Ռուսաստանը. ամեն կողմից ուղերձներ ուղարկեցին թագաւորին, որոնց մէջ յայտնում էին ռուս ժողովրդի պատրաստականութիւնը ամեն զոհողութիւն յանձն առնելու, որ քրիստոնեաների ազատութեան գործը կայսրը տանէ այնպէս, ինչպէս Ռուսաստանի պատիւն է պահանջում։ Հայրենասիրական ցոյցերը ողողել էին ամբողջ ռուսաց պետութիւնը։ Թիֆլիս քաղաքն էլ, տեղական ազնուականութիւնն էլ ուղերձներ էին պատրաստում։ Արծրունին, օգուտ քաղելով դէպքից, նախաձեռնող հանդիսացաւ որ մի առանձին ուղերձ էլ Թիֆլիսի հայերը ներկայացնեն։ Ամբողջ օրերով նա, կառք նստած, այս ու այն կողմ էր գնում ստորագրութիւններ հաւաքելու։ Ուղերձը գրվեց Կովկասեան փոխարքայ Մեծ Իշխան Միխայիլ

*Նիկօլաեվիչի անունով. Ալէքսանդր կայսրը ի Թիւս ամենքի, չնորհակալութիւն յայտնեց և Թիֆլիսի հայերին, որոնց ուղերձը պաշտօնապէս հրատարակվեց բոլոր լրագիրներում։ Ահա այդ ուղերձը.*

Ձերդ կայսերական Բարձրութիւն.

Բնակվելով Ռուսաց տէրութեան հովանիին տակ եւ վաղուց արդէն վայելելով մեզ համար Թանկագին պետութեան հովանաւորութեան տակ հանգստութեան եւ խաղաղութեան պարգեւները, մենք, Թիֆլիս քաղաքի բնակիչ հայերս, դրդված լինելով քրիստոնէական մարդասիրութեան զգացմունքից, չենք կարող անտարբեր մնալ դէպի այն անհրեւակայելի տանջանքները, որ կրում են ասիական Թիւրքիայի սահմաններում բնակվող մեր ցեղակիցները եւ համադաւանները, որտեղ ոչ սեփականութիւնը, ոչ քրիստոնեաների կեանքը, ոչ նրանց ընտանիքի, կանանց եւ աղջիկների պատիւը ոչնչով չէ ապահովված։

Գիտենալով որքան մեր Սիրելի Թագաւորը եւ ամբողջ Ռուսաստանը անսահման համակրում են Թիւրքահպատակ քրիստոնեաների վիճակին, մենք մեր Թէ արիւնով եւ Թէ կրօնքով եղբայրների դրութեան բարելաւացնելու բոլոր յոյսը դնում ենք Ռուսաստանի հզօր հեղինակութեան ոյժի վրա, եւ ապաւինում ենք միմիայն Ինքնակալ կայսրին։

Քրիստոնէական մարդասիրութեան, խոր ցաւակցութեան, ազգականութեան զգացմունքը դէպի մեր եղբայրները՝ դրդեց մեզ դիմել Ձեր կայսերական Բարձրութեան Օգոստափառ միջնորդութեանը եւ ա-

մենահաւատարմաբար խնդրել Ձեր Բարձրութիւնը արկանել Թագաւոր Կայսրի ոտներին մեր ամենահպատակ խնդիրքը՝ պաշտպանել Իր հզօր ձեռքով, հաւասար Թիւրքիայի այլ քրիստոնեաներին, մահմեդականութիւնից միշտ ճնշված հայոց ազգը այն միջոցներով, որ Նախախնամութիւնը յանձնել է Նորին Մեծութեանը եւ որ Նա աւելի յարմար կը համարի *)։

Այս ուղերձը, ինչպէս հաղորդում էին արտասահմանեան լրագիրները, հիմք դարձաւ որ Կ. Պօլսի դեսպանաժողովում ռուսաց դեսպան Իգնատիեվ հարց բարձրացնէ և Թիւրքահայերի մասին։ Բայց դեսպանաժողովի ժամանակ Կ. Պօլսի հայերն էլ արդէն ուրիշ տեսակ տրամադրութիւն էին ցոյց տալիս։ Արագ զարգացող քաղաքական դէպքերը սովորեցնում էին նրանց որ Թիւրքամոլութիւնը ոչինչ օգուտ չը պիտի տայ հայ ցեղին։

Մենք տեսանք թէ որքան երկար ժամանակ Գրիգոր Արծրունին մենակ էր, շրջապատված հակառակորդների բարձրաձայն վայնասունով։ Որքան էլ հայոց ամբողջ մամուլը աղաղակում էր թէ միայն դաւաճան, ազգուրաց հայը կարող է խօսել այնպէս,

---

*) «Մշակ» 1876, № 48։

ինչպէս խօսում է Արծրունին, հետզհետէ ե-
րևան էր գալիս այն նշանաւոր հանգաման-
քը, որ «Մշակի» ձայնը համակրանք է գըտ-
նում հայ շրջանների մէջ։ Կովկասի զանա-
զան կողմերից Արծրունին ստանում էր հա-
մակրական նամակներ։ Ռուսաստանի հայ
ուսանողութիւնը, որ մինչև այդ համարեա
անտարբեր էր դէպի «Մշակը», նոյնպէս
սկսեց համակրանք և գաղափարակցութիւն
ցոյց տալ։ Արծրունին գոհութեամբ էր ար-
ձանագրում այս երևոյթը «Մշակի» մէջ։ Ա-
ռաջին օրինակը տուեց Մոսկվայի հայ ու-
սանողութիւնը. Արծրունին ասում էր թէ
Մոսկվայում արդէն չորս ուսանողներ կան,
որոնք գրում են «Մշակի» մէջ։ Դրանք սո-
վորական, առօրեայ հարցերի մասին չէին
միայն գրում, այլ յաճախ դիմում էին և օր-
վայ հրատապ հարցին, արևելեան հարցին։
Շատ գրում էր այդ մասին Ալէքսանդր Բա-
լանթարը. Լևոն Խան-Աղեան, Ներսէս Աբէ-
լեան նոյնպէս յաճախ էին գրում։

Եւ այսպէս, Արծրունին, ինչպէս բնական
էր սպասել, գրաւեց իր այդ պրօպագանդայի
մէջ նախ և առաջ երիտասարդութեան հա-
մակրանքը։ Իր կրակոտ յօդուածներով նա
ազդեցութիւն գործում էր և Կ. Պօլսում մի
քանի շրջանների մէջ։ Բայց խօսքի ոյժը

ինքն ըստ ինքեան բաւական չէ մի գաղափար արծարծելու, մարմնացնելու համար. ինքը, կեանքը պիտի ապացուցանէր թէ այդ խօսքը իրաւացի և ճշմարիտ է, թէ նրանով արտայայտվող միտքը մեռած, հնարած բան չէ։ Այդպիսի վաւերացում կեանքը շատ էր հաղորդում Արծրունու խօսքերին։ Թիւրքաց Հայաստանի իրականութիւնը գալիս էր թիւրքասէր հակառակորդներին լռեցնելու։

Որքան բալկանեան քրիստոնեաների հարցը սպառնալից, խեղդող բնաւորութիւն էր ստանում Թիւրքիայի համար, այնքան ասիական նահանգներում սաստկանում էր տեղացի մահմեդականների գրգռմունքը քրիստոնեաների դէմ։ Կիսապաշտօնական «Մասիսը», ինչպէս տեսանք, հեգնանքով էր ասում, թէ «Փոքր-Ասիոյ խորերն և Հայաստանի մէջ կը պատահեն եղեր մասնաւոր եղեռնագործութիւններ»։ Բայց ահա այդ «կը պատահեն եղեր»-ը դառնում է այնպիսի համատարած, դժբախտ իրողութիւն, որ ինքը «Մասիսը» այլևս չէ կարողանում թիւրքամոլական ինքնագոհութեամբ հրապարակ գալ, այլ սկսում է լաց ու կոծ բարձրացնել գաւառական սանձարձակ հարստահարութիւնների և գազանութիւնների առիթով։ Կ. Պոլսի միւս հայ լրագիրներն էլ լցվում են նկա-

րագրութիւններով, որոնք փոքր չափով յիշեցնում են Բօլգարիան։ Թիւրքաց կառավարութիւնը հալածանք սկսեց այդ լրագիրների դէմ, մի քանիսը փակեց. հայերը սկսում էին հասկանալ որ իրանք բախտաւոր բացառութիւն կազմել թիւրքական իրականութեան մէջ չեն կարող։ Գաւառները իրանց հրդեհներով, սպանութիւններով խեղքի էին բերում մայրաքաղաքի հայերին։ Եւրօպական բազմաթիւ լրագիրների մէջ սկսեցին տպվել յօդուածներ թիւրքահայերի մասին և գրողները մեծ մասամբ հայեր էին։ Սեպտեմբերին Արծրունին գոհութեամբ արձանագրում էր որ Կ. Պօլսի մէջ ընդհանուր տրամադրութիւնը փոխվեց. հայերը միացել են, մտածում են իրանց դրութեան մասին։ Ներսէս պատրիարքը ներկայացրեց թիւրք կառավարութեան մի խնդրագիր, որով պահանջում էր հաւասարեցնել հայերի իրաւունքները իսլամ ժողովրդի իրաւունքների հետ։—Իսկ երբ յայտնի դարձաւ, որ Կ. Պօլսում դեսպանաժողով պիտի լինի, Սէթ-Աբգարը կազմեց մի փոքրիկ յիշատակագիր հայերի դրութեան մասին, որ հրատարակվեց առանձին բրօշիւրով։ Այդ յիշատակագիրը, ինչպէս թիւրքահայերի բաղձանք, ներկայացրվեց մարկիզ

*Սոլսբիւրիին, որ Անգլիայի ներկայացուցիչն էր դեսպանաժողովում։*

*Այս բոլոր դէպքերը և փաստերը իրաւունք էին տալիս Գրիգոր Արծրունուն դիմել այն մարդկանց, որոնք սկզբում այնքան աղմուկ բարձրացրին իր դէմ։ «Ազգասիրական խաբեբայութիւն» առաջնորդողը (№ 45) մի ամփոփում էր, որի մէջ պատկերացած էր մեր տիրացուական ազգասիրութեան սնանկութիւնը։*

*Տասն եւ եօթ տարի է—ասում էր այդ առաջնորդողը—որ Թիւրքիայի հայերը ստացել են իրանց տէրութենից սահմանադրութիւն։ Ահա տասն եւ եօթ տարի է, որ մենք անդադար լսում ենք թէ հայերը ժողովուրդ են, երջանիկ են Թիւրքիայում, թէ նոքա այնտեղ վայելում են ինքնավարութիւն, ունին մի հաստատ սահմանադրութիւն իրանց համար...*

*Բայց ինչ է այդ երեւելի սահմանադրութիւնը,— ոչ ոք չը գիտէր եւ ոչ ոք չէր կարող բացատրել։ Իրանց, Թիւրքիայի հայերից որ հարցնելիս լինենք՝ ինչ բան է ձեր սահմանադրութիւնը,—նոքա մեկնել չեն կարող։*

*Այստեղ, Ռուսաստանում, հայերի մի բաւական տարածված կուսակցութիւն կայ, որ ահա տասն եւ եօթ տարի է աշխատում էր միշտ հաւատացնել մեզ որ ոչ մի տեղ հայերը այնքան երջանիկ չեն, որքան Թիւրքիայում...*

*...Թիւրքիայի հայերի դրութեան իսկական պատկերը մեր աչքերից ծածկելով, այդ պետութեան սար-*

սափելի վէրքերը անդադար քօղարկելով, այդ փտած կուսակցութիւնը կարծում էր որ միւս երկիրների հայերին մեծ բարերարութիւն է անում, ազգասիրական գործ է կատարում...

Եւ այժմ, երբ որ Թիւրքիան գտնվում է սարսափելի քաղաքական մի կրիզիսի մէջ, յանկարծ յայտնվեցաւ որ Թիւրքիայի հայերի դրութեան վրա մեզ պատմած բոլոր գեղեցիկ բաները,—առակներ էին։ Կրիզիսի րօպէում յայտնվեցաւ որ հռչակված սահմանադրութիւնը՝ օդային մի ամրոց էր, որ կառուցված էր մեր տիրացու-ազգասէրների գլխներում. միայն, այժմ կրիզիսի րօպէին յայտնվեցաւ որ այդ երեւելի սահմանադրութիւնը անզօր է պաշտպանել հայերին տէրութեան կամայականութեան եւ բարբարոսութեան դէմ, անզօր է պաշտպանել Թիւրքիահպատակ հայի ամենաանհրաժեշտ, անբռնաբարելի մարդկային իրաւունքը...

...Եւ ահա Թիւրքիայի հայը մոլորված, յուսահատված դիմում է ոչ թէ իր տէրութեանը, որից ոչինչ բաւականութիւն չէ ստանում, այլ ստիպված է դիմել օտար պետութիւնների օգնութեանը...

Եւ յանկարծ մեր տիրացու-ազգասէրների փտած կուսակցութիւնը, որի դէվիզն էր Թիւրքիա fara da se (Թիւրքիան ինքն կանէ, ինքն իրան կը լուսաւորվի, ինքն իրան կը կառավարվի),—մոլորված տեսնում է թէ իր բոլոր յոյսերը զուր էին, կամ որ իր տասն եւ եօթ տարվայ խաբեբայութիւնը յայտնվեցաւ, մերկացաւ...

Նրան ասում են՝ դուք սխալված էիք,—որ չասենք դուք թշուառ խաբեբաներ էք, որ այսքան ժամանակ աշխատեցիք մոլորեցնել ազգը եւ հասարակական կարծիքը, բոլոր ջանքեր էիք գործ դնում

քնեցնել այն զայրացումը, որ անշուշտ կը յայտնվէր, եթէ ներկայացնէիք Թիւրքիայի հայերի դրութեան իսկական պատկերը. դուք օրօր էիք կարդում մեր գլխին, դուք կամ ամենամեծ յանցաւորներ էք, կամ միամիտ կարճատես, սահմանափակ, ողորմելի գըլուխներ էք...

Բայց փտած տիրացու-ազգասէրների յիմար ինքնասիրութիւնը չէ ներում իրանց սխալը խոստովանել, չէ թոյլ տալիս անկեղծութեամբ խոստովանել թէ այսքան տարի նոքա կամ խ ա բ վ ա ծ էին, կամ խ ա բ ո ւ մ էին։

Կ. Պօլսի դեսպանաժողովը սկսեց իր նախապատրաստական պարապմունքները նոյեմբերի 10-ից, իսկ պաշտօնական նիստերի շարքը բացեց դեկտեմբերի 11-ից։ Թիւրքաց կառավարութիւնը վեց մեծ պետութիւնների ներկայացուցիչների դիմաց մի բան միայն կարողանում էր անել—քաղաքական ճարպիկ խաղեր։ Նա կամ համակերպվում էր միացած Եւրօպայի պահանջներին կամ զանազան միջոցներով մերժում էր նրա առաջարկութիւնները։ Դեկտեմբերի 11-ին, երբ պիտի բացվէր դեսպանաժողովի առաջին պաշտօնական նիստը, Բօսֆօրի ափերում որոտացին թնդանօթները։ Եւրօպական պետութիւնների ներկայացուցիչներին իմաց տրվեց, թէ այդ օրը Թիւրքիայում հրատարակվում է սահմանադրութիւն, որ վերցրած

է եւրոպական օրինակներից և սուլթանի բոլոր հպատակների համար բաց է անում երջանկութեան, ազատութեան և քաղաքակըրթութեան մի նոր դարագլուխ։

Դա նշանակում էր թէ դեսպանաժողովը աւելորդ է։ Չէ՞ որ նա գումարված է սլաւօնական երկիրների համար տեղական րէֆօրմների ծրագիր մշակելու. ահա փոխանակ տեղական մասնաւոր բարենորոգումների, սուլթանը իր բոլոր հպատակներին շնորհում է լայն ինքնավարութիւն։

Շատերը հասկացան որ թիւրքական սահմանադրութիւնը մի քաղաքագիտական ձեռնածութիւն է, և ուրիշ ոչինչ։ Ի՞նչ սահմանադրութիւն կարող էր գոյութիւն պահպանել Թիւրքիայի պէս մի պետութեան մէջ։ Դեսպանաժողովը, այնուամենայնիւ, շարունակեց իր պարապմունքները։ Բայց եւրոպական կօնցերտը շատ էլ միաբան չէր. նա սկսեց զիջողութիւններ անել, իսկ թիւրքերը սկսեցին աւելի և աւելի համարձակ կերպով մերժել եւրօպական միջամտութիւնը։ Ալէքսանդր կայսրը վաղուց նախատեսում էր այդպիսի ելքը. նա համոզված էր որ դեսպանաժողովը ձգձգումների քաղաքականութեան միջոցներից մէկն էր։ Ուստի դեռ դեսպանաժողովի սկզբում նա հրամայեց պա-

*տերազմական դիրքի մէջ դնել բանակի մի մասը։ Պատերազմը գնալով անխուսափելի էր դառնում։ Ռուսաց զօրքերը հաւաքված էին Եւրօպական Ռուսաստանի բումինական սահմանների վրա, իսկ Անդրկովկասում Թիւրքական սահմանների վրա։*

*Ի՞նչ էին անում Կ. Պօլսի հայ ղեկավարող շրջանները։ Ներսէս պատրիարքը վճռական քայլեր չէր անում, նա տատանվում էր. կամ դիմում էր դեսպանատողովին, կամ յայտնում էր որ հայերը գոհ են իրանց դրութիւնից. նա հաւատում էր Թիւրքական սահմանադրութեան և կարծում էր թէ այդ նոր օրէնքը կարող կը լինի վերացնել քրիստոնեաների դժգոհութեան բոլոր պատճառները։ Ազգային ժողովում 1878 թ. յուլիսին արտասանած իր ճառի մէջ Ներսէսը այսպէս էր նկարագրում իր գործունէութիւնը 1876-ի վերջերում.*

Տէրութիւնք ի ժողով գումարեցան ի Պօլիս։ Ի՞նչ ըրաւ Հայոց ազգը. օրինաւորութենէն դուրս չելաւ. Հայերը գոհ էին որ Օսմանեան Տէրութեան ներքեւ էին. այլ իրենց վիճակէն դառնապէս դժգոհ էին. եւ որովհետեւ ընդհանուր քրիստոնէից վիճակը բարուոքելու խօսքեր կըլլային, Հայերն ալ ընդհանուր բարեկարգութենէն սպասեցին իրենց վիճակին բարուոքումը։

Ձեր Պատրիարքը, գիտէք արդէն, Տեառք Երեսփոխանք, պարապ չկեցաւ. աշխատեցաւ Բ. Դրան քով, աշխատեցաւ դեսպանաց քով։ Այլ Դեսպանաժողովը փոխանակ ընդհանուր միճակին բարւոքումը [redacted]տողութեան առնելու, նկատողութեան առաւ մի-
Հէրսէք-Պօսնայի եւ Պուլկարաց խնդիրները։
անիրաւութիւն մըն էր մնացեալ քրիստոնեայ
ժղրոց, եւ ներեցէք ըսել, Թերեւս իմ սահմանէս
մը դուրս ելնելով, Օսմանեան կայսրութեան ալ
քայումը կը պատրաստէր՝ ապստամբութիւնը
ալերելով։ Օսմանեան կայսրութիւնը Դեսպանա-
վին այս որոշումը չընդունեց. եւ մեք հայքս
ճառ չունէինք որ դժգոհէինք։

Ներսէսը դեռ խուսափում էր ռուսաց քաղաքականութեան որ և է համակրութիւն տալուց, նա աւելի անգլիական դեսպանագիտութեան տակ էր գտնվում և գոհ էր օսմանեան սահմանադրութեամբ։ Եւ մինչդեռ հայ մամուլի մի մեծ մասը Ներսէսի հետ հաւատում էր թէ սահմանադրութիւնը կապրէ Թիւրքիայում և հայերի համար էլ երջանկութեան շրջան բաց կանէ, Գրիգոր Արծրունին «Մշակի» մէջ պնդում էր թէ այդ սահմանադրութիւնը մի խաղ է, թէ Թիւրքիայում չէ կարող լինել սահմանադրական կարգ։

Զարմանալի տեսարան—գրում էր նա.—Թիւրքաց սահմանադրութիւնը հրատարակված է,—բայց ոչ Եւրոպան է հաւատում Թիւրքիայի խոստումնե-

րին եւ պահանջում է նրանից ապահովութիւններ, գարանտիաներ, որ այդ խոստումները լոկ խօսք չը մնան, սահմանադրութիւնը կամ խոստացած արտօնութիւնները չը դառնան անպէտք կտոր Թուղթ, —ոչ էլ իրանք Թիւրքահպատակ ազգերը հաւատում են իրանց տէրութեան խոստումներին...

Եւ միթէ Անգլիան ճշմարիտ, անկեղծ կերպով հաւատում է Թիւրքիայի խոստումներին եւ չը գիտէ Թէ այդ սահմանադրութիւնը, ինչպէս Թիւրքիայի բոլոր անցած խոստումները՝ խորամանկ, նենգաւոր աչքակապութիւններ են, աւելի ոչինչ։

Դէպքերը ցոյց էին տալիս որ Թիւրքական իրականութիւնը Եւրոպայից փոխ առած հիմնարկութիւններից չի փոխվի։ Օսմանեան սահմանադրութիւնը հրատարակում էր, ի միջի այլոց, և մամուլի ազատութիւն։ Բայց հէնց այդ միջոցին, երբ խմբագրվում էր այդ օրէնքը, երեք հայ խմբագիրներ բանտարկվեցին, ծեծի ենթարկվեցին և բռնի կերպով Տրապիզոն քշվեցին այն պատճառով, որ համարձակվել էին տպագրել հայաբնակ գիւղերում տեղի ունեցած հարստահարութիւնները։ Դարձեալ նոյն այդ դեսպանաժողովի ժամանակն էր, նոյն այդ սահմանադրութեան խմբագրելու միջոցին էր, որ Վանում տեղի ունեցաւ սոսկալի հրդեհ։ Գիշերը Թիւրքերը կրակեցին հայերի խանութները, թւով մօտ երկու հազար հատ, և կողոպտեցին նրանց։

«Մասիս» լեզուով դա նշանակում էր՝ «կան եղեր եղեռնագործութիւններ». բայց Խրիմեան Հայրիկի «Վանգոյժը» ցոյց էր տալիս, թէ ինչ էր այդ եղեռնագործութիւնը։ Վանի հայ ազգաբնակութիւնը մի գիշերում դարձաւ մուրացկան։ Ներսէս պատրիարքին խոստացան քննութիւն նշանակել, պատժել յանցաւորներին և Ներսէսը դեռ հաւատում էր Օսմանեան սահմանադրութեան...

Այսպէս էր ահա վերջանում 1876 նշանաւոր թւականը, աւելի մեծ բարդութիւններ, կնճռոտ հարցեր թողնելով իր յաջորդին։ Գրիգոր Արծրունին իր առաջնորդողներից մէկում ասում էր թէ այժմ, տարւայ վերջին, ինչպէս կայ սլաւօնական հարց, յունական հարց, այնպէս էլ կայ հայոց հարց։ Չորս-հինգ ամիս առաջ չը կար այդ հարցը, ոչ ոք հայերի մասին չէր էլ մտածում, բայց այսուհետև հայերն էլ կը կազմեն արևելեան հարցի մի մասը։ Այստեղ Արծրունին դնում է մի հետաքրքրական հարց և պատասխանելով նրան, երևան է հանում մի, իրաւ որ, շատ բնորոշ գիծ հայի ազգային բնաւորութիւնից, նրա հոգեբանութիւնից։ Հայերը ապստամբութեամբ չը հասցրին իրանց ձայնը քրիստոնեայ ազգերի ականջին։ Ապստամբութիւնը հայ ազգի բնաւորութեան հակառակ է։ Բայց ուրիշ ինչ միջոց կար։

Հայոց ազգը մի ուրիշ զարմանալի յատկութիւն ունի եւ այդ յատկութիւնը նշմարելի էր նրա մէջ իր ամբողջ պատմութեան ընթացքում։ Նա ուզում է խելքով, մտաւոր զէնքով, ապացոյցներով, դատողութիւններով յաղթել իր թշնամուն։ Նրան ճնշում են, նրան ծեծում են, վիրաւորում են, բանտարկում են, սպանում են,—իսկ նա փիլիսոփայութիւններ է անում, ապացուցանում է որ այդ անարդար է, վիճում է իր ճնշողի, իր հալածողի, իր թշնամու հետ...

Հայերը այդ միշտ արել են։

Հինգերորդ դարում Զրադաշտի կրօնի պաշտողները հայերին ճնշում էին, Հայաստանը աւերում էին, ամբողջ քաղաքների, գաւառների, գիւղերի բնակիչներին գերութեան էին տանում, բնակութիւններին կրակ էին տալիս, կանանց եւ կոյսերին անպատւում, տանջում էին, մարդկանց կոտորում, սպանում էին կամ բանտարկում էին,—իսկ հայը իր Եղիշէի կամ Եզնիկի բերանով դատողութիւններ էր անում, ապացուցանում էր իր բռնակալին նրա դաւանած կրօնի անհիմն լինելը եւ նրան իր կրօնը՝ քրիստոնէութիւնը քարոզում։ Պարսից արքայի հրամանով բանտարկված հայ քաջ նախարարները իրանց բռնակալներին՝ քրիստոնէութիւն, արդարութիւն եւ մարդկային իրաւունք էին քարոզում։

Կար մէկ ուրիշ ազգ, հրէաները, որոնք իրանց թշնամիներին աղօթքներով եւ հրաշքներով էին ուզում յաղթել, բայց հայոց ազգի պէս մի ազգ, որ սուրը ձեռին կատաղի թշնամու առաջ անզէն կանգնած քարոզէր նրան փիլիսոփայութիւն, մարդասիրութիւն, լոկ խօսքով, լօգիկական մտախոհութեամբ պահանջէր մարդկային իրաւունք, արդարութիւն,—

հայոց ազգի պէս մի ազգ հազիւ Թէ մի ուրիշ կը գտնվի աշխարհիս երեսին։

Ո՞րտեղից է մտել հայի մէջ այդ յատկուԹիւնը, որ մենք կանուանենք ապազայի քաղաքականուԹիւն,—չը գիտենք։

Եւ այդ է պատճառը որ հայը միշտ ճնշված, միշտ հալածված է եղել, որովհետեւ զինաւորված մարդու առաջ անզէն կազնել եւ նրան դատողուԹիւն անել, նրան արդարուԹիւն բացատրել... զէնքի, սրի, հրացանի, Թնդանօթի ոյժը, պատերազմը՝ լօգիկայով, մտաւոր ոյժով յաղԹել,—դեռ եւս վաղ է, դեռ եւս մարդկուԹիւնը մտաւոր զարգացման այդ կէտին չէ հասել։

Հայը կանգնում է բարբարոս, կատաղի, մոլեռանդ մահմեդականի առջեւ, ապացուցանում է նրան իր իրաւունքը, աղերսներ է տալիս նրան, պահանջում է արդարուԹիւն եւ զուցէ վերջը սպառնում է նրան,—բայց ինչպէս, ինչով... սպառնում է որ եԹէ չը ստանայ իր պահանջած ամենաանհրաժեշտ մարդկային իրաւունքը, այն ժամանակ ստիպված կը լինի գաղԹել իր հայրենիքից, որ նուաճված է Թիւրքերից, որ Թիւրքաց պետուԹեան մի մասն է կազմում... կարծես Թէ վայրենի Թիւրքը մտաւորապէս այնքան զարգացած է, որ կարող է հասկանալ այդ սպառնալիքի բոլոր ոյժը, բոլոր նշանակուԹիւնը, կարծես կարող է հասկանալ որ ճշմարիտ իրան էլ վնաս է, եԹէ աշխատասէր, ընդունակ հայոց ազգի պէս տարրը զաղԹէ իր պետուԹենից...

Եւ այժմ, արեւելեան հարցի մէջն էլ հայը հաւատարիմ է մնացել իր պատմական յատկուԹեանը, իր քաղաքական բնաւորուԹեանը...

Նա ամբողջ Եւրօպան ուզում է համոզել, նա

Թիւրքիան ուզում է յաղթել իր սիրած, սովորական միջոցով, հասարակ լօգիկայով, մտաւոր ոյժով։

Ցանկանում ենք մեր ազգին որ եթէ նրան վիճակված է այդ ճանապարհով ընթանալ, կատարելապէս աջողվի նրան այդպիսով ստանալ իր մարդկային իրաւունքը, ձեռք բերել արդարութիւնը։

Ճիշտ որ ապագայի քաղաքականութիւն... Մարդկութիւնը իր լաւագոյն յոյսերը, իդէալական տենչանքները միշտ ապագայի մէջ է տեսնում։ Ապագայ—դա անորոշ հասկացողութիւն է. ով կարող է ասել թէ երբ կը լինի այդ ապագան, որքան նա հեռու է ներկայից։ Ներկան, այն ներկան, երբ գրվում էին այդ տողերը, պատրաստւում էր մի արիւնահեղ, երկարատեւ պատերազմ ռուսների և թիւրքերի մէջ։ Դեռ ոչ մի հարց չէր վճռվել. լօգիկան, բանականութիւնը անկարող հանդիսացան. դիպլօմատիան գրչով և թանաքով շատ աշխատեց, բայց չը կարողացաւ պատմութեան էջերից մի տող անգամ փոխել։ Այժմ նա պիտի յետ քաշվէր, թոյլ տալով որ խօսեն թնդանօթները, ազգերի համար նրանց կրակով և արիւնով պատմութիւն կազմող թնդանօթները։

Արևելքի հրդեհը աւելի և աւելի սաստկանում էր։ Գալիս էին ահաւոր դէպքեր. կեան-

քը Անդրկովկասում և նրա՛ սահմանակից երկիրներում անօրինակ եռանդուն շարժման մէջ էր մտնում։ Մամուլի կատարելի դերը աւելի բարդանում էր. «Մշակը» չէր կարող այլ ևս շաբաթաթերթ մնալ...

## II

Ջալալը երկու անգամ հրատարակելու նշանակութիւնը։—Նոր աշխատակիցներ։—Թիւրքահայ գրողներ «Մշակում»։—Ընդհանուր հարցեր. «Մենք ինչ փողի համար», ստրուկներ ենք, հասարակական սիրոյ բացակայութիւն, հայ ընտանիք, կենդանի լեզու։—Արեւելեան հարցը։—Վանի հրկիզեալների համար։—Երկրորդ յարձակում Ներսէս պատրիարքի դէմ։—Ռուս-թիւրքական պատերազմ։—Ի՞նչ է պատերազմի խորհուրդը։—Ասիացու ֆէլիէ-տօնից։—Հայաստանի ապագան՝ կախված Ռուսաստանից։—Անգլիական խարդախ քաղաքականութիւն։—Պատերազմը երեւան է հանում հայ ազգի հանճարը։—Արծրունին եւ մեր ազգային պակասութիւնները։—Պէտք է հայերին ծանօթացնել օտարների հետ։—Ալաշկերտի գաղթականութիւնը։—Բարեգործական ընկերութեան միտք։—Թիֆլիսի մասնաժողովը։—Դէպքեր Կ. Պոլսում։—Ներսէսը սուլթան Համիդի մօտ։—Թիւրքական պարտութիւններ. քրիստոնեաներից զինուորներ հաւաքելու հարցը։—Հայերի դիմադրութիւնը։—Էջմիածին եւ ժողովուրդ։—Ռուսասիրական սաստիկ շարժում Կ. Պոլսի հայերի մէջ։—Ներսէսի ցանկութիւնը, փոխվելը։—Արծրունու մտքի յաղթանակը։

—∞—

Փոքրիկ ազգերի կեանքի մէջ փոքրիկ երեւոյթներն էլ նշանաւոր են հանդիսանում։ Սակայն սա ընդհանուր օրէնք չէ բոլոր փոքրիկ ազգերի համար։ Կան թուով փոքր, բայց

տգով հսկայ ազգեր, որոնք մեծագործութիւն-
ներ են կատարում։ Մեր խօսքը այն փոքր
ազգութիւնների մասին է, որոնք ճակատա-
գրի խորթ զաւակներ են եղել դարերի ըն-
թացքում և բնութիւնից էլ խոշոր քայլեր
անելու ընդունակութիւն չեն ստացել։ Մենք
մի խեղճ, ցնցոտիներով պատած գաճաճ էինք,
երբ պատմական ճակատագիրը վերջապէս
խղճաց մեզ, մօտեցրեց Եւրօպայի քաղաքա-
կրթութեան և հրամայեց աշակերտել, սովո-
րել։ Մենք սկսեցինք քայլեր անել, բայց որ-
քան խեղճ էին մեր, ասիական գաճաճներիս
քայլերը։

Մամուլը տասնիններորդ դարում ինչ
հսկայական առաջադիմութիւններ արաւ. Նա
զարգանում էր օր օրի վրա, նա իր ոյժով
եօթներորդ մեծ պետութիւն հրատարակվեց.
լրագրական ձեռնարկութիւնները վիթխարի
չափերի հասան։ Կարելի՞ էր այդ հսկայական
կեանքի մէջ նոյն իսկ նկատելու արժանի
մի դէպք համարել այն չնչին հանգամանքը,
որ մի լրագիր փոխանակ շաբաթը մի ան-
գամ հրատարակվելու, սկսում էր լոյս տես-
նել շաբաթը երկու անգամ։ Եւ սակայն մե-
զանում, մեր խեղճ ու խաւար իրականու-
թեան մէջ, դա մի ամբողջ երևոյթ էր, մի
դարագլուխ։ Երեսուն տարի էր, ինչ ռուսա-

հայերի մէջ գոյութիւն ունէր պարբերական մամուլ. բայց մենք դեռ շաբաթաթերթերից զէնը չէինք անցել։ Եւ համեմատութեան համար ինչու հեռուն գնալ։ Թիֆլիսում հրատարակվող ռուսերէն երկու լրագիրները 1877-ին ամենօրեայ էին դարձել. նոյն թւի վրաց «Դրոէբան» էլ նոյն թւին սկսեց հրատարակվել ամեն օր։ Իսկ մենք։ Գրիգոր Արծրունին 1877-ի առաջին համարում ասում էր որ շաբաթը երկու անգամ լրագիր հրատարակելը (ի հարկէ հայերի մէջ) «մեծ բեռն է»։ Եւ այս խօսքերը արտասանվում էին մի ժողովրդի մէջ, որ մօտ մի միլիօն հոգուց էր բաղկացած։ Ահա դեռ ինչ էինք մենք...

Հարց տանք. գոնէ այժմ, լրագրի շաբաթական երկու անգամ հրատարակվելը նշան էր որ հայ ընթերցողների թիւը շատացել է։— Ո՛չ։ Երկու տարուց ի վեր Արծրունին սպասում էր հազար բաժանորդի։ Բայց փորձը ցոյց տուեց թէ դա մի չափազանց մեծ, անիրագործելի պահանջ էր։ Եւ Արծրունին չը սպասեց. դարձեալ իր սեփական աշխատանքի, իր սեփական ռոճիկի վրա դնելով յոյսը, նա սկսեց շաբաթը երկու անգամ հրատարակել, ստիպված լինելով նորից 7 րուբլի նշանակել «Մշակի» բաժանորդագինը։ Լրագրի համարների կրկնապատկելն էլ չաւելացրեց բաժա-

*նորդների թիւը. Արծրունին խոստովանում էր որ «Մշակը» առաջին տարին աւելի հետաքրքրութիւն զարթեցրեց. հայը, ասում էր նա, հետաքրքրվում է մի բանով, քանի որ նա նոր է, բայց յետոյ իսկոյն էլի սառչում է։*

*Այդ պայմանների մէջ փոքր բան չէր ձեռնարկել մի գործի, որ դեռ չէր եղել ռուսահայերի մէջ։ Եւ մենք համաձայն պիտի լինենք, որ իսկապէս մեծ րիսկ էր այդ տեսակ գործ սկսելը։ Այժմ մեզ համար էլ գուցէ մի առանձին բան չը համարվի չաբաթական երկու համար հրատարակելը։ Այժմ մենք, որքան էլ նը լինի, մի քանի քայլ առաջ ենք գնացել: Բայց տեսէք թէ ինչ առաջնորդողով էր Արծրունին սկսում 1877-ի «Մշակը».*

Ամեն մարդ կրում է իր խաչը, բայց այն մարդկանց, որոնք բացի իրանց մասնաւոր խաչից կրում են եւ հասարակական խաչը, այդ ծանր բեռը այն ժամանակ միայն թեթեւ կերեւայ, երբ նոքա կը տեսնեն համակրութիւն հասարակութեան կողմից, կը ստանան իրանց տոկուն աշխատանքի, իրանց գործունէութեան մէջ օգնութիւն այն հասարակական տարրերի կողմից, որոնց նուիրել են իրանց նիւթական, մտաւոր եւ բարոյական ոյժերի ծառայելը։

*Այո, ծանր խաչ, որը պէտք էր կրել մենակ։ Մի կողմ թողնենք նիւթական հարցը. աւելի ծանր, աւելի մաշեցնող էր խմբագրի*

աշխատանքը։ Արծրունին ոչ միայն կռւում էր, օրէցօր թշնամիների թիւն էր ստուարացնում, այլ և համարեա մենակ էր տանում խմբագրական ամբողջ գործը։ «Առանց նիւթական օգնութեան,—ասում է նա նոյն առաջնորդողում,—առանց բարոյական քաջալերութեան, բարեկամների մի փոքրիկ խմբի համակրութեամբ միայն մենք առաջ տարանք մեր գործը հինգ տարի շարունակ, շրջապատուած լինելով ամեն կողմից անհաշտ կատաղի թշնամիներով»։

Ծանր, յուսահատական էր մանաւանդ վերջին հանգամանքը։ Մենք տեսանք, որ մանաւանդ 1876-ին այդ կատաղի թշնամութիւնը աւելի ընդարձակ, կարելի է ասել՝ համատարած բնաւորութիւն ստացաւ արեւելեան հարցի պատճառով։ Եւ այնպիսի մի ժամանակ, երբ տպագրական խօսքը թէ Թիֆլիսում և թէ Բօսֆորի ափերում առանց այլևայլութեան, առանց քաշվելու անուանում էր Արծրունուն ազգի դաւաճան, վաճառուած մարդ, օտարի գործիք,—արդեօք անտեղի խիզախութիւն չէ՞ր ձեռնարկել մի այնպիսի գործի, որ ժողովրդի աւելի մեծ աջակցութեան և համակրութեան էր կարօտ։

Բարեբախտաբար, Արծրունին աւելի լաւ էր ճանաչում հայ ժողովուրդը, քան նրա

այն թշնամիները, որոնք խօսում էին այդ ժողովրդի անունից։ Ժողովուրդը քնած է, դեռ չատ թոյլ կերպով է արտայայտում իր վերաբերմունքը դէպի երկու կռւող կողմերը։ Բայց նա կը զարթնէ, նա դատաստան կանէ։ Զը կան մարդիկ, բայց կը լինեն։ Մինչդ վառ էր այն հաւատը թէ ժողովրդի խաւերից պէտք է և կարելի է համակրող չրջաններ նուաճել և 1876 թւականի գործունէութիւնը, որ համակրութեան ցոյցեր էր հանել բուն ժողովրդի, ուսանող երիտասարդութեան միջից, միանգամայն հաստատում էր այդ հաւատը։

Ահա ինչն էր առաջ տանում Արծրունուն իր ոգևորութեան մէջ։ Այդ ոգևորութիւնը մոռացնել տուեց նրան բոլոր զրկանքները, դժուարութիւնները, և ռուսահայ մամուլի պատմութեան մէջ երևան եկաւ նոր, թարմ երևոյթը—չաբաթը երկու անգամ հրատարակվող լրագիրը։ Այն կոչման մէջ, որ Արծրունին ստացել էր բնութիւնից, դա երկրորդ նչանաւոր գործն էր։ Նա էր, որ վերականգնեց հայ մամուլի ընկած պատիւը, հեղինակութիւն տուեց տպագրական խօսքին, ոյժ դարձրեց նրան. նա էր, որ դուրս բերեց հայ լրագիրը մուրացկանի, արհամարհված աղքատիրական գործի խայտառակ դրութիւնից.

նա սովորեց հայրին լրագիր կարդալ ոչ թէ ազգասիրաբար, այլ իբրև անհրաժեշտութիւն, լուսաւորութեան և քաղաքակրթութեան մի ազդեցիկ գործօն։ Այժմ պէտք էր առաջ գը-նալ, պէտք էր աւելի ևս զարգացնել մամուլի ոյժը։ Շաբաթը մի անգամ տեսնվել ընթեր-ցողի հետ մի թերթի սիւնակներից—դա չափա քիչ էր. ժողովուրդը երեխայ է, ժողովուրդը շուտ է մոռանում, հեշտ է մոռանում, պէտք է, ուրեմն, աւելի յաճախ տեսնվել նրա հետ, աւելի շատ բան ասել նրան։

Եթէ ի նկատի ունենանք, որ մեր գը-րականութիւնը մեծ մասամբ ամփոփված է եղել, ինչպէս և է այժմ էլ, պարբերական մա-մուլի մէջ, «Մշակի» շաբաթական երկու ան-գամ հրատարակվելը պէտք է համարենք մեր գրականութեան զարգացման մի մեծ նշան։ Որքան շատ տեղ ունի լրագիրը, այնքան նա շատ նիւթ է տալիս։ Եւ իրաւ, 1877-ի «Մը-շակը» արդէն շատ բանով է տարբերվում անցեալ տարիներից։ Հրապարակախօսութիւ-նը աւելի ևս զարգանում է, բազմակողմանի է դառնում, հասարակական կեանքը աւելի ևս լիակատար կերպով է արտայայտվում լրագրի մէջ։ Ինքը, Արծրունին, կրկնապատ-կում է իր աշխատանքը։ Մի կողմ թողնելով լրագրի միւս բաժինները, նկատի առնենք

որ առաջնորդողները այժմ էլ նրա ձեռքում են և այժմ արդէն շաբաթը երկու անգամ պէտք է երևան գալ այդ կարևոր, ուժեղ, ազդեցիկ բաժնում։ Կենդանանում է և զուտ գրական բաժինը։ Այժմ արդէն հնարաւոր է համեմատաբար մեծ վիպական, շարունակելի գրուածքներ տալ, ինչպէս նաև ժամանակակից ուրիշ կարևոր նիւթերի վերաբերմամբ աւելի ընդարձակ ուսումնասիրութիւններ։

Այսպէս խօսելով «Մշակի» մասին, մենք չենք մոռանում որ նոյն այդ ժամանակ Թիֆլիսում հրատարակվում էր «Փորձ» հանդէսը։ Իրանց գրական անցեալով փոքր ի շատէ յայտնի ոյժերը համարեա բացառապէս այնտեղ էին աշխատում։ Բայց ինչ էին տալիս նրանք։ Երեք ամիսը մի անգամ լոյս էր տեսնում մի մեծ գիրք. ընթերցանութեան զանազան նիւթեր, մեծ մասամբ թարգմանական, տալիս էր այդ հաստափոր հանդէսը, տալիս էր և նիւթեր պատմութեան համար, արձանագրում էր ժամանակակից դէպքերը։ Բայց ազդեցութիւն գործել, ղեկավարել նա չէր կարողանում. ընդհանուր առմամբ դա մի անգոյն ժողովածու էր։ Արծրունու պէս մի մարդու համար այդ տեսակ գործունէութիւնը մահ, ոչնչութիւն էր նշանակում։ Եւ յայտնի անունների համախմբումը այդ եռ-

ամսեայ հանդէսի մէջ չը կարողացաւ խլել Արծրունուց առաջնութիւնը գրական-հրապարակախօսական ասպարէզում. մենակ նա կարողանում էր միշտ լարված պահել հասարակութեան ուշադրութիւնը դէպի «Մշակը»։ «Փորձն» էլ հասարակութեան պահանջներին չը համապատասխանող մի գրական ձեռնարկութիւն էր. Նա էլ իր խմբագրի անձնական միջոցներով էր ապրում։ Բայց չը նայած, որ շրջապատել էր իրան յայտնի անուններով, տալիս էր մեր ամսագիրների մէջ մինչև այն դեռ չը տեսնված հաստութեամբ գրքեր, այնուամենայնիւ, չը կարողացաւ պահանջ ստեղծել, գոյութեան իրաւունք նուաճել և անյայտացաւ իբրև մի արհեստական գործ։

Արծրունին, ինչպէս գիտենք, յայտնի անունների ետևից չէր ընկնում, շրջապատում էր իրան «ձկնորսներով», այն գաղափարական անյայտ, համեստ, բայց ոգևորվող երիտասարդութեամբ, որի նկարագրութիւնը տուել է Րաֆֆին։ 1877 թւին «Մշակի» այդ եռանդուն աշխատակիցն էլ Թիֆլիսում չէր գտնվում. Նա ուսուցչութիւն էր անում Ագուլիսում և հին, յայտնի անուն ունեցողներից միայն Գաբրիէլ Սունդուկեանցն էր, որ հանդէս եկաւ «Մշակի» մէջ իր «Վարինկի Վեչէրը» մեծ պատմուածքով։ Բայց Արծրու-

նին շարունակում էր «ձկնորսներ» գտնել,
դրանցից մէկի հետ մենք շուտով կը ծանօ-
թանանք—Գրիգոր Պալեան, գաւառացի մի
երիտասարդ, որ նոր էր աւարտել Ներսիսեան
դպրոցը և վիպագրողի շնորհք էր ցոյց տալիս։

Աւելացնելով «Մշակի» համարների թիւը,
Արծրունին խմբագրութեան մէջ աշխատող-
ների մի փոքրիկ խումբ կազմեց։ Դրանք
բոլորը նոր կեանքի մէջ մտնող երիտասարդ-
ներ էին, որոնք կրթութիւն էին ստացել
Ներսիսեան դպրոցում։ Այդ աշխատաւորնե-
րից մենք կը յիշատակենք մէկին. դա Յով-
հաննէս Տէր-Մարկոսեանն է, որ 1877 թւից
մինչև այսօր անփոփոխ անձնատուր եղած է
«Մշակին»։ Լրագրական գործի մէջ ամենքը
չեն յայտնի դառնում հասարակութեան իրանց
անուններով։ Այստեղ կայ և վարագոյրի ե-
տևում համեստ, անանուն աշխատողը, որ
սակայն պակաս երախտաւոր չէ իր տոկուն,
անընդհատ, գրկանքներով ու դժուարութիւն-
ներով լի գործունէութեամբ։ Յովհաննէս
Տէր-Մարկոսեանը «Մշակի» այդպիսի երախ-
տաւոր աշխատողներից առաջինն է։ Արծրու-
նին սկզբից և եթ մի առանձին սիրով կապ-
վեց այդ երիտասարդի հետ և մինչև մահը
նա էր նրա ամենամօտիկ բարեկամը, որի
հետ երկար տարիների ընթացքում բաժանել

էր թէ տաժանակիր աշխատանք, թէ ուրախութիւն և թէ վիշտ։ Մեծանալով «Մշակի» խմբագրութեան մէջ, սնվելով Արծրունու գաղափարներով և շարունակ վայելելով նրա մտերիմ բարեկամութիւնը, Տէր-Մարկոսեա-



Յ. Տէր-Մարկոսեան

նը այսօր էլ «Մշակի» տրադիցիաների հաւատարիմ աւանդապահն է, նրա գաղափարների անխոնջ պաշտպանը։ «Մշակը» ունեցել է շատ դժուար ժամանակներ, երբ նա չէր կարողանում նիւթապէս ապահովել իր աշխատակիցներին։ Տէր-Մարկոսեանը միշտ

ծառայել է նրան անշահասիրութեամբ, երբեք հարց չը դարձնելով նիւթականը։ Հայոց խմբագրութիւններից ոչ մէկը չէ տեսել նրա պէս մի մարդ, որ ամբողջ քառորդ դար ծառայէր լրագրին անձնամոռաց հաւատարմութեամբ։

Այդպիսի մարդիկ էին Արծրունու նեցուկները։ Վարձատրութիւնը չէր, որ կապում էր ընդունակ աշխատողներին լրագրի հետ. կար աւելի մեծ, աւելի հաստատուն կապը— գաղափարը։ Այս կողմից Արծրունին ամենաերջանիկն էր հայ խմբագիրների մէջ։ Գաղափարով կապված լինելով իր աշխատակիցների հետ, նա այնքան անկախ էր պահում իրան, այնքան խստապահանջ էր, որ երբէք չէր խոնարհվում անվարձ աշխատողների առաջ, չէր ենթարկվում նրանց տրամադրութեան. ընդհակառակն, հէնց որ տեսնում էր թէ աշխատակիցներից մէկն ու մէկը դաւաճանում է լրագրի ուղղութեան, ուզում է իր կամքը թելադրել, իսկոյն փակում էր նրա առջև իր խմբագրութեան դուռը։ Հեռացածների փոխարէն գալիս էին նորերը և Արծրունին դիմումներ չէր անում, սրան ու նրան չէր խնդրում որ իրան աշխատակցեն։ Բարոյական վարձատրութիւնը, գաղափարականութիւնը այնքան ահագին ոյժ էր նրա

ձեռքում. և առանց այդ ոյժ ի նա չէր էլ կարող տանել լրագիրը այն միջոցներով, որ տալիս էր հայ հասարակութիւնը։

Արևելեան հարցը մի մեծ դրդիչ է դառնում, որ «Մշակը» մօտենայ թիւրքահայերին։ 1876 թւականին առատ թղթակցութիւններ են տպվում Կ. Պօլսից։ Դժբախտաբար, մենք հաստատապէս չը գիտենք թէ ովքեր էին այն մարդիկ, որոնք այդ ժամանակ այնքան հետաքրքրական, հիւթալից թղթակցութիւններ էին ուղարկում թիւրքաց մայրաքաղաքից։ Նոյն թւականին յաճախ են երևում և թղթակցութիւններ Վանից, որոնց մէջ նկարագրվում էր գաւառի իրականութիւնը։ Վանի թղթակիցը Մկրտիչ Փորթուգալեանն էր, թիւրքահայ աչքի ընկնող գործիչներից մէկը, որ մի ժամանակ լրագիր էր հրատարակում Կ. Պօլսում։ 1877-ին նա եկաւ Թիֆլիս և այստեղ մօտ մի տարի աշխատում էր «Մըշակի» խմբագրութեան մէջ, նիւթեր տալով գլխաւորապէս արտաքին տեսութեան բաժնի համար։

Սկսելով շաբաթական երկու համարի հրատարակութիւնը, Արծրունին մեծ աշխոյժով, կրկնապատկած եռանդով առաջ է տանում այդ նոր գործը։ Որքան շատ էր նա գրում, այնքան սաստկանում էր նրա գրչի թափը։

*Յարձակումները աւելի աներկիւղ են դառնում, մերկացումները աւելի անխնայ։ Ուշադրութեան ամենագլխաւոր առարկան, ի հարկէ, արեւելեան հարցն է, թիւրքահայերի դրութիւնը։ Բայց Արծրունին յաճախ թողնում է այդ գլխաւոր առարկան, դիմում է մեր ներքին հարցերին։ Այսպէս, նա արծարծում է քահանաների մշտական, որոշ ռոճիկով ապահովելու հարցը, ցոյց է տալիս մեր ընտանեկան և դպրոցական կրթութեան պակասութիւնները։ Ծանօթանանք մի քանի այսպիսի յօդուածների հետ, որոնց մէջ դատափետվում են մեր հասարակական բարքերը, ազգային յատկութիւնները։*

«Ամեն բան փողի համար» առաջնորդողում Արծրունին խօսում է հայի ծայրայեղ նիւթապաշտութեան մասին։ Գուցէ, ասում է նա, աշխարհիս վրա չը կայ ուրիշ մի այնպիսի ազգ, որ հայի պէս զուրկ լինէր իդէալներից, նրա չափ խրված լինէր կոպիտ նիւթապաշտութեան մէջ։

Հայի համար չը կան վերացական գաղափարներ, բարոյական ի դ է ա լ ն ե ր... Հայը ամեն բանի վրա նայում է փ ո ղ վ ա ս տ ա կ ե լ ո ւ հայեացքից...

Ուսում, հասարակական գործունէութիւն, պարապմունք, պաշտօն, կոչում, մասնագիտութիւն, սէր, ընտանիք,—ամեն բան հայի աչքում համեմատական արժէք ունի, նայելով թէ որքան այս կամ այն գործ,

այս կամ այն գաղափար, այս կամ այն երեւոյթ նիւթապէս շահաւէտ է...

Հայը ամէն բանից առաջ սիրում է անմիջական արդիւնք, նիւթական օգուտ, շահ, տոկոս...

Ի հարկէ բացառութիւններ ամէն տեղ կան, ուրեմն կան եւ մեր ազգի մէջ—բայց մեր ազգի ընդհանուր բնաւորութիւնը՝ շահասիրական նիւթապաշտ ոգին է, որ առաջնորդում է հային ամէն տեսակ հանգամանքներում...

...Եւ ահա այդ նեղ, սահմանափակ, անհասարակական բնաւորութիւնը հայը հպարտութեամբ անուանում է գ ո ր ծ ն ա կ ա ն ո գ ի։

...Հայը ուսում է առնում հաշւով, կեանքի մէջ իր գործ դնելու մասնագիտութիւնը ընտրում է հաշւով, պսակվում է հաշւով, մեռնելիս մինչեւ անգամ կտակ է անում հաշւով, հաւատացած լինելով որ բարեգործական մի քանի կոպէկ կտակելով, նա բաց է անում իր համար դրախտի դռները,—նա մեռնելիս միայն ընդունակ է զոհաբերութիւն անել, հասարակական մի բարի գործ կատարել, այն էլ անում է շահասիրական նպատակով, իր հ ո գ ո ւ համար։

*Ինչու հայը այնքան անտարբեր է դէպի իր սեփական լեզուն։ Որովհետեւ այդ լեզուից նա նիւթական շահ չունի։*

Եւ նա արհամարհում է իր ազգային, իր մայրենի լեզուն միմիայն այն պատճառով, որ նրանով հաց չէ կարելի ճարել... Հայը չունի բարոյական բարձր գաղափարներ, նա ամեն բանի վրա նայում է առեւտրական կէտից, նա իր մայրենի լեզուի վրա

էլ նայում է ինչպէս մի ապրանքի վրա... ապրանքը լաւ չէ ծախվում, հին է,—ուրեմն նրան հարկաւոր չէ առնել...

Հայը նայում է իր մայրենի լեզուի վրա, ինչպէս մի կոտրած ամանի վրա, ինչպէս մի մաշված շորի վրա...

Այո՛, ամեն բան փողի համար...

Բայց եթէ մի օր հայը տեսնէր թէ իր արհամարհած մայրենի լեզուն սկսում է գին ստանալ, գործադրվել հասարակութեան մէջ, եթէ նա տեսնէր թէ աղջկան բաժինք, փող տալու տեղ, կարելի է, օրինակ, նրան սովորեցնել իր մայրենի լեզուն, թէ մայրենի լեզուով ընտանիքում խօսող եւ մայրենի լեզուով երեխաներին դաստիարակող հայուհի գրաւիչ զօրութիւն ունի հայ երիտասարդի համար,—այն ժամանակ բոլոր հայ ծնողները կը սկսէին իրանց աղջկերանց հայերէն սովորեցնել, որովհետեւ այն ժամանակ հայերէն լեզուն էլ մի շահաւէտ գործ կը դառնար, հաց կը տար, այսինքն միջոց կը տար նրանց իրանց աղջկերանցից ազատվելու, առանց աղջկան մի որ եւ է բաժինք տալու՝ միջոց կը տար ծնողներին իրանց ապրանքը տեղաւորելու, կամ ինչպէս Թիֆլիսեցիք ասում են՝ նրան սաղացնելու...

Մի ուրիշ յօդուածում, որի վերնագիրն է՝ «Մենք ստրուկներ ենք», Արծրունին պատկերացնում է հայի եսամոլութիւնը։ Ստրկութեան մէջ դարերով ապրած մի ազգ կորցնում է իր մարդկային ամենաազնիւ, ամենանուրբ յատկութիւնները, դառնում է աւելի

*կոչա, կռպիտ, նիւթապաշտ։ Հայը իր սարկութեան դարերում կորցրել է մարդկային ազգի սանձահարանգ, ամենանուիրական զգացմունքը—սէրը։*

Սիրել՝ նշանակում է ապրել. սիրել՝ նշանակում է գործել մարդկութեան համար. սիրել՝ նշանակում է զոհվել իրան նմանների համար։

Սէրը հասարակական գործիչ է, նա խթող է ամեն նշանաւոր, կարգից դուրս երեւելի գործերի մարդկութեան մէջ։

Եթէ սէրը չը լինէր,—չէին լինի մարդկային կրօնական եւ բարոյական վարդապետութիւնները, մարդկութիւնը չէր ծնի փիլիսոփայութիւնը, չէր ունենայ քրիստոնէութիւնը... Սէրն է որ եղել է աւետարանի պարգեւողը, նա առաջինն է եղել որ քարոզել է մարդկութեանը՝ ազատութեան, հաւասարութեան, եղբայրասիրութեան հասարական գաղափարները։

Սէրն է որ ստեղծել է հասարակութիւնը։ Սիրոյ զգացմունքի դրդմամբ ծնունդ է տեսել մարդկութեան մէջ գիտութիւնը...

Ո՞ր կողմ եւ նայէք, ո՞ր մարդկային հիմնական գաղափար, ո՞ր հասարակական կազմակերպութիւն եւ հետազօտէք,—ամեն տեղ կը նշմարէք սէր, որպէս զօրեղ ստեղծագործական ոյժ՝ կրօն, ընտանիք, գիտութիւն, փիլիսոփայութիւն, գրականութիւն, բանաստեղծութիւն, արհեստ, շքեղարվեստ, երաժշտութիւն, մանկավարժութիւն, հասարակական կազմակերպութիւններ՝ ինչպէս ընկերակցութիւններ, աշխատանոցներ, վանքեր, ուսումնարաններ, մշակ

*դասի փոխադարձ օգնութեան ընկերութիւններ,—բոլորի սկզբնական դրդող ոյժը, սկզբնապատճառը՝ մարդու դէպի մարդկութիւնը ունեցած սիրոյ զգացմունքն է...*

*...Որքան մարդկութիւնը աւելի ազատ է զարգանում,—այնքան սիրոյ զգացմունքը դառնում է զ օ ր ե ղ  ե ւ  գ ի տ ա կ ց ա կ ա ն...*

*Միայն ստրուկ հասարակութեան մէջ իզուր կորոնէք սիրոյ զգացմունքի հետքերը։*

*Ինչպէս տեսնում էք, այստեղ ընդգծվում է հասարակական սէրը։ Մի սէր, որ եսական, անձնամոլ չէ, այլ հասարակաց բարեչինութեան, մարդկային ընդհանուր, համայնական գործին է ծառայում։ Մեր ստրկութիւնը նրանով է յայտնվում, որ մեզանում չը կայ այդպիսի սէր, սէր՝ իբրև հասարակական կեանքի հզօր դրդիչ։ Մասնաւորելով իր խօսքը, Արծրունին մատնացոյց է անում անասնական սէրը տղամարդի և կնոջ մէջ կամ թէ այն, որ հայը կեղեքում է միւս հային՝ իր անձնական շահերի համար։ Բայց այդ երևոյթները միայն հայկական չեն. ամեն ազգի, նոյն իսկ ոչ-ստրուկ ազգի մէջ կան այդ երևոյթները։ Սիրոյ բացակայութիւնը մեզանում երևան է գալիս հասարակական ուրիշ շատ երևոյթների մէջ։ Եւ դրանցից մէկը, գուցէ ամենապերճախօսը, բերում է Արծրունին իր յօդուածի վերջում.*

Հային օտար է հասարակական սէրը։ Գուցէ ոչ մի ազգ աշխարհիս երեսին այնքան հակումն չունի դէպի գաղթականութիւնը, դէպի միմեանցից ցրվելը, միմեանցից փախչելը, ինչքան հայերը։ Հայը լաւ է համարում թաղդաւոր ապրել օտարութեան մէջ, քան թէ իր ազգի շրջանում բաժանել իր արիւնակիցների հետ նրանց բոլոր ցաւերը եւ ուրախութիւնները։ Այդ է եղել միշտ հայի թուլութիւնը, եւ Հայաստանի, որպէս քաղաքական մարմնի, անկման պատճառը։ Հայը վերջապէս չունի սէր դէպի հ ա յ ր ե ն ի ք՝ նա առաջին անախորժ դիպուածում փախչում է իր հայրենիքից եւ յետոյ միայն հեռուից սկսում է կեղծաւոր կերպով անհամ սիրահարական երգեր երգել իր հայրենիքին...

Հասարակական արատները քննելիս, պակասութիւնների արմատները մերկացնելիս, Արծրունին նորից և նորից դիմում է ընտանիքին։ Մենք արդէն տեսանք թէ որքան խիստ քողոքներ էր յայտնում Արծրունին հայ ընտանեկան կազմակերպութեան դէմ, որքան հարուածում էր այդ կազմակերպութեան հիմքը, որ բռնակալութիւնն է։ Միևնոյն բողոքները, բայց աւելի խիստ լեզուով, նա դնում է մի շարք յօդուածների մէջ, որոնք խօսում են մեր ընտանիքի մասին։ Ինչու էր Արծրունին այդքան մեծ կարեւորութիւն տալիս ընտանիքին, ինչու շարունակ նրա մասին էր խօսում։ Ահա ինչու.

Այն ազգերը չունին ոչինչ ապագայ, որոնց ընտանեկան կեանքի կազմակերպութիւնը խիստ բարոյականութեան սկզբունքի վրայ հիմնված չէ։ Այն ազգերը քաղաքակրթութեան ընդունակ չեն, որոնց ընտանեկան կեանքը կամ չափից դուրս լուծված եւ զեխ է, կամ չափից դուրս փակ եւ բռնաւոր է։ Երկու ծայրայեղութիւնն էլ չեն տանում մարդուն դէպի խելացի, ազատ, համեստ, անհատական բարոյական եւ մտաւոր զարգացումը։ Թէ ընտանեկան լուծված կեանքը, թէ բռնաւորութիւնը,—երկուսն էլ անբարոյականութիւն են։

Հայ ընտանիքը երկրորդ ծայրայեղութիւնն է ներկայացնում—բռնաւորութիւնը։ Կարիք չը կայ որ մենք նորից հետեւենք Արծրունու քննադատութեանը, որից դուրս էր բերվում թէ ինչ տեսակ կրթութիւն, ինչ սպանիչ ազդեցութիւն է տալիս այդ տեսակ ընտանիքը, մանաւանդ հարուստ դասակարգի մէջ։ Նկատենք այստեղ միայն այն, որ Արծրունին մեր գիւղական ընտանիքն էլ համարում էր կոպտութեան և վայրենութեան վրա հիմնված մի բան և զարմանում էր թէ ինչպէս չատեւրը իրդէպլացնում են այդ ընտանիքը, անուանելով նրան նահապետական։

1877 թւականին էլ, ինչպէս և միշտ, Արծրունին յօդուածներ նուիրեց կանանց հարցին, լեզուի նշանակութեան, դպրոցական առաջադէմ, ազատ, ժամանակակից կրթու-

***թութեան։ Մեր գործածական լեզուի վերաբերմամբ այն միտքն էր յայտնում, որ նա չը պիտի կազմվի միայն գրաբարից, ոչ էլ միայն գաւառական կենդանի բարբառներից, այլ այդ երկուսիցն էլ օգուտ պէտք է քաղէ որ կարողանայ կազմակերպվել։ Բայց այդքանը բաւական չէ։ Մենք, բացի դրանից, պիտի օգուտ քաղենք արդէն մշակված ձևեր ունեցող օտար, քաղաքակրթված լեզուներից։***

*Շատ անգամ—ասում է Արծրունին, կողմնակի կերպով պատասխանելով այն մեղադրանքներին, որոնք ուղղված էին իր դէմ—մենք լսում ենք այս տեսակ դատողութիւններ՝ «այժմեան երիտասարդութիւնը գործ է ածում ռուսական կամ առհասարակ եւրոպական ձեւեր հայերէն գրելու ժամանակ»...*

*Բայց այդ ասողները չեն մտածում որ մեր այդ գործածած նոր ձեւերը ոչ ռուսական են, ոչ էլ ֆրանսիական կամ գերմանական, ոչ էլ եւրոպական, —այլ ընդհանուր մարդկային լոգիկական ձեւեր, որոնց ակամայ ենթարկվեցան իրանց հասարակական զարգացման մէջ եւ ռուսաց եւ ուրիշ եւրոպական լեզուները։*

***Գրողը պէտք է մի որ և է եւրոպական նոր լեզու էլ իմանայ, որպէսզի կարողանայ զարգացնել նոր լեզուն՝ կանոնաւորութիւն, կենդանութիւն տալով նրան։ Անպատճառ եւրոպական, քաղաքակրթված լեզուներին պէտք***

*է հետեւեալ։ Թէ չէ կը սառացնի այն, ինչ երեւում է Կ. Պօլսում։*

*Թիւրքիայի հայ գրողները, գիտնականները եւ խմբագիրները մեծ մասամբ չը գիտեն ոչ մի եւրօպական լեզու, գիտեն միմիայն մ օ ն գ օ լ ա կ ա ն Թուրքերէնը, որի ձեւերին ընտելանալով, մտցնում են հնդկա-եւրօպական ծագումին պատկանող հայոց լեզուի մէջ մօնգօլական Թուրքերէնի ձեւերը...*

*Իսկ եԹէ գիտեն էլ մի որ եւ է եւրօպական լեզու, օրինակ ֆրանսերէնը, այն էլ Թերի կերպով,— նրանք շատ ուշ են սկսում ուսումնասիրել, արդէն ընտելացած լինելով մօնգօլական լեզուի ֆիզիօլօգիական ձեւերին, պարքերուԹիւնների դասաւորուԹիւններին եւ մտածելու եղանակին։*

*Այդ է պատճառը որ Թիւրքաց հայերի նոր, կենդանի, գրականական լեզուն ոչինչ ապագայ չունի, այդ է պատճառը որ նա ոչինչ առաջադիմուԹիւն չէ անում, անշարժ է մնում, եւ վերջին ժամանակները նրանց գրողներից շատերը, ներքին ազդմամբ հասկանալով, անգիտակցաբար համոզվելով Թէ յոյս չը կայ այդ տեսակ անշունչ լեզուի զարգացումից՝ սկսեցին քարոզել Թողնել կենդանի լեզուն, աշխարհաբարը եւ վերադառնալ գրաբարին...*

*Ա զ գ ո ւ Թ ե ա ն եւ ի ր լ ե զ ո ւ ի մէջ մեծ եւ սերտ կապ կայ...*

*ԱզգուԹիւնը որ դեռ եւս համոզված չէ արդեօք նա կենդանի է Թէ մեռնելու վրա է,—այդ տեսակ ազգուԹիւն անկարող լինելով յարուցանել մի կ ե ն դ ա ն ի լեզու, սկսում է քարոզել վերադառնալ մ ե ռ ա ծ լեզուի գործածուԹեանը։*

Անցնենք այժմ օրվայ հրատապ հարցին։ «Մշակը» այնքան շատ է խօսել արևելեան հարցի մասին, այնքան հարուստ նիւթեր է արձանագրել իր էջերի մէջ այդ հարցի ընթացիկ պատմութիւններից, որ մեզ անհնարին է կանգ առնել իւրաքանչիւր փոքր ի շատէ աչքի ընկնող յօդուածի վրա։ Արդէն լաւ ծանօթացած լինելով այն հայեացքների հետ, որ ունէր Արծրունին Թիւրքահպատակ քրիստոնեաների դրութեան վերաբերմամբ, մեզ կը մնայ համառօտ կերպով յիշատակել այն բոլոր դէպքերը, որոնց արձագանք է տուել «Մշակը», միշտ աչքի առջև ունենալով որ Արծրունին լարված ուշադրութեամբ հետևում էր տեղի ունեցող անցքերին, համարձակ յայտնում էր իր կարծիքը, քարոզում էր, դրդում էր, պահանջում էր, գործունէութեան ծրագիրներ էր առաջարկում։

Տարվայ սկզբին «Մշակը» սկսում է նուիրատուութիւններ հաւաքել Վանի հրկիզեալների օգտին։ Քաղաքական աշխարհը դեռ բանակցութիւնների մէջ էր Թիւրքիայի վերաբերմամբ. բայց բանակցութիւնները որոշ հետևանքի չէին հասցնում։ Ռուսաստանի բռնած սպառնական դիրքը տպաւորութիւն չէր գործում Թիւրքերի վրա, զիջողութեան միտք չէր ներշնչում նրանց։ Կ. Պօլսի դեսպանա-

ժողովը իր վերջին ձևակերպած պահանջները յանձնեց Թիւրք կառավարութեան, իսկ սա այդ դժուար րոպէին մի մեծ ժողով կազմեց մայրաքաղաքի ազգաբնակութեան ներկայացուցիչներից և հարց տուեց նրանց թէ ինչ պէտք-է անել՝ ընդունել Եւրոպայի պահանջները թէ ոչ։ Ժողովը պատասխանեց թէ չը պէտք է ընդունել․ քրիստոնեայ ազգութիւնների ներկայացուցիչներն էլ, որոնց մէջ էր և հայոց պատրիարքի փոխանորդը, այդպէս պատասխան տուողների հետ էին․ միայն բուղղարական հայերի ազգապետն էր, որ հակառակ կարծիք յայտնեց։ Բ. Դուռը, հիմնվելով ժողովրդի այդ վճռի վրա, մերժեց դեսպանաժողովի մշակած պահանջները և որպէսզի ցոյց տայ քաղաքակրթված աշխարհին թէ այդ մերժումը լոկ քմահաճոյքի բան չէ, սկսեց գործադրել սահմանադրութիւնը, պատգամաւորներ ընտրել տալ, ազգային ժողովը (պարլամենտը) և սենատը բաց անել։ Այդ գործողութիւնները պիտի ցոյց տային թէ ընդհանուր բարեկարգութիւններ են մտցնվում Թիւրքիայի մէջ։

Այդ միջոցին Արծրունին երկրորդ խիստ յարձակումը գործեց Ներսէս պատրիարքի դէմ։ Դրա չարժառիթը հետևեալն էր։ Կ. Պոլսի «Նոր Դար» լրագիրը 1876 թ. դեկ-

տեմբերի 29-ի համարի մէջ հաղորդում էր.

«Երէկ Խառն Ժողովը որոշեց Բ. Դրան ուղերձ մը գրել, Նոր սահմանադրութեան վրայ իւր գոհութիւնն ու շնորհակալութիւնը յայտնելով, որով Հայազգի Օսմանցիութիւնը, պաշտօնական լեզուին ամեն տեղ ընդհանրապէս տաճկական լեզուն ըլլալը, Պատրիարքարանի լոկ կրօնական խնդրոց վրայ իրաւասութիւնը, ազգային և քաղաքական ցաւոց ընդհանուր երկրէն ընտրեալ երեսփոխանաց միջոցաւ յայտնուիլը և ազգային դպրոցաց մէջ կրօնական դաւանութեանց վերաբերեալ ուսմանց վրայ միայն Պատրիարքարանի իրաւասութիւն ունենալը կընդունուի: Այս ուղերձը այսօր պիտի մատուցուի Բ. Դրան հանդիսապէս յանուն Պատրիարքարանի, առանց սպասելու Ազգային Ժողովի քուէէն անցնելու»:

Այս հաղորդագրութեան միտքը հասկանալու համար պէտք է նկատի առնել որ օսմանեան սահմանադրութեան հիմնական մի կանոնն այն էր, որ Թիւրքիայի իւրաքանչիւր հպատակ կոչվում է օսմանցի և պաշտօնական լեզուն ամեն տեղ թիւրքերէնն է: Այսպիսով ջնջվում էին առանձին-առանձին ազգութիւնների անունները. Օսմանցի անունը պիտի մի տեղ ձուլէր այն անթիւ

*ազգությունները, որոնք ապրում են սուլթանի երկրում։ Ներսէս պատրիարքը ոչ միայն հաշտվում էր այդ մտքի հետ, այլ և այնուհետև աւելորդ էր համարում հայերին շնորհված սահմանադրական առանձին ինքնավարությունը, քանի որ երկրի բոլոր հարցերը պիտի քննէ Թիւրքական պարլամենտը, ուր, ի հարկէ, պիտի լինէին և հայ պատգամաւորներ։ Թիւրքիայի հայոց պատրիարքը մնում էր լոկ կրօնական իշխանութիւն, որ միայն եկեղեցու գործերի վրա ունէր իրաւասութիւն։ Ներսէսը այսպիսով, առանց նոյն իսկ ստանալու ազգային ժողովի համաձայնութիւնը, ինքնայօժար կերպով հրաժարվում էր այն դարաւոր արտօնութիւններից, որ ունէին Կ. Պօլսի հայոց պատրիարքները...*

*Հիմնվելով այս փաստի վրա, Արծրունին գրեց՝ «Էլ չը կայ հայոց սահմանադրութիւն» յառաջնորդող յօդուածը, որի մէջ անուանեց Ներսէսին «դաւաճան»։ Ինչպէս գիտենք, Արծրունին մեծ նշանակութիւն չէր տալիս Թիւրքահայոց սահմանադրութեան այն պատճառով, որ նա չէր կարողանում պաշտպանել գաւառացի հայերին հարստահարութիւններից։ Բայց սահմանադրութիւնը, այնուամենայնիւ, մարմնացնում էր այն արտօնութիւններն ու իրաւունքները, որ ստացել էին*

*Թիւրքիայի հայերը իրանց կառավարութիւնից։ Եւ ահա այդ արտօնութիւնները, իրաւունքները Թիւրքահայերը «կորցրին շնորհով իրանց հոգևոր հովւի դաւաճանութեան», ասում էր Արծրունին։*

*Ներսէս պատրիարքի այդ քայլը անհեռատեսութեան, մանաւանդ Թիւրքամոլութեան մի մեծ նշան էր։ Ոչ ոք չէր հաւատում թէ օսմանեան սահմանադրութիւնը մի լուրջ պետական ձեռնարկութիւն է, որ կարող է երկար ապրել։ Եւ Ներսէսը շտապում էր հայոց առանձին սահմանադրութեան վերջ տալ, քանի որ արդէն կար ընդհանուր օսմանեան սահմանադրութիւնը։ Արծրունուն վրդովեցնողը մանաւանդ այն էր, որ այդ քայլը անվում էր ինքնագլուխ, առանց ժողովրդի ներկայացուցիչների համաձայնութեան։*

Եթէ ամբողջ ազգը հրաժարվէր իր ունեցած իրաւունքներից, մենք թէեւ այդ վարմունքը յիմարութիւն կանուանէինք, բայց այնուամենայնիւ պէտք է ասէինք թէ դա կախված է ազգի բարի կամքից... բայց ինչ պէտք է ասենք տեսնելով թէ մի որ եւ է Ներսէս իրան իրաւունք է համարում կամայական կերպով շ պ ր տ ե լ սուլթանի ոտների տակ ամբողջ ազգի ամենաթանկագին իրաւունքները։

*Արծրունին Ներսէսից դժգոհ լինելու ուրիշ պատճառներ էլ ունէր։ Եւրօպական լրա-*

*գիրները հաղորդել էին որ դեսպանաժողովը դիմել էր Նրան և հարց տուել թէ ինչ են ուզում հայերը, իսկ Ներսէսը պատասխանել էր թէ հայերը իրանց յոյսը Թիւրքաց կառավարութեան վրա են դրել և Նրանից են սպասում իրանց վիճակի բարւոքումը։ Երևի պատրիարքի այն ուղերձն էլ, որով ջնջվում էր սահմանադրութիւնը, լոկ մի քաղաքական ցոյց էր, որ մի կողմից պիտի մի լաւ զէնք դառնար Նեղ հանգամանքների մէջ խեղդվող Թիւրքաց կառավարութեան համար, իսկ միւս կողմից պիտի ընդգծէր հայերի հաւատարմութիւնը, որով և Ներսէսը կարելի էր համարում քաղցրացնել կառավարութեան աչքը դէպի հայերը։ Բայց Արծրունին բացականչում էր.*

Միթէ Թիւրքիայի հայերը այդ տեսակ սարսափելի դաւաճանութենից յետոյ պէտք է համբերեն որ Ներսէս եպիսկոպոսը պատրիարգ մնայ...

*Սակայն մենք պէտք է ասենք որ Ներսէսը անգործունեայ և անտարբեր չէր մի այնպիսի ժամանակ, երբ գաւառացիների դըժբախտութիւնները օրէցօր սաստկանում էին։ Նա դիմումներ էր անում Թիւրք կառավարութեան, աշխատում էր պատժել տալ յանցաւորներին։ Նրա բռնած ընթացքի հիմքը,*

ուրեմն, այն էր որ պէտք է միայն Թիւրքաց կառավարութիւնը ճանաչել, չը խառնվել միջազգային քաղաքականութեան մէջ։ Բայց այդ բարեացակամութիւնը դէպի Թիւրքաց կառավարութիւնը ոչինչ օգուտ չէր բերում հայերին։ Դրութիւնը Հայաստանում գնալով ծանր կերպարանք էր ընդունում, իսկ հայոց պատրիարքի դիմումները լոկ թղթի վրա էին մնում։ Ներսէսը ստիպված եղաւ պատճառաբանված հրաժարական տալ. բայց մեծ վէզիրը մի կոյտ խոստումներ արաւ, և նա էլի յետ վերցրեց իր հրաժարականը։

Բայց մօտենում էր արևելեան հարցի ամենավճռական րոպէն։ 1877-ի ապրիլի 12-ին Ռուսաստանը պատերազմ հրատարակեց Թիւրքիայի դէմ։ Կովկասեան սահմաններից առաջ արշաւող զօրքը նորից յարուցեց գաւառացի հայ ժողովրդի հին յոյսերը. ամեն տեղ եկեղեցական հանդէսներով էին դիմաւորում ռուսներին։ Դէպքերը շուտով ցոյց տուին թէ որքան անսխալ էր ժողովրդի բընազդը։ Հայերի ահաւոր կոտորածը Բայազէտում, Շէյխ-Ջալալէդդինի արշաւանքը, Ալաշկերտից Տէր-Ղուկասօվի զօրաբաժնի հետ Ռուսաստան գաղթած 3000 հայ ընտանիքները—այդ բոլորը տեղի ունեցաւ մի կարճ միջոցում, երկու կամ երեք ամսվայ ընթաց-

*քում։ Իսկ թէ ինչեր էին կատարվում Թիւր-քաց Հայաստանի այն տեղերում, որոնք հեռու էին պատերազմի բեմից,—հասկացողութիւն կարող է տալ այն ընդարձակ յիշատակարանը, որ կազմել էր Վանից Թիֆլիս եկած Մկրտիչ Փորթուգալեանը և որ տպագրվեց «Մշակի» մի քանի համարներում։*

Սկզբունքով կարելի է համակրել կամ չը համակրել պատերազմին,—ասում էր Արծրունին ռուս-թիւրքական պատերազմի հրատարակութեան առիթով.—բայց մէկ բան չէ կարելի չը խոստովանել, որ կան ազգեր, որոնք ենթարկվում են նոր մտքերին, ընդհանուր մարդկային առաջադիմութեան անհրաժեշտութիւնը ընդունում են միայն սրի եւ հրացանի միջոցով հասցրած լինելով այդ անհրաժեշտութեանը։ Կան հարցեր, որոնք այլ կերպ չեն կարող վճռված լինել, եթէ ոչ պատերազմի միջոցով։

Թիւրքիան պատկանում է այդ տեսակ ազգերին, արեւելեան խնդիրը այդ տեսակ դժուար լուծելի խնդիրներից մինն է...

Ցանկանանք մեր զորքերին աջողութիւն, որից կախված է արեւելքի ազատութիւնը, նրա բնակիչների խաղաղ, ապահով դրութիւնը եւ երկար ժամանակ ճնշման տակ մնացած քրիստոնեայ ազգերի բարոյական, տնտեսական եւ մտաւոր վերանորոգութիւնը։

*Իսկ մի ուրիշ յօդուածի մէջ նա բացատրում էր առհասարակ պատերազմի խորհուրդը։*

Ի՜նչ զարմանալի փոփոխութիւններ, ի՜նչ աչքի ընկնող շարժողութիւններ է առաջացնում պատերազմը մի հասարակութեան կեանքի թէ ընդհանուր ընթացքի, թէ նորա ամենափոքր, նեղ շրջանի մէջ անգամ։

Գուցէ այժմեան քաղաքակրթված աշխարհի ինտելիգենցիայի մի մասը համոզված է որ պատերազմը ահասարակ կործանիչ, վնասակար, առաջադիմութեանը արգելք դնող մի երեւոյթ է,—բայց ուրիշ կողմից չէ կարելի հերքել որ պատերազմը եղել է միշտ, է եւ կը լինի պետութեան կազմակերպութեան եւ իրան հասարակութեան կեանքի բարոյական, մտաւոր եւ նիւթական ոյժերի մի խիստ քննութիւն։

*Մեր կեանքի վերաբերմամբ էլ միանգամայն ճիշտ էր այդ բացատրութիւնը։ Պատերազմը մի դրդիչ էր Կովկասի ներքին կեանքի համար. Նա բերեց կենդանութիւն, ծնեցրեց մտաւոր հոսանքներ, եռանդ, գործունէութիւն հանդէս հանեց հասարակական ասպարէզում։ Հայերն էլ, իբրեւ մէկը կովկասեան ազգերից, առանձին կենդանութիւն ստացան և պատերազմին հետեւած երեք-չորս տարիները մեր կեանքի մէջ մի առանձին թարմ ու փայլուն շրջան են կազմում, որի նմանը հազիւ թէ յետոյ կրկնված լինի։*

*Պատերազմի մասին խօսեց և Ասիացին իր առաջին ֆելիէտօնում։ Դեռ անցեալ տարվանից Ասիացին տխրութեան չեշտեր էր*

*մտցրել իր ֆելիէտօններ մէջ. Նա ասում էր թէ հանաք անելու, զուարճացնելու ոչ մի տրամադրութիւն չէ մնացել, քանի որ Փոքր-Ասիայից այնպիսի ցաւալի լուրեր են գալիս։ Իսկ այժմ ահա ինչ էր նա գրում.*

Այս րօպէիս ուրիշ ինչ բանի վրա կարելի է խօսել, եթէ ոչ պատերազմի վրա։ Ամենքի բերանից լսվում է պ ա տ ե ր ա զ մ խօսքը։

Եւ կրկին պատերազմի բեմը Հայաստանն է, հին, պատմական Հայաստանն է, որի վրայով այնքան ազգեր են անցկացել, ամենքը նրա հողի վրա իրանց եւ հայի արիւն են թափել, ամենքը իրանց հետքերը թողել...

Հայաստանը նման է մի կնոջ, որ անթիւ սիրականներ է ունեցել, բայց այդ իր սիրականներից իսկապէս ոչ մէկին անկեղծ սիրով չէ սիրել... Արդեօք կը սիրէ նա մի օր անկեղծ սիրով, կընծայէ նա իր սէրը մէկին անքաժան կերպով, կընտրէ նա վերջապէս մէկին, որին ամբողջութեամբ կը յանձնէ իր անձը, այդքան ցրված կեանք վարելուց յետոյ՝ օրինաւոր կին, տանտիկին, մայր դառնալու համար...

Դժուար է նախագուշակել։

Առհասարակ այդ տեսակ կանանց կողմից ժամանակաւոր շնորհ վայելելը ամենքը ցանկանում են, —բայց կապվել այդ տեսակ էակի հետ ամբողջ կեանքի համար՝ ոչ ոք չի ցանկանայ... *)։

---

*) Երկու-երեք տարուց յետոյ Րաֆֆին էլ իր «Դաւիթ-բէկ» վէպի մէջ ճիշտ այսպիսի նմանութիւն էր տա-

*Եւ կարօղ է մէկը անկեղծ կերպով սիրել այդ էակին։ Ասիացին թողնում է պատերազմը, այդ հարցն է արծարծում մի անխընայ խստութեամբ, որ ցաւալի ճշմարտութեան արդարացի պատկերացումն է։*

Ցոյց տուեցէք ինձ մի ազգ,—ասում է Նա,—մի մարդ աշխարհիս երեսին, որ հայերին սիրելիս լինէր, կամ գոնէ խօսէր հայերի մասին առանց արհամարհանքի եւ ատելութեան։

Այդ տեսակ ազգ, այդ տեսակ մարդ չը կայ աշխարհիս երեսին։ Հային ամենքը արհամարհում են եւ մանաւանդ ատում են։ Եւ ինչպէս չատեն, երբ ինքն հայը հայերին ատում է...

Հայը միշտ ամաչում է հ ա յ անուանվելու... Ամենամեծ գովասանք, որ կարող է անել Թիֆլիսցի հայ կին (հին սերունդին պատկանող) խօսելով մի աղջկայ վրայ, հետեւեալն է՝ «Հեստի շնուրքով աղջիկ է, հեստի նստիլ ու վիրկենալ ունի, կօսիս վրացի աղջիկ ըլի»...

Ոչ մի ազգ աշխարհիս երեսին չը կայ որ ինքն իրան արհամարհէր որքան հայ ազգը... երկու հայ փողոցում հայերէն են խօսում, յանկարծ մի ծանօթ ռուս կամ գերմանացի նրանց մօտով անց է կենում, —իսկոյն մեր հայերը Թողնում են իրանց մայրենի

---

*լիս Հայաստանին, մի պոռնիկ կնոջ նմանութիւնը։ Սա ապացոյց է թէ որքան սերտ կապ կայ Գրիգոր Արծրունու գրուածքների և Րաֆֆիի վէպերի մէջ։*

լեզուով խօսելը եւ անցնում են մի օտար լեզուին, —չը լինի՞ թէ օտար մարդը լսի որ հ ա յ ե ր ը հ ա յ-ե ր է ն. են խօսում...

Հայերս սովորութիւն ունենք գանգատվել թէ ոչ մի օտար ազգ մեզ չէ սիրում, ամենքը մեզ ատում եւ արհամարհում են... Ի՞նչպէս կարող են ուրիշները մեզ սիրել, երբ մենք ինքներս մեզ ատում ու արհամարհում ենք»:

Պատերազմը կլանում է Արծրունու ամբողջ ուշադրութիւնը: Շատ չեն այն յօդուածները, որոնց մէջ նա խօսում էր սովորական, առօրեայ հարցերի մասին. Թերթելով 1877-ի «Մշակը», մեր առջեւ պատկերանում է նա, որպէս մի մարդ, որի մտածմունքը մի՝ առարկայի վրա է կենտրոնացած, բայց որը, միակողմանի չը լինելու համար, հարկադրված է մի մի ուրիշ առարկաների վրա էլ նայելու, առարկաներ, որոնք, այսպէս ասած, սահում, փախչում են նրա գրչի տակից, առաջնութիւնը, կարեւորութիւնը զիջելով, կենտրոնական առարկային տալով:

Ի՞նչ պիտի լինի հայերի վիճակը, ի՞նչ պիտի տայ պատերազմը Թիւրքաց Հայաստանին: Արծրունին շատ յաճախ էր կանգ առնում այս հարցի առաջ: Նրա համար ատիպողական, անխուսափելի էր մնում միեւնոյնը, ինչ ասել էր 1876-ին:—«Այժմ կամ երբէք»: Եւ

Նա շարունակ կրկնում էր թէ Հայաստանը
պիտի միացնվի Ռուսաստանին. իսկ եթէ այդ
անհնարին լինի, այն ժամանակ Ռուսաստանը
պէտք է իր հովանաւորութեան տակ առնէ
Հայաստանը՝ տալով այնտեղ ապրող քրիս-
տոնեաներին կեանքի և գոյքի ապահովու-
թիւն։ Որքան առաջ էր գնում ռուս բանակը,
այնքան Արծրունու համար անհրաժեշտ էր
դառնում հարցի այդ տեսակ լուծումը։ Ար-
տասահմանեան լրագիրները հաղորդում էին
թէ Անգլիան երբէք չի թոյլ տայ որ Ռու-
սաստանը վերցնէ Հայաստանը։ Արծրունին
անխղճութիւն էր անուանում Անգլիայի այդ
քաղաքականութիւնը։ Անգլիան պահպանում
է Թիւրքիան, սովորեցնում է թիւրքերին
խորամանկութիւններ՝ Եւրոպան խաբելու և
քրիստոնեաների արդար պահանջները խեղդե-
լու համար, Անգլիան զէնք և փող է տալիս
Թիւրքիային՝ Ռուսաստանի դէմ կռուելու հա-
մար և չէ էլ թոյլ տալիս որ Հայաստանն անց-
նի ռուսաց ձեռքը։ Իսկ ինքը, Անգլիան, ի՞նչ
պէտք է անէ հայերի համար։ Ոչինչ։ Բանից,
ուրեմն, դուրս է գալիս որ Հայաստանը
պէտք է թիւրքերի ձեռքին մնայ, որովհետև
այդ շահաւէտ է Անգլիային։ Ի՜նչ անխղճու-
թիւն։ Բայց հայերի յոյսը միայն Ռուսաս-

տանի վրա է, միայն Ռուսաստանից են նըրանք սպասում իրանց փրկութիւնը։

Երբ Մուխտար-փաշայի զօրքը ոչնչացրվեց Ալաջայի բարձրութիւնների վրա, երբ ռուսները յաղթական տրչաւանք սկսեցին դէպի Էրզրում և Ասիական Թիւրքիայի վերջին յոյսը, Կարսը ընկաւ ռուսների ձեռքը, Արծրունին արդէն միանգամայն համոզվեց որ Հայաստանի ճակատագիրը վերջնականապէս կարգադրված է, նա կը դառնայ Ռուսաստանի մի մասը և այդպիսով կազատվի իր դարաւոր դժբախտութիւններից։ Իսկ եթէ բան է, ինքը Ռուսաստանը չը կամենայ միացնել Հայաստանը իր կալուածներին, աւելորդ համարելով իր առանց այն էլ չատ տարածված սահմանների ընդարձակումը, այդ դէպքում դարձեալ նրան է վերապահված կարգադրել Հայաստանի ճակատագիրը այնպէս, որ հայերը ապահովութիւն գտնեն, ինքնավարութիւն ունենան։

Առհասարակ Արծրունին թէ պատերազմի ժամանակ և թէ յաջորդ երկու երեք տարիներում հաւատ չէր ընծայում անգլիական քաղաքականութեան և ամեն անգամ հաստատ համոզմունք էր յայտնում թէ Ռուսաստանն է միայն որ անշահասիրութեամբ և անկեղծութեամբ աշխատում է արևելեան

*քրիստոնեաների իրական պաշտպանը դառնալ։ 1877-ի ամառը, ինչպէս յայտնի է, Թիւրքաց զէնքը աջողութիւններ ունեցաւ թէ եւրօպական և թէ ասիական պատերազմական բեմերում։ Այդ հանգամանքը հարկադրում էր շատերին մտածել թէ արդեօք պատերազմը կը բերէ սպասած հետեւանքը։ Արծրունին այդ կասկածների ժամանակ ասում էր թէ միևնոյն է, Թիւրքիան եթէ այժմ էլ չը ջարդվի, պատերազմից յետոյ դարձեալ պիտի քայքայվի։ Բայց ահա Թիւրքիան միմեանց ետեւից մի շարք ահաւոր հարուածներ է ստանում, որոնք նրա վերջնական անկումն են ցոյց տալիս։ Եւ Արծրունին, յիշելով թէ այդ ահեղ հարուածների մէջ մասնակից էին և հայ զօրապետներ, գրում է «Ազգութեան հանճարը» առաջնորդողը։*

*Մինչեւ վերջին ժամանակները—ասում է նա— հայոց ազգի մասին ամբողջ աշխարհը համոզված էր թէ այդ ազգը ունի՝ խելք, ընդունակութիւններ, արդիւնագործական, առեւտրական ոգի եւ այլն,—բայց որ հայերը վախկոտ ժողովուրդ են եւ զուրկ են բոլորովին զինուորական յատկութիւններից։ Այդ տեսակ համոզմունք կազմած ունէր ամբողջ աշխարհը հայոց ազգի հանճարի մասին։*

*Ներկայ Թիւրքաց-ռուսաց պատերազմը ապացուցեց մեզ հակառակը։ Այն ազգը, որ յայտնի էր*

որպէս զինուորական ոգի կորցրած, առեւտրական, վախկոտ ժողովուրդ,—յանկարծ արդիւնաբերում է անթիւ քաջեր, սկսած հասարակ սոլդատներից, միլիցիայի զինուորներից՝ մինչեւ զօրքի գլխաւոր առաջնորդները, մինչեւ առաջնակարգ զօրապետները։

Կարելի է արդեօք որ մի վախկոտ բնաւորութիւն ունեցող ազգից դուրս գային անթիւ քաջեր, կարելի է արդեօք որ հետեւանքը ծնունդ առնէ առանց պատճառի, կարելի է արդեօք որ ջուրը վազի առանց աղբիւրից դուրս գալու... Անկարելի է։

Այն ազգը որ հարկաւոր ժամանակ ընծայում է այդքան թւով քաջ եւ ընդունակ զինուորականներ, ինչքան վերջին պատերազմում հայերը ընծայեցին ռուսաց զօրքին,—այդ տեսակ նշանաւոր, աչքի ընկնող երեւոյթ ակամայ ստիպուած ենք համարել մեր ազգի յատկութիւնը, մեր ազգութեան հանճարը»։

Այստեղ կանգ առնենք մի հետաքրքրական հարցի առաջ։ Մենք չարունակ տեսնում ենք Արծրունուն յարձակվելիս, մտրակելիս, տեսնում ենք որ նա իր շուրջը վատութիւն, ապականութիւն է միայն գտնում։ Ի՞նչ է սա ցոյց տալիս. արդեօք այն թէ Արծրունին մի անուղղելի յոռետես էր, թէ նա յուսահատվել էր իր ազգից, թէ միայն վատ, միայն բացասական յատկութիւնների ընդունակ էր նա համարում այդ ազգը։

Ըստ երեւոյթին այսպիսի կերպարանք ունէր Արծրունու գործունէութիւնը. և այդ երեւոյթից օգուտ էին քաղում նրա հակառա-

կողմները, ներկայացնելով·նրան իբրև իր ազգի ուխտեալ, անհաշտ թշնամի։ Բայց կարդալով Արծրունու ամենախիստ, անողորմ, նոյն իսկ չափազանցութեան էլ հասցրած յարձակումները, իւրաքանչիւր ազնիւ մարդ կըմբռնէ որ այդ չանթահարող տողերի միջից երևում է սիրող սիրտը, մի մարդ որ ուզում է իր ազգի բարեբախտութիւնը, բայց կրակոտ է, անհամբեր է, մինչև անբաւական և ուզում է որ միանգամից կերպարանափոխվի այդ ազգը, հսկայական քայլերով առաջ գնայ։ Մի կողմ թողնելով այդ ներքին շեշտը, որ լսվում է ամեն տեղ, մենք ցոյց կը տանք հէնց այն, որ ինքը, Արծրունին, խոստովանում էր որ հայի պակասութիւններից շատերը յատուկ են բոլոր ազգերին, որ ամեն տեղ կան կեղեքողներ, շահամոլներ։ Բայց մի՞թէ դա նշանակում էր թէ չը պէտք է հարուածել այդ պակասութիւնները հայերի մէջ։—Ի հարկէ, ոչ։

Պատերազմի տարին անհրաժեշտ դարձաւ մի հանգամանք։ Հայերին օտարները չէին ճանաչում, և Արծրունին սկսում է եռանդուն կերպով քարոզել որ հայ ինտելիգենցիան ծանօթացնէ հայերին օտար ազգերի հետ։ Թող հիմնեն մի զուտ հայկական օրգան ռուսերէն լեզուով, թող հայ երիտասարդները գնան Եւ-

*քոպա, այնտեղ գրեն հայերի մասին, չիտակ և անկեղծ կերպով ներկայացնեն իրանց ազգը քաղաքակիրթ աշխարհին։ Եթէ Արծրունին չունենար հաւատ դէպի իր ազգի բարոյական առաւելութիւնները, եթէ նա միայն վատութիւն տեսնէր նրա մէջ, կարող էր այդպիսի միտք քարոզել, կարող էր համոզված լինել որ քաղաքակիրթ ազգերի մօտիկ ծանօթութիւնը հայերի հետ կը վերացնէր շատ նախապաշարմունքներ, շատ թիւրիմացութիւններ, և հայերը միայն օգուտ կը ստանային այդ ծանօթութիւնից։ «Օտարները և մենք» առաջնորդողի մէջ Արծրունին, խօսելով մի ֆրանսիական թղթակցի մասին, որ նկարագրել էր կովկասեան հայերին, ասում է.*

Ո՛րքան զարմացաւ այդ Թղթակիցը, երբ գտաւ Անդրկովկասում մի ազգ, որ իր բոլոր պակասութիւնների հետ միասին այնուամենայնիւ ներկայացնում է արեւելքում եւրոպական տարր՝ իր ձգտումներով, իր ոգով, իր բնաւորութեամբ, իր ընդունակութիւններով եւ կեանքի եղանակով։

Նա կարծում էր որ հայերը միայն վաճառականներ են,—յանկարծ նա իմանում է, նա տեսնում է, որ հայոց ազգի մեծ մասը երկրագործներ են։ Նա հեռուից լսում էր որ հայերը վախկոտ, պատերազմական բոլոր յատկութիւններից զուրկ ժողովուրդ են,—եւ յանկարծ համոզվում է որ հայերը համարվում են ռուս զօրքի մէջ ամենաքաջ զի-

*նուորականների կարգում, իրանց միջից ընդունակ եւ տաղանդաւոր զօրապետներ են ընծայել ռուսաց զօրքին։ Նա սպասում էր տեսնել մեզ մօտ խորին տգիտութիւն,—եւ յանկարծ տեսնում է հայոց ժողովրդական ուսումնարանների հաշւից որ դպրոցների եւ աշակերտների պրօցէնտը մեզանում բաւական նշանաւոր է։ Նա սպասում էր պատահել հ ա ր ե մ, յանկարծ գտնում է եւրօպական ընտանիք եւ օրիորդական դպրոցներ, որտեղ իրանք կանայք անգամ դասատուութիւն են անում։*

**Եւ այսպէս մի շարք առաւելութիւններ— բարձրագոյն ուսում, մամուլ, գրականութիւն, մշակւող լեզու և այլն։ Անա թէ որքան բաներ կային օտարներին ցոյց տալու համար։ Արծրունին այս բոլորը չէր մոռանում, ընդունում էր որ դրանք աչխատութեամբ ձեռք բերած կուլտուրական առաջադիմութիւն են։ Սակայն այդ դեռ չէր նշանակում լինել միանգամայն բաւական և ինքնագոհ, չը ցանկալ աւելի մեծ առաջադիմութիւն, չը ցոյց տալ պակասութիւնները և կրակով չայրել վէրքերը։**

**Բայց վերադառնանք պատերազմին։**

**Յուլիս ամսին Երևանեան նահանգում տարածվեցին այն հազարաւոր թիւրքահայ ընտանիքները, որոնք Տէր-Ղուկասօվի նահանջող զօրքի հետ եկել էին Ալաշկերտից։**

Երբ ռուսները պարտութիւն կրեցին Զիվինի առաջ և գեներալ Տէր-Ղուկասովը, Դրամդաղի նշանաւոր ճակատամարտը վաստակելուց յետոյ ստիպված եղաւ յետ նահանջել դէպի ռուսաց սահմանները, Ալաշկերտի հայ գիւղերը, շատ լաւ իմանալով թէ ինչ է իրանց սպասում ռուսաց զինուորների հեռանալուց յետոյ, շտապով հաւաքեցին ինչ կարողացան և քրդերից ազատութիւն որոնեցին՝ փախչելով ռուսաց հողը։ Գաղթականները, ի հարկէ, շատ չնչին բան կարողացան բերել իրանց հետ, այնպէս որ տեղ հասնելուն պէս՝ զգացվում էր մեծ կարիք այդ անազին բազմութիւնը պատսպարելու և կերակրելու համար։ Հարկաւոր էր շուտ օգնութեան հասնել նրան։

Արծրունին սկսում է գրել գաղթականների մասին։ Թիֆլիսում գումարներ են հաւաքվում նրանց օգնելու համար։ Բայց այդ կարիքը բաց է անում մեր առջև մի պակասութիւն, որի մասին Արծրունին գրում է «Ուշ ենք հասկացել» առաջնորդողը։ Այդտեղ առաջին անգամ արծարծվում էր Թիֆլիսում մի կենտրոնական բարեգործական ընկերութիւն հիմնելու հարցը։

Չէ կարելի չափսոսալ—ասում էր նա—որ մեզ հայերիս առհասարակ յատուկ է միայն այն ժամա-

նակ ձեռք տալ այդ տեսակ բարի գործերին (Թըշուառներին օգնելու համար փող հաւաքելուն), երբ, ինչպէս ասում են՝ դ ա ն ա կ ը ո ս կ ո ր ի ն է հասնում...

*Բացատրելով այնուհետև որ ժողովրդական դժբախտութիւնները միշտ կարող են կրկնվել, որ հայերը պիտի իրար օգնութեան ձեռք մեկնեն, Արծրունին շարունակում է.*

Մտածեցէք, ընթերցող, ինչպէս լաւ կը լինէր, եթէ մենք փոքր առ փոքր, տարիներով հաւաքելով գումարները թէ նուիրատուութեան միջոցով, թէ անդամակցական վճարքի ձեւով, վաղուց արդէն կազմած ունենայինք մի կենտրոնական ընկերութիւն (օրինակ Թիֆլիսում), Մարդասիրական Ընկերութեան պէս, միայն աւելի լայն, աւելի ընդարձակ պրօգրամայով, որ նշանաւոր գումարներ իր ձեռքումն ունենալով, կարող էր հարկաւոր ժամանակ օգնութիւն հասցնել հայոց հասարակութեան այս-կամ այն տառապեալ մասին, նուիրել իր մայր գումարի տոկոսներից այս կամ այն տեղի հայ սովատանջներին, կամ հրդեհից վնասուածներին, օժանդակել այս կամ այն օգտաւէտ ձեռնարկութեանը, պահպանել կատարեալ անկումից այս կամ այն ինչ ուսումնարան...

Վաղուց հարկաւոր էր մտածել այդ տեսակ մի ընկերութիւն կամ մասնաժողով ունենալ. բայց եթէ մինչեւ այժմ ոչ ոք այս բանի վրա չը մտածեց,— այդ չէ նշանակում որ այսուհետեւ էլ չը պէտք է մտածենք այդ տեսակ ձեռնարկութիւնը իրագործելու։

Դա ժամանակի պահանջն էր, իրերի դրութիւնից բղխող միտք։ Արծրունին առաջինը արտայայտեց նրան մամուլի մէջ, իսկ իրագործումը տեղի ունեցաւ տարիներից յետոյ, երբ Թիֆլիսում հիմնվեց Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութիւնը։ Բայց ալաշկերտցի գաղթականների դրութիւնը անմիջական օգնութիւն էր պահանջում. „Голосъ“ լրագիրը զարմանք էր յայտնում որ Թիֆլիսի հայերը մի յատուկ մասնաժողով չեն կազմում այդ խեղճերի համար։ Արծրունին արձագանք տուեց այդ առաջարկութեան. կազմվեց մասնաժողով, որ հաստատվեց կառավարութեան կողմից և գործի կպաւ։ Մասնաժողովի անդամը և քարտուղարը Արծրունին էր։ Կարճ միջոցում բաւական խոշոր գումար հաւաքվեց. մասնաժողովը Ալէքսանդրեան այգում մեծ ժողովրդական զբօսանք սարքեց, որ ահագին բազմութիւն գրաւեց և փառաւոր աջողութիւն ունեցաւ, տալով ընդհանուր մուտք մօտ 4500 րուբլի։ Աշխատել էին ազգաբնակութեան բոլոր դասակարգերը. կանայք առանձին եռանդ ցոյց տուին այդ գործի մէջ։ Մասնաժողովը իր անդամներից մէկին ուղարկեց Երևանեան նահանգը՝ գաղթականների դրութիւնը տեղն ու տեղը ուսումնասիրելու համար։ Այդ ման-

բաժանն ուսումնասիրութիւնը տպագրվեց «Մշակում»։ Մի մասնաժողով էլ Երևանում կազմվեց։ Եւ այսպիսով ռուսահայերը ոչինչ չը խնայեցին իրանց տանջված եղբայրակիցներին օգնելու և գաղթականութեան պէս մի ահաւոր գործի հետ կապված դժբախտութիւնները կարելի եղածին չափ թեթևացնելու համար։ Երևոյթը բոլորովին նոր էր մեզանում։ Պատերազմը հարկադրում էր մեզ հասարակական եռանդոտ գործունէութիւն սկսել։ Իր արիւնոտ հայրենիքից փախած թիւրքահայը մեզ զարթեցնում էր։

Ալաշկերտի գաղթականութիւնը միևնոյն ժամանակ մեր պատմութեան մէջ անդադար կրկնվող դարաւոր երևոյթներից մէկն էր, երևոյթ, որ այնքան ահագին ազդեցութիւն է արել հայ ազգի ճակատագրի վրա, ազգային բնաւորութիւն է կազմել, ուղղութիւն տուել մեր հազարամեայ կեանքին։ Արծրունին այդ թարմ երևոյթի տպաւորութեան տակ փորձեց բացատրել մեր գաղթականութիւնների պատճառները և հետևանքը։ Հետաքրքրական է որ նա գաղթականութեան պատճառ համարում էր քրիստոնէական կրօնը։

Մի ժամանակ, ասում է նա «Կրօն և Գաղթականութիւն» առաջնորդողի մէջ, Հայ-

ստանը, իբրև լեռնային մի ապահով երկիր, ամեն կողմից գրաւում էր զանազան ազգերի գաղթականութիւններ, որոնք գալիս էին հաստատվում հայոց հողի վրա և ձուլվում էին բուն ազգաբնակութեան հետ։ Այդ ոչ իր ժամանակն էր։ Այն ժամանակ, երբ Հայաստանում տիրում էր զրադաշտական կրօնը։ Դա մի բնական, չօշափելի, մանկական կրօն էր, մատչելի չրջապատող ցեղերի համար։ Հայաստանի դիրքը, որ չատ նման է լեռնային Շվէյցարիայի դիրքին, ապահովութիւն էր տալիս գաղթողներին, իսկ կրակապաշտութիւնը ձուլում էր գաղթողներին հայերի հետ։ Ազգը անդադար նոր տարրեր էր ընդունում դրսից, բազմանանում էր, ուժեղանում։ Հեթանոսական Հայաստանը զօրեղ էր, բազմամարդ։

Քրիստոնէութիւնը մուտք է գործում Հայաստան և իրերի դրութիւնը միանգամից փոխվում է։ Հայաստանը սահմանափակվում է իր մէջ, կղզիանում, առանձնանում. քրիստոնէութիւնը այլ ևս այն պարզ, դիւրամատչելի կրօնը չէր, ինչպէս զրադաշտականութիւնը։ Քրիստոնէութեան բարձր, վերացական, չրջապատող տարրերի համար անմատչելի փիլիսոփայական սկզբունքները փակում են Հայաստանի դռները դրսի նոր ոյժերի

առաջ, կամաւոր գաղթականութիւնը դադարում է։

Անընդհատ հոսանքը ուրիշ ցեղերի, որոնք անդադար գաղթելով Հայաստան միանում էին հայոց հիմնական ազգութեան հետ, ձուլվում էին նրա մէջ,—այդ հոսանքը քրիստոնէութեան մեր երկիրը մըտնելուց յետոյ դադարեց, յետ մղվեցաւ, նոր կրօնը արգելք եղաւ հայոց ազգի անընդհատ մեծանալուն եւ բազմանալուն... Հայը իր մէջ սահմանափակվեց... ազգի բազմանալուն, մեծանալուն, հասակ առնելուն վերջ դրվեցաւ։

Առաջ, կռապաշտութեան ժամանակ, ով որ Հայաստանումն էր բնակվում, հայոց հողի վրա էր ապրում,—հայ էր։ Քրիստոնէութենից յետոյ՝ նա որ լուսաւորչական չէր՝ հայ չէր։ Մինչեւ այժմ էլ հայկաթօլիկը, հայ-յունադաւանը, հայ-բողոքականը, հայ-մահմեդականը՝ հայեր չեն համարվում...

Եւ ահա այն օրից երբ հայը ընդունեց քրիստոնէութիւնը, նա շրջապատված լինելով թշնամիներով, իր կրօնի պատճառով սահմանափակվելով, նեղ շրջանակի մէջ մտնելով, իրան առանձնացած զգալով Ասիայի մէջ,—դարձաւ եսական, դարձաւ չափից դուրս անհատական... եւ զգաց իրան օտար ոչ թէ միայն Ասիայում, բայց եւ իր հայրենիքում...

Այն րօպէից սկսվեց հայի գաղթականութիւնը։

Նա գաղթում էր, եւ ուր որ գնում էր, իր հետըն էր տանում եւ իր բարոյական գանձը, իր սըրտումն էր պահում իր հայրենիքը... Այնուհետեւ Հայաստանը նրա համար երկրորդական հայրենիք էր դարձել, իսկ գլխաւոր հայրենիքը նրա համար եկեղեցին էր։

Հագիւ թէ կարելի լինի ասել թէ մեր պատմութիւնը հաստատում է Արծրունու այս տեսութեան բոլոր կէտերը։ Գաղթականութեան պատճառները աւելի բարդ են, բայց չէ կարելի ուրանալ որ գաղթող հայի համար հայրենիքի պահանջը, սէրը այնքան մեծ չէր, որ կարողանար պահել նրան երկրում։ Որ Հայաստանի թուլութեան պատճառներից մէկը և գուցէ գլխաւորը քրիսնէութիւնն էր, այդ ապացուցանում է հէնց այն հանգամանքը, որ քրիստոնեայ Հայաստանը երբէք չը կարողացաւ քաղաքական մի այնպիսի միութիւն կազմել, ինչպէս էր հեթանոս Հայաստանը։ Մենք չափազանց ծանր զոհեր տուինք եկեղեցուն, մենք, ճիշտ որ, կղզիացանք, թշնամական դիրք բռնեցինք դէպի մեզ շրջապատող բոլոր ազգերը՝ մեր եկեղեցական ինքնուրոյնութիւնը պահպանելու համար։ Արծրունին իր այդ յօդուածի մէջ չէր շօշափում այն բոլոր պատճառները, որոնք քաղաքական թուլութիւն և գաղթականական անվերջ հոսանքներ առաջացրին մեզանում, բայց նա շատ ճիշտ էր ըմբռնել գաղթականութեան՝ եթէ կարելի է՛ ասել, հոգեբանութիւնը։ Ճիշտ է որ հայը օտարութեան մէջ որբ ու անհայրենիք չէր զգում, եթէ ունենում էր իր եկեղեցին, ճիշտ է որ եկե-

դեցին գաղթականի համար փոխարինում էր հայրենիքը։

Բայց հարց է ծագում. մի՞թէ Արծրունին դրանով ասում էր թէ լաւ կը լինէր, եթէ Հայաստանը հեթանոս մնար, եթէ քրիստոնէութիւն չընդունէր։ Այս հարցին նա՛ պատասխանում է իր յաջորդ յօդուածում («Ի՞նչ է հետեւանքը»)։ Արծրունին այդպէս չէր ասում, չէր կարող ասել։ Այլ բան է պատմութեան փիլիսոփայութիւնը պարզելը։ Հետազօտել պատճառները, դուրս բերել բնական, արդարացի եզրակացութիւններ չէ նըշանակում քմահաճ վճիռներ կարդալ, իր սըրտի ուզածը քարոզել։ Եթէ քրիստոնէութիւնը զրկեց Հայաստանը քաղաքական ոյժից, դա չէ նշանակում թէ քրիստոնէութիւնը իբրեւ ուսում, իբրեւ վարդապետութիւն անհամեմատ բարձր չէ հեթանոսութիւնից։ Արծրունին այդպէս էլ ասում է.

Մեզ համար ամենից բարձր, ամենից սուրբ են քրիստոնէական վարդապետութեան հիմնական գաղափարների յաւիտենական սկզբունքները, քրիստոնէութեանը յատուկ հաւասարութեան, եղբայրութեան եւ ազատութեան ոգին; քրիստոնէութեան հասարակական, քաղաքակրթական նշանակութիւնը։ Բայց նոյն իսկ այն պատճառով որ քրիստոնէութիւնը անչափ առաջադէմ կրօն է, նրա սկզբունքները անչափ

բարձր, վերացական, իդէալական են,—այդ սկըզբունքները անմատչելի պէտք է լինէին Հայաստանը շրջապատող կռապաշտ, դեռ իրանց զարգացման մանկութեան մէջ գտնված ազգերին, երբ այդ բարձր փիլիսոփայական վարդապետութիւնը ընդունվեցաւ հայերից։

Ինչո՞ւ համար էր Արծրունին այս պատմական երևոյթը բացատրում։ Նա պատմագէտ չէր, անցեալով ապրող չէր, այլ ժամանակի, ներկայի, իրականութեան մարդ։ Ինչո՞ւ էր շարժում հնութեան հարցերը։ Լոկ այն պատճառով որ ընդգծէ հայի բնաւորութեան մի յատկանիշը,—այն է՝ եկեղեցին փոխարինեց հայրենիքը, և հայրենիքի հասկացողութիւնը թուլացաւ, համարեա կորաւ։ Այս պատճաճառով հէնց որ հայը հեռանում է իր եկեղեցուց, իսկոյն դադարում է հայ լինելուց։

Ահա ինչն է սխալը։ Այդ սխալի մասին շատ էին խօսել մեր նախորդ առաջաւոր հրապարակախօսները — Ստեփան Ոսկան և Ստեփանոս Նազարեանց։ Արծրունին էլ նոյն եզրակացութեան էր հասնում։

Մեր ազգի մտաւոր զարգացման եւ բարոյական վերանորոգման գլխաւոր գործիչը եւ շարժառիթը պէտք է լինի մ ա յ ր ե ն ի լ ե զ ո ւ ն,—ասում է Նա։ —Թող ուսումը եւ կրթութիւնը իր ամենաբազմակողմանի երեւոյթներով հիմնվի հայրենի հողի վրա, Հայաստանում, մայրենի լեզուի հաստատ սկզբունք-

ների վրա,—եւ հայաստանցի հայը չի կլանվի ոչ մահմեդականութենից, ոչ էլ մի որ եւէ այլ տարրից։

Այս դաւանանքը նոր չէր մեզանում։ Բայց անհագին աղմուկ էր հանում ամեն անգամ, երբ հրապարակ էր հանվում մեր մամուլի մէջ։ Սակայն ոչ ոք այնքան կատաղի, երկարատև կռիւ չէ մղել այդ սկզբունքի համար, ինչպէս Արծրունին։ Մենք յետոյ կը տեսնենք այդ կռիւը։

Պատերազմական դաշտում և նրա սահմանակից տեղերում կատարվող եղելութիւնները, որոնց մի արտայայտութիւնը Ալաշկերտի մեծ գաղթականութիւնն էր, իրանց ազդեցութիւնն ունեցան և Կ. Պոլսի հայութեան մէջ։ Դրանք իրողութիւններ էին, որոնք չէին կարող խրատական չը լինել։ Սկսում էին հետզհետէ հասկանալ իրերի իսկական դրութիւնը, այն դառն ճշմարտութիւնը՝ որ սլաւօնական շարժումը, պատերազմը, սոսկալի արիւնհեղութիւնները ինտրիգների, քմահաճութեան, փառասիրութեան գործեր չեն, այլ արևելեան հարցի դարաւոր յուզմունքների մի կրկնութիւնը։

Ամառը, մինչդեռ Հայաստանում քրդերը տանջում էին հայերին, իսկ թիւրք զօրքերը նեղն էին գցել ռուսներին և պատերազմի

ելքը շատ անորոշ, կասկածելի էր երևում, Ներսէս պատրիարքը հրաւիրվեց Ելդըզ-քեօշկի պալատը։ Սուլթանը անձամբ խօսակցութիւն ունեցաւ պատրիարքի հետ և «Times» լրագրի թղթակիցը այսպէս էր արձանագրում այդ խօսակցութիւնը։

Սուլթանը նստեցրեց Ներսէսին և ասաց նրան.

—Ի՞նչպէս է ձեր առողջութիւնը, ես վաղուց է որ ցանկանում էի ձեզ տեսնել և սպասում էի յարմար առիթի։ Ես առանձին համակրութիւն ունեմ դէպի ձեր անձնաւորութիւնը։ Համարեցէք որ դուք այստեղ ձեր տանն էք գտնվում, և եկէք ինձ մօտ, երբ կամենում էք։

—Թագաւո՛ր, մենք չենք մտածում մեր մասին, մեր ազգի բոլոր մտածմունքները ուղղված են դէպի ձեր մեծութիւնը և օսմանեան զօրքը, և ձեզ համար մենք միշտ աղօթում ենք։

—Ես անկեղծ կերպով ցաւում եմ, ասաց սուլթան Համիդը, այժմեան տխուր ժամանակների մասին։ Ես որ կամաւոր կերպով մի միջատ էլ չէի սպանի, այժմ պէտք է նայեմ ինչպէս թափվում է անմեղների արիւնը։ Բայց Աստուծուն յայտնի է որ ես պատասխանատու չեմ այս պատերազմի համար։

—Դուք ճշմարիտ ամենամեծ թագաւոր էք, դուք գերազանցեցիք ձեր նախորդներին, որոնք օսմանեան գահի վրա նստած էին ամենածաղկած ժամանակին, որովհետև օսմանեան դրօշակին փառք չնորհեցիք այս տեսակ դժուար և տառապանքներով լի ժամանակներում։

—Իմ գահը նստելու ժամից ես մի բոպէ հանգստութիւն ունեցած չեմ։

—Այո, դրա մէջ էլ երևում է ձեր մեծութեան հզօրութիւնը։ Ամբողջ ազգը գիշեր և ցերեկ աղօթում է որ ձեր մեծութեանը աջողվէր կատարել ձեր խոստացած վերանորոգութիւնները, որոնք բովանդակում են ձեր կայսերական փառաւոր հրովարտակների մէջ՝ երկրագործութեան, վաճառականութեան, արդիւնագործութեան և ժողովրդական լուսաւորութեան զարգացումը։

—Ես շատ գոհ եմ իմ հայոց ազգից, պատասխանեց սուլթանը,՝ և իմ կողմից շատ շնորհակալ եմ նրանից։ Ես ցանկանում եմ որ դուք յայանէք իմ կողմից հայոց ազգին գոհունակութիւնս և հաւատացնէք իմ՝ դէպի նրան ունեցած համակրութեանս մասին։

—Ես կարող եմ հաւատացնել ձերդ մեծութիւնը, որ ձեր փառաւոր տոհմի հայրական կառավարութիւնը յարուցանում է սէր

դէպի ձեր. տոհմը ոչ միայն Թիւրքիայի հայե-
րի մէջ, բայց և ուրիշ երկրների հայերի
սրտում։

—Շնորհակալ եմ և նկրկնում եմ որ ես էլ
բաժանում եմ այդ զգացմունքները։ Խնդրում
եմ ձեզ յայտնել այդ իմ զգացմունքը ժողո-
վրդին։ Ես նոյնպէս շատ գոհ եմ այն հայե-
րից, որոնք կառավարչական ծառայութեան
մէջ են. նրանք միշտ հաւատարիմ կերպով
են ծառայել։ Ես գիտեմ որ հայոց ազգը շատ
վնասներ կրեց այս պատերազմից, բայց թող
նա իմանայ որ կը տեսնէ աւելի երջանիկ
օրեր և կը քաղէ իր հաւատարմութեան պը-
տուղները, որպէս վարձատրութիւն իր կրած
զրկանքների համար։ Ես սիրում եմ իմ բոլոր
հպատակներին, բայց մանաւանդ իմ հայոց
ազգը, որ այժմեան ծանր հանգամանքներում
ցոյց տուեց իր անխախտելի հաւատարմու-
թիւնը։ Ես տարբերութիւն չեմ դնում մահ-
մեդականների և քրիստոնեաների մէջ. նրանք
բոլորն էլ օսմաններ են։ Հաւատը Աստու-
ծուն է պատկանում։

Ներսէսը աղօթք կարդաց, սուլթանը իր
ձեռքով տուեց նրան Օսմանիէ չքանշանի ա-
ռաջին աստիճանը իբրև հաւատարիք իր սիրոյ
դէպի հայերը։ Ներսէսը նոյն իսկ սկսեց ա-
ղաչել սուլթանին որ նա գթայ այն բօլ-

գարններին, որոնք անհաւատարմութիւն ցոյց տուին։ Եւ դուրս գալով պալատից, հայոց պատրիարքը եկեղեցում մաղթանք կատարեց բոլոր հոգեւորականների և ժողովրդի մեծ բազմութեան ներկայութեամբ։

Այդ տեսակցութիւնը տեղի ունեցաւ օգոստոսի 22-ին։ Բայց նոյն տարվայ վերջում Կ. Պօլսի հայերը արդէն անհաւատարիմ և դաւաճան էին հրատարակվում Թիւրք լրագիրների կողմից։ Ի՞նչ էր պատահել։

Պատերազմը սպառել էր Թիւրքիայի ոյժերը։ Կարսի առումից յետոյ Ասիական Թիւրքիայում մի չնչին բանակ էր մնացել և Մուխտար-փաշան ստիպողաբար նոր զօրքեր էր պահանջում Պօլսից։ Կործանման ծայրին հասած Թիւրք պետութիւնը լարեց իր վերջին ոյժերը։ Նոյեմբերի կէսին հրատարակվեց սուլթանի իրադէն, որով զէնքի էին կանչվում բոլոր քրիստոնեաները 17—45 տարեկան հասակում։ Այս կարգադրութիւնը մեծ յուզմունք պատճառեց քրիստոնեաներին։ Հայոց և յունաց պատրիարքարանները հրաւէր ստացան աջակցելու կառավարութեան այս գործի մէջ։ Յունաց պատրիարքը կոնդակ հրատարակեց, որ, սակայն, ժողովրդի կատաղութիւնը գրգռեց և մեծ ցոյցերի պատճառ դարձաւ։

Ներսէս պատրիարքը անձամբ կամենում էր որ կատարվի կառավարութեան կամքը, բայց այնքան խոհեմ գտնվեց, որ ինքնագլուխ կարգադրութիւն չարաւ և հարցը ենթարկեց Ազգային ժողովի քննութեան։ Նոյեմբերի 25-ին նշանակված էր Ազգային ժողովի դռնփակ նիստը. չը նայած այդ հանգամանքին, մօտ 6000 հայեր մտան եկեղեցի, որպէս զի տեսնեն թէ ինչ վճիռ է ստանում հարցը։ Առաջին անգամ հանդէս էր գալիս ընդհարում թիւրքաց ծառայութեան մէջ գըտնվող հայ պաշտօնեաների և ժողովրդի մէջ։ Առաջինները, ի հարկէ, ամեն ջանք գործ էին դնում որ ընդունվի կառավարութեան առաջարկը. մինչդեռ ժողովրդի ներկայացուցիչները, ունենալով իրանց ետևում հազարաւոր ամբոխ, գտնում էին որ քրիստոնեաները զինուոր տալ չեն կարող, քանի որ հաւաքել զինուորական կարգերին անտեղեակ մարդկանց և ուղարկել նրանց պատերազմի դաշտը, նշանակում էր կոտորել տալ նրանց։

Հարցը վճիռ չը ստացաւ այդ նիստում։ Իսկ պատերազմը աղէտ աղէտի ետևից էր բերում։ Ընկաւ Պլէւնան և թիւրքաց ամենաընտիր բանակը գերի ուղարկվեց Ռուսաստան։ Մահմեդական ամբոխը Կ. Պօլսում յուսահատութեան մէջ էր, անկարգութիւններ

էր անում. քրիստոնեաները—յոյները և հայ-երը—ընդհակառակն, ուրախ էին և գեղեցիկ յոյսեր էին փայփայում։ Յաղթական Ռուսաստանը այժմ ամենքի համար սիրելի էր։ Ժողովրդի այդ ընդհանուր տրամադրութիւնը արձագանք գտաւ Ազգային Ժողովի այն նիստում, որ գումարվեց դեկտեմբերի 14-ին։ Աղմկալից էր այդ ժողովը. հայ էֆէնդիները սաստիկ ընդհարում ունեցան երեսփոխանների հետ։ Դիմադրութեան ներկայացուցիչներն էին Խորէն Նարպէյ և Մատթէոս Իզմիրլեան եպիսկոպոսները։ Նարպէյի ճառը այնքան համարձակ էր, որ էֆէնդիները պահանջում էին Ներսէսից լռեցնել նրան։ Իզմիրլեանն ասաց որ զինուորագրութիւնը ենթադրում է հպատակների հաւասարութիւն, մինչդեռ այս րօպէին Թիւրքիայում ամենավիրաւորական անհաւասարութիւն է տիրում քրիստոնեաների և մահմեդականների մէջ։ Եւ երբ էֆէնդիները ցոյց տուին օսմանեան սահմանադրութիւնը, Իզմիրլեանը պատասխանեց. «Սահմանադրութիւնը մինչև այժըմ մեռած տառ է. Աստուած գիտէ, մի անգամ կը գործադրվի՞ նա թէ չէ։ Ո՛չ, ո՛չ, հաւասարութիւն չը կայ, մեզ տուած խոստումներին հակառակ, սահմանադրութեան հըրա-

տարակած օրից մենք այնքան արտօնութիւն ունինք, որքան առաջ»։

Էֆէնդիները, տեսնելով ժողովի տրամադրութիւնը, գոնէ աջողեցրին այն, որ կառավարութեան առաջարկութիւնը քուէի չը դրվեց։ Նուրեան էֆէնդին առաջարկեց որ պատրիարքին յանձնվի եկեղեցական համագումար ժողով կազմել՝ Խառն ժողովի հետ այդ հարցը կարգադրելու և Բ. Դրան պատասխան գրելու համար։ Հրաւիրվեց այդ ժողովը, բայց նա մերժեց կառավարութեան առաջարկը այն հիման վրա, որ քրիստոնեայ մի եկեղեցուն անվայել է միանալ մահմեդականի հետ և կռւել քրիստոնեաների դէմ։ Այս էր ամենագլխաւորը. հայերը իրանց յոյսերը դրել էին Ռուսաստանի վրա. նրանք չէին կարող զէնք բարձրացնել Ռուսաստանի դէմ և հարուածել իրանց ակնկալութիւնները։

Ներսէսը այս շարժման մէջ էլ դեռ շարունակում էր Թիւրքամոլ մնալ։ Համագումար ժողովը պատրաստեց պատասխան, յանձնեց նրան որ Բ. Դուռը տանէ։ Բայց Ներսէսը վախկոտութիւն ցոյց տուեց, նոյն իսկ հրաժարական ներկայացրեց։ Մեծ վէզիր Էդհէմ-փաշան սաստիկ զայրացել էր հայերի վրա. անգլիական դեսպան Լայարդ համոզում էր զինուոր տալ, ասելով թէ Թիւր-

քան վտանգից կողոպտուի, եթէ քրիստոնեաները զէնք վերցնեն։ Բայց քրիստոնեաների և գլխաւորապէս հայերի յուզմունքը օրէցօր սաստկանում էր. չէին ուզում սուլթանի դէմ պատերազմ դուրս գալ և թիւրք կառավարութիւնը, ի հարկէ, անկարող եղաւ իր կարգադրութիւնը գործադրել։

Թէ որքան մեծ էր զայրոյթը հայերի ռուսասիրութեան դէմ, ցոյց է տալիս «Stamboul» անունով լրագրի (որի հրատարակիչը անգլիացի էր) խիստ արշաւանքը հայերի դէմ։ Լրագիրը անուանում էր հայերին ստոր, արհամարհելի, դաւաճան, ապերախտ։ «Վերջապէս, ասում էր նա, հայերի այս արածը ապստամբութիւն է սուլթանի դէմ և կառավարութիւնը իրաւունք և պարտաւորութիւն ունի խստիւ պատժել այդ ապստամբութիւնը։ Մենք աւելորդ ենք համարում պնդել այս կէտի վրա թէ որչափ գարշելի ապերախտութիւն է հայերի կողմից պաշտպանել չուզել իրանց հայրենիքը, մի երկիր, ուր ապրում են այսչափ երկար ժամանակից ի վեր, մի կառավարութիւն, որ այնչափ վեհանձն կերպով ընդունած է նրանց իր վարչական գործերի մէջ, որ իրանց ազգից շատերին միջոց է տուած մեծ հարստութիւններ ունենալու»։

Լրագրին պատասխանեցին երկու հայ թերթեր—«Նոր Դար» և «Մանզումէի Էֆքեար»։ Առաջինը իր պատասխանի համար էլ խափանվեց կառավարութեան կողմից. «Մանզումէն» աւելի մեղմ կերպով խօսեց, ակնարկներով պատասխանեց։ Ի միջի այլոց ահա ինչ էր գրում նա. «Մեզ համար այնչափ հարկաւոր չէ պաշտօնատարի անունը Կարապետ կամ Մէհմէտ կամ Ծօրճի կամ Աւրամ լինելը, այլ մեզ հարկաւոր և հետաքրքրական կէտը այն է որ պաշտօնատարները արժանաւոր անձեր լինին։ Ի՞նչ օգուտ թէ մի բէգի, էֆէնդիի կամ փաշայի անունը հայերէն լինի, երբ ինք հայրենիքի կործանումին աշխատի»։

Ահա թէ որքան էր փոխվել տրամադրութիւնը Կ. Պօլսում։ «Մասիս» լրագրի «կանծղեր»-ից մինչև այսպիսի խօսքեր արտասանելը ահագին առաջադիմութիւն էր։ Եւ այդ փոփոխութիւնը ծնեցնում էր ռուսների յաղթական պատերազմը։ Բալկանեան թերակղզում թիւրք բանակները հալվում էին ռուսների առաջ. արդէն Բ. Դուռը իրան յաղթված համարելով, պետութիւնների միջնորդութեան էր դիմում, խօսում էին հաշտութեան պայմանների մասին։ Շատ կարևոր, շատ փափուկ ժամանակամիջոց էր. այժմ ամեն ինչ կախված էր յաղթողի թելադրու-

թիւնից։ Անգլիական դիպլօմատիան, իմանալով որ ռուսները աչք ունեն Հայաստանի մի մասի վրա, աշխատում էր հայերին գործիք դարձնել՝ այդ մտադրութեան առաջն առնելու համար։ Բայց հայերը զգոյշ, շրջանկատ էին․ Նրանք հրաժարվեցին ռուսների առաջ որ և է արգելք, բարդութիւն յարուցանելու մտքից. Նրանք ուզում էին որ յաղթողը միանգամայն ազատ լինի իր գործողութիւնների մէջ և իրանց յոյսը դրել էին նրա վեհանձնութեան վրա։

Այս ժողովրդական ուժեղ տրամադրութիւնն էր ստեղծվել Կ. Պօլսի հայերի մէջ 1877-ի վերջերում։ Ահա այդ իսկ տրամադրութեան մէջ Ներսէս պատրիարքը յղացաւ նոր միտք, նոր ուղղութեան հետևել սկսեց։ Նա հասկացաւ րոպէի ահագին նշանակութիւնը, հասկացաւ որ «այժմ կամ երբէք» և սկսեց գործունէութեան մի նոր շրջան, որ մոռացնել տուեց անցեալը և դարձրեց այդ պատրիարքին քաջ ու աներկիւղ, իր հօտին անձնուէր մի հովիւ, որ պիտի հռչակվէր իբրև հայութեան ամենանշանաւոր, նուիրական գործիչներից մէկը, մէկը այն մարդկանցից, որոնք հազուագիւտ են մեր պատմութեան մէջ։

Մենք պատմեցինք այս բոլորը, որպէսզի

